# ԱԶԳԱՅԻՆ ՄԱՏԵՆԱԴԱՐԱՆ

---

Կ.

# ԿԻՒՐԻՈՆ ԿԱԹՈՂԻԿՈՍ ՎՐԱՑ



ՎԻԵՆՆԱ
ՄԽԻԹԱՐԵԱՆ ՏՊԱՐԱՆ
1910.

Kiwrion kat'oghikos Vrats'

# ԿԻՒՐԻՈՆ ԿԱԹՈՂԻԿՈՍ ՎՐԱՑ

## ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ՀԱՅ-ՎՐԱՑ ՅԱՐԱԲԵՐՈՒԹԵԱՆՑ

## ԵՕԹՆԵՐՈՐԴ ԴԱՐՈՒ ՄԷՋ

*(Քառասնամեայ շրջան Հայոց եկեղեցական պատ-մութեան. 574—610)*

ՊԱՏՄԱԿԱՆ ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐՈՒԹԻՒՆ

ԳՐԵՑ

Հ. ՆԵՐՍԷՍ ԱԿԻՆԵԱՆ

ՄԽԻԹ. ՈՒԽՏԷՆ



ՎԻԵՆՆԱ

ՄԽԻԹԱՐԵԱՆ ՏՊԱՐԱՆ

1910.

ԱՄԵՆԱՊԱՏԻՒ ԵՒ ՄԵԾԱՊԱՅԾԱՌ

ՏԵԱՌՆ

# Տ. ԳՐԻԳՈՐԻ Վ.Ի ԳՈՎՐԻԿԵԱՆ

ԸՆԴՀ. ԱԲԲԱՅԻ ՄԽԻԹԱՐԵԱՆՑ ՎԻԵՆՆԱՅ

ԱՌԹԻՒ Ս. ՕԾՄԱՆ

ՅԱՐՔԵՊԻՍԿՈՊՈՍ ՄԾԲՆԱՅ

ՆՈՒԻՐԷ

Յ Ա Ն Մ Ա Հ   Յ Ի Շ Ա Տ Ա Կ

ՅԵՏԻՆՆ ՅՈՐԴՒՈՑ

# ՅԱՌԱՋԱԲԱՆ

Թերեւս անյարմար նկատուի ընտրած խորագիրս ուսումնասիրութեան մը, որ նուիրուած է ամբողջապէս Հայոց եկեղեցական պատմութեան փոքրիկ շրջանի մը: Ստոյգ է Կիւրիոն չէ շրջանիս միակ հերոսը. բայց անիկա է ծիմնին, որուն վրայ կը դառնայ քառասնամեայ պատմութիւնս: Որո՞ւն ծանօթ է Կիւրիոն անունն եւ անյայտ այդ անուան հետ անքաժին կապուած այն դերը, զոր կատարեց նա: Վրաց Հայոցմէ Բաժանման պատմութիւնը, զոր նիւթ առած ենք յատկապէս ուսումնասիրութեանս, Կիւրիոնի գործունէութեան պատմութիւնն է միանգամայն. իսկ այս այնպէս սերտ կապուած է Հայոց կաթողիկոսարանի 574–610 շրջանի պատմութեան հետ, որ կարելի չէ առանց միոյն նկատել միւսը, առանց երկրորդին լուսաւորել առաջինը: Երկուքն ի միասին կը կազմեն ամբողջութիւն մը:

Այս երկու դրացի ազգացս եկեղեցական պատմութեան սերտ կապակցութիւնն անհրաժեշտ կ՚ընէ ուրեմն երկուքին միանգամայն ուսումնասիրութիւնը. այսպէս ըմթացանք մենք ալ: Ըստ այսմ ուսումնասիրութիւնս հարկ է նկատել երկու Եկեղեցեացս յարաբերութեանց քառասնամեայ պատմութիւնը (574–610): Բաժանման գաղափարը կ՚ենթադրէ նախ միութիւն. իսկ թէ ուստի՞ էր այս միութիւնը երկու դրացի ազգաց մէջ՝ այն եւս կարեւոր համարեցանք լուսաբանել հին յարաբերութեանց վրայ ակնարկ մը նետելով: Կարեւոր էր նաեւ գնահատութիւն մը աղբերաց՝ Թղթոց Գրքին եւ Ուխտանէսի, զոր տուած ենք Ներածութեան մէջ:

Բաղձալի էր մեզի ուսումնասիրութեանս մէջ առանձին գլխով խօսիլ նաեւ Վրթանէս Քերդողի վրայ, որ այս շրջանին կարեւորագոյն անձերէն մին է, բայց

ստիպուեցանք այս բաղձանքը առանձին հատորի մէջ իրագործել, շատ ընդարձակ էջեր պահանջելուն: Մեր ընթերցողներու առանձին ուշադրութեան կը յանձնենք զայն իբրեւ ուսումնասիրութեանս շարունակութիւն եւ ամբողջացուցիչ մասը[1]:

Անշուշտ անթերի չէ մեր աշխատութիւնը, ինչպէս համոզուած ենք: Պակասութիւն մը մանաւանդ զգալի է, զոր ուսումնասիրութեանս առաջին իսկ քայլին զգացած էինք (հմմտ. "Հանդ. Ամս." 1907, էջ 289). այն է անհմուտ ըլլալով վրացերէն լեզուի չկրցանք ի մօտոյ՝ անմիջնորդաբար օգտուիլ մեր նիւթի վերաբերեալ վրացերէն գրականութենէ: Բնականաբար անաչառ դատաստան կտրելու համար իրողութեան վրայ կարեւոր էր լսել երկու կողման ալ պատճառաբանութիւնք: Բայց այս թերութիւնը մեծ բիծ մը չի դներ մեր ուսումնասիրութեան, վասն զի ինչպէս Վրաց մատենագրութեան մօտէն ծանօթ ծեռնհաս անձանց՝ Բրոսէի, Մառի, Գուսէնի եւ Ջաւախովի գրուածներէն կը տեսնուի, Վրաց բաժանման եւ յարակից խնդրոց վրայ նշանակալից հնութեան նշխարք չէ յայտնուած տակաւին. նոյն իսկ Արսէն Կաթողիկոսի գրուածքն, զոր կարեւոր կը համարէի, զուրկ է նշանակալից բովանդակութենէ (Տես այս մասին Յաւելուած, էջ 289–91): Վրացի գիտնական Ջաւախով իսկ իւր մենագրութեան մէջ Վրաց բաժանման վրայ իրացս համար աղբիւր կը գտնէ միայն հայերէն մատենագրութեան մէջ: Կան, այո, գեղեցիկ յիշատակարաններ հին եւ նոր յարաբերութեանց համար. բայց այս կէտը երկրորդաբար միայն նիւթ եղած է մեր ուսումնասիրութեան. եւ կարեւորագոյն յիշատակարաններու ջանացած ենք ծանօթանալ միջնորդութեամբ Մառի եւ այլոց գրուածքներու եւ պատրաստակամութեան: Քաղցր պարտք կը մնայ ինձ հրապարակաւ ալ յայտնելու ջերմ շնորհակալութիւնս հայերէնագէտ Մեծ. Հ. Գուսէնի, որ հաճեցաւ տրամադրութեանս ներքեւ դնել Արսէն Կաթողիկոսի գրուածքը իւր գերմաներէն թարգմանութեամբ, եւ Պրոֆ. Ն. Մառի, որ հոգաց ինձ Ջաւախովի եւ այլոց կարեւոր գրութիւնները:

[1] Տես Վրթանէս վարդապետ Քերթող եւ իւր երկասիրութիւնները. Վիեննա 1910 = "Հանդէս Ամսօրեայ" 1910, էջ 8–11, 37–46 եւն:

Բաց ի վրական յիշատակարաններէ կարեւոր էր նաեւ ի մօտոյ ծանօթութիւն հայերէն ձեռագիր աղբիւրներու, որոնք կը գտնուին Ձեռագրաց հաւաքածոներու մէջ: Այսպէս Ձեռագրաց ցուցակներու համաձայն կարեւոր կը թուէին Էջմիածնի Թ. 1466 (Կար. 1429), Լազարեան ճեմարանի Թ. 267 Ձեռագիրները: Բայց ինչպէս ապա իմացայ աննշանակ եւ անարժէք բաներ էին: Էջմիածնի Ձեռագրին մանրնկարագրութիւնը հաճեցաւ տալ Արժ. Ս. Վ. Ամատունի (հմմտ. էջ 265-267), որուն կը յայտնեմ հրապարակաւ պարտաւոր շնորհակալութիւնս: Լազարեան ճեմարանի նոտրագիր Ձեռագիրը (ըստ **Каталогъ книгъ и рукописей Библіотекъ Лазаревскаго Института Восточныхъ Языковъ, Москва 1888, стр. 80, No. 1216**) ԺԲ. դարէ՝ կը բովանդակէ. “Մարութայի բանք ի վերայ զանազան նիւթոց Հին եւ Նոր Կտակարանաց, այլ եւ ի վերայ ժողովոց եւ հերձուածողաց ոմանց եւ յայտնութեան Մահմէտի եւ Բաժանման Վրաց ի Հայոց„: Մարութայի անձն օտար, ասորի կը թուի, որով օտարի մը տողերը խնդրոյս համար մեծարժէք կրնան ըլլալ: Բայց ինչպէս ծանօթանալով բովանդակութեան համոզուեցայ, Մարութաս ազգային մ'է հաւանականաբար ԺԳ-ԺԷ դարէ, եւ հատուածն (թղ. 232) “Բաժանումն Վրաց ի Հայոց. ի թուին ԿԲ (= 603) բաժանեցան վրացիքն ի միաբանութենէն Հայոց . . .„ սկզբնաւորութեամբ, էջ մը քաղուածք մ'է Ուխտանէսի գրքէն: — Հ. Գ. Զարբանալեան (Պատմ. Հայկ. հին Դպր. 589) խօսելով Անանիա Սանահնեցւոյ Բան հակաճառութեան ընդդէմ երկաբնակաց գրութեան վրայ կը յիշէ թէ հոն կայ գլուխ մը նաեւ “Վրաց բաժանման վրայ„. գրութիւնը չունինք մեր Մատենադարանին մէջ, բայց առանց տարակուսի քաղուածք մ'է Ուխտանէսի Բ. Գրքէն, նման Պօղոս Տարօնեցւոյ գրութեան, զոր յիշեցինք (էջ 249, ծն. 2.):

Մեր ուսումնասիրութիւնը սկսաւ մաս առ մաս լոյս տեսնել նախ “Հանդէս Ամսօրեայ„ի մէջ 1907ին եւ աւարտեցաւ 1909 Նոյեմբերին յընթացս երեք տարւոյ[1]: Տարիներու ընթացքը բնականաբար շատ նոր

---

1 Տես “Հանդ. Ամս. 1907, Հայ-վրական յարաբերութիւնք Դ-Է դարուց մէջ. էջ 289-296. Վրաստանի

քան սորվեցուց մեզի – dies diem docet – եւ այդ միջոցին նաեւ ուրիշ բանասէրներ եթէ առթիւ մեր յօդուածներու եւ եթէ ինքնաբերաբար զբաղեցան հոս շօշափուած հարցերով, որոնց գրուածներու չկրցանք ծանօթանալ ժամանակին եւ օգտուիլ: Այս տեղ պարտք կայ ուրեմն մեր վրայ համառօտիւ համար տալ ասոնց մասին յամբողջութիւն մեր ուսումնասիրութեան:

Ինչ ինչ տպագրական վրիպակներ եւ lapsus calami ուղղած ենք Ուղղելեաց բաժնին մէջ, ուր ըրած ենք նաեւ ինչ ինչ յաւելումներ՝ ընդարձակ եւ համառօտ, զորոնք կը յանձնենք մասնաւորապէս ընթերցողներու ուշադրութեան: Ուղղութեանց մեծ մասը կը պարտիմ հանդերձ շնորհակալութեամբ Մեծ. Նորայր Բիւզանդացւոյ ազնիւ թելադրութեանց ի ձեռն նամակի, որոնք հրատարակուած են ժամանակին "Հանդէս Ամսօրեայ„ի մէջ[1]:

Վրաց հարցի հայող գրուածքներէն կ'արժէ հոս յիշատակել հետեւեալ երեքը.

1. Մ. Ք. Ղազարեան 1907 ին Արարատ ամսագրի մէջ հրատարակեց երկու ընդարձակ յօդուած՝ "Վրաց եկեղեցու ինքնագլուխ կառավարութեան խնդիրը Ռուսաց Նախապատրաստական եկեղեցական ժողովում„ խորագրով (էջ 847-863, 971-983), որ համառօտ ամփոփումն է 1906ին Վրաց անկախութեան խնդրոյն քննութեան համար Պետերբուրգ կայացած ժողովքին արձանագրութեանց՝ քաղուած Церковныя Вѣдомости թերթէն, ուր լոյս տեսած են ժողովոյն արձանագրութիւնք: Յօդուածն հետաքրքրական է այնու որ վրացի գիտնականք համախմբուած ուսումնասիրած են վրական

---

քաղաքական հանգամանքները Զ-Է տարուց մէջ, 347—350. Թղթոց գրքին հաւաքիչն եւ հաւաքման ժամանակը, էջ 371-374. Ուխտանէս եպ. Պատմագիր, 1908. էջ 17-20, 70-74, 112-115: – Կիւրիոն Կաթ. Վրաց, էջ 166-172, 202-204, 334-339. 1909. էջ 14-26, 76-81, 103-106, 141-148, 176-181, 193-197, 257-267, 327-332:

[1] "Հանդ. Ամս.„ 1908, էջ 155-156, 221. 1909, էջ 216-221:

եւ այլ աղբիւրներու եւ աւանդութեանց հիման վրայ թէ ի հնումն Վրաց եկեղեցին որ Աթոռոյն իրաւասութեան ենթարկուած էր․ խնդիր մը, որ զմեզ ալ զբաղցուցած է Նկրածուո՝թեան մէջ։ Շատ հետաքրքրական է յատկապէս Պրոֆ. Մառի զեկուցումը, որ բոլորովին նոր տեսութեամբ կը հերքէ Վրաց Կիւրիոն եպիսկոպոսի եւ այլոց հաստատութիւնը, թէ ի հնումն Անտիոքայ կամ Բիւզանդիոնի իրաւասութեան ներքեւ էին։ Մենք պատշաճ համարեցանք առանձին Յաւելուածի մէջ յառաջ բերել ժողովքի մէջ կարդացուած զեկուցումները ընդարձակ զիծերով (էջ 273—289)։

2. Երկրորդ գրութիւնն է H. Goussenի հատուածն՝ Die georgische Bibelübersetzung, որուն առաջին մասն միայն լոյս տեսած է տակաւին Oriens Christianus թերթին մէջ (Հտր. VI, 1906, լոյս տեսած 1909ին. էջ 300–318), որուն նիւթն է "Վրաստանի եկեղեցական կախումն Հայաստանէն եւ Ս. Գրոց հնագոյն վրացերէն թարգմանութիւնը – հայերէնի վրայէն„։ Գուսէն եւս այն համոզումն ունի թէ Վրաստան քրիստոնէութիւնն մտած է ընդ Հայաստան ճամբով ի ձեռն Գրիգորի․ եւ թէ Վրաց գիր տուած է առաջին անգամ Մաշտոց եւ Ս․ Գիրքը հայերէնի վրայէն թարգմանուած է վրացերէն նոյն դարուն։ Յօդուածին կցած է Յաւելուած մը (էջ 315–318), ուր կու տայ քաղուածներ Արսէն Կաթողիկոսի ճառէն եւ Մառի "Մկրտութիւն Հայոց…„ գրութենէն հայ-վրական յարաբերութեան վրայ։

3․ Աւելի մտադրութեան արժանի է И. Джаваховъի գրութիւնը Исторія церковного разрыва между Грузіей и Арменіей въ началѣ VII вѣка (= Պատմութիւն եկեղեցական բաժանման Վրաց եւ Հայոց մէջ Է դարու սկիզբը), С.-Петерб. 1908, ուր վրացի գիտնականը կ'ուսումնասիրէ Վրաց բաժանման պատմութեան աղբիւրները՝ Ուխտանէս, Արսէն Կաթողիկոս եւ Թղթոց Գիրք․ առաջին երկուքը անարժէք կը գտնէ, մանաւանդ երբ իրենց հիմ ունին Թղթոց Գիրքը․ բաժանման պատմութեան համար միակ արժանահաւատ աղբիւր կը ցուցնէ Թղթոց Գիրքը (էջ 433–446), ուր ամփոփուած են թէեւ ոչ ամբողջութեամբ՝ ժամանակակից վաւերագիրներ։ Այնուհետեւ կ'անցնի խնդրի քննութեան. Վրաց եւ Հայոց

յարաբերութիւնք սիրով էին մինչեւ բաժանում (էջ 512–517), յարաբերութեանց քայքայումն պատճառեցաւ կրօնական անհամաձայնութեանց շնորհիւ՝ Վիրք ընդունած էին Քաղկեդոնի ժողովոյն վարդապետութիւնը (էջ 517–524): Բաժնուելով Հայերէն սկսան յարաբերութեան մէջ մտնել Յունաց մանաւանդ Երուսաղէմի հետ (էջ 524–527): Բաց ի Քաղկեդոնի խնդրէն կային նաեւ երկրորդական խնդիրներ, որոնք թէեւ շարժառիթ չեղան բաժանման, բայց եղան պատճառ խնդրոց. այսպէս Ս. Շուշանկան պաշտամանն վրացերէն լեզուաւ կատարուիլը: Այս կէտի մէջ Ջաւախով Կիւրիոնի վարմանց մէջ ազգասիրական ձգտում մը կը տեսնէ, որով կը դիտէ ոչնչացընել ի Յուրտաւ Հայոց ազդեցութիւնը՝ բնակչութիւնն վրացընելու աշխատելով· բայց այս Բաժանման վրայ ազդեցութիւն չէ ըրած (էջ 528–530): Անիմաստ կը գտնէ նաեւ Ուխտանիսի ի մէջ բերած երկու պատճառները՝ ծերոց աւանդութիւնն եւ դասակարգութեանց խնդիրը (էջ 530–535)· ակնարկով մը բաժանման հետեւութեան վրայ կը փակէ ուսումնասիրութիւնը (էջ 534–536):

Գեղեցիկ է Ջաւախովի գործը եւ միաքան յամենայնի մեր եզրակացութեանց հետ:

Ինչ ինչ կարեւոր ծանօթութիւններ այս եւ այլ գրուածներէ առած ենք Յառաջաբանիս մէջ:

Կը յուսանք թէ մեր ուսումնասիրութիւնը եթէ չէ ամբողջական, բայց ընտրուած շրջանին պատկերը կը ներկայացընէ իւր էական գծերով. եւ այս բաւական է. աւելին ընել կը մնայ ժամանակին եւ կարողագոյն անձանց. նորագիւտ աղբիւրներ, նորանոր քննութիւնք ի հարկէ շատ բան ուրիշ կերպ պիտի մեկնեն. իսկ եթէ այդ մեկնութեանց շարժառիթ կամ ծնունդ նկատուի մեր աշխատութիւնը, այն վարձատրութիւն է արդէն մեզի:

Վիեննա, 12 Յունիս 1910: ՀԵՂԻՆԱԿԸ

# ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹԻՒՆ

---

# ՄԱՏԵՆԱԳՐՈՒԹԻՒՆ*

---


**ԱԳԱԹԱՆԳԵՂՈՍ**, *Պատմութիւն.* Վենետիկ, 1862։

**ԱԼԻՇԱՆ Հ. Ղ.**, *Այրարատ.* Վենետիկ, 1890։

— *Հայապատում.* Վենետիկ, 1901։

— *Շիրակ.* Վենետիկ, 1881։

**ԱԿԻՆԵԱՆ Հ. Ն.**, *Աշուշայի կնիքը.* Հանդ. Ամս. 1907, էջ 121—126, 296—300։

— *"Խոսրովիկ Թարգմանիչ" եւ իւր երկասիրութիւնները.* Հանդ. Ամս. 1904, էջ 262—270, 304—316, 353—361. 1905, էջ 19—22, 114—116, 213—230, 361—370։

— *Հայոց թուականութեան հաստատութեան ժամանակը.* Հանդ. Ամս. 1904, էջ 97—102, 218—224։

— *Պետրոս եպ. Սիւնեաց.* Հանդ. Ամս. 1903, էջ 245—252. 1904, էջ 18—22, 77—83, 105—113։

— *Վրթանէս Վարդապետ Քերդող եւ իւր երկասիրութիւնները.* Հանդ. Ամս. 1910, էջ 8—11, 37—46 եւն.։

**ԱՃԱՌԵԱՆ Հր.**, *Ձայնաբանութիւն վրացերէնից փոխառեալ բառերի*, ԱՐԱՐԱՏ, 1898, էջ 309—351, 365—371։


---

* *Այս տեղ կ'ամփոփուին այն գրութիւնները միայն, որոնք հայ-վրական յարաբերութեանց համար նշանակալից են եւ կամ յաճախ յիշատակուած ուսումնասիրութեանս մէջ:*

ԱՆԱՆԻԱ ԿԱԹ. ՄՈԿԱՑԻՈՑ *Թուղթք, Հրտ. Գ. Տէր-Մկրտչեան*, ԱՐԱՐԱՏ, 1897, *էջ* 91—96, 129—144, 275—288.

ԱՆԱՆՈՒՆ ԺԱՄԱՆԱԿԱԳՐՈՒԹԻՒՆ *խմբագիր յօրինեալ յԷ. դարու ի Հնագոյն ժամանակագրաց. Հրտ. Հ. Բ. Սարգիսեան. Վենետ.* 1904: = *Գիրք Կայսերաց*:

BAUMGARTNER A.: Die georgische Literatur *ի գիրս* Geschichte der Weltliteratur. I. Freiburg in B. 1897.

BRÉHIER L.: L'Eglise et l'Orient au moyen age. Paris, 1907.

BROSSET M.: Analise critique de la Всеобщая исторія de Vardan. St. Pétersb. 1862.

— Description des monastères arméniens d'Hagbat et de Sanahin. St. Pétersb. 1863.

— Deux historiens arméniens, Kiracos de Gantzac, XIII[e] siècle, Histoire d'Arménie; Oukhtanès d'Ourha, X[e] s., Histoire en trois parties, traduits par —. St. Pétersb. 1871.

— Etudes sur l'historien arménien Oukhtanès. Mélanges Asiatiques, t. VI (1868), p. 13—89.

— Examen d'un passage de l'historien arménien Oukhtanès relatif à la prétandue conquête „de l'Iberie" par Nabouchodonosor. Mél. As. V (1864), p. 742—760.

— Histoire de la Géorgie, t. I. St. Pétersb. 1849 = Hist. I.

— Additions et Eclaircissements à l'Histoire de la Géorgie. St. Pétersb. 1851.

BROSSET M.: Histoire chronologique par Mkhithar d'Airivank, traduite de l'arménien par —. St. Pétersb. 1869.

— Rapports sur un voyage archéologique dans la Géorgie et dans l'Arménie. St. Pétersb. 1850.

ԳԱԹԸՐՃԵԱՆ Հ. Յ., Իրաւախոհի կեղծիքը. Բ. (ձեռագիր)։

— Տիեզերական Պատմութիւն. Ա. Բ. Վիեննա, 1849—1852։

ԳԱԼԷՄՔԵԱՐԵԱՆ Հ. Գ., Պատմութիւն Հայ լրագրութեան, Վիեննա, 1893։

ԳԱՒԱԶ. ԿԱԹ. = Գաւազանագիրք կաթողիկոսաց Հայոց, Հրտ. Ա. Տէր-Միքէլեան ի Յաւելուածս Սամ. Անեցւոյ ժամանակագրութեան. Վաղարշապատ, 1893, էջ 266—277։

ԳԵԼՑԵՐ Հ., Սկզբնաւորութիւնք Բիւզանդեան բանակաթեմերու գրութեան, թարգմ. Հ. Գ. Գարանֆիլեան. Վիեննա, 1903։

GEORGII CYPRII Descriptio orbis Romani. Ed. H. Gelzer. Lipsiae, 1890.

ԳԻՐՔ ԹՂԹՈՑ. Տփղիս, 1901։

GOUSSEN H., Die georgische Bibelübersetzung. (Oriens Christianus, VI. S. 300—318) Rom, 1906.

GREGORII I. PAPAE Registrum Epistolarum (Ed. L. M. Hartmann ի հաւաքման Monumenta Germaniae) t. II. Pars. II. Berolini, 1890 (1899), p. 324—327.

ԵՊԻՓԱՆ ԿԻՊՐԱՑԻ, Ἔκϑεσις πρωτοκλησῶν πατριαρχῶν τε καὶ μητροπολιτῶν. Հրտ. Ն. Ֆինկ, Տփղիս, 1902։

ZAGARELLI A.: Historische Skizze der Beziehungen Grusiens zum heiligen Lande und zum Sinai. Թարգմ. ռուսերէնէ A. Andres. Zeitschrift des deutschen Palästina-Vereines, XII (1889), S. 35—73.

ԶԱՐԲԱՆԱԼԵԱՆ Հ. Գ., Հայկական հին դպրութեան պատմութիւն. Վենետ. 1897։

— Մատենադարան հայկական թարգմանութեանց նախնեաց. Վենետ. 1889։

ԶԵՆՈԲ ԳԼԱԿ, Պատմութիւն Տարօնոյ, Վենետ. 1889։

ԷՄԻՆ Մ. Изслѣдованія и статьи, Москва 1896. (էջ 137—138, о цадахъ: էջ 154—157, объ отпаденіи Грузинской церквы отъ Армянской.)

ԹԷՈՓԱՆԷՍ Խոստովանող. տպ. Բոննի։

ԻՆՃԻՃԵԱՆ Հ. Ղ., Աշխարհագրութիւն չորից մասանց աշխարհի. Մասն Ա. Հատ. Ա. Վենետ. 1806։

—Ստորագրութիւն հին Հայաստանեայց. Վենետ. 1822։

ԼԱԼԱՅԵԱՆՑ Ե., Ջաւախք, Նիւթեր ուսումնասիրութեան համար. ԱԶԳԱԳՐԱԿԱՆ ՀԱՆԴԷՍ. Ա. (1897), էջ 117—380։

LANGLOIS V.: Essai de classification des suites monetaires de la Géorgie, depuis l'antiquité jusqu' à nos jours. Paris 1860.

ХАХАНОВЪ А. С.: Источники по введенію христіанства въ Грузіи, ի Древности Восточныя изданные подъ редакціей М. В. Никольскаго, томъ I. 3. Москва, 1893, стр. 299-345.

CHACHANOW A.: Le fonti della storia del christianismo in Georgia, Թարգմ.

*վերնոյն*, Besarione, X (1905—1906), 9, p. 84—95, 171—178.

CHACHANOW A.: Ueber den gegenwärtigen Stand der grusinischen Philologie: Wiener Zeitschrift für die Kunde des Morgenlandes, VII (1893), S. 310—337.

ԽԱԽԱՆՕՓ ԱՂ., *Հայոց դիրքը Վրաց թագաւորութեան մէջ։ Թարգմ. գաղղ.է։* ԲԱՆԱՍԷՐ, 1899, *էջ* 57—66։ — *Գաղղիերէնը* Journ. As. 1898, 337—44.

ԿԱՐԻՆԵԱՆ Ց., *Մայր Ցուցակ Ձեռագիր Մատենից գրադարանի Ս. Աթոռոյն Էջմիածնի. Տփղիս* 1863։

KAULEN FR.: Iberien *ի գիրս* Wetzer und Welte's Kirchenlexikon, 2. Auflage, VI. Band, S. 560—568. Freiburg, 1889.

ԿԻՐԱԿՈՍ ԳԱՆՁԱԿԵՑԻ, *Պատմութիւն, Վենետ.* 1865։

ԿԻՒԼԷՍԷՐԵԱՆ Բ. Վ., *Կոլոտ Ցովհաննէս Պատրիարք. Վիեննա*, 1904։

CUMONT FR. et E.: Voyage d'exploration archéologique dans le Pont et Petite Arménie, Bruxelles, 1906 (Studia Pontica, II).

ԿՈՆԻԲԵՐ ՓՐ., *Մովսէս Խորենացւոյ ժամանակի խնդիրը. Թարգմ. Հ. Ց. Տ. Հանդ. Ամս.* 1902, *էջ* 1—6, 85—90։

ԿՈՐԻՒՆ ՎՐԴ. *Վարք Մաշտոցի. Վենետիկ*, 1894.

HEFELE K. J.: Conciliengeschichte, 2. Aufl., II. Bd. Freiburg in B., 1875.

HÜBSCHMANN H.: Armenische Grammatik I. Leipzig, 1895—1897.

— *Հին Հայոց Տեղւոյ անունները. Թարգմ. Հ. Բ. Պիլեզիկճեան. Վիեննա*, 1907։

ՂԱԶԱՐ ՓԱՐՊԵՑԻ, Պատմութիւն Հայոց եւ Թուղթ առ Վահան Մամիկոնեան. Տփղիս, 1904։

ՂԱԶԱՐԵԱՆ Մ. ՔՀ.՝ Վրաց եկեղեցու ինքնագլուխ կառավարութեան խնդիրը Ռուսաց նախապատրաստական եկեղեցական ժողովքում՝ ԱՐԱՐԱՏ, 1907, էջ 847—863, 971—983։

ՂԵՒՈՆԴ ԵՐԷՑ, Պատմութիւն Հայոց. Ս. Պետերբ. 1887։

ՃԱՆԻԿԵԱՆ Յ. Կ., Հնութիւնք Ակնայ. Տփղիս 1895։

ՃՌԱՔԱՂ ամսագիր, Հրատ. Մ. Մսերեանց, Մոսկուա, 1860—1862։

ՄԱՇՏՈՑ ԿԱԹՈՂԻԿՈՍԻ Թուղթ առ Գէորգ Ա, Գառնեցի վասն Սիւնեաց խաչին. ԱՐԱՐԱՏ. 1902, էջ 748—753։

MATAGNE H.: Ներածութիւն ի վարս Ս. Նէոփիտոսի, ի հաւաքման Acta Sanctorum Octobris, t. XII, editio altera, Bruxellis, 1884, p. 642—647. յաճախ յիշուած A. SS. համառօտագրութեամբ։

ՄԱՏԹԷՈՍ ՈՒՌՀԱՅԵՑԻ, Ժամանակագրութիւն, Վաղարշապատ, 1898։

MARQUART J.: Ērānšahr nach der Geographie des Ps. Moses Xorenaci. Berlin, 1901.

МАРРЪ Н.: Арк῾аунъ, монгольское названіе христіанъ, въ связи съ вопросомъ объ Армянахъ - халкедонитахъ (Виз. Врем XII). С.-Петерб. 1905.

— Изъ поѣздки на Аѳонъ, С.-Петерб. 1899, Հմմտ. առ այս ԱՐԱՐԱՏ 1899, էջ 208—219, 1900, էջ 596։

МАРРЪ Н.: Крещеніе Армянъ, Грузинъ, Абхазовъ и Алановъ Св. Григоріемъ (Арабская версія) [Зап. Вост. Отдѣл. имп. Русск. Археолог. Общ. XVI.] С.-Петерб. 1905, стр. 60—211.

— Объ единствѣ задачъ Армяно-грузинской филологіи. Тифлисъ, 1902.

— *Հայ-Վրացական յարաբերութիւնների մասին անցեալում* (*Պրոֆ. Մառրի բանակռիւը իշխ. Ակակի Ծերեթելու Հետ*). *Թարգմանութիւն ծանօթութիւններով Ա. Արասխանեանցի* (*Արտատպ.* ՄՈՒՐՃ *ամսագրից*), *Տփղիս*, 1898։ *Ն. Մառի ռուսերէն երկու յօդուածներն Հրտ. են* Новое Обозрѣніе *թերթին* 1898 *փետր.* 5 *եւ* 6. *եւ* 31 *Մարտ եւ* 2 *Ապր. թուերու մէջ. առաջին յօդուածն արտատպուած է քաղուածաբար ի Հաւաքման* Братская помощъ Армянамъ, *Բ. տպ.* Москва, 1898, *էջ* 560—569 (Отповѣдъ проф. Марра грузинскому „Сборнику Акакія“)։

ՄԻՔԱՅԷԼ ԱՍՈՐԻ, *Ժամանակագրութիւն. Երուսաղէմ*, 1871։

— Chronique de Michel le Syrien, patriarche Jakobite d'Antioche (1166—1199). Ed. pour la primière fois et traduite en français par J. B. Chabot. Paris, 1899.

ՄԽԻԹԱՐ ՎՐԴ. ԳՈՇ, *Թուղթ յաղագս Վրաց.* ԱՐԱՐԱՏ, 1900, *էջ* 497—504, 562—568. 1901, *էջ* 55—61. 121 -7։

ՄԽԻԹԱՐԱՅ ԱՅՐԻՎԱՆԵՑԻՈՅ *Պատմութիւն ժամանակագրական. Ս. Պետերբ.* 1867։

ՄՈՎՍԷՍ ԽՈՐԵՆԱՑԻ, *Պատմ. Հայոց Վենետ.* 1865։

ՄՈՎՍԷՍ ԿԱՂԱՆԿԱՏՈՒԱՑԻ, Պատմութիւն. Հրտ. Մ. Էմինի. Մոսկուա, 1860։

MÜLLER FR.: Über den Ursprung der gruzinischen Schrift ի Sitzungsberichte d. k. Akad. der Wiss. in Wien, phil. hist. Cl. **137** (1897), S. 1—12.

ՅԱԿՈԲ ԿԱՐՆԵՑԻ Տեղագիր Վերին Հայոց. Հրտ. Կ. Կոստ. Վաղարշապատ, 1903։

ՅՈՎՀԱՆՆԷՍ ԴԱՄԱՍԿԱՑԻ՝ Պատասխանիք առ Հայս. Հրտ. Բ. Վ. Կիւլէսէրեան. ԼՈՅՍ շաբաթաթերթ, 1905 – 1906։

JOHANNES VON EPHESUS: Kirchengeschichte. Aus dem Syrischen übersetzt von J. M. Schönfelder. München, 1862.

ՅՈՎՀԱՆՆԷՍ ՊԱՏՐԻԱՐՔ ԵՐՈՒՍԱՂԷՄԻ Թուղթ առ Աբաս Աղուանից կաթ.։ Հրտ. Կ. Վ. Տէր Մկրտչեան. Վաղարշապատ, 1896 (Արտատպ. ԱՐԱՐԱՏէ 1896, էջ 252—56)։

ՅՈՎՀԱՆՆԷՍ Զ. ԿԱԹ. Պատմութիւն Հայոց. Հրտ. Մ. Էմինի. Մոսկուա, 1853։

ՅՈՎՀԱՆՆԷՍ ԿԱԹ. ՕՁՆԵՑԻ, Մատենագրութիւնք. Վենետ. 1833։

ՅՈՎՀԱՆՆԷՍ ՄԱՄԻԿՈՆԵԱՆ՝ Պատմութիւն Տարօնոյ. Վենետ. 1889։

ՅՈՎՀԱՆՆԷՍԵԱՆ Ա. ԵՊ., Ժամանակագրական պատմութիւն Ս. Երուսաղէմի. Ա—Բ Հտր. Երուսաղէմ, 1890։

Narratio de rebus Armeniae. Migne, Patrologia graeca, t. **132**, col. 1237—1258.

ՆԵՂՈՍԻ ԴՈՔՍԱՊԱՏՐԻ Կարգադրութիւն պատրիարքական աթոռոյն, հայերէն եւ յունարէն Հրտ. Ֆ. Ն. Ֆինկ. Վաղարշապատ, 1902։

NÖLDEKE Th.: Aus der arabischen Chronik des Tabari. Leyden, 1879.

— Die von Guidi herausgegebene syrische Chronik, übersetzt und commentiert. (Sitzungsberichte der k. Akad. der Wiss. phil. hist. Cl. 128.) Wien, 1893.

ՆՈՐԱՅՐ ԲԻՒԶԱՆԴԱՑԻ, Հայկական Բառարաննութիւն. Կ. Պոլիս, 1880։

-- կորիւն վրդ. եւ նորին թարգմանութիւնք. Տփղիս, 1900։

ՇԱՀՆԱԶԱՐԵԱՆ Կ. Վ., Դաշանց թղթոյ քննութիւնն ու հերքումը. Պարիս, 1862։

CHAPOT V.: La frontière de l'Euphrate de Pompée à la conquête arabe. Paris, 1907.

SCHULTZE K.: Das Martyrium des heil. Abo von Tiflis. Leipzig, 1905.

ՈՒԽՏԱՆԷՍ ԵՊ., Պատմութիւն Հայոց եւ բաժանման Վրաց ի Հայոց. Ա եւ Բ. հտր. Վաղարշապատ, 1871։

ՉԱՄՉԵԱՆ Հ. Մ., Պատմութիւն Հայոց. Հտր. Ա—Գ. Վենետիկ։

PALMIERI P. A.: La conversione officiale degl' Iberi al christianismo, ի թերթին Oriens Christianus, II (1902), p. 130—150, III (1903), p. 148—172.

ՊԱՏՄՈՒԹԻՒՆ Ս. ՆԵՐՍԻՍԻ ՊԱՐԹԵՒԻ Հայոց Հայրապետի. Վենետ. 1853 (Սոփերք Հայկ. Զ.)։

ՊՈՏՈՒՐԵԱՆ Հ. Մ., Հայ կաթողիկոսութիւն. ԲԱԶՄԱՎԷՊ, 1906, 399—405։

ՊՐՈԿՈՊԻՈՍ, De Bello Persico. ed. Dindorf. Bonn, 1833.

ՋԱԼԱԼԵԱՆՑ Ս. ԵՊ., Ճանապարհորդութիւնք ի Մեծն Հայաստան. Բ. Տփղիս, 1858։

ДЖАВАХОВЪ И. А.: Исторія церковнаго разрыва между Грузіей и Арменіей въ началѣ VII вѣка. С.-Петерб. 1908 (= Արտատպ. ի Թերթէն Bulletin de l'Acad. Imp. des Sciences de St. Pétersb. 1908, p. 433—446, 511—536.

— Гасударственный строй древней Грузіи и древней Арменіи. I. С.-Петерб. 1905.

— Das Martyrium des heil. Eustatius von Mzchetha. Aus dem Georgischen übersetzt von Dschawachoff, bearbeitet von Harnack. Berl. Sitzungsberichte, 1901, S. 875—902.

ՋՈՒԱՆՇԷՐ, Համառօտ Պատմութիւն Վրաց. Վենետ. 1884։

ՍԱՄՈՒԷԼ ԱՆԵՑԻ, Հաւաքմունք ի գրոց պատմագրաց (Ժամանակագրութիւն), Հրտ. Ա. Տէր-Միքէլեան. Վաղարշապատ, 1893։

ՍՄԲԱՏ ՊԱՏՄԻՉ, Տարեգիրք. Հրտ. Շահնազարեանի. Պարիս, 1859։

ՍՏԵՓԱՆՈՍ ԱՍՈՂԻԿ, Պատմութիւն Տիեզերական. Տփղիս, 1887,

ՎԱՐԴԱՆ ՊԱՏՄԻՉ, Հաւաքումն Պատմութեան. Վենետ. 1862։

WEBER S.: Die katholische Kirche in Armenien. Freiburg in B., 1903.

ՎԿԱՅԱԲԱՆՈՒԹԻՒՆ Ս. ՇՈՒՇԱՆԿԱՆ դստեր Մեծին Վարդանայ. Վենետ. 1853 (Սոփ. Թ.)։

ՎՐԹԱՆԷՍ ՔԵՐԴՈՂ, Պատասխանի ի Հայոց Թղթոյն Աղուանից. Հրտ. Կ. Վրդ., ԱՐԱՐԱՏ, 1898, էջ 477—488։

ՏԱՇԵԱՆ Հ. Յ., Մատենագրական Մանր Ուսումնասիրութիւնք. Ա. Վիեննա. 1895։

— Վարդապետութիւն Առաքելոց անվաւերական մատեանք. Վիեննա, 1896։

ՏԱՇԵԱՆ Հ. Յ., Ցուցակ Հայերէն Ձեռագրաց Մխիթ. Մատենադարանին ի Վիեննա, 1895։

ՏԷՐ-ՄԻՆԱՍԵԱՆ Ե. Վ., Այսպէս կոչուած Պարսից ժողովը. ԱՐԱՐԱՏ, 1907, էջ 179—195։

— Die armenische Kirche in ihren Beziehungen zu den syrischen Kirchen. Leipzig, 1904.

— Հայոց եկեղեցու յարաբերութիւնները Ասորւոց եկեղեցիների հետ. Վաղարշապատ, 1908։

ՏԷՐ-ՄԿՐՏՉԵԱՆ Գ., Գրիգոր Մանաճիհր Ռաժիկ, Միհրան տոհմից. Վաղարշապատ, 1902 (Արտատպ. ԱՐՐՏէ)։

TER-MKRTSCHIAN K.: Die Paulikaner. Leipzig, 1893.

ՏԷՐ-ՄՈՎՍԷՍԵԱՆ Մ. Վ., Էջմիածին եւ Հայոց հնագոյն եկեղեցիներ. ԱԶԳԱԳՐԱԿԱՆ ՀԱՆԴԷՍ, ԺԵ (1907), էջ 85 - 128, ԺԶ. 130—204։

ՓԱՒՍՏՈՍ ԲԻՒԶԱՆԴ, Պատմ. Հայոց. Հրա. Ք. Պատկ. Պետերբ. 1879.

ՓՈՏ ՊԱՏՐԻԱՐՔ Կ.ՊՈԼՍՈՅ, Թուղթք առ Հայս. Հրա. Ն. Մառ ի Православныи Палестинскій Сборникъ. Հատ. XI, 1. С.-Петерб. 1892.

FINCK F. N.: Die georgische Literatur. [Die Kultur der Gegenwart, I. 7. S. 299—310.]

---

# ՆԵՐԱԾՈՒԹԻՒՆ

## *Հայ-վրական յարաբերութիւնք Դ—Է դարուց մէջ:*

Կասպիական ծովու եւ Եւքսինեան Պոնտոսի մէջ տեղ կը տարածուի ընդարձակ երկիր մը ջրաւէտ եւ արգաւանդ, որուն հիւսիսային սահմաններն կը ձգին մինչեւ կաւկասեան բարձունքը եւ հարաւէն արարատեան լեռնաշղթաները. Վրաստան կը կոչուի այդ երկիրը հայերէն, բնիկներէն Սագարթուիլոյ, հինք անուանած են Իբերիա, այժմ ծանօթ առ հասարակ ոչ-վիր ժողովրդեան Գէորգիա կամ Գրուզիա անուամբ։ Բնակչութիւնն ի հնուց արդէն յայտնի էր իբրեւ պատերազմասէր ժողովուրդ եւ այժմ իսկ կը նկարագրէ զայն բանաստեղծ Գրիգոր Օրբէլեան՝ Գոռ պատերազմող, ազնիւ եւ անկեղծ, ծանր օրհաններ կրելէ վերջն ալ արի եւ քաջապինդ պողպատի նման[1]։ Իւր պատմական անցեալն նոյն եղած է Հայաստանի բախտին հետ։

Սահմանաց մօտաւորութիւնն շատ անգամ առիթ տուած է երկու ժողովրդոցս անձուկ շփման մէջ մտնելու իրարու հետ, մերթ խաղաղական եւ մերթ թշնամական յարաբերութեամբ։ Այսպիսի յարաբերութեանց ակնարկութեամբք լի են երկու

1 A. Baumgartner, Die georgische Literatur, ի գիրս Geschichte der Weltliteratur. I. Freiburg, 1897, p. 256–58.

ազգացս գրաւոր յիշատակարանք։ Երկրին բնական դիրքն առիթ տուած է նաեւ մեր հզօր արքայից ձեռաց տակ երբեմն նահանգ դառնալու եւ Հայ թագաւորական գահին վրայ վրացի բարձրանալու[1]։ Վրաց Տարեգիրք կը պատմեն նոյն իսկ թէ այդ երկրի ժողովրդեան բարբառն ժամանակ մը եղած է հայերէն[2]։

Սահմանակցութեան եւ յաճախակի յարաբերութեան շնորհիւ՝ կրօնականի եւ ուսումնականի նկատմամբ ալ դոյզն ազդեցութիւն չեն կրած Վիրք Հայոցմէ։ Հայք Դ դարուն Ս. Գրիգորի քարոզութեամբն ընդգրկեցին քրիստոնէական կրօնն։ Այդ դարն եղաւ նաեւ դար լուսաւորութեան Վրաստանի։ Հայոց Լուսաւորիչն չբաւականացաւ զՀայաստան միայն լուսաւորելով, այլ ուզեց եւ յաջողեցուց իսկ, քրիստոնէական լուսոյն ճառագայթները նաեւ դրացի երկիրներն — ի Վիրս, յԱղուանս... տարածել եւ հեթանոսութեան աղջամուղջ խաւարն փարատել։ Որչափ ալ մութ է Վրաստանի ի քրիստոնէութիւն դարձին պատմութիւնն եւ ազգային զրոյցներն այլ եւ այլ գոյներով կը ներկայացընեն, սակայն երկու ազգաց — Հայոց եւ Վրաց հնագոյն գրաւոր եւ անգիր աւանդութիւններն եւ համոզումն ի նկատի առնելով չենք կրնար ժխտել այն հաստատութիւնն թէ Գրիգոր Լուսաւորիչն եղած է առաջին եւ գլխաւոր առաքեալն Վրաց[3]։

---

1 Տիեզ. Պատմ. Բ. 107։

2 Марръ, Объ единствѣ задачъ армяно-грузинской филологіи. Тифлисъ. 1902. p. 4.

3 Համմ. Н. Марръ, Крещеніе Армянъ, Грузинъ, Абхазовъ и Алановъ святымъ Григоріемъ (= Մկրտութիւն Հայոց, Վրաց, Աբխազաց եւ Ալանաց ի ձեռն Ս. Գրիգորի). Санктпетерб. 1905. — P. A. Palmieri, La conversione ufficiale degl' Iberi al christianismo, ի Oriens Christianus. II (1902), p. 130–150, III (1903), p. 148–172.

Մինչեւ հոս թոյլ կու տան յառաջանալ այժմեան քննութիւնք. բայց ասկէ անդին առաջին իսկ քայլին կը յառնեն խոչընդոտներ։ Գլխաւոր դժուարութիւնն կը կայանայ յայնմ թէ որ պատրիարքական աթոռի իրաւասութեան ենթարկուեցաւ Վրաստան։ Երեք հակառակ պատասխաններ կը տրուին հարցմանս. վրական հին աւանդութիւն մը՝ միաբան յոյն մատենագիրներու հետ, Անտիոքայ՝ իսկ Տարեգիրք՝ Բիւզանդիոնի աթոռոյն կ'ենթարկեն Վրաց Եկեղեցին. Հայք իւրեանց կաթողիկոսին իրաւասութեան ներքեւ կը ճանչնան։ Ո՛րն է սակայն ճշմարիտը։ Առ այս հարկ է մանր քննութեան ենթարկել իւրաքանչիւրին ապացոյցները[1]։

Վրաստանի դարձին ժամանակը որչափ ալ պէս պէս կը նշանակուի գիտուններէ, այսու հանդերձ ամէնն ալ միաբան են յայնմ թէ տեղի ունեցած է Դ. դարու առաջին քառորդին. ուրեմն ճիշդ այն ժամանակներն, երբ կը գումարուէր Նիկիոյ ժողովն (325)։ Այս կէտն նշանակալից է առաջիկայ խնդրոյս համար. վասն զի Նիկիոյ ժողովոյն Զ կանոնին մէջ, ուր իւրաքանչիւր պատրիարքութեան իրաւասութեան սահմաններն կը գծուին, Անտիոքայ պատրիարքութեան ներքեւ կը ձգուի նաեւ Վրաց եկեղեցին Ասիոյ միւս եկեղեցեաց հետ[2]։ Զայս կը թուի հաստատել այն պարագան ալ, որ Դ. դարու սկիզբներն Վրաստանի առաջին եպիսկոպոսն (Եւստաթէոս) Անտիոքէն եկաւ — ինչպէս կը հաստատեն Վիրք[3], թէեւ կը լռեն տա-

---

1 Իրացս նկատմամբ խօսած են այլ եւ այլ տեսակէտներով H. Matagne Բոլանդեանն, Acta Sanctorum Octobris, t. XII, editio altera, Bruxellis, 1884, p. 642–647 (քննութիւն վարուց Ս. Նէոփիտոսի). K. Schultze, Das Martyrium des hl. Abo von Tiflis, Leipzig 1905, p. 5–8.

2 Hefele, Conciliengeschichte. I. p. 388 ff.

3 Տե՛ս վկայութիւնքն առ Բրոսէի Histoire de la Géorgie, S. Pétersb. 1849. I. p. 118. n. 3. եւ մանրա-

րեգիրք, որոնք հակառակ ազգային հնագոյն աւանդութեան՝ Կ. Պոլսէն կը ջանան եկած ցուցընել՝ այլ առանց հիման[1]։ Վրաց աւանդութիւնն իրեն թիկունք ունի նաեւ յոյն մատենագիրներ, զորոնք արհամարհել արդարեւ յանդգնութիւն կը համարինք. ասոնց վկայութիւններն ի կարգին։ Նոյն իսկ եթէ միտ դնենք, Վրաց Տարեգրոց մէջ իսկ կրնանք գտնել հեռաւոր յիշատակութիւններ այս նկատմամբ։ Տարեգրոց այն մասին մէջ ուր Վախթանգ առաջնոյ փառաւոր թագաւորին վարքը կը պատմուի, եւ որ Թ դարուն գրուած կ'ըսուի, սակայն յիրականին հազիւ ԺԴ դարու հնութիւն ունի[2], կը կարդանք թէ Ե դարու սկիզբը Կ. Պոլսոյ պատրիարքէն Անտիոքայ պատրիարքին այսպիսի խօսքեր ուղղուած են. "Ի սկզբանէ անտի դարձին Վրաստանի ի ձեռն կնոջ ուրումն հռովմայեցւոյ՝ որում անուն Նունէ, աստի առաքեցաւ առ ձեզ առաջին եպիսկոպոսն Վրաց, վասն պատերազմացն որ ընդ մէջ Պարսից եւ Յունաց, եւ այսր իսկ աղագաւ իրքս չգործեցան ըստ եկեղեցական օրինաց։ Գիտեմք իսկ եթէ Վրաստան, արեւելք եւ հիւսիս ընդ իշխանութեամբ այսր աթոռոյ են, որպէս եւ յաւետարանի անդ յայտ արարին զհրաւուենս իւրաքանչիւր ուրուք առաքելքն...։ Ապա յե—

---

գոյնս Palmieri, Or. Chr. III. p. 161—171. որոնք թէեւ Թ դարէն յառաջ չեն ձգտիր. սակայն յոյն մատենագրաց հետ համաձայնելովն՝ վրիպական չեն կրնար նկատուիլ։ Մեր նպատակէն դուրս է այն խնդիրն թէ յիրաւի Եւստաթէոս Անտիոքայ եպիսկոպո՞սն է եկողը, որ կը ժխտուի առ հասարակ ամէնէն (հմմտ. Goussenի հատուածն Theologiscbe Revue. 1906, p. 85)։

1 Brosset, Histoire de la Géorgie. I. p. 118—19. եւ Intr. XXXVI—VII. Այս կարծիքն ունին նաեւ Վրացի նոր հեղինակներէ ոմանք. հմմտ. Oriens Christianus, II. p. 150, n. 3.

2 Hist. I., Intr. p. I. եւն։ – Acta Sanctorum անդ. p. 642.

Նուիրեցէք վաղվաղակի զերկուս զդոսա, զորս թագաւորն Վրաց խնդրեաց եւ զայլ մետասանս, զորս դուքդ ընտրեալս եւ արժանաւորս համարիցիք։ Ցետ ձեռնադրութեանն այսր առ մեզ եկեսցեն, զի եւ զայլ շնորհս եւ զամենայն կարեւորսն շնորհիցեմք նոցա„[1]։ — Թէ թուղթս անհարազատ է, որուն համաձայն ըստ եկեղեցական, մանաւանդ թէ նոյն իսկ առաքելական օրինաց, Դ դարու սկիզբները Վրաստան Կ. Պոլսոյ աթոռոյն իրաւասութեան կը վերաբերէր, ոչ ոք կը տարակուսի. սակայն նշանակալից է, ըստ որում բաւականաչափ կը պատկերէ մեր աչաց առջեւ հին Վրաց կարծիքն։ Վասն զի թղթոյն գրութեան ժամանակն կ'իյնայ այնպիսի ատեն մը, երբ Վիրք ամենայն զօրութեամբ կը ջանային ինք զինքնին Կ. Պոլսոյ իրաւասութեան ներքեւ ցուցրնել ժխտելով Անտիոքայ տակ գըտնուիլն երբեմն. սակայն որչափ ալ ջանային, չէին կրնար միանգամայն հերքել հիներուն աւանդութիւնը, թէպէտ այսպիսի վարագուրաւ մը աքօղել փորձէին։ Այս կեղծիքը լաւ կը պարզէ Տարեգրոց աւելի հնագոյն հայ խմբագրութիւնն ընդ անուամբ Ջուանշէրի, ուր այս պատգամաւորութեան (թըղթակցութեան) համար կը գրուի[2]. "Կայսրն եւ պատրիարգն Կ. Պոլսոյ առաքեցին զՊետրոս քահանայ եւ զՍամուէլ կրօնաւոր՝ յԱնտաք (Անտիոք), զի անդ առցեն ձեռնադրութիւն, չէ յեր է, ուէն, վէճակն այն։ Եւ կատարեալ զխնդիրն՝ ուրախեցին շնոոո ի Վէրս„։ Հետեւաբար աննշանակ կը մնան Տարեգրոց տողերը. բաց ասկից ենթադրելով իսկ հայ խմբագրին խօսքերն անհարազատ, զարմանալի կը մնայ միշտ Տարեգրոց գործածած այս ոճը. ի՞նչ կ'ուզուի ապացուցուիլ Կ. Պոլսոյ պատրիարքին բերանը դրուած խօսքերով. ի՞նչ պատճառաւ ի Բիւ-

[1] Hist. I. p. 191–2.

[2] Տպ. Վենետ. 1884, էջ 90–91։

զանդիոն առ ոտս Պատրիարքին հասած հետամուտք կ'ուղղուին թղթով մը յԱնտիոք։ Պատասխանն չ'արժեր տալ՝ հերքումն իւր մէջն ըլլալով։ Եւ արդէն Վախթանգայ (Ա) վարքն լի է առասպելներով։ Այսպէս մինչ անպատասխանի կը մնայ այս ի նպաստ Կ. Պոլսոյ աթոռոյն խնդիրն, հակառակ կարծիքն ի նպաստ Անտիոքեան իրաւասութեան հաստատելու համար բացի Ջուանշէրէ՝ օգնութեան ձեռք կը կարկառէ Թէոդորոս Բաղսամոն (ԺԲ դար) երբ կը գրէ. "Ասի թէ ի ժամանակս Ս. Պատրիարքին աստուածային քաղաքին Մեծին Անտիոքայ, Տեառն Պետրոսի, սիւնհոդոսական կանոնաւ (οἰχονομία συνοδιχή) սահմանեալ իցէ անդ թէ եկեղեցին Վրաց լիցի ազատ եւ ինքնագլուխ, այլ կարգեալ ընդ պատրիարքաւ Անտիոքայ"[1]։ Այս Պետրոսն, ինչպէս կը դիտէ Բրոսէ[2], պիտի ըլլայ Պետրոս Թոթոն որ կ'իյնայ ընդ մէջ ամացն 475—488։ Հանգոյն Բաղսամոնի ԺԱ դարուն առ Ռոգերիոս (Ռոճէր ըստ հայ թարգմ.) արքայն Սիկիլիոյ կը գրէր Նեղոս դոքսապատրիւ վանահայրն. "Հին ժամանակ ի Վիրս Անտիոքայ պատրիարքէն կը խաւրուէր կաթողիկոս"[3]։ Իսկ իւր ժամանակն այս նահանգը Կ. Պոլսոյ իշխանութեան ներքեւ կը գտնուէր եւ Կ. Պոլսոյ պատրիարքէն կ'առաքուէր Վրաց մետրապոլիտ[4]։ Նման ունի նաեւ Եպիփան Կիպրացի "Վիրք

---

1 Bevergius, Synodicon seu Pandectae Canonum, t. I. p, 88.

2 Hist. p. 192. n. 2.

3 Հրտ. Ֆինկ, Վաղարշապատ 1902, էջ 5։ Հայ թարգմ. ունի "ձեռնադրէ եւ առաքէ", որ սխալ է. յունարէնն անկատար ժամանակ է։ — Պէտք է դիտել որ ըստ Ցարեգրոց՝ Վրաց կաթողիկոսութիւնն հիմնուեցաւ Վախթանգ Գուրգասլանի օրով, որ առաջարկելով Լեւոն կայսեր եւ Կ. Պոլսոյ պատրիարքին այսպիսի խնդիր մը, անոնց միջնորդութեամբ ընդունեցաւ Անտիոքէն առաջին կաթողիկոսն Պետրոս (Hist. I. p. 191—2. Intr. XLIV—V).

4 Անդ, էջ 29։

տուաւ յԱնտիոքայ՝ եւ եղեւ ինքնագլուխ կաթողիկոսն նոցա՝ վասն անաստուած այլազգեանց գերութեանն„[1] ։ Ցամենայն դէպս ի նպաստ Բաղամոնի նշանակալից է Գէորգ Կիպրացւոյ լռութիւնն այս նկատմամբ, որ մանրամասն ստորագրելով (Զ—Է դարուց մէջ, առ Մորկաւ կամ Փոկասու) Բիւզանդական պետութեան մետրապոլտութեանց իրաւասութեան սահմանները, ոչինչ յիշատակութիւն կ'ընէ Վրաց նկատմամբ[2]։ Ժամանակ մը Անտիոքացիք ջանացին ժամանակակից վրացի մատենագրի մը վկայութեամբ ցուցընել թէ Վրաստան իրենց պատրիարքութեան կը վերաբերի դարձեալ[3]։ Ասոր կը համաձայնի Եղիա Դամասկացի մետրապոլտի Տախտակն (Tabula), որ Վրաց եպիսկոպոսութիւնը Նեստորական կաթողիկոսի ներքեւ գըտնուող նահանգաց մէջ կը թուէ[4] եւ այն հանգամանքն որ Վրաց Կաթողիկոսի տիտղոսն Անտիոքայ պատրիարքութիւնն ցայժմ իրեն կը սեպհականէ, ըստ վկայութեան Պղատոնի Իւսելեան[5]։ Նոյնպէս յամի երբ 1470 Անտիոքի Միքայէլ պատրիարքը այն հրովարտակաւ, որով Իմերեթի կամ արեւմտեան Վրաստանի յատուկ կաթողիկոս տուաւ, կը հաստատէ թէ իրեն ծանօթ է թէ հին ժամանակներն Վրաստանի կաթողիկոսներն Անտիոքի պատրիարքներէն կը հաստատուէին[6]։ Այսչափ արտաքին վկաներ ունենալէն յետոյ յայտնի կեղծիք կը համարիմ Matgneի հետ Վրաց տարեգրոց վիպած-

---

1 Եպ. Կիպրացի, Հրտ. Ֆինկ. Տփ. 1902, էջ 16։

2 Հմմտ. Georgii Cyprii Descriptio orbis Romani. Ed. H. Gelzer. Lipsiae 1890.

3 Hist. I, p. 118. n. 3.

4 Assemani, Bibl. Orient. t. II. p. 460.

5 Առ Բրոսէի, Hist. I. p. 194. n.

6 Acad. de St. Pétersb. Bulletin hist. phil. t. I. p. 312—3.

ներն թէ Կ. Պոլսոյ իրաւասութեան ներքեւ էին Վիրք ԺԱ կամ թէ Ը դարէն յառաջ։

Վիրք, միտ դնելով Տարեգրոց խօսքերուն, յայտնապէս չեն ուզեր ըսել զայս, այլ մեղմով իմն յայն համնիլ կը ճգնին. այսպէս կը պատմեն այլուր[1] թէ իրենք գտնուած են ժամանակ մը Անտիոքայ իրաւասութեան ներքեւ, բայց ապա Է դարուն առաջին կիսուն անկախ ինքնագլուխ հրատարակուեցան եւ թէ Զ Տիեզ. ժողովոյն մէջ Վրաց մետրապոլտին պատրիարքական իրաւունք տրուեցաւ։ Այսչափ Վրաց եկեղեցւոյն Անտիոքայ եւ Կ. Պոլսոյ պատրիարքութեանց հետ յարաբերութեան նկատմամբ. ի՞նչ աղերս ունէր Հայ Եկեղեցւոյն հետ։ Նախ քան քննութեան մտնելը աւելորդ չեմ համարիր հոս կցել H. Matagneի խօսքերն, ուր հակիրճ կերպով ընդհանուր պատկեր մը կը գծուի Վրաց եկեղ. հանգամանաց։

"Վրաց այն հին կարծիքն թէ առաջին եպիսկոպոսն Անտիոքէն եկաւ, անոր համար հնարուած է, որպէս զի Վրաստան, որ Քաղկեդոնի ԻԸ կանոնիւ Կ. Պոլսոյ պատրիարքութեան կը վերաբերէր, մայր եկեղեցիէն չբաժնուի, եւ անոր հաւատարիմ մնայ. ապա երբ ճանապարհք փակուեցան եւ Անտիոքի եկեղեցւոյն իշխանութիւնն Նեստորականութեան պատճառաւ քայքայեցաւ եւ Կ. Պոլսոյ պատրիարքութիւնն հակառակէն օր ըստ օրէ աճեցաւ, յարեցաւ բիւզանդական Յունաց։ Այս փոփոխութիւնն սակաւ ուսեալ ժողովրդոց մէջ յառաջ բերին մէկ կողմանէ Տիեզ. ժողովոյն տուած իշխանութիւնն եւ միւս կողմանէ իրաց քաղաքական հանգամանքներն, որ զՅոյներն եւ զՎրացիներն ընդդէմ Արաբացւոց եւ Թուրքաց յարձակմանց ի հարկէ դաշնակից ըրին։ Այսպէս երբ իրաց բերմամբ գեր ի վերոյ եղաւ Կ. Պոլսոյ աթոռն եւ Վիրք ան-

1 Հմմտ. Hist. I. p, 229—30, 235—36.

ձուկ յարաբերութեան մէջ մտան Բիւզանդականաց հետ, այնուհետեւ Վիրք հազիւ թէ մոքերնին կրնային բերել իրենց հին սովորութիւնն — Անտիոքի իրաւասութեան ներքեւ ըլլալը։ Երբ Անտիոքայ իրաւասութեան տակ կը գտնուէր Վրաստան, երբեք կերպով կառավարուեցաւ. յառաջագոյն եպիսկոպոս միայն ունէին, որուն ձեռնադրութիւնն ապահովապէս — ինչպէս պիտի տեսնենք — հայ մետրապոլտութեան յանձնուած էր։ Ապա երբ Անտիոքի պատրիարքութեան գլուխն անցաւ Պետրոս Թոթով, այն է ընդ մէջ ամաց 471—488, Վրաց յատուկ մետրապոլտութիւն տրուեցաւ, այնպէս որ նահանգ եղաւ։ Ը դարուն Թէոփիլակտոս պատրիարքի օրով Վրաց եկեղեցին եղաւ ինքնօրէն եւ անուամբ միայն Անտիոքի տակ„ [1]։

Ցամենայնի չեմ կրնար համամիտ ըլլալ գիտուն Բոլլանդեանիս. յատկապէս այն կէտին մէջ թէ մինչեւ ցՊետրոս Փուլլոն, ուրեմն մինչեւ Ե դարու վերջին քառորդն միայն՝ հայ կաթողիկոսէն կը ձեռնադրուէին եւ այն լոկ եպիսկոպոս։ Իւր հիմն առ այս մի միայն հայ պատմագիրներն են, եւ այն, ինչպէս կը տեսնուի, յետինդարեանք, որոնք եթէ ոչ բնաւ, գոնէ շատ դոյզն հեղինակութիւն կրնան նկատուիլ այս խնդրոյս մէջ։ Քննենք ընդ հայս ճանապարհով այս հարցը։

Ըստ Դաշանց Թղթոյն [2] — որուն խօսքերն ի հարկէ աննշանակ են մեզ համար քանի որ գործ է ԺԱ—ԺԳ դարու, Ս. Սեղբեստրոս Հռոմայ քահանայապետն իշխանութիւն շնորհած է որ "Հայոց հայրապետն ձեռնադրեսցէ կաթողիկոս Վրաց աշխարհին„։ Այս տողերս առանց ազդեցութեան չեն գրուած հնագոյն պատմագիրներէ. արդէն Յովհաննէս Պատմագիր, Ուխտանէս եւ այլք հռչակած

---

1 Acta SS. t. XII. Oct. p. 644.

2 Թուղթ Դաշանց, հրտ. Շահնազ. էջ 25։

էին Կիւրիոնի — Է դարուն — “ապստամբութիւնն„ Հայ կաթողիկոսէն, որոնց արձագանքն ու հետեւութիւնն է որ հոս կը լսուի։ Նոյն հայ հեղինակներէ ուսեալ կը գրէ այս նկատմամբ նմանապէս եւ Հ. Գ. Ինճիճեան[1], որուն խօսքերն կարեւոր կը համարինք ամբողջութեամբ յառաջ բերել, ուր ամփոփուած են նաեւ պատմագրաց խօսքերը։ “Սահման իշխանութեան Կաթողիկոսին (Հայոց) ձգէր ոչ միայն ի վերայ Հայոց, այլ նաեւ ի վերայ Վրաց եւ Աղուանից„։ Ի մէջ բերելէ ետքը Դաշանց թղթոյն խօսքն, կը շարունակէ. “Այլ թողեալ զբանն թղթոյն՝ զգործադրութիւնն գտանեմք համաձայն այսմ ասացուածոյ. զի Կիրակոս վասն նորին իսկ Ս. Գրիգորի ասէ. “Ձեռնադրեաց զորդի իւր զՍ. Արիստակէս եպիսկոպոսապետ Հայոց եւ Վրաց եւ Աղուանից„ (Կիր. էջ 7). Յովհաննէս կաթողիկոս յաւելու եւ զԵգերացիս... Այլ ի գործադրութենէն երեւի՝ ոչ անմիջապէս ընդ իշխանութեամբ կաթողիկոսին Հայոց անկեալ Եգերացւոցն, այլ միջնորդութեամբ Վրացն։ Բայց եւ այս իշխանութիւն ի վերայ Վրաց՝ տեւեաց մինչեւ ցնախայիշեալն Կիւրիոն, զոր Բ Մովսէս ի մէջն անդ Զ դարուն ձեռնադրեաց. զի ասէ Կիրակոս. “Մինչեւ ցայն վայր (մինչեւ ցԿիւրիոն) ի Հայոց առնուին Վիրք ձեռնադրութիւն... եւ յայնմ հետէ բարձաւ ձեռնադրութիւն Վրաց որ ի Հայոց, զի սկսան նոքա զՅունօք թեւակոխել„ (Կիր. 26)։

Եթէ համաձայն Հ. Ինճիճեանի եւ հայ մատենագրաց կարծեաց նկատենք իրողութիւնն, տարակուսական կը մնան Պետրոս Թափիչի մասին վերագոյն աւանդուածները։ Սակայն մենք չենք կրնար ամէն բանի մէջ հաւատ ընծայել հայ մատենագրաց, մանաւանդ երբ առջեւնիս ելլեն հակառակէն ծանր հեղինակութիւններ։ Շատ հնա-

1 Հնախօսութիւնք Հայաստանի, հտր. Գ. էջ 262։

բաւոր կրնայ ըլլալ Դ—Ե դարուց նկատմամբ այս ամէնը։ Զմերժելով հանդերձ Վրաց Անտիոքի ներքեւ ըլլալը, կ'ընդունիմ Վրաց "կաթողիկոսաց․ ձեռնադրութիւնն Հայոցմէ ժամանակ մը։ Հայք երբ տակաւին կեսարիոյ տակն էին, էին միեւնոյն ժամանակ նաեւ Անտիոքայ տակ, ըստ որում այդ դարերուն կեսարիոյ մետրապոլտութիւնն էր մետրապոլտութիւն ընդ Անտիոքաւ[1]։ Այս պատճառաւ ալ Նեղոս դոքսապատրի (էջ 5) Հայոց կաթողիկոսաց ձեռնադրութիւնն կը դնէ Անտիոքէն։ Ասկէ դիւրաւ թոյլտուութիւն կրնային ընդունիլ իրենց դրացի Վրաց եւ Աղուանից կաթողիկոսներն ձեռնադրելու, որոնց յարաբերութեամբ Հայք էին primus inter pares. Այսպիսի պատճառաբանութեամբ դիւրաւ կրնան մեկնուիլ հայ պատմագրաց աւանդածներն։ Առ այս նշանակալից է Յովհ. Պատմաբանի այն տեղին, ուր խօսելով եկեղ. նուիրապետութեանց Ներսիսի (Ա) օրով կարգաւորութեան վրայ՝ կ'ըսէ թէ Վրաց եւ Աղուանից կաթողիկոսք "արքեպիսկոպոս ընդ ձեռամբ նորա (Ներսիսի) կարգեալ„ եղան (Յովհ. կաթ. էջ 29)։ Կիրակոսի այն հաստատութիւնն թէ Գրիգոր Լուսաւորիչ զԱրիստակէս ձեռնադրեց Վրաց "եպիսկոպոսապետ„, չունի որեւիցէ յենակէտ։ Հնագոյն պատմագիրներէն ոչ ոք կը յիշէ այսպիսի բան մը, եւ ԺԳ դարու վիպագրի մը խօսքերն չեն կրնար ծանրակշիռ հեղինակութիւն արժել հոս։ Բայց ունինք նման վկայութիւն մը ոչ դոյզն հեղինակէ մը. Փաւստոս կը գրէ. "Գրիգորիս եհաս յեպիսկոպոսութիւն կողմանցն Աղուանից եւ Վրաց„ (Գ. Ե. 10). Եւ այլուր՝ "վասն Գրիգորի եպիսկոպոսի, որդւոյ Վրթանայ, որ կաթողիկոսն էր կողմանց Վրաց եւ Աղուանից (Գ.

---

1 S. Weber, Die katholische Kirche in Armenien. Freib. 1903, p. 356. Hefele, անդ. p. 390 եւն։

*գ. 12)։ Այս կրկին վկայութիւններէն մանաւանդ երկրորդն յայտնի կը դնէ մեր առջեւն թէ Գրիգորիս “կաթողիկոս„ էր “կողմանցն„ Վրաց եւ Աղուանից։ Բայց ինչ պէտք ենք հասկընալ այս “կողմանց„ով։ Բրոսէ կը գրէ. “Յայտնի է որ այս ոճն, որով կը պատմէ Փ. Բիւզանդ, կարծել կու տայ — եթէ այս խօսքերն ճիշդ իմաստով չառնուին — թէ Գրիգորիս իրապէս հոգեւոր գլուխ եղաւ Աղուանից եւ Վրաց։ Բայց որովհետեւ յամի 340 — երբ կը պատահի այս — Վիրք իրենց եպիսկոպոսն ունէին, պարզ է որ Վրաստան ըսելով պէտք է հասկընալ ոչ թէ բուն Վրաստան այլ այս երկրին այն մասն, որ մերթ Հայոց կ'ըլլար եւ մերթ Վրաց, այս է Սոմխէթն եւ այն երկիրներն որ ապա Կախէթ կոչուեցան[1]։„ Բրոսէ միտ չէ դրած Փաւստոսի երկրորդ տեղւոյն, եւ կը շարունակէ ըսել թէ յետին դարեան մատենագիրք “եպիսկոպոս„ Վրաց եւ Աղուանից բացատրութիւնն կաթ.ի փոխած են, այսպէս Մովսէս Կաղանկատուացին եւն։ Սակայն Բրոսէի այս յանդուգն դատաստանը ուղիղ չեմ կարծեր։ Վրաց Տարեգրոց յիշատակած կաթողիկոսն կրնար այդ ժամանակ վախճանած եւ նոր մը խնդրուած ըլլալ։ Եւ ընդհանրապէս խոհեմութեան չէ՝ հետեւիլ կէտ առ կէտ Տարեգրոց — ինչպէս կը վարուի Բրոսէ հոս եւ այլուր — եւ արհամարհել երբ մէկն հակառակի անոնց։ Հայոց “կողմանց„ով ըմբռնածն շատ ընդարձակ գաղափար է. եւ ամենայն հաւանականութեամբ հոս այդ բառով բովանդակ Վրաստանն կ'իմացուի։ Առ այս թէեւ չունինք ուրիշ նման դիպաց յիշատակութիւններ մինչեւ ցԿիւրիոն, այսու հանդերձ Փաւստոսի բացատրութեան ոճէն կարելի է հետեւցընել թէ մինչեւ Ե դար այդպէս կը շարունակուէր։*

---

1 Hist. I. p. 194.

Հ. Պոտուրեան նկատելով Գրիգորիսի այդ դէպքն եւ ապա Կիւրիոնինը, այսպէս կը գծէ Հայոց կաթողիկոսին իրաւասութեան սահմաններն[1]. "Հայ կաթողիկոսը ժամանակաւ Վրաց եւ Աղուանից վրայ կրօնական իշխանութիւն ունեցած է, թէեւ այդ իշխանութիւնն բացարձակ չէր, այլ մասնական. եւ պատճառն ալ այն կը համարինք որ անոնք մեր առաջնորդութեամբ ընդունած են քրիստոնէութեան լոյսը:„ Առ այս ի մէջ կը բերէ ըստ (Ագաթանգեղոսի եւ) Խորենացւոյ. "Նունէ... Գր. Լուսաւորչի կը դիմէ, որ հօն եպիսկոպոսներ եւ քահանաներ ղրկէ, որուն խնդիրն իսկոյն կը կատարէ Հայոց Լուսաւորիչը. եւ այս պատճառաւ ուրեմն Հայ կաթողիկոսը Վրաց եպիսկոպոսը ձեռնադրելու իրաւասութիւնը կը ստանայ:„ Սակայն այս եզրակացութիւնս, որ զԽորենացին իբրեն հիմ ունի, արդիւնք է թիւրիմացութեան մը: Խորենացին չ՛ըսեր թէ Գր. եպիսկոպոսներ եւն խաւրեց, այլ պարզապէս. "Խնդրեալ (այս է՝ փնտռելով Նունէ) արս հաւատարիմ՝ յղեաց առ սուրբն Գրիգոր, եթէ զինչ հրամայեսցէ նմա գործել այնուհետեւ... եւ հրաման ընդունի կործանել զկուռսն... եւ կանգնել զպատուական նշան խաչին մինչեւ ցօր փոխման Տեառն հօրն յառաջնորդութեանն նոցա:„ (Խոր. Բ. ձզ. 170:) Յայտնի է որ այժմեան Ագաթ.ի մէջ չկայ Նունէի մասին խօսք. եւ, ինչպէս ըսինք, Կիրակոսի վկայութիւններն առաջինկայ հարցին համար նշանակութիւն չեն կրնար ունենալ: Հետեւաբար անհիմն է նաեւ նոյն մատենագրին այս հաստատութիւնս. "Զի մինչեւ ցայն վայր (ցԿիւրիոն) ի Հայոց առնուին Վիրք ձեռնադրութիւն„ (Կիր. 25): Ուղղագոյն կը թուին Հ. Գաթրըճեանի խօսքերս. "Ամբողջ Վրաստան՝ որուն բարձրագոյն մետրապոլիտն էր

---

[1] ԲԶՄ. 1906, թ. 9, էջ 402:

միշտ Հայոց Կաթողիկոսը, կտրեց իւր հաղորդութիւնը Դունոյ աթոռէն„ առ Կիւրիոնիւ[1]: Գաթըրճեանի այս կարծիքն այն առմամբ որ Հայք կը նկատուէին Վրաց ինչպէս եւ Աղուանից — բարձրագոյն մետրապոլիտ (primus inter pares), այս է հաւատոյ իրաց մէջ անոր առաջնորդութեան կը հետեւէին, շատ ճիշդ է: Ասոր վկայ են. յամի 449 Հայոց հետ միաբան կը պատասխանեն Միհրըներսեհին Վիրք եւ Աղուանք (Փարպ. 45): 508ին Վրաց (Գաբրիէլ) եւ Աղուանից կաթողիկոսունք ի Վաղարշապատ Բաբգենի հետ ի ժողով կը գումարուին եւ կը կը նզովեն Քաղկեդոնի ժողովն...: Այսպիսի օրինակներ յայտնի կը ցուցընեն թէ միշտ վեր կը նկատուէր Հայոց կաթողիկոսն այդ երկու ազգաց կաթ.ներէն եւ թէ ատոնք հնազանդ էին Հայոց կաթ.ին: Կիւրիոն կը գրէ առ Աբրահամ. “Թէպէտ եւ դու ինքնին իսկ քաջ գիտես, սակայն յիշեցուցանել եւ մեզ չէ զլեան, զի որ յառաջ քան զքեզ յայդ ի սուրբ եկեղեցւոջ վարդապետք (կաթ.) էին, եւ որ ի մեր տեղւոջս վարդապետք (կաթ.) լինէին, ընդ միմեանս խաղաղութիւն էր եւ սէր. ի մին հաւատ էր եւ կարգաւորութիւն„ (Գ. Թղթ. 178):— Անշուշտ այս սիրոյն պատճառն ալ էր մասամբ Հայաստանի քաղաքական դիրքն. Փարպեցի Միհրներսեհի բերնով կը խօսի Հայոց. “Եւ յորժամ դուք իբրեւ զմեզ ճանաչողք ճշմարիտ մեր օրինացս լինիք՝ Վիրք եւ Աղուանք ըստ մեր եւ ձեր կամս չիշխեն ելանել:„ (Փարպ. 44:) Հմմտ. եւ (էջ 43) “Յորժամ Հայք սերտիւ մեր լինին՝ Վիրք եւ Աղուանք այնուհետեւ մեր իսկ են:„ Ուր անշուշտ կը նկատուէր այդ երկու ազգաց հոգեւոր կապակցութիւնն Հայոց հետ: Այս “բարձրագոյն մետրապոլտութիւնն„ հաւատոյ խնդրոց մէջ էր միայն. եւ իրաւասական

---

1 Իրաւախոհի կեղծիքը. Բ. (անտիպ):

որեւիցէ արժէք չունէր։ Հայոց կաթողիկոսն չէր կրնար միջամտիլ Վրաց եկեղեցւոյ դատաստանական իրաց մէջ. գոնէ այս կը ցուցընէ Կիւրիոնի այն վարմունքը, որով բողոքեց թէ ինչպէս կրնայ Աբրահամ մտնել իւր իրաւասութեան տակ եղող Մովսէս եպիսկոպոսի դատին մէջ։ — Դարձեալ Մովսէս կաթողիկոս երբ խնդրուեցաւ ձեռնադրել Վրաց կաթողիկոս մը, ջանաց այնպիսի անձ մ'ընտրել, որ միշտ պահպանէ Հաւատոյ միութիւնն Հայոց հետ եւ ոչ թէ հպատակութիւնն հաւատարմաբար ցոյց տայ։ Մտադրութեան արժանի է այն կէտն ալ որ երբ Կիւրիոն կտրեց յարաբերութիւնն Հայոց հետ, չլսուեցաւ որեւիցէ բողոք թէ այսու եկեղ. իրաւասութեան բռնաբարում կ'ըլլայ։

Թէեւ կը հաստատենք այս կէտը, այսու հանդերձ չենք ալ կրնար մեկնել այն առեղծուածն, զոր կ'առաջարկեն հայ մատենագիրք. ի՞նչ հիմամբ Վրաց կաթողիկոսք Հայոց կաթողիկոսէն կ'ընտրուէին. դ. օր. Կիւրիոն Մովսեսէն. Այս հարցին հետ անձուկ կապուած է նաեւ այն թէ ե՞րբ սկսաւ այս եւ մինչեւ Կիւրիոն անընդհատ շարունակուեցա՞ւ։

Կը խոստովանինք, անբաւական ենք մեր ձեռքը գտնուած աղբիւրներէն դատելով ճշդիւ գտակաւ պատասխանել։ Առ այս հարկ է մտադնել հայ եկեղ. Պատմութեան։ Չկայ պատճառ մինչեւ Դ դարու Բ կէսն ընդհատուած ենթադրելու[1]. այս

[1] Վրաց Տարեգիրք (I. p. 136) եւ Ջուանշէր (էջ 70) կը յիշեն այսպէս Յակոբ կաթողիկոսին ձեռնադրութիւնն Ներսէս Պարթեւէն (†372). “Զկնի Յովհաննիսի՝ եղեւ եպիսկոպոս Յակոբ եւ յետ նորա՝ Ներսէս կաթողիկոսն Հայոց՝ ձեռնադրեաց զարկաւագն իւր զՅակոբ (ըստ Տարեգրոց՝ Յոբ)՝ եպիսկոպոս (իմա՝ կաթողիկոս) Վրաց, եւ առաքեաց”։ Ջուանշէրի հրատարակիչն ի ծան 5. այս Ներսէսը կը համարի Աշտարակեցին, որ հարկաւ անճիշդ է, քանի որ կը պատահի ձեռնադրութիւնն Միհրդատ Թագաւորի (364—379) օրով։

ժամանակակէտէն վերջը շատ պատճառներ ունինք ենթադրելու։ Առաջին հաւանականագոյն առիթն ընծայեցաւ 372ին, երբ Պապ դեղելով բարձաւ ի կենաց զՍ. Ներսէս եւ տեղն կարգեց "առանց Կեսարիոյ հայրապետին (Բարսղի) գիտութեան„ զՅուսիկ Բ, որ հակառակ էր եկեղ. իրաւանց։ Այս Կեսարիոյ իրաւասութեան բռնաբարութիւնն գրգռեց Ս. Բարսղի սրտմտութիւնն, որ եւ չճանչցաւ զՅուսիկ՝ կաթողիկոս Հայոց, այլ սոսկ եպ. Դրան։ Այս ընթացքը տեւեց մինչեւ ցՍ. Սահակ, գրեթէ 20 տարուան միջոց։ Յայտնի չեն Ս. Սահակայ (390—439) ձեռնադրութեան հանգամանքներն. գիտենք որ այլ եւ այլ պատճառներով յաջորդն Սահակայ Ս. Յովսէփ († 454) չունէր կաթողիկոսական ձեռնադրութիւն։ Իսկ Մեղիտէի, Մովսիսի ինչպէս եւ Գիւտայ եւ Յովհաննու ձեռնադրութիւնքն ալ նոյնպէս անյայտ են, թէեւ էին պատուով կաթողիկոս։ Այսպիսի անորոշութեան մէջ կրնայի՞ն Վիրք դիմել Հայոց կաթ.ին եւ խնդրել ձեռնադրութիւն. Կեսարիոյ (կամ Անտիոքայ) Եկեղեցին կրնա՞ր հանդուրժել ասոր։ Ի հարկէ ոչ։ Եւ ըստ մեզ Կեսարիոյ հայրապետն նովին գործով իսկ որ արգելեց Յուսիկան եպ. ձեռնադրել, վերապահեց իրեն նաեւ Վրաց կաթողիկոս ձեռնադրելու իշխանութիւնը։ (Հմմտ. առ այս Բուզ. Ե. իթ. 190—191. "Կացոյց թագաւորն Պապ զՅուսիկ եպ... ետ հրաման ունել նմա զտեղի հայրապետացն...։ Բայց լուաւ եպիսկոպոսապետն Կեսարու՝ թէ սպանին զմեծ հայրապետն Ներսէս, եւ փոխանակ նորա տեղի նորուն զոր կացուցին զՅուսիկ՝ առանց նորա հրամանի եղեալ...։ Եւ եղեւ ժողով եպիսկոպոսացն սիւնհոդոսին նահանգին Կեսարու... եւ լուծին զիշխանութիւնն կաթողիկոսութեանն, զի որ լինին հայրապետ Հայոց... մի իշխեսցէ ձեռնադրել զեպիսկոպոսն Հայոց, որպէս սովորութիւն էր ի բնէ։ Եւ յայնմ

հետէ բարձաւ իշխանութիւնն Հայոց ըէղէօլօղօօն ձեռնադրել· այլ որ լինէին եղէօլօղօօք... Երիայէն է քաղաքն Կեսարացւոց, եւ անդ լինէին եղէօլօղօօք։„) — Այս արգելքն "Հայոց սահմանաց„ եպիսկոպոսաց համար կ'արժէր, ինչպէս յայտնապէս կը չեշտէ Փաւստոս։ Դ դարու վերջերն (յամի 390) Հայաստանի կրկին բաժանման — մէկ մասն Յունաց եւ միւսն Պարսից ձեռքն եղած ատեն ի հարկէ փոխուեցաւ նոյն իսկ Հայոց Հայրապետին դրութիւնն, երբ դիւրութեամբ Պարսից սահմանէն ի Կեսարիա անցնիլն անկարելի ըլլալով՝ ի հարկէ տրուեցաւ Հայոց իշխանութիւն, Պարսից սահմանի համար եպիսկոպոսներ ձեռնադրելու։ Բայց թէ այսու նաեւ հրաման տրուեցա՞ւ Վրաց միւսանգամ Հայոց կաթողիկոսէն առնելու ձեռնադրութիւն, ըստ յառաջուան սովորութեան, դժուարին է հաստատել, քանի որ արտաքինք հակառակը կը վկայեն եւ տոհմայինք ոչ ինչ բացայայտ կ'ըսեն։

Ուսուցչապետն Սիմոն Վեբեր ծանրութեամբ կշռելով Հայոց եւ Վրաց մատենագրաց վկայութիւնքն այսպիսի եզրակացութեան կը յանգի. "Վրական վկայութեանց վրայ հիմնուած կարծիքն թէ Վրաստան Անտիոքի պատրիարքութեան կցուած էր[1], ուսկից եկաւ առաջին եպիսկոպոս առաքեալը, չի կրնար Լուսաւորչի եւ իւր գործոց պատմութեան հիմամբ հերքուիլ[2]։„ Այս մեր՝ ցայժմ տուած

---

[1] Վեբեր կ'առաքէ Kirchenlexikon, VI, 562· Lübeck, Reichseinteilung und kirchliche Hierarchie des Orients, Münster, 1901, p. 101, 134 ff· Զուանշէր 95։

[2] Die kath· Kirche, p· 198—9· Հմմտ· եւ p· 195—98· Իսկ Palmieri (Oriens Christianus, անդ· p· 50) ընդ հակառակն աներկբայ կը համարի Վրաց եկեղեցւոյն հայ եկեղեցւոյ ազդեցութեան եւ իրաւասութեան ներքեւ գտնուիլն՝ անդստին Դ· դարէն։

մեկնութեամբ կարելի է ճշմարիտ առնուլ, բայց ոչ խիստ առմամբ։

Թ. Բաղաամոնի խօսքերն թէ Պետրոս Թափիչի ժամանակ (Ե դարու Բ կիսուն) “ազատ եւ ինքնագլուխ„ հրատարակուեցաւ Վրաստան, խնդիրն կը դժուարացընեն։ Ո՛չ հայք գիտեն այսպիսի բան մը եւ ոչ Վիրք։ Բրոսէ ի մէջ կը բերէ Բաղաամոնէն այսպիսի նախադասութիւն մը “Յուստինիանոս քանի մը եկեղեցի ինքնագլուխ սահմանեց, ի միջի այլոց նաեւ Վրացը[1]„, որ սակայն յոյն բնագրի թիւրիմացութենէ ծագած է[2]։ Բայց նման գաղափար մը կը գտնուի Վրաց Տարեգրոց եւ Հայ Ջուանշէրի (ասկէ նաեւ Մխ. Անեցւոյ) քով[3]։ Յամի 549 Վիրք խնդրելով հրաման Յուստինիանոսէն որ իրենց կաթողիկոսներն ընտրուին Վրացիներէն, փոխանակ Յունաստանէն գալու, այս թագաւորն իւր կնքով կնքուած թղթով մը սահմանեց որ այս երկրին կաթողիկոսներն ըլլան Վրացի եւ եկեղեցական բոլոր դասակարգութեանց մէջ աւագութիւնն ունենան[4]։ Կամ ըստ Ջուանշէրի. Յետ Չիմաքայ “Նստուցին կաթուղիկոս՝ առանց Անտաքու (Անտիոքու) զՍաբա, զի՜ յայնմ հետէ ինքեանք իսկ Վիրք դնէին կաթուղիկոս յազգէ նախարարացն, քանզի զկնի Սաբայ՝ Նստաւ Յելաթի„ (Ջուանշէր, 95)։ Այս կը պատահի ըստ Մխիթարայ Այրիվանեցւոյ “Յամի 50 Հայոց թուականին (որ է 601 Յ. Ք.), Սաբայ Նստի կաթ. ի Վիրս, առանց պատրիարգին Անտիոքու„ (Հրտ. Պատկ. 64)։ Այրիվանեցւոյ նշանակած թուականն սակայն չի կրնար վստահելի համարուիլ, վասն զի այդ ժամանակամիջոցին պիտի տեսնենք Վրաց

1 Hist. I. p. 202 n. 6.

2 Հմմտ. Matagne, A. SS. p. 644.

3 Հմմտ. Hist. I. 202, n. 6.

4 Et qu'ils eusset la superiorité sur tous les dignitaires du clergé des églises.

աթոռոյն վրայ զԿիւրիոն: Հաւանականաբար մասամբ Մխիթարէն օգտուելով կը գրէ Կաուլէն. "Յամի 556 Փարսման կաթողիկոսն Անտիոքայ պատրիարքութենէն ելաւ, սակայն 601ին Սաբա կաթողիկոսին ժամանակ հազիւ Վրաց նահանգին անկախութիւնն ճանչցուեցաւ[1]:" Մեծանուն յօդուածագրին այս տողերն շատ նշանակալից կրնան ըլլալ մեր խնդրոյն համար, եթէ գործածած աղբիւրն — զոր չի նշանակեր հոս մասնաւորապէս — վաւերականութեան գոյն ունի, որ ըստ մեզ տարակուսական է: Վիրք չեն գիտեր Փարսման անուն կաթողիկոս յամի 556, երբ կայ համանուն անձ թագաւորական գահի վրայ[2]: Վրաց տարեգրոց մէջ կը կարդանք (անդ.) "Չիրմաք մեռնելով նոյն թագաւորն (Փարսման) անոր տեղ կարգեց Ե կաթողիկոս զՍաբա: Ասկէ ետքը փոխանակ կաթողիկոսներն Յունաստանէն գալու, այս տիտղոսն կր տրուէր ազնուատոհմ Վրացւոց:" Սաբայէն վերջը փոխանորդ կարգեց նոյն արքայն զԵւլաւիոս: Հետեւաբար ամենայն հաւանականութեամբ շփոթութիւն մը տեղի ունեցած պէտք ենք ենթադրել: Այս ամէնը սակայն դժուարութիւն չեն պատճառեր մեզ եւ չեն հակառակիր հայ պատմագրաց աւանդութեան:

Բուն ծանրակշիռ կէտն հետագայ դէպքս է: Զ դարու վերջին տարիները, այն է 598ին, յանկարծական կերպով ի մէջ կ'ելլէ Կիւրիոնի խնդիրն, որոնց նախորդ կամ հետեւորդ տեղեկութեան: Եւ հոս իսկ է բոլոր դժուարութեանց հանգոյցը: Ըստ Ուխտանիսի Վրաց կաթուղիկոսն մեռնելով՝ յաջորդին համար Հայոց Մովսէս կաթողիկոսին դիմեցին: Չ'ըսեր պատմագիրս թէ եղաւ այդ ըստ սովորութեան կամ ըստ իրաւասութեան օրի-

---

1 Kirchenlexikon. VI, 562.

2 Հմմտ. Brosset I. p. 202: Փարսման Զ. 542–557:

նաց։ Մովսէս, ինչպէս կը գրէ ինքն առ Կիւրիոն, կը կացուցանէ «առաջնորդ Վրաց աշխարհին» իւր տնէն՝ բայց ազգաւ Վրացի մէկն — զԿիւրիոն «ըստ կամաց նորա» (Հմմտ. Ուխտ. Բ. 11)։ Այս է մեր բովանդակ գիտցածն ընտրութեան հանգամանաց մասին։ Բայց ասկէ կարելի՞ է հետեւցընել սովորութիւն մը։ Ըստ մեզ գոնէ փոքր մի ժամանակ այսպէս կատարուած վայել է մտածել։ Ահա թէ ինչու։

Վաղարշապատու 508ի ժողովոյն մէջ ամրապնդուեցաւ Հայոց, Վրաց (Գաբրիէլ կաթ.ի ներկայութեամբ) եւ Աղուանից մէջ հաւատոյ միութիւնն։ Այս միութեամբ երեք ազգաց հոգեւոր պետերը ստորագրեցին Զենոնի Հենոտիկոնին եւ Անաստասայ թղթոյն եւ այսու մերժեցին եւ նզովեցին լռութեամբ Քաղկեդոնի ժողովն։ Ցորչափ որ կենդանի էր Անաստաս, այդ երեք ազգերն մի էին նաեւ Հռոմայ հետ, հետեւաբար մի նաեւ Անտիոքայ աթոռոյն հետ։ Բայց երբ Անաստասայ մահուամբ (518) Յուստինոս եւ այլք բարձրացան կայսերական գահն եւ կրօնական խնդիրք այլ գոյն զգեցան, բնական էր որ նախկին միութիւնն խզէր, եւ արդեամբք ալ խզեցաւ՝ ինչպէս Հայոց նոյնպէս Վրաց եւ Աղուանից կողմանէ։ Զայս քաջ կ'ապացուցանեն Քաղկեդոնական եւ Հակաքաղկեդոնական (յատկապէս ընդ մէջ Հայոց եւ Յունաց) խնդիրները։ Այս դէպքն, զոր կը լռեն Վիրք, չյիշատակելով անգամ զԳաբրիէլ կաթողիկոս եւ ապա զԿիւրիոն, այնպիսի վաւերական յիշատակարաններով պահպանուած է, որ կարելի չէ ուրանալ[1]։ Գաբրիէլ կաթողիկոսն յաւիտեանս չէր կրնար ապրիլ, այդ ժողովէն վերջը շատ շատ ապրած պիտի ըլլայ 20—40 տարի. եւ յամենայն դէպս 540ին

[1] Գիրք Թղթոց, էջ 177, 182։

վախճանած[1]։ Ո՞վ պիտի ըլլար յաջորդն եւ որո՞ւն ձեռնադրութեամբը։ Ի հարկէ Անտիոքայ պատրիարքէն չէ. վասն զի շատոնց խզուած էր այդ հայրապետութեան հետ կրօնի միութիւնն եւ գայթակղական պիտի ըլլար ժողովրդեան աչքին առջեւ։ 539ին Անտիոք յարձակմամբ գրաւուեցաւ Խոսրով Ա.էն, որ եւ գրեթէ քանդեց եւ աւերակ ձգեց քաղաքն միջի բնակիչներն հետը ի գերութիւն խաղացնելով ի Պարսս։ Թէեւ քիչ վերջը Յոյնք կրկին առին Պարսից ձեռքէն։ Ի նկատի առնելու ենք միւս կողմանէ նաեւ Յունաց եւ Պարսից քաղաքական հանգամանքները, երբ երկուստեք հապճեպ մարտ կը մղուէր։ Վիրք ստիպուած էին կամ Ասորիներէն առնուլ ձեռնադրութիւնն եւ կամ Հայոցմէ։ Ի հարկէ բարձրագոյն մետրապոլտութիւնն Հայոցն էր. եւ ըստ հնագոյն սովորութեան դարձեալ եկան Հայոց կաթողիկոսին դուռը եւ ընդունեցան իրենց կաթողիկոս։ 508—598 յետ Գաբրիէլի մահուան՝ ապահովութեամբ կրնանք 2—3 կաթ. փնտռել Մծխեթայի աթոռոյն վրայ մինչեւ Կիւրիոնի ընտրութիւն։ Այսպէսով կարելի կ'ըլլայ Վրաց տարեգրաց այն խօսքերն թէ առ Փարսմանաւ Յուստինիանոսի հրովարտակաւ Անտիոքէն անկախ հրատարակուեցան Վրաց կաթողիկոսք, իմանալ ճիշդ իմաստով։ Առ Կիւրիոնիւ բաժնուեցան յայտնապէս Հայոցմէ։

Եթէ Անտիոքէն կը խորշէին Վիրք՝ Քաղկեդոնիտ ըլլալուն համար, իրենք ալ ապա Քաղկեդոնիտ ըլլալով բնական ճամբով պիտի մօտենային միւսանգամ Յունաց Բիւզանդականաց՝ այժմ խորշելով Հայոցմէ։ Այլ եւս չէին կրնար Վիրք Անտիոք դիմել տեղւոյն քայքայեալ եւ Հայրա-

---

[1] Դունոյ 508ի ժողովոյն հարց մին՝ Մերշապուհ եպիսկոպոսն կենդանի էր դեռ յամի 556 (Գ. Թղթոց, էջ 70–76)։

պետին Միաբնեայ ըլլալուն պատճառաւ, խոհեմութիւնն էր անկախ կամ Բիւզանդիոնի հպատակ մնալ։ Թէ որն լաւագոյն համարուեցաւ, յաջորդ-դարուց պատմութիւնն կը վկայէ արդէն։ — Այս մեկնութիւնս որչափ ալ յեցած է ենթադրութեան վրայ, այսու հանդերձ այժմեան աղբիւրներով հաւանականագոյնը կը համարինք։

Հոս ուրիշ մէկ դժուարութիւն կը ծագի, զոր առիթ ունեցանք արդէն նշանակելու։ Դժուարութիւնն Վրաց Տարեգրոց կողմանէ է, որոնք այս ժամանակներս Վրաց կաթողիկոսութեան աթոռն կը հանեն այլ եւ այլ անուամբ կաթողիկոսներ՝ առանց յիշատակելու զԳաբրիէլ. Հոս կը դնենք այդ կաթողիկոսաց ցանկն ըստ Տարեգրոց։[1]

| | | |
|---|---|---|
| 1. Պետրոս | † առ. Դաչի արքայիւ | 499—514։ |
| 2. Սամուէլ Ա. | առ. Դաչի արքայիւ | 499—514։ |
| 3. Թաւփեչաք | առ. Փարսմանաւ Ե. | 528—542։ |
| 4. Չիրմաք | առ. Փարսմանաւ Ե. | 528—542։ |
| 5. Սաբա | առ. Փարսմանաւ Զ. | 542—557։ |
| 6. Եւլաւիոս | առ. Փարսմանաւ Զ. | 542—557։ |
| 7. Մակար | առ. Բակուրաւ Գ., | 557—570։ |
| 8. Սիմէոն | առ. Գուարամաւ | 575—600։ |
| 9. Սամուէլ Բ. | առ. Գուարամաւ | 575—600։ |
| 10. Սամուէլ Գ. | առ. Գուարամաւ | 575—600։ |

Բայց ինչպէս Թագաւորաց ժամանակն վրիպական է եւ հակառակ ժամանակագրութեան (ասոր վրայ ապա), նոյնպէս յայտնի կը տեսնուի կաթողիկոսացն ալ։

Բրոսէ այս անմիաբանութիւնը նկատելով ուրիշ մեկնութիւն մը տալ կը փորձէ, զոր H. Matagneի (A. SS. 645) հետ անհիմն կը համարիմ։ Բրոսէ[2] կը կարծէ թէ Հայ մատենագրաց քով յի-

---

[1] Brosset I, p. 201–221.

[2] Hist. I. 194. Addit. et éclers 107 n. 3, իսկ Deux hist. p. 24 n. 5 քիչ մը մեղմացուցած է տարակոյսն։

շուած Վրաց "կաթողիկոսք", այսպէս Գաբրիէլ, Կիւրիոն՝ Հայ եպիսկոպոսներ են իբրեւ առաջնորդ վրաստանաբնակ Հայոց վրայ։ Ասոր կը հակառակին Գիրք Թղթոցի էջերն, ուր բազմիցս կը շեշտուին այսպիսի նախադասութիւններ "որ կաթուղիկոսդ անուանի", "կաթողիկոս Վրաց" եւն, եւ դարձեալ այն պարագան որ Աբրահամ բոլոր վրացիներն նզովեց։ Զայս նկատելով նոյն Բրոսէն կը գրէ այլուր[2]. "Ասկից կ'երեւայ թէ Կիւրիոնի բովանդակ պատմութեան մէջ ոչ թէ Վրաստանի Հայոց պարզ առաջնորդի մը վրայ է խնդիրն, այլ ինքնին Վրաց։ Բայց այդ ժամանակները Վիրք իրենց յատուկ կաթողիկոսն ունէին, ինչպէս Տարեգրքերէ կը տեսնուի, հետեւաբար Կիւրիոն կամ լոկ Հայ եպիսկոպոս էր կամ Վրաստանի այն մասին, որ իւր իրաւասութեան տակն էր"։ Մեզ զարմանալի են Բրոսէի պէս Վրաց Տարեգրոց էութեան քաջ ծանօթ անձի մը այս խօսքերը[3]։ Նա այդ Տարեգրոց ծանօթութեանց

---

1 Այս երկու կաթողիկոսներէն զատ կը յիշուին Հայ մատենագրաց քով, 1. Գրիգորիս (Բուզ. 10 եւն), 2. Փառէն "եպիսկոպոս Վրացն", որ կ'ուղեցկի (360) Ս. Ներսիսի ի Կեսարիա (Սոփերք, Զ. 26). 3. Սամուէլ "գլուխ եպիսկոպոսացն" Վրաց (Վկայաբանութիւն Ս. Շուշանկան, Սոփերք, Թ. 44).

2 Deux hist. 24, n. 5.

3 Սուրիշ առթիւ մը այսպէս կ'ամփոփէ Բրոսէ իւր կարծիքն (Analyse critique de la Всеобшая исторія de Vardan, S. Pètersb. 1862, p. 18). "Կիւրիոն՝ Վրաստանի Հայոց եկեղ. առաջնորդը, Քաղկեդոնի ժողովն ընդգրկելու համար իւր հօտէն Մծխեթոյն մասը եւ ամբողջ Վրաստանը իրեն հետ [illegible]։ Ասոնց բաժանումն կերպապէս հրատարակուեցաւ Աբրահամ կաթողիկոսէն՝ 596ին ի Դուին գումարուած ժողովով. եւ անկէ ի վեր կատարուեցաւ անյետակոչելի իրողութիւն մը։" Բրոսէ չեմ տարակուսիր, կ'ըսէ այժմ, գործողութեան երաշխաւորութեան եւ Ուխտանէսի ճշմարտախօսութեան վրայ, կը զարմանամ միայն

մէջ քանիցս շեշտած է հակաժամանակագրական ըլլալը, այժմ կը դժուարի ընդունիլ նոյնը այս դէպքիս մէջ[1]։ Տարեգիրք առ հասարակ Զ—Է դարուց Վրաստանի եկեղ. հանգամանաց վրայ կը լռեն, անգամ չեն յիշեր թէ ինկած են երբեմն միաբնեայ աղանդոյն մէջ, որուն ճշմարտութիւնն սակայն հազիւ թէ կարելի է ժխտել։ "Վիրք, կը գրէ Հ. Գուասէն, իրենց եկեղեցւոյն երբեմն Հայոցմէ կախում ունենալն ժխտելու, եւ այսու նաեւ միաբնեայ աղանդոյն մէջ կործանած ըլլալնին Եկեղ. Պատմութենէն անհետացընելու համար, այս Կաթողիկոսն մոռացութեան մատնած են եւ զրուցաց ամբողջ շղթայ մը հիւսած„[2]։ "Յայտնի չէ՞, կը հարցընէ իրաւամբ Matagne, որ Վրաց Տարեգիրքը Վախթանգի թագաւորութենէն մինչեւ Արաբացւոց արշաւանքն շատ ամուլ է„ (A. SS. 645)։ Բոլոր թագաւորաց պատմութիւնք փոքր գծերով կը բովանդակուին եւ կաթողիկոսաց նկատմամբ շատ անգամ կը նշանակէ Բրոսէ[3], թէ ուրիշ յիշատակարաններէ նաեւ Վրաց շատ բան ծանօթ է, որոնք տպուած Տարեգրոց մէջ իրենց տեղն չունին։ Այդ յիշատակարաններու մէջ պէտք է փնտռել զԿիւրիոն եւ որ ի կարգին[4]։ Ուխտանէս Ժ դարուն Վրա-

---

Վրաց Տարեգրոց լռութեան, ինչպէս եւ Գուարամ թագաւորին Հայոց պատմագրաց քով չյիշատակուելուն վրայ։

1 Հմմտ. Deux hist. t. II. p. XI.

2 Theol. Revue, 1906, p. 85.

3 Hist. I. p. 354 n. 3.

4 Այսպէս Վրացերէն յիշատակարանէ մը (Վկայաբանութիւն Ս. Եւստաթէոսի) կը տեղեկանանք թէ 541—5 Վրաց կաթողիկոսն էր Սամուէլ (Berliner Sitzungsberichte 1901, p. 876, 892, 894 եւն), մինչ ըստ Տարեգրոց Սաբա էր։ Նոյնպէս Ս. Շուշանկան ժամանակ կը յիշուի ուրիշ Սամուէլ մը, զոր Տարեգիրք կը յիշեն 499–514ի մէջերը. իսկ Ս. Շուշանկան վկայութիւնն կը պատմէն կատարուած Մակար կաթողիկոսի եւ Բակուր Գ.

ցերէն գրքի մէջ գտած է Մովսիսի Բ. Հայոց կաթ.ի առ Կիւրիոն եւ Կիւրիոնի առ Մովսէս թղթերը։ Այդ դարէն ունինք այսօր Վրաց հմուտ եկեղեցականի մը — Արսէն կաթողիկոսի մէկ գրութիւնն, ուր արդեամբք ալ կը գտնենք Կիւրիոնի անունն։ Արսէն կը կշտամբէ այդ գրութեան մէջ զՀայերը թէ ինչու այնպէս թշնամութեամբ են Կիւրոնի անուան հետ, որ Ս. Գրիգորի հաւատքն կը քարոզէր, զոր նա Յունաստանէն բերաւ ի Հայս եւ ի Վիրս[1]։ Այս խօսքերէն կը տեսնուի քաջ թէ Արսէն ծանօթ էր Կիւրիոնի թղթոց։

Վրաց Տարգրոց չափազանց լռութիւնն Հայոց յարաբերութեամբ զգալի է, եւ որ ծագած է այդ գրոց հեղինակին անզուսպ հակառակութենէն առ Հայս։ Այդ հակառակութիւնն ի վաղուց հետէ լարուած էր Հայոց հետ. կը կարծենք նոյն իսկ Է դարէն։ Մովսէս Ցուրտաւայ եպ.ը որ ազգաւ հայ էր, իւր թղթոց մէջ մոլեռանդ ատող մ'է զՎրացիները. Ժ դարու մատենագիր Ուխտանէսը չափ չունի յայսմ։ Վրացիք ալ փոխարէն քիչ նախանձորդ չէին։ Տարեգրոց մէջ[2] կը կարդանք նոյն իսկ այսպիսի խօսքեր. "Դուք, Հայեր, եօթնիցս անիծեալներ, պիտի փորձէք առնուլ զայն, զոր չունն անգամ եթէ տեսնէր պիտի վախնար տանելէ"։ Այսպիսի ատելութեամբ տոգորուն հեղինակէ մը կարելի՞ է սպասել էջեր, յորս Վրաց կաթողիկոսն Հայոց կաթողիկոսէն կախում ունենար

---

արքայի (557–570) որով (Hist. I. p. 214) մինչդեռ Ս. Շուշանիկ փոխեցաւ յաւիտեանս ամենայն հաւանականութեամբ Վաչագէնի մահուընէ (482) ոչ շատ յառաջ, իբր յամի 480, որով եօթնամեայ չարչարանաց տարիներն կ'ամփոփուին 470–480։ Բրոսէ կը նշանակէ մահն 458ին, որ շատ կանուխ է։

1 Θ. Жорданія, Хроники, I (Тифлисъ 1893), էջ 319. հմմտ. Н. Марръ, Крещеніе Армянъ եւն, էջ 154։

2 Brosset, Hist. I, 459.

որ եւ իցէ կերպով, եւ կամ հաւատոյ միութիւն հաստատուած ըլլալը պատմուէր։ Ի հարկէ ոչ։ Եւ ահա այս իսկ է պատճառն, որ շատ տեղեր — ուր հարկ էր Հայոց անունն փնտռել, կը գտնենք Անտիոքի կամ Յունաց անունը։

### Վրաստանի քաղաքական հանգամանքները Զ—Է դարուց մէջ։

Տարակուսանօք կը նայի Բրոսէ Սիւրիոնի պատմութեան՝ ի միջի այլոց պատճառ առնելով այն կէտն թէ ինչո՞ւ չեն յիշատակեր Հայք այս խնդրոց առթիւ զԳուարամ, որ կը կառավարէր՝ ըստ Տարեգրոց՝ ճիշդ այս ժամանակներն ի Վիրս։ Արդարեւ զարմանալու արժանի կէտ է այս, քանի որ կը տեսնուի թէ իրք քաղաքական անձանց միջամտութեամբ մասամբ իւիք նաեւ քաղաքական գոյն զգեցած են։ Բայց փութանք ըսել թէ այս լռութիւնն չէ նպատակաւոր։

Թողլով այժմ այն խնդիրն, թէ վստահելի՞ են այն ամէն պատմուածները, զորոնք Տարեգիրք ի մէջ կը բերեն արքայից նկատմամբ եւ զորոնք սակայն հայ խմբագրութիւնն՝ Ջուանշէր բոլորովին կը լռէ — որ ըստ Բրոսէի[1] "ապահովապէս ոչ առանց նպատակի է„ —, միտ դնել կու տանք որ Բրոսէի նկատած բոլոր դժուարութիւնք կը ծագին սխալ ճանապարհ բռնելէ։ Յայտնի է որ Չամչեան[2] Մովսէս Բ կաթողիկոսի մահն կը դնէ 593ին եւ Աբրահամու ընտրութիւնն 594ին, որուն հետեւած են շատերը. ասկէ Վրաց Հայոցմէ բաժանումը կը նշանակուի 596ին։ Բրոսէ եւս կը հետեւի այս վրիպական ժամանակագրութեան, եւ այնպէս նախապաշարուած է, որ նոյն իսկ Ուխտանիսի եւ Սեբէոսի հեղինակութիւններն, որոնք

---

1 Deux hist. p, 279 n. 1.

2 Պատմ. Հայոց, Բ. էջ 302, 306։

ուղիղն մատնացոյց կ'ընեն, իբրեւ սխալ կ'արհամարհէ[1]։ Բայց յանիրաւի։ Բնականաբար այսպիսի ժամանակագրութեամբ անհնար է ճշգրիտ իրողութիւնն իմանալ։ Արդարեւ Տարեգիրք զԳուարամ 600ին վախճանած կը դնեն, հետեւաբար բաժանումն իր օրով պատահած կ'ըլլայ, բայց այս ուղիղ ժամանակագրութեան համաձայն չէ։ Վասն զի Մովսիսի մահն պատահած է — ըստ միաբան վկայութեան Թղթոց գրոց, Սեբէոսի եւ Ուխտանէսի — 604ին եւ Աբրահամու ընտրութիւնն 607 Ապրիլին։ Այս հաշուով բաժանումն տեղի ունեցած կ'ըլլայ 608—9, եւ ի զուր է փնտռել այս ժամանակ զԳուարամ։ Բայց այսու ալ չի հարթուիր տակաւին դժուարութիւնը։ Տարեգիրք այս միջոցիս իբրեւ Գուարամի յաջորդ կը դնեն զՍտեփանոս 600—619, որ նոյնպէս չի յիշատակուիր։ Այս դժուարութիւնն բառնալու համար պատշաճ կը կարծենք Վրաստանի 590—610 տարեաց պատմութիւնն հիւսել հոս համառօտիւ, եւ որ կարեւոր պիտի ըլլայ Կիւրիոնի թղթակցութեանց մէջ յիշատակուած անձանց եւ դիպաց լուսաւորութեան համար։

Ըստ Վրաց Տարեգրոց, երբ Բակուր Գի մահուամբ (570) Խոսրովեան հարստութենէն վերցուեցաւ թագաւորութիւնն[2] երկրին Նախարարք Պարսից հպատակութենէն ելլելով Բիւզանդիոյ ինքնակալին դիմեցին եւ խոստացան կայսեր իշխանութեան ներքեւ մնալ, եթէ առանց բռնաբարելու իրենց նախնի իշխանութիւնն՝ Վրաստանի հին թագաւորական ցեղէն իշխող մը կարգէ վրանին։ Կը հաւանի կայսրն (Յուստինոս), եւ կու տայ զԳուարամ[3] (575—600), որ մօր կողմանէ

1 Deux hist. t. II. p. XVI.

2 Hist. I. p. 215. Ե. Թոփճեանց, Երեք պատմական ժամանակագրութիւն. Տփղիս, 1890, էջ 33։

3 "Գորամ" ըստ Մ. Այրիվ. 23։

երկրին հին Թագաւորաց տոհմէն եւ հօր կողմանէ Բագրատունի հին ցեղէն կը սերէր, եւ կ'անուանէ Կիւրապաղատ։ Գուարամ Յունաց հաճոյ ըլլալու նպատակաւ ի Պարսս շփոթութիւններ կը յարուցանէ. գրգռելով հիւսիսային ազգերը (Վահրամ Չոբին եւն). զորոնք սակայն ժամանակի Պարսից արքայն Խոսրով Բ Պարուէզ — որ ժամանակ մը (570—4) ի Վիրս իբրեւ մարզպան գործած էր, — կը յաջողի նուաճել. երկիրն խաղաղելէ ետքը կ'արշաւէ ի Վիրս Գուարամէն վրէժ առնելու, բայց Մօրիկ, որ Վրաստանի մէկ մասն իրեն իշխանութեան տակ առած էր՝ կը միջամտի եւ բարեխօսութեամբը կը խաղաղցընէ ցասուցեալ արքայից արքան[1]։

Տարեգրոց այս ակնարկութիւնքը բաց ի Գուարամի անունէն՝ ծանօթ է նաեւ այլուստ։ Գիտենք որ 571ին Հայոց հետ ապստամբեցան Պարսիցմէ Վիրք ալ եւ անցան Յունաց կողմն[2] Գուրգէնի, իրենց գլխաւորին առաջնորդութեամբն[3] եւ այս պատճառաւ ի Վիրս Պարսից հետ ընդհարումներ տեղի ունեցան. այսպէս յամի 573—4 Գողոն Միհրան "արար կռիւ մի ի Վիրս եւ պարտեցաւ[4]"։ Թէ յիրաւի մինչեւ 590—591, մինչեւ Խոսրովու թագաւորելը՝ Վիրք Յունաց հպատակ մնացի՞ն, կրնանք տարակուսիլ, քանի որ Որմիզդ Դ (578—590) կրնայ զՎրաստան ազատ անուանել իւր իշխանութեան տակ[5]։ Հազիւ 591ի դաշամբ Մօրիկ կայսր Խոսրովէն ընդունեցաւ "մեծ մասն Վրաց աշխարհին մինչեւ ցՏփղիս քաղաք[6]"։ Այս

---

[1] Hist. I. p. 216 s.

[2] Անդ, p. 223 n. 3.

[3] Հմմտ. Թէոփ. Բիւզ. տպ. Բօն. 485, *Γοργένους αὐτῶν ἡγεμονεύοντος.*

[4] Սեբ. էջ 29։

[5] Հմմտ. Deux hist. II. p. XI.

[6] Սեբ. էջ 33, 45։

ամէնուն մէջ քիչ շատ կարելի է զիջանիլ Տարեգրոց․ բայց ինչպէս պատասխանենք հարցման․ Ո՞վ կը կառավարէր պարսկական Վրաստանը։ Տարեգիրք յականէ ոչինչ կը խօսին այս տեսակէտով, եւ աւելի կը միտին ժխտելու պարսկական բաժին մը Զ դարու վերջերը։ Այս իսկ պատճառաւ կը հնարուի Գուարամ մը, որ անծանօթ է թէ Հայոց, թէ արտաքնոց եւ ժամանակն ալ անմիաբան է հնագոյն դրամոց անժխտելի վկայութեանց հետ։ — Լսենք նաեւ Կիւրապաղատիս կատարածն ըստ Տարեգրոց։

Շատ գովութեամբ կը խօսին Տարեգիրք Կիւրապաղատիս վրայ շեշտելով յատկապէս երկիրն "ի խաղաղութեան„ պահելը։ Երկու որդի ունէր, Ստեփանոս եւ Դեմետրէ, երէց որդին՝ Ստեփանոս հօրը մահուընէ ետքը (600) կ'անցնի իշխանութեան գլուխն, որ եւ կը կառավարէ 19 տարի (600—619)։

Բայց այս անհնար է։ Գուարամի մահն — եթէ պատմական ընդունինք անձը — առ նուազն 586էն յառաջ հարկ է դնել։ Լանգլուա Վրաց դրամոց դասաւորութեան մէջ[1] երկու դրամ կը ներկայացընէ Ստեփանոսի անուամբ, մին դրոշմուած Որմիզդ Դի Եօթներորդ տարին (585—86) Որմզդի դահեկանի նմանութեամբ, եւ երկրորդն Խոսրովու Բ Պարվէզի դահեկանի նմանութեամբ անոր թագաւորութեան Երկրորդ տարին (592)։ Այս երկու դրամներն ի հիմանց կը խախտեն Տարեգրոց ժամանակագրութիւնը։ Այսու զԳուարամ կամ բոլորովին Յունաց բաժնի մէջ Կիւրապաղատ պէտք ենք ենթադրել՝ անկախ Պարսիկներէ, եւ մի եւ նոյն ժամանակ պարսկական բաժնի մէջ յատուկ իշխող մը — Ստեփանոս անուամբ, եւ կամ վաղ

---

[1] V. Langlois, Essai de classification des suites monetaires de la Géorgie, depuis l'antiquité jusqu' à nos jours. Paris 1860, p. 29—30.

*իսկ վախճանած — եթէ ընդունինք գոյութիւնը։ Սէն-Մարտէն[1] Ստեփանոսի իշխանութեան գլուխն անցնիլը կը դնէ 571ին, զոր թէեւ չ'ընդունիր Բրոսէ, սակայն ուղղագոյնն կ'երեւայ — գոնէ մերձաւորապէս — քան Տարեգրոցը։ Արդէն այս հաշուոյն համաձայն կու գայ Ստեփանոսի 586էն դրամը։ Ըստ մեզ եթէ ոչ ճիշդ 571ին, գոնէ 586էն բաւական յառաջ նա իշխանութեան գահն բարձրացած էր եւ եթէ վստահելի են Տարեգրոց ընծայած 19 տարիներն, վախճանած է 599—600ին, թողլով յաջորդ զԱտրներսեհ։ Առ այս մեզի համար անխախտելի եզր մ'է 606—7 թուականն, երբ Վրաց առաջնորդն էր Ատրներսեհ։ Անցնինք Ստեփանոսի նկարագրին։*

*Շատ մութ գոյներով կը ներկայացընեն Տարեգիրք[2] այս անձը. «անհաւատ եւ աներկիւղ յԱստուծոյ մէկն էր, բնաւ կրօնի միտ չդրաւ, եւ եկեղեցիներ չկառուց»։ Վախնալով Պարսիկներէն եւ Յոյներէն՝ չհամարձակեցաւ կոչուիլ ⴋⴄⴔⴄ, այլ բաւականացաւ պարզ Ⴋⴇⴀⴅⴀⴐ ⴄⴐⴈⴑⴇⴀⴅⴇⴀ, այս է՝ Ⴇⴀⴅⴈ ⴄⴐⴈⴑⴇⴀⴅⴇⴀ յորջորջմամբ։ Մօրիկի սպանմամբ ծագած խռովութիւններէ վախցած՝ Պարսից լծոյն տակ մտաւ եւ այնուհետեւ Տփղիս կը նստէր հպատակ Պարսից։ Սակայն Հերակլի Վրաստան արշաւանաց եւ Տփղիսի պաշարման ժամանակ (յամի 624, իսկ ըստ Տարեգրոց 619) թէեւ ի սկզբան քաջութեամբ դիմակալեց Յունաց, բայց ապա ինկաւ պատերազմի մէջ եւ քաղաքն անցաւ Յունաց։ Մեռած ⴋⴇⴀⴅⴀⴐⴈⴑ յաջորդ կը կարգուի Հերակլի ձեռօք Ատրներսեհ, Վրաց վերջին թագաւոր Բակուր Գի որդին՝ Կախէթի իշխանը։*

*Ստեփանոսի վրայ բոլոր այս պատմուածները հարկ է այժմ այլազգ իմանալ, քանի որ իշխա-*

---

[1] *Հմմտ.* Hist. I. p. 223, n. 3.

[2] *Անդ*, p. 224.

նութեան տարիներն ամփոփեցինք 580—600 տարեաց մէջ։ Հետեւաբար որեւիցէ գործ չէր կրնար ունենալ Հերակղի հետ, որուն ի Վիրս արշաւանքն կատարուեցաւ յամի 624[1]։ Նոյնպէս խնդրական է Յունացմէ ապստամբելն Փոկասու օրով. Վիրք Պարսից տակն էին արդէն — գոնէ մասամբ՝ մինչեւ 604, երբ Խոսրով Բ յունական մասերն ալ գրաւեց։

Ատրներսեհ մթաւար անուանուելէ յետոյ — ըստ Տարեգրոց, շարունակեց Ջիբղայի, Հերակղի զօրավարի հետ, Տփղեաց հանդէպ բարձրացած Բերդին (Cala) պաշարումն, եւ զոր հանեց ի գլուխ։ Ատրներսեհ բարեպաշտ անձ մ'էր, իր օրով կը լմննայ Գուարամէ սկսուած Ս. Սիոն եւ Ս. Խաչ եկեղեցեաց շինութիւնքն[2]. Մահուընէ ետքը († 639) կը յաջորդէ իւր որդին Ստեփանոս (639—663)։ Այսչափ Ատրներսեհի մասին Տարեգիրք, որ չի գոհացըներ զմեզ։

Տարեգրոց ժամանակագրութիւնն անձիս համար ալ ուղիղ չի գար. հարկ է՝ զՍտեփանոս 600 իջեցընելով, իւր անմիջական յաջորդն զԱտրներսեհ կարգել, որով միայն հնարաւոր է հաշտուիլ ոչ-վրական յիշատակարանաց հետ։ Թղթոց գրոց մէջ յամի 606—8 իբրեւ առաջին նախարարներ կը յիշուին ի Վիրս “Ատրներսեհ եւ Վահան եւ Բրզմիհր„ (էջ 133, 138, 169) կամ “Ատրներսեհ եւ Աշուշան„ (էջ 170), “Ատրներսեհ եւ Վահան„ “եղբայր„ են (էջ 174)։ Ով է այս Ատրներսեհը. Թղթոց գրոց մէջ բռնած դիրքէն կը տեսնուի թէ իշխանաց գլխաւորն է, այս է մթաւարն Վրաց։ Թէեւ ոչ ժամանակաւ, սակայն պատմութեան կողմանէ համաձայն կու գայ այս անձը Բակուրի որդւոյն հետ. Տարեգիրք կը

1 Սեբ. 92—3։

2 Hist. I. p, 229—231.

վկայեն թէ Բակուր պատանի զաւակներ թողուց (p. 215), եւ թէ մին՝ Ատրներսեհ եղաւ ապա մթաւար (p. 227) յետ Ստեփանոսի. Թղթոց գրոց համեմատ ալ ունէր Ատրներսեհ եղբայր մը Վահան անուն, եւ թերեւս նաեւ Բրզմիհր [1] իւր եղբայրն էր:

Ատրներսեհի իշխանութեան ժամանակ շատ շփոթ կը ներկայանան մեզ Վրաստանի հանգամանքները: Արդէն յամի 598 խռովայոյզ ներքին վրդովմանց մէջ կը գտնուէր երկրին պարսկական մասն, թէ ի՞նչ էր պատճառն դժուարին է ճշդել, գիտենք միայն որ Կիւրիոն իւր առաջին քայլին իսկ ի Վիրս՝ այնպէս գտաւ երկիրը, բայց կը յաջողէր խաղաղցընել: Է դարու առաջին քառորդի յոյն-պարսկական թշնամական յարաբերութիւնք ընդգըրկել կու տան յունական բաժնի Վրաց պարսկական լուծն: Վասն զի Խոսրով Բ զայրացած

---

[1] Ոչ Վահան եւ ոչ Բրզմհր կը յիշատակուին այլուր պատմութեան մէջ: Յամի 627 կը յիշէն բիւզանդական պատմագիրք Barsamoases կամ Bazamuzis Վրաց իշխան մը (αρχῶν) հպատակ Պարսից, զոր կը ձերբակալէ Հերակղ (Hist. I. p. 226 ծան.): Անունս շատ մօտ կը թուի Բրզմհր անուան, եւ դժուարութիւն չենք տեսներ նոյնացընելու: Անծանօթ անուն մը չէ ընդհանրապէս Բրզմհր. յամի 605 կը յիշուի ասորի եպիսկոպոսաց ցանկի մը մէջ Burzmhir եպիսկոպոս Դասէնի (Beϑ Dasen), տես ZDMG, 43 (1889) p. 406, 408. Ուրիշ մ'ալ Մար Քարդաղի ասորերէն վկայաբանութեան մէջ, Analecta Bollandiana. IX (1890) p. 77, 83; անուանս առաջին մասը Բրզ ծանօթ է Բուրզ Հայ իշխանին (Խոր. 153, 172) անունէն, հմմտ. Nöldeke, Persische Studien ի Sitzungsberichte der k. Akademie der Wissenschaften zu Wien, Phil.-hist. Cl. 116 Bd. (1888) p. 400. դարձեալ Բուրզին-Միհր Պարսից 7 ատրուշաններէն միոյն անունն էր. Թիրեաքեան՝ Արտաշիր Բաբական Կարնամակ, էջ 4. եւ ծն. 42—3: — Աշուշանի մասին տես մեր յօդուածը "Աշուշայ բդեշխը". Հանդէս Ամս. 1907, էջ 121—126, 296—300:

Մօրիկ կայսեր սպանմամբն, զոր իրեն իբրեւ "Հայր" կը նկատէր, փոխարէն այն սիրոյն, որով հիւրընկալեց Մօրիկ Վահրամէն փախստականն եւ օգնեց կրկին ձեռք ձգելու գահը (591), անհաշտ թշնամութիւն հրատարակած էր Բիւզանդիոյ դէմ։ Փոկասէն վրէժխնդիր Պարսից զօրքն յամի 604 արդէն Յունաց սահմանն կոխած էր եւ մեծաքայլ կը յառաջանար։ Նոյն տարւան գարնան Դարա նուաճուած էր Խոսրովէն. յաջորդ տարին (605—6) Միջագետքն Պարսից հող դարձած էր[1]։ Ոչ շատ վերջն (607—8) տիրեցին նաեւ Հայաստանի եւ Վրաստանի մնացած մասերուն (Սեբ. 76—7 եւ Գ. Թղ. 167)։ Յամի 608—609, կը գրէ Թէոփանէս (անդ, էջ 456—7), "Պարսիկք Կարդարիգա զօրավարին առաջնորդութեամբ դուրս ելան եւ գրաւեցին զՀայաստան, զԿապադովկիա եւ զՊափղագոնիա, եւ հասան մինչեւ Քաղկեդոնի սահմանները, այնպէս որ Կ. Պոլսէն դուրս գրեթէ բոլոր Յունաստանի վրայ տարածած էին Պարսիկք իրենց բռնակալութիւնն"։ Եւ իրաւունք ունէր Կիւրիոն յամի 608 գրելու առ Աբրահամ (Գ. Թղ. 167) թէ "Արքայից արքայ նոյնպէս տէր է Հոռոմոց (որպէս Պարսից եւ մեր), որպէս եւ տիրեաց աշխարհի (այս է աշխարհին Հոռոմոց) եւ չէ այսպէս, որպէս դուք գրեցէքս (Գ. Թղ. 165), թէ որիշ որիշ թագաւորութիւնք են" (Պարսիցն եւ Հոռոմոց)։ Այսպէս մեծաքայլ կը յառաջանար Խոսրովու բանակը, թէեւ հոս եւ հոն ընդդէմ կը բաղխէին յունական զօրքն։ Արարատեան յունական բաժնի հայք ընդ առաջնորդութեամբ Վահրամայ հայու[2]

---

1 Հմմտ Th. Nöldeke, Die von Guidi herausgegebene syrische Chronik; übersetzt und commentirt. (Sitzungsberichte der k. Akad. der Wissenschaften. Phil.-hist. Cl. 128 Bd.) Wien 1893, p. 17, n. 2. Սեբ. 72–4.

2 Հմմտ. Գ. Թղ. էջ 171—173։ "Ո՞վ է, կը հարցնէ Բրոսսէ (Deux hist. p. 334, n. 1) այս Վահրամը, Զո-

կ'ապստամբէին (յամի 606/7) ահաճանակից վրական գաւառներն, եւ այսու մեծ «գիւտն» կը հասցընէին Վրաց եւ «Արեւոց արքային» (Գ. Թղ. 171)։ Այս խառնաշփոթ ժամանակը անուանուեցաւ մը կ'անուանուի «չար ժամանակ» (Գ. Թղ. 167)։ Վերը հաւաստարքին Տաճկացին միջեւ արքայից արքային, որ փոխարէն մեծ ոսկի ցուցուց Վրացիներուն։ Բայց ի քրիստոնէից շնորհած կրօնի ազատութենէն, Վրաց մասնաւոր առանութիւններ ալ ըրաւ, որ մեծապէս կենդանացուց երկրին բնակչութիւնը։ Մատղրութեան արժանի են առ այս Կիւրիոնի առ Աբրահամ յամի 608 գրած թղթերն խօսքերը (Գ. Թղ. 167). «Զի թէ ցայժմ խանդուզ էին աշխարհք, այժմ արջառք եւս առաւել երանելի եմք, որք յարքայից արքայի ծառայութեան հասեալ եմք։ Զի մինչ երկինք եւ երկիր լեալ էին, չէր եղեալ եւ ոչ մի ոք, որ ամենայն ազգի զիւր օրէնս ի վերայ թողեալ էր, որպէս այս արքայ եթող, եւ ճանապարհ ցուցէր փրկչաւո-

---

րին առողջ»։ Եւ կը պատասխանէ քաղաքական «Ոչ»։ «Այս անգամ թոյլ չի տար նկատել հոս զՎահրամ (Չոբին), ինչպէս կարելի էր համարել ժամանակակցութենէն (՞) Սա Հայ իշխան մը պիտի ըլլայ — թերեւս այլադաւան (իմա՛ յունադաւան եւն). որուն բնակութիւնն կը գտնուէր Տփղիսի եւ Մ. Յովհաննու վանքի (Կարրի) մէջերը» (անդ. p. 336. n. 7։) Կը սխալի ընդհանրապէս Բրոսէ, երբ Կիւրիոնի թղթակցութեանց մէջ յիշատակուած քաղաքական խնդիրը Վահրամ Չոբինի եւ Խոսրով Բի ժամանակներն (590—91) կը փոխադրէ, որ ծագած է դարձեալ Չամչեանի վրիպական ժամանակագրութեան հետեւելէ։

1 Հմմտ. այս նկատմամբ Nöldeke, Aus der Arabischen Chronik des Tabari. Leyden, 1879, p. 287. Սեբ. 120. Գ. Թղ. 167։ Տաբարիի խօսքերն են. «Ինչպէս կ'ըսուի, Պարուէզ Քրիստոնէից հրովարտակ մը գրեց, յորում իրենց թոյլ կու տար, որ իրենց եկեղեցիները կանգնեն եւ թէ ով որ կ'ուզէ կրնայ անոնց կրօնքին անցնիլ — բացի մոգերէ։

նէջից Հառաստ, իսկ աղաւաքն աշխարհն Մերայ ասէլի քան զամենայն աշխարհաց...։ Արտեներսեհ երջանիկ գտնուեցաւ մանաւանդ Կիւրիոնի մը պէս իմաստուն եւ շրջահայեաց կաթողիկոս մ՚ունենալով իրեն գործակից, որ արքայից արքայէն "աշխարհաւրձակ" կարգուած էր բովանդակ երկրին վրայ։ Իրաւամբ կրնար վկայել երկրին յառաջադիմութեան համար Կիւրիոն թէ "Այսօր (608)... քան զամենայն երկիր յառաջադէմ եմք մեք եւ ուղղափառ[1]"։

Այս յոյն-պարսկական պատերազմներն շարունակուեցան մինչեւ Հերակլի զօրանալն, որ յաջողութեամբ խորտակեց Պարսից բանակն, յառաջացաւ մինչեւ Տիզբոն եւ նուաճեց կրկին իւր իշխանութեան ներքեւ Վրաստանն ու Հայաստանք (յամս 624—630)։ Թէեւ քիչ վերջը խաղաղութիւնն հաստատուելով միւսանգամ՝ ըստ 591ի դաշին Վրաց մէկ մասն անցաւ Յունաց, մինչեւ որ ապա գրաւուեցաւ Արաբացիներէն։

Արտեներսեհ հանդիսատես էր այս ամէն արարուածներուն։ Տարեգիրք թէպէտ 639ին կը դնեն մահն, սակայն նա ըստ վկայութեան Մ. Կաղանկատուացւոյ[2], կենդանի էր տակաւին 645ին երբ "Ամենապատիւ այրն Արտեներսեհ իշխան աշխարհին (Վրաց), որ երբեակ գահերիցութիւն ի Հռովմայեցւոց թագաւորութենէն ունէր, դայր առ նա (առ Ջուանշիր Աղուանից իշխանն, որ Պարսից դէմ տարած յաղթութենէն դառնալու ժամանակ "առ սահմանօքն Վրաց" դադարած էր) եւ իւրովք պատէր զվէրս նորա" եւն։ Թէ ինչ պատիւ էր "երբեակ գահերիցութիւնն" չենք գիտեր, սակայն թէ ստուգիւ ունէր նա Հոռոմոց թա-

---

[1] ԱՐԲՏ, 1903, էջ 567։ Այսպէս գիտէ եւ Պրոկոպիոս Զ դարուն (De Bello Persico, I, 12), որ աստուածային օրինաց ճշգրիտ պահապաններ կը կոչէ վրացիները։

[2] Հրատ. Էմինի, էջ 141. հմմտ. եւ Hist. I. p 231 ն. գ։

գաւորէն պատիւ, այն կը տեսնուի նաեւ իւր օրով աւարտած Ս. Խաչ եկեղեցւոյն վրայ յամի 1847 Բրոսէի կարդացած արձանագրութենէն. եկեղեցւոյն Հարաւ-արեւելեան պատուհանին վրայ քանդակուած է. “Ս. Գաբրիէլ Հրեշտակապետ բարեխօսեա վասն Ատրներսեհի Ճի-ղատի¹„: Իշխանիս մահուան ճշգրիտ թուականն կարելի չէ որոշել, եւ արդէն մեր նպատակէն ալ դուրս կը մնայ այն, ինչպէս եւ Վրաստանի արքայական տիրապետութեան շրջանը:

## Աղբերք:

Սիւրիոնի կենսագրութեան համար կարեւոր է նաեւ գնահատում մ'այն աղբերաց, որոնք

¹ Brosset, Rapports sur un voyage archeologique dans la Géorgie et dans l'Arménie. St. Pétersbourg 1850, I. Rap. p. 48—50, եւ Hist. I, p. 232, n. 1. Բաց աստի եկեղեցւոյն կենդրոնական պատուհանին վրայ կայ “Ս. Վրիլա, գթա ի Ստեփանոս պատրիկ Վրաց:„ Հարաւ-արեւմտեան պատուհանին վրայ “Ս. Միքայէլ Հրեշտակապետ (գթա ի) Դեմետրէ„: Բրոսէ այս Ստեփանոսն կը միտի համարիլ Ստեփանոս Ա. Գուարամի որդին, նախորդն Ատրներսեհի. ըստ մեզ յունական շրջանի մէջ հարկ է փնտռել պատրիկս: Գիտենք որ Հարիբ Արաբացւոց զօրավարն երբ եկաւ Վրաստան յամի 654, երկրին իշխողն կը կոչուէր “պատրիկ„ (Hist. I. p. 245. Սեբ. 149): Դարձեալ ծանօթ է Տարեգրքէն թէ յամի 645—6 տակաւին կենդանի Ատրներսեհին յաջորդեց Ստեփանոս, որ առանց դժուարութեան մինչեւ 654 կրնար ի կեանս եւ յիշխանութեան ըլլալ: Ի՞նչ կը կասեցնէ զմեզ ուրեմն հօս զՍտեփանոս Բ ենթադրելու: Նոյնպէս զԴեմետրէ հարկ չկայ Տարեգրոց յիշած Ստեփանոսի (Ա) որդին ընդունիլ, ինչպէս կ'ուզէ Բրոսէ. Վարդան Պատմիչ մեզ յամի 656 կամ աւելի ետքը կը յիշէ “Դեմետրէ Վրաց արքայ„ մը (Պատմ. էջ 69), որ կրնայ նոյն ըլլալ այս Դեմետրէի հետ, որով եկեղեցւոյ արձանագրութիւնն երեք յաջորդ իշխանաց անուններն կը ներկայացընէ (Հմմտ. եւ Hist. I. p. 259 եւ Rapports, p. 49):

գլխաւորաբար պիտի մատակարարեն պատմական նիւթերը։ Երկու են այս տեսակէտով գլխաւոր աղբերք, 1. Թղթոց Գիրքն եւ 2. Ուխտանէս, երրորդ պիտի համարէի Վրաց Արսէն կաթողիկոսի (Ժ դար) գրութիւնն Վրաց Հայոցմէ բաժանման վրայ[1], եթէ ունենայի աչաց առջեւ զայն։ Երկրորդաբար միայն եւ շատ դոյզն նշանակութիւն ունին իրացս համար անազգանազգոյն պատմագիրք, որոնք ըստ դիպաց միայն կը զբաղին Կիւրիոնով, եւ այն մեծաւ մասամբ յեցած յիշեալ երկու աղբերաց վրայ. այսպէս Յովհ. Կաթողիկոս, Մ. Կաղանկատուացի, Կիրակոս Գանձակեցի, Վարդան, Ստ. Օրպէլեան, եւ այլք։

## 1. Թղթոց Գիրքը. Հաւաքիչն եւ հաւաքման ժամանակը

Ձեռագրաց հաւաքմանց մէջ յաճախ տեսնուած մատեաններէ մին է Թղթոց Գիրքն, ուր ամփոփուած կ'ըլլան ընդհանրապէս այլեւայլ անձանց պէսպէս առիթներու մէջ հասարակաց կամ անհատականներու խնդրոց նկատմամբ գրած թղթերը։ Ըստ հնութեան ձեռագրին եւ ըստ հանգամանաց գաղափարողին շատ անգամ իրարու աննման կ'ելլեն մեր առջեւ բովանդակութեամբն այս Թղթոց Գիրքերը։ Այս կարգի մատեաններէն նշանաւոր են Անտոնեան Հարց Օրինակն, Էջմիածնի Մատենադարանի կրկին Ձեռագիրներն, Անանիա Մոկացւոյ Գիրք Թղթոցն, Գր. Մագիստրոսի Նամականին, Ն. Շնորհալւոյ "Ընդհանրականը" եւն, որոնցմէ ոմանք հրատարակուած են ամբողջութեամբ եւ ոմանք մասամբ։ Վերջին ժամանակաց համար պէտք չէ մոռնալ Արժ. Գիւտ քհ. Աղանեանցի Դիւան Հայոց պատմութեան հատորաւոր ժողովածոյքն, ուր

---

[1] Հմմտ. ԱՐՐՏ. 1907, էջ 856։

ի մի ամփոփուած են ԺԸ—ԺԹ դարու Հայ կաթողիկոսաց կոնդակներն ևս։ Ի հարկէ այս “Գիրք Թղթոց„ կամ նման յորջորջմամբ մատեաններէ դուրս ալ կը գտնուին շատ մը թղթեր, որոնք կամ ձեռագիր կը մնան եւ կամ ցրիւ հրատարակուած են պարբերական հանդէսներու մէջ։ Հայագիտութեան մեծ ծառայութիւն է այս ամէնն ժամանակագրօրէն ընդարձակ հաւաքածոյի մէջ դասաւորած ի լոյս ընծայել։

Թղթոց Գիրքեր մեր մէջ շատ հին ժամանակներէ արդէն գոյութիւն ունէին, ամէնն ալ զուտ կրօնական բովանդակութեամբ։ Կրօնական այն անդադար վէճերն, որոնք Զ դարէն ի վեր տեւեցին, շատ դէպքերու մէջ համոզեցին Հայ վանականներն, որ հարկաւոր է յընթացս դարուց այսպիսի առթիւ գրուած թղթերն իբրեւ աստուածաբանական հեղինակաւոր աղբիւրներ, ի մի ամփոփել եւ հասարակաց մատչելի ընել։ Ժ դարուն արդէն ծանօթ էին Ուխտանէսի Գիրք Թղթոց անուան ներքեւ այլեւայլ ձեռագիրներ (Ուխտ. Բ. 92), եւ Ուխտանէսէն յառաջ Յովհ. Պատմաբան, Մովսէս Կաղանկատուացի կ'օգտուէին նման հաւաքածոներէ։ Բայց թէ երբ սկիզբ առին այսպիսի հաւաքածոներ եւ որուն ձեռօք, կարեւոր խնդիրներ են, որոնք կը կարօտին մասնաւոր քննութեան։

Ծանօթ Թղթոց Գիրքերէն հնագոյնն է առ այժմ Անտոնեան Հարց Օրինակն, որ ԺԳ դարէն (1298) է, Թովմայի գրչէն[1]։ Թովմաս, “զԱրբոց Հարցն պէսպէս եւ զանազան Թղթոց զԳիրս„ կամ “զՍ. Մատենս հաւաքեալ թղթոցս„, ինչպէս կը գրէ ինքը (էջ 538), օրինակած է անփոփոխ այն Օրինակին վրայէն, զոր գտած է ի Հռոմկլայ. սակայն այն Օրինակն (= C), ուսկից ընդօրինակած է, ԺԳ դարէն (1271էն) շատ յառաջ չէր կրնար

1 Հրտ. Տփղիս 1901, 8° էջք ԺԸ+584։

գրուած ըլլալ, վասն զի կը գտնուէին հոն արդէն Կոստանդին Կաթողիկոսի (1221—1267), Վարդան Պատմչի († 1271), Վանական Վարդապետի գրութիւնները։ Այս Օրինակն (C) ալ ուղղակի կամ միջնորդութեամբ ծագած է ԺԱ դարու Օրինակէ մը (= B), որ Գրիգոր Բ. Վկայասէրի (1065—1105) սեպհականութիւնն էր, ինչպէս կը տեսնուի էջ 219 գրուած Յիշատակարանէս. "Աւրինակ գրոց՝ որ լեալ էր Տէր Գրիգորիսի Վկայասիրին՝ մինչեւ ցայս վայր էր. եւ նա այսպէս էր գրեալ. ԶՎահրամ որդի Գրիգոր Մագիստրոսի յիշեսջիք յաղօթս ձեր, ով երջանիկ դասք ուղղափառաց խմբիցդ ազգանազգեան սեռի։ ՇԻԷ թուականին„ (= 1077)։ Այս ծանօթութեամբ C օրինակին գաղափարողն ուզած է իմացնել յետիններուս թէ իր առջեւի Օրինակն (B) հոս աւարտելով, յաջորդներն ինքն կը յաւելու այլեւայլ տեղերէ ժողովելով։ Շատ զգալի է այս եւ դիւրաւ պիտի համոզուինք, եթէ քննական ակնարկ մ'արձակենք 219 էջէն յառաջ եւ յետոյ դասուած թղթոց վրայ։ Մինչ հոն առաջին խնամօք դասուած մէն մի թուղթ՝ ժամանակագրօրէն կը յաջորդեն իրարու Ե—Է դարուց թղթակցութիւնք, հոս հակառակէն խառնակոյտ մ'է ամենայն ինչ. չկայ ժամանակագրական կարգ. չկայ անձի եւ անձի խտրութիւն, հարազատ կամ անհարազատ թըղթոց ընտրութիւն եւն։ Է դարու առաջին տասնեակէն ոստում կ'ըլլուի Ը դար, եւ ի մէջ կը բերուի Յովհաննու իմաստասիրի ընծայուած անհարազատ պատմութիւնն Մանազկերտի 726ի ժողովոյն[1]։ Քիչ վերջը կու գայ Յովհ. Մանդակունւոյ Վասն պահոց ճառին մէկ հատուածն, ապա Կեղեստինոս քահանայապետին առ Նեստոր թուղթն, Պետրոսի եւ Ակակայ թղթակցութիւնքն եւն։ Կր

---

[1] Հմմտ. Հանդ. Ամս. 1905, էջ 361—65.

պակսին շատ մը թղթեր, որ այլուստ ծանօթ են, մէկ խօսքով բացայայտ յերեւան կ'ելլէ ամէնուն աչաց առջեւ թէ C-ի ընդօրինակողն առանց կանխաւ ծրագրելու կարգն եւն, ձեռքն անցածը գրած է իւր օրինակին մէջ: Այս իսկ պատճառաւ հարկ է ի բաց յապաւել հնագոյն Թղթոց գրքէն իբրեւ յաւելուած 219էն ասդին եղած թղթերն, որով էջ 1—219 մասն՝ իբրեւ նախնական հաւաքածոյին (A) ամենամերձաւոր խմբագրութիւնն (B) կը ներկայանայ: Գրիգոր Վկայասէրի Օրինակն (B) թէեւ որ դարու ընդօրինակութիւն ըլլալն անծանօթ է, այսու հանդերձ A սկզբնական Օրինակին շատ աննման չ'երեւար, նկատելով ժամանակագրական կարգն եւ այլ պատմագրաց ծանօթութեան հետ միաբանութիւնն, որ վկայ է միանգամայն ամբողջութեան: Ուխտանէս Սմբատ Վրկանի մարզպանի առ Կիւրիոն գրած թուղթն իւր Թղթոց գրքին մէջ ուրիշ տեղ դասաւորուած տեսնելով, կը համեմատէ ուրիշ ձեռագրաց հետ եւ կը գտնէ ճիշդ տեղն հոն, ուր դասուած է Անտոնեան Հարց Օրինակին մէջ[1]: Այս ամէնն աչաց առջեւ ունենալով կարելի է ծանօթ Թղթոց գրոց ծագումն մեկնել այսպէս. A սկզբնագիր օրինակէն ծագած է B Գրիգոր Վկայասէրի Ձեռագիրն, որմէ անծանօթ գրիչ մը ընդօրինակած է C օրինակն, որուն անփոփոխ պատճէնն է D, Թովմայի գաղափարն՝ Անտոնեան հարց օրինակն, ուսկից ծագում առած են Վենետիկի եւ Ջալալեանցի օրինակներն:

Չեմ կրնար ճշդիւ բան մ'ըսել Էջմիածնի կրկին Ձեռագրաց մասին, որոնք հաւանականա-

1 "Զթուղթն Սմբատայ Վրկան մարզպանի ոչ գտայ ի կարգի գրեալ ի Գիրս թղթոցն՝ յորում հանդիպեցաք... խնդրեալ յայլ Օրինակի, գտաք այնպէս որպէս կարծէաք„ Ուխտ. Բ. 92:

գոյնս C-է (կամ D-է) ծագած են։ Խնդրոյ նիւթ չեն կրնար ըլլալ նմանապէս Թղթոց գրքէն օրինակուած հատուածներն, քանի որ այդպիսիք չեն կազմեր Գիրք Թղթոց։ Օրինակի համար մեր Մատ. Թ. 610 Ձեռագիրն կը պարունակէ Աբրահամու եւ Կիւրիոնի թղթակցութիւնքն, որոնք առանց տարակուսի օրինակուած են D է, եւ այն երբ արդէն թերի էր Ձեռագիրն (D)։

Այս վիճակի մէջ նկատելով Գ. Թղթոցն շատ դոյզն բովանդակութեամբ կը ներկայանայ, թէեւ ամենէն կարեւոր եւ հնագոյն յիշատակարաններով։ Այս բովանդակութեամբ ծանօթ էր հաւաքումս նաեւ հնագոյն պատմագրաց՝ Յովհ. Կաթողիկոսի, Մ. Կաղանկատուացւոյ, Ուխտանիսի եւն, որ կը հետեւի այն պարագայէն որ մինչեւ էջ 219 ամփոփուած թղթերէն երկար կոչումներ կ՚ընեն, իսկ 220 իջին վրայ գրուած "Սակս Ժողովոց Հայոց„ գրութեան ամենեւին անծանօթ կը ցուցընեն ինք զինքնին։

B օրինակին մէջ վերջին հատուածն է Կոմիտաս Կաթողիկոսի յամի 615 Ասորւոց ոմանց տուած հաւատոյ թուղթն, իսկ ասկէ նախորդներն Աբրահամու՝ Կոմիտասի նախորդ կաթողիկոսի թղթերն են։ Այս բովանդակութիւնն ի նկատի առնելով պէտք ենք ըսել թէ Է դարու առաջին քառորդն ամենէն վերջին եզրն է Թղթոց գրոց հաւաքման ժամանակի։ Խաչիկ Վ. Դադեան (ԱՐՐՏ 1896, էջ 23) հետեւելով Ստ. Օրպէլեանի, Թղթոց գրոց հաւաքումն կը դնէ Ժ դարուն, Անանիա Մոկացւոյ ձեռօք։ Բայց Օրպէլեանի խօսքերն ուրիշ հաւաքման մասին են. խօսելով պատմագիրս Անանիա Մոկացւոյ ժամանակ յուզուած խնդրոյ մասին կը շարունակէ. "Եւ կնքեալ զայս վճիռ իւրեանց մատեանեաւ (իշխանքն Սիւնեաց)՝ ետուն ի ձեռս կաթողիկոսին (Անանիայ), զոր աւելորդ համարեցաք գրել, զի կան լիով գրեալքն ի Գիրս Թղթոցն,

զոր ժողովեալ է նոյն Անանիա, որ Հաւատոյ նամակ անուանի» (Օրբէլ. էջ 208)։ Անանիայի Թղթոց Գրքին բոլորովին տարբեր հաւաքում է Ճառելի Թղթոց Գրքէն, եւ զոր հրատարակեց Գ. Տէր-Մկրտչեան Արարատի մէջ վերջերս[1]։

Ուրիշ գիտնական մը կանոնագրաց հաւաքչին՝ Յ. Օձնեցւոյ ընծայած է՝ ենթադրութեամբ — Թղթոց Գրոց Յառաջաբանին մէջ (էջ Ե), որ նոյնպէս անտեղի է. այլապէս հարկ կ՚ըլլայ հարցընել թէ ի՞նչ պատճառաւ Կոմիտասէն մինչեւ Օձնեցի Է—Ը դարուց հայրապետներու թղթերն ի բաց ձգուած են. յետինդարեան հաւաքչի մը դիւրագոյն էր մօտ ժամանակաց թղթերն հաւաքել, քան հեռաւոր Ե—Է դարուց։

Թղթոց Գրոց մէջ մեծ տեղ գրաւած են կիւրիոնի առթիւ գրուած թղթակցութիւնք եւ այս թղթակցութիւնք կը գտնուին գրեթէ ամբողջութեամբ — ժամանակագրօրէն կարգադրուած։ Այս պարագան կը ցուցընէ թէ ժամանակակից եւ խնդրոյս մէջ մտնող անձի մը միջամտութիւնն կայ։ Մովսէս եպիսկոպոսն է այդ անձը։

Մովսէս Գուգարաց Ցուրտաւ մայրաքաղաքի եպիսկոպոսն էր (ձեռնադրուած յամի 600), որ ինչպէս վարն առիթ պիտի ունենանք տեսնելու, 605ին ձմեռը Հայաստան փախած էր եւ Արագածոտն գաւառի Ս. Յովհաննու Մկրտչի վանքն (ի Կարբի) դադար առած, ուր գրեթէ տարի մը մնաց։ Այս տեղէն յաճախակի թղթակցութեան մէջ էր Վրթանէս Տեղապահին հետ, եւ հօս խորհուրդ յղացաւ մինչեւ իւր ժամանակ գրուած կրօնական թղթոց հաւաքածոյ մը կազմել։ Առ այս դիմեց նա թղթով այլ եւ այլ վանքեր եւ անհատներ, եւ քիչ ժամանակէն ձեռք անցուց բազմաթիւ թղթերու պատճեններ։ Վրթանէս Տեղա-

---

1) ԱՐՐՏ 1897, էջ 91-96, 129-144, 275—288։

պահն ալ բաւական նպաստեց Հաւաքածոյս իւր կողմանէ՝ կաթողիկոսարանի դիւանին մնացած վաւերագրերն խուզելով, ինչպէս նաեւ իրեն գրուած եւ իւր գրած կրօնական բովանդակութեամբ թըղթերն։ Լսենք այս նկատմամբ ինքնին Մովսիսի, որ անձամբ կը պատմէ առ Վրթանէս երրորդ թղթին մէջ այսպէս (Գ. Թղ. էջ 140). "Եւ զայս եւս աղաչեմ զՏէր, զգիրս երանելոյն Տիմոթէոսի բովանդակ առաքեսցես, եւ թուղթն որ է առ սուրբ եկեղեցւոյն Երուսաղէմ փոխան շահենայն գրեցի։ Հայրն առ Իս. Եւ այլ թուղթն Բողոնդեայ եկեղեցւոյ եկեղեցւոյ երանելի Վարդապետացն, որք յանդիմանեն եւ նզովեն զժողովն երկաբնակացն"։ Մովսէս կը խնդրէ սոյն թղթովս նաեւ թէ ինչպէս Քաղկեդոնի ժողովոյն սահմանին Զենոնէն եւ Անաստասէն խափանուելէ ետքը նորէն տարածուեցաւ, -որպէս անեղծ կացեալ է սրբութիւնդ ձեր, հրամայեցէք գրել առ մեր նուաստութիւն" (էջ 140)։ Վրթանէս կը կատարէ խնդիրքն առանձին թղթով մը, զոր կը կցէ Մովսէս իւր ժողովածոյին (էջ 141—145)։ Այսպէս ընդարձակ Հաւաքածոյ մը կազմելէ ետքը, յընթացս ժամանակի իւր կենդանութեան օրով գրուած թղթերն ալ միացուցած է. եւ այս պատճառաւ ալ ամբողջապէս կը գտնուին հոն իւր գրած եւ իրեն առթիւ գրուած բոլոր թղթերն ժամանակագրական կարգաւ։ Այս վախճանաւ էր նաեւ որ յաճախ կը խնդրէր Վրթանէսէն առ Կիւրիոն եւն գրուած թղթերու պատճէններն։ Եթէ կը պակսի Հաւաքածոյս մէջ քանի մը այլուստ ծանօթ թղթեր, պատճառն ձեռք ձգելու անկարելիութիւնն եղած է անշուշտ. այսպէս չկան հոն 506ին Բաբկէնի օրով Դունայ ժողովոյն մէջ գրուած թուղթն, որ այրած էր 572ի Դունայ հրդեհին. նոյնպէս Երուսաղէմայ Յովհաննէս հայրապետի առ Աբաս, Վրաց ազատներու առ Վրթանէս թղթերն, վերջինս Վրթանէս դիտմամբ չէր խաւրած Մովսիսի։

Թղթոց Գրքին այսպիսի քննութեամբ կը ստանայ խորին հնութիւն, որով բովանդակած շատ մը կասկածելի գրութիւնք ալ կը սահմանափակուին որոշ եզրով մը։ Սակայն մենք չենք կրնար երաշխաւորել էջ 22—28 "Երանելի մեծի քերդողահօրն Մովսիսի Խորենացի եպիսկոպոսի„ ընծայուած գրութեան հնութեան, նոյնպէս ատոր յաջորդող "Երանելոյն Յովհաննու Հայոց եպիսկոպոսապետի ապացոյց յերկուց բնութեանց ասել զՓրկիչն եւ կամ մի բնութիւն„ (էջ 29—40) գրուածքին, որոնք յետնագոյն դարուց տիպն կ'երեւցընեն վրանին։ Այժմեան C—D օրինակին մէջ ի միջի այլոց կը գտնուին Ակակայ եւ Պետրոսի թղթակցութիւնքն, Զենոնի եւ Անաստասայ թղթերն. արդեօք հին հաւաքման մէջ (A) չկայի՞ն ատոնք։ Մովսէս իւր ձեռքն ունէր Տիմոթէոս Կուզի գրութեան հետ զատոնք ալ. բայց թէ կցա՞ծ է իւր հաւաքման, չեմ կրնար տալ գոհացուցիչ պատասխան մը։

Այսչափ Թղթոց Գրքի մասին յընդհանուրն. մեր նպատակին համար ուշադրութեան արժանի են յատկապէս այս գրոց 110—195 էջերն, որոնք նուիրուած են ամբողջապէս Եդարու առաջին տասնեակի խնդրոց — Վրաց Հայոցմէ բաժնուելու պատմութեան։ Բովանդակութեան կը ծանօթանանք, երբ զբաղինք Կիւրիոնով, հոս պիտի խնդրուի մեզմէ այդ էջերու վաւերականութիւնն։ Այս կէտն սակայն պէտք չենք տեսներ մանր քննութեան առնուլ, քանի որ ըստ մեր համոզման՝ թղթոցս հաւաքումն արդէն այն ժամակն կը շօշափէ, յորում կատարուած են իրք, եւ հաւաքիչն Մովսէս ինքնին գլխաւոր անձերէն մին էր խնդրոցս մէջ։ Թերեւս օրինաւոր ըլլայ կասկածն հաւաքչիս անկեղծութեան մասին, որուն քով սակայն մեր քննութիւնն չի կրնար նոյնպէս երկար դեգերիլ, քանի որ ուրիշ ժամանակակից աղբիւր չի

բղխեր։ Այլ մնայ մեզ միայն այդ էջերու մէջ հրատարակուած թղթոց ժամանակագրութիւնն ստուգել։

1. Ա. թուղթն Մովսիսի առ Վրթանէս (էջ 110—111) գրուեցաւ Ս. Յովհաննու Մկրտչի վանքէն յամի 605/6 ձմեռը, երբ վախճանած ըլլալով Մովսէս կաթողիկոս († 604) "ի ժամուս յառաջնորդութենէ զրկեալ է աշխարհս Հայոց„ (էջ 111)։ Ըստ Ուխտանիսի (Բ. 16) Մովսէս կաթողիկոսի մահուընէ երկու տարի վերջը (604+2 =) 606ին կը պատահի։

2. Ա. պատասխանն Վրթանիսի (էջ 112) նոյն տարին 606ին, երբ "ի մօտէ աւուրս կաթուղիկոս կամին նստուցանել„ (էջ 112)։

3. Թուղթ շրջագայական Մովսիսի առ եկեղեցին Յուրտաւայ (էջ 113—127), 606 տարւոյն սկիզբները, Վրթանիսի Ա. պատասխանէն ոչ շատ վերջը։

4. Մովսիսի թղթոյն պատասխանն (էջ 128—129) 606ին։

5. Թուղթ Վրթանիսի առ եկեղեցին Յուրտաւայ (էջ 130 - 131) նոյն տարւոյն սկիզբները։

6. Վրթանիսի թղթոյն պատասխանն (էջ 132) նոյն 606 տարւոյն։

7. Բ. թուղթ Մովսիսի առ Վրթանէս (էջ 133—4) 606ին՝ գարնան։

8. Բ. պատասխան Վրթանիսի (էջ 135) նոյն միջոցները։

9. Թուղթ Վրթանիսի առ Պետրոս (էջ 136—7) եւ Կիւրիոն (էջ 138—9) 606ին՝ ամառը։

10. Գ. թուղթ Մովսիսի առ Վրթանէս (էջ 140) 606ին ամառը։

11. Գ. պատասխան Վրթանիսի (էջ 141—145) 606ին ամառը, երբ "ի ժամուս պնդեալ են առաջնորդ կարգել„ (էջ 141), որ չյաջողեցաւ,

Հմմտ. էջ 146։ — 607 ապրիլին կ'ընտրուի Աբրա-
համ Թշտունեաց եպիսկոպոսն կաթողիկոս։

12. Թուղթ Մովսիսի առ Աբրահամ (էջ 161—2) 607 Մայիսէն ետքը, ըստ Ուխտանիսի (էջ 72) "յետ ութից ամսոց անցելոց", անշուշտ՝ ի վերայ ընտրութեան կաթողիկոսին, ըստ այսմ 607 Ապր. + 8 ամիս = 607 Նոյ. Դեկտեմբեր։

13. Աբրահամու պատասխանն (էջ 163) 607 Դեկտ. — 608 Փետրուար, Զատկէն յառաջ. "մի՛ դանդաղիցիս ի Ս. Զատիկն (Ապր. 22) գալ այսր" կը գրէ Աբրահամ (էջ 163), "մինչդեռ Տէր Սմբատ աստէն է" ի Դուին. Հմմտ. եւ Ուխտ. 73։

14. Ա. Թուղթ Աբրահամու առ Կիւրիոն (էջ 164—165) 608ին, Զատկէն յառաջ։

15. Թուղթ Սմբատայ առ Կիւրիոն (էջ 168—169) վերջնոյն հետ միաժամանակ։

16. Ա պատասխանն Կիւրիոնի առ Աբրահամ (էջ 116—7) եւ

17. Պատասխանն Սմբատայ թղթին (էջ 170 171), նոյն 608ին, Զատկէն յառաջ, երբ Սմբատ մեկնած էր արդէն ի Դուռն "յանցանել ձմերան-ւոյն ի գալ գարնայնւոյն ժամանակի" Սեբ. 64։

18. Առ Տէր Սմբատ ի Մովսիսէ (էջ 172—3), 608ին, Զատկէն յառաջ, երբ Սմբատ ճամբայ ելած էր արդէն Դունէն, Կիւրիոնի Ա թղթէն վերջը։

19. Սմբատի պատասխանն (էջ 174—175) 609 գարնան, կը գրէ Սմբատ ճամբու վրայէն. "Արդ զիս աւասիկ փութով ի Դուռն խնդրեալ է" (էջ 174)։

20. Բ թուղթ Աբրահամու առ Կիւրիոն (էջ 176—7), 608 Զատկէն յառաջ. Հմմտ. Սմբատայ տողերս առ Մովսէս. "Թող զի գրէ (Աբր.) երկիցս եւ երիցս անգամ" (էջ 174) եւ Աբրահամու առ

Կիւրիոն խօսքերս. «Պատմեա՛ ինձ վասն անդորոյ ի քո սահմանի կամ ի մեր, որ չեք ուշոյ Ջաւախէն զմիմեանս տեսանեմք» (էջ 177)։

21. Բ պատասխան Կիւրիոնի առ Աբրահամ (էջ 178—9), անշուշտ Ջաւախէն ետքը։

22. Գ թուղթ Աբրահամու առ Կիւրիոն (էջ 180—184, Ուխտ. Բ. 83—7), 608 Մայիսին։

23. Գ պատասխան Կիւրիոնի (էջ 185—88, Ուխտ. 87—8. եւ ԱՐՐՏ. 1902, էջ 566 - 9) 608 Մայիս-Օգոստոս. Աբրահամու Գ թղթէն բաւական ետքը, վասն զի պատասխանին համար թղթակցած է Կիւրիոն նաեւ Երուսաղէմի Հայրապետին հետ։

24. Թուղթ շրջագայական Աբրահամու (էջ 189—195), Կիւրիոնի Գ պատասխանէն վերջն՝ ընդ մէջ 608/9 ամաց։

Այս ժամանակագրութիւնն ի հարկէ պէտք է իմանալ մերձաւորապէս. թղթոցս մէջ որ եւ իցէ թուականի յայտնի յիշատակութիւն չկայ։

## 2. *Ուխտանէս եպիսկոպոս պատմագիր:*

*„Habent sua fata libelli“.*

Հռովմայեցի բանաստեղծ Տերենտիոս Մաւրոսի առածն ամենայն պատշաճութեամբ կրնայ առնուիլ առաջիկայ պատմագրիս երկասիրութեանց վրայ ալ, որոնք Բախտի դժնդակ հարուածն կրած են շատ զգալի օրինակաւ. Ուխտանէսի երեքմասնեայ պատմագրութեան երկու մասերն միայն հասած են մեր ձեռքն՝ ծանօթ մի միակ Ձեռագրի մէջ, երկրորդն ալ թերի ի վերջոյ։ Ձեռագիրն կը գտնուի Էջմիածնի Մատենադարանն՝ ըստ Կարենեանցի Ցուցակին 1675 եւ ըստ Նորագոյն կարգադրութեան[1] 1717 թուով, զոր Կարենեանց

[1] Հանդէս Հայագիտութեան. Բ (1904) էջ 36։

կը ցուցակագրէ. “Ուխտանէս եպ. Ուռհայեցւոց՝ Պատմութիւն, քառածալ, բոլորագիր՝ գրեալ ի թղթի, պարունակին ի սմին հարցմունք ինչ ի գիրն Ցօբայ, չունի զյիշատակարան, ի վերջն ունի թերութիւն„ (Ցուց. 186)։ Ասկէ ծագած է Ասիական Միւսէոնի մաքուր նորագիր Ձեռագիրն[1] (յամէ 1847)։ Վերջնոյս վրայէն կատարած է Բրոսէ իւր ուսումնասիրութիւնքն Վրաց բաժանման պատմութեան[2], Ծագման[3] եւ Ուխտանէսի գրոց[4] վրայ, որուն այս ամբողջական գաղղիերէն թարգմանութիւնն ալ ըրաւ[5]։ Հայերէն բնագիրն հազիւ 1871ին՝ ոչ լաւ խնամեալ՝ լոյս տեսաւ երկու հատորի մէջ Էջմիածնի մամուլէն[6]։

---

1 Brosset, Deux hist. Intr. p. VII.

2 M. Brosset: Histoire de la scission religieuse entre les Géorgiens et les Arméniens depuis la fin du VIe siècle, ի գիրս Additions et Eclaircissements à l'Histoire de la Géorgie. St. Pétersb. 1851, pp. 107–125.

3 -- Examen d'un passage de l'historien arménien Oukhtanès, relatif à la prétandue conquête „de l'Iberie par Nabuchodonosor, ի Mélanges Asiatiques, t. V (1864) p. 742–760 (= Bulletin de l'Acad. Imp. des Sciences de St. Pétersb. t. XIII, 248—260).

4 — Etudes sur l'historien arménien Oukhtanès ի Mél. As. t. VI (1868), p. 13–(33) 89 (= Bulletin, t. XIII, 401—454), որ այս փոքր փոփոխութեամբ ներածութիւնն կազմեց յետագայ գործոյն։

5 Deux historiens arménien, Kiracos de Gantzac, XIIIe siècle, Histoire d'Arménie; Oukhtanès d'Ourha, Xe s., Histoire en trois parties, traduits par M. Brosset. 1re livraison, St. Pétersbourg 1870, 4⁰ pp. 1–276 (Ուխտ. Ա. մասն էջ 296—276), 2me livr. 1871, pp. LXIII + 277–351 (Ներածութիւն մը Ուխտ. գրոց վրայ, հմմտ. վերը ծան. 5, եւ Թարգմ. Բ. գրոց)։

6 Ուխտանէս եպիսկոպոս. Հատ. Ա. Պատմութիւն Հայոց. Բ. Պատմ. Բաժանման Վրաց ի Հայոց. Վաղարշապատ. 1871, 8⁰ էջք Բ+116+141։

Գրուածքս՝ Հակառակ օրինակաց նուազութեան՝ հետաքրքրական բովանդակութեամբն չէ վրիպած հին — ԺԳ — ԺԴ դարու պատմագրաց ուշադրութենէն, եւ առ հասարակ գովութեամբ կը յիշատակուի ամէնէն։ Նախ քան ընդգրկած նիւթն քննելը, նկատենք հեղինակին ժամանակն եւ անձնաւորութիւնն, որոնք տակաւին չեն ենթարկուած մանր հետազօտութեան[1]։

Ուխտանիսի կենսագրութեան համար մեր ձեռքն կարեւոր աղբիւր կը բղխէ իւր անուամբ մեզ հասած մատենին Ա. հատուածի Ա. գլուխն, որ ընծայական մ՚է առ խնդրողն Անանիա Նարեկացի։ Առանց սոր շատ չնչին պիտի ըլլային մեր տեղեկութիւնքն իւր ժամանակի եւ անձին վրայ։ ԺԳ—ԺԴ դարու պատմագրաց հետեւելով՝ որոնց քով կը յիշատակուի առաջին անգամ Ուխտանէս՝ կը ներկայանայ մատենագիրս Ժ դարու հեղինակ մը, ըստ Կիր. Գանձակեցւոյ (էջ 4) ապրած Մովսէս Կաղանկատուացիէն ետքը եւ Ասողկէն յառաջ, եւ ըստ Մխիթար Այրիվանեցւոյ (էջ 37) ընդ մէջ Ղեւոնդեայ եւ Յովհ. Պատմաբանի։ Մխիթար աւելի ճշդութեամբ կը գրէ ժամանակագրութեան մէջ — "Աստ (յամին 981) Աղուանից պատմագիրն Մովսէս Կաղանկատուացի եւ Գր. Նարեկացի եւ Ուխտանէս պատմագիր„ (էջ 71)։ Նորագոյններէն Յակոբ Այուբեանց կը յիշէ Կաղանկատուացւոյ եւ Թովմ. Արծրունւոյ մէջտեղ[2]։ Անորոշ ժամանակս ստուգելու համար գեղեցիկ միջոց հայթայթած է արդէն ինքն հեղինակն զուարճաբանութեամբ մը յիշեցընելով Անանիա

---

[1] Ուխտանիսի մասին համեմատէ՝ Պատմ. Հայկ. հին Դպր. Վենետ. 1897, էջ 555–560։ — Հ. Ղ. Ալիշան Հայապատում, Վենետ. 1901, 8° Մասն Ա. § 59 էջ 206–209)։

[2] Հմմտ. Գալէմքեարեան Հ. Գ.՝ Պատմ. Հայ. Լրագրութեան. Ա. 206։

Նարեկացւոյ այն բոպէն, երբ խնդրած է սա իրմէ ճառելի պատմագրութիւն: "Յորժամ եկիր առ աստուածապատիւ եւ սուրբ հայրապետն մեր Խաչիկ՝ բերելով նմա ընծայ ... զգիրս Հաւատարմատ, ընդդէմ երկաբնակացն ... եւ բերան ի բերան խօսեցար ընդ իս յաղագս պատմութեանս. եւ եթէ խնդրես զանեղին ուսանել, առաջից նաեւ զբանից նշանն ... յորժամ անցեալ գնացեալ ի միասին եւ նստէաք յեզր գետոյն, որ կոչի Ախուրեան ... յաւուրս ամարայնոյ, յամսեանն Տրէ, որ օր տասն ու մին էր ամսոյն, յաւուր կիրակէի յիններորդ ժամուն" (էջ 11—12): Առանց տարակուսի հոս խօսքն Խաչիկ Ա. Կաթողիկոսի վրայ է, որուն գահակալութեան տարիներն ըստ Ասողկան կ'ամփոփուին 972—991 ամաց մէջ: Արդ այս քսանամեայ շրջանին մէջ Տրէի 11ն (= Յուլիս 3—6) կիրակի կրնար հանդիպիլ, ինչպէս կը նկատէ Բրոսէ (Intr. p. IX) միայն 973, 980 եւ 987 տարեաց մէջ: Այս 973—987 տակաւին անորոշ ժամանակն աւելի կարելի է ճշգրտել ընդունելով Խաչիկ կաթողիկոսի գահակալութեան տարիներն ըստ Մ. Ուռհայեցւոյ, որուն տուած Կաթողիկոսաց ժամանակագրութիւնն մեծապէս կը տարբերի Ասողկան ժամանակագրութենէն: Ըստ Մ. Ուռհայեցւոյ Խաչիկ Ա. ընտրուած է կաթ. Հայոց ՆԼԴ (985) թուին (էջ 38, տպ. Էջմ.) եւ վախճանած ՆԽ (991) թուին "կացեալ յաթոռն հայրապետութեան Հայոց ամս վեց" (էջ 40): Այս հաշուի համաձայն Ուխտանիսի յիշատակած Կիւրակէն միայն 987ինը կրնար ըլլալ: Բայց թերեւս testis unus testis nullus. Ուռհայեցին չունի ուրիշ վկայ[1]. բոլոր պատմագիրք —

---

1 Սմբատայ Տարեգրութիւնն հոս ի նկատի չենք առնուր, որ աշխարհաբար թարգմանութիւն մ'է լոկ Մ. Ուռհայեցւոյ գործոյն:

— ի Հարկէ անագանագոյնք, կը հետեւին Ասողկան, որուն հետ միաբան է նաեւ Մեսրոպ երիցու յիշատակարանն, որ գրուած կ'ըսուի «յամի ՆԺԶ (967) ի վերագիտողութեան Վահանայ Հայոց Կաթողիկոսի»[1]: 967ին կաթողիկոս Վահան՝ ըստ Ասողկան ժամանակագրութեան է, որ ՆԺԴին (965) Անանիա Մոկացւոյ յաջորդն կը կարգէ եւ մահն կը համարի անոր հակառակաթոռ Ստեփանոսի (յամէ 967) հետ «ի միում ամի» (Ասող. 181—2) ՆԻԱ (972) թուին: Ասոնց կը յաջորդէ Խաչիկ նոյն տարին — 972ին: Մինչ ըստ Ուռհայեցւոյ (էջ 33) Վահան կը նստի 976ին Անանիայի մահուընէ († ՆԻԵ 976) ետքը եւ հինգ (այլ 22. Էջմ.) տարի վարելէ յետոյ կը վախճանի ՆԼԲ (983) թուին (էջ 34) յաջորդ նշանակելով զՍտեփանոս († 985). որմէ ետքը եկաւ արդէն Խաչիկ, որուն մահուան մասին միաբան են երկուքն ալ: Ուռհայեցւոյ ժամանակագրութեան հակառակ կ'երեւայ նաեւ Խաչիկ Կաթողիկոսի անունն կրող հրովարտակն յամէ 976, եթէ չէ բնաւ կեղծիք, ինչպէս հաւանական կը թուի ինձ[2]: Չեմ կրնար հոս մէկն կամ միւսն ճշդագոյն համարիլ, երկու պատմագիրներն ալ հեղինակաւոր են. Ուռհայեցւոյ ի նպաստ որչափ ալ ծանր վկայ կը պակսի, բայց խնդրոյս մէջ աննշանակ պէտք չէ համարիլ Ցայսմաւուրաց մէկ տեղին, ուր խօսելով Նարեկացւոյ մասին՝ իր օրով յամի ՆԼԲ (983) կաթողիկոս կը նշանակուի Վահան[3]. կէտ մը, որ միայն Ուռհայեցւոյ ժամանակագրութեամբ կրնայ մեկնուիլ: Ցամենայն դէպս անդրագոյն քննութեան կարօտ կէտ մ'է այս Ուխտանիսի

---

1 Սոփերք Զ, էջ 138: Պատմ. Հայկ. Հին Դպր. 561:

2 Հրտ. ԱՐՐՏ, 1868, էջ 31–34:

3 Տաշեան՝ Ցուցակ, էջ 77: Նոյնպէս է թ. 592ին մէջ ալ:

ակնարկած թուականին առեղծման համար։ Պատմագիրն իւր օրով Հայոց թագաւոր կը յիշէ Սմբատ (Ա. էջ 14), որ Սմբատ Բ պիտի ըլլայ (977—989), կոուան մ'ալ, որով դարձեալ 987 կը բարձրանանք, առաթուր կոխած 973ը եւ Հարեւանցի անցած 980ի քովէն։

Այսու Ուխտանէս կը ներկայանայ 987ին (980) մատենագրող պատմագիր մը, ժամանակակից Սմբատ Բի եւ Խաչիկ առաջնոյ։ Բայց զարմանալի կերպով ժամանակակից պատմագիրք կը լռեն իւր մասին։

Ինք զինքն կը յորջորջէ հեղինակս "Ուխտանէս անուանեալ" (Ա. 10, հմմտ. եւ էջ 1, Բ. 3), եւ այսպէս ալ ծանօթ է յետին ժամանակի պատմագրաց (Կիր. 4, 26, Օրպէլ. 72, 77, Այրիվ. 37, 71 եւն). Վարդան (էջ 58) միայն ունի "Ուխթանէս"։ Թէեւ ըստ Հ. Ալիշանի "Նորալուր" անուն կ'երեւայ "մեր ազգին մէջ, ծագմամբ աւելի յոյն թուի քան հայ ու-խտ բառէն" (Հայապ. Ա. § 59), բայց ոչ ճշդութեամբ։ Աղուանից Պատմութեան մէջ անուանի անձերէն էր "Ուխտանէս Աղուանից կաթողիկոսն" Է դարուն (հմմտ. Մ. Կաղանկատ. 146, 161, 6, 198—170, 211, 275), եւ դեռ ԺԳ դարուն կը պատահինք այս կողմերն "Ուխտանէս" Վարդապետի[1]։ Ծագումն չէ փորձուած տակաւին մեկնել[2], բայց որ-

---

[1] Ս. եպ. Ջալալեանց՝ Ճանապարհորդութիւն ի Մեծն Հայաստան. Բ. Տփղիս 1858, էջ 258, Ցողայ Լեռան Գոփչ եկեղեցւոյն մէջ կարդացած է այսպիսի արձանագրութիւն մը. "Ի թվին ՈՂԵ (1246)։ Ես Տէր Վրթանէս շինեցի զեկեղեցիս ... եւ արձանի գրեցի ... տարւոյն ժ. ժամ ինձ եւ Սարգսի, յիշանցն ա. ժամ Ուխտանէս եղբօրն ..."

[2] Համեմատուի թերեւս Ուխտանէս եւ Վրթանէս (= Վարդանէս), սովորական երեւոյթ է վի եւ ու-ի ըի եւ հի (= խ) փոխանակութիւնք հին լեզուաց մէջ։

չափ կը տեսնուի, անունս Հայաստանի հիւսիս արեւելեան կողմերն աւելի գործածական էր. այս պարագան կը միտէ զիս պատմագիրս աշխարհաւ այդ կողման գաւառներէն ենթադրելու, որուն հակառակ չկայ որ եւ իցէ դժուարութիւն, մանաւանդ թէ Ուխտանիսի կենաց պարագայք ըստ ամենայնի կը հաստատեն նոյնը։

Իւր գրուածքին մէջ բարձրաստիճան եկեղեցական մը կը ներկայանայ Ուխտանէս, որ ունի իւր իշխանութեան ներքեւ քահանաներ (էջ 1—2), այս կէտիս շատ համաձայն կու գայ գրոց սկիզբն տեսնուած տիտղոսս. “Ուխտանէս Եպիսկոպոս” (Ա էջ 1, Բ. 3), որ շատ հին ժամանակէ ըլլալու է, այնպէս որ տիտղոսս մի եւ նոյն ժամանակ գրոց խորագիրն նկատուած է շատերէն (հմմտ. Մխ. Այրիվ. 37). ուրիշ ճակատ մը ձեռագրին սկիզբն (տես Ցուցք. Բ.), որ այնչափ հնութեան նկարագիր չի ցուցըներ վրան, աւելի կը մասնաւորէ անձն. “Զպատմութիւնս յերիս հատուածս, զոր ասացեալ է Տեառն Ուխտանիսի Սե... եպիսկոպոսի՝ ի խնդրոյ հաւրն Անանիայի Նարեկավանից առաջնորդի եւ նախաշար վարդապետի”։ Դժբախտաբար թեմին անունը թերի է. հրատարակիչն լրացուցած է Սե[բաստացւոց] յաւելուածով առանց տարակուսի հիմնուած Ստ. Օրպէլեանի վկայութեան վրայ։ Ստեփաննոս կը գրէ. “Որպէս հաւաստի ուսաք ի Ս. Ուխտանիսէ՝ Սեբաստացւոց եպիսկոպոսէ” (էջ 72). այսու խորագրոյս հնութիւնն կը բարձրանայ մինչեւ Օրպէլեան († 1304), աւելի հնութեան կը հակառակի Կիրակոս Գանձակեցի (էջ 4), որ կը ճանչնայ “զՈւխտանէս եպ. Ուռհայի” (կամ ըստ մեր Թ. 124 Ձեռ. “Ուռհայեցի”)։ Երկու պատմագրացս հին ալ անծանօթ է մեզ. բայց աւելի հիմնաւոր նկատուած է Օրպէլեանի վկայութիւնն, որուն կը համաձայնի գրոց ներքին ոգին ալ։ Ա. հատուածի հե-

ղինակն լաւ ծանօթ կը ներկայանայ Սեբաստիոյ եւ անոր շրջակայ վայրերու (Ա. 85—88, 99) ուր ունեցած է նաեւ գործունէութիւն. այսպէս խօսելով Սեբաստիոյ Քառասնից վրայ, կը յաւելու. “Զոր մեք ոչ վարկպարազի ինչ, այլ ստուգապէս քննեալ յուսումնասիրաց ումանց՝ որք էին մարդասէրք եւ աստուածասէրք„, գտած է նահատակութեան օրն Արեգ ամսոյն 15ն, “եւ վասն այնորիկ կարգեցաք մեք զօրն զայն տօն Ս. Քառասնիցն տօնել ամ յամէ անխափան„ (Ա. էջ 87): Թէ հոս խօսողն ինքն Ուխտանէսն է, գիտէ եւ Վարդան (էջ 42), երբ Արեգի 15ն Քառասնից նահատակութեան օրն նշանակելով կը գրէ “զոր Ուխտանէս տօն կարգեաց„: Թէ այս կողմերն զբաղեցաւ Ուխտանէս “Ծուռ ազգին„ մկրտութեամբ, կը խօսինք վարը: Չենք գիտեր թէ ինչ հիմամբ Կիրակոսի վկայութեան աւելի ծանրակշռութիւն տուած է Բրոսէ, որուն համեմատ խորագրած է իւր թարգմանութիւնն ալ „Oukhtanes d'Ourha“, յամենայն դէպս եթէ Հ. Ալիշանի հետ վերջին ձեւս “գուցէ սխալմամբ գրչի„ ալ ենթադրենք, խնդրական կէտ մը կը մնայ միշտ այս՝ Ուխտանիսի արդէն մութ կենսագրութեան մէջ: Սեբաստիոյ աթոռոյն վրայ եպիսկոպոս ճանչնալու ալ դժուարութիւն կայ. Ժ դարու երկրորդ կիսուն (յամի 986), երբ կը պատմագրէր Ուխտանէս, Ասողկան քով (էջ 251—2), կը յիշատակուի Սեբաստիոյ հայ եպիսկոպոսն “Սիոն„ անուամբ որ տեղւոյն յոյն մետրապոլտէն բռնադատուած՝ ընդգրկած է յունադաւանութիւնն Լարիսայի հայ եպիսկոպոսին (Յովհաննէս) հետ: Այս դէպքս գոնէ կու տայ մեր ձեռքն կռուան մինչեւ այդ թուականն (986) զլանալու Ուխտանիսի Սեբաստիոյ աթոռն: Թերեւս Կաթողիկոսն Խաչիկ դէպքէս յետոյ՝ պաշտօնանկ ընելով զՍիոն՝ Ուխտանիսի յանձնած ըլլայ այդ թեմն, ենթադրելով միշտ թէ ճշմարիտ է Օրպէլեանի վկայութիւնն:

Ընդունելով հանդերձ պատմագիրս Սեբաստիոյ (կամ Ուռհայի) եպիսկոպոս, մեր համոզումն չի տկարանար իւր Աղուանից աշխարհի կողմերէն ըլլալու նկատմամբ։ Յաճախ կը նկատենք զինքը այս սահմաններն, Ուխտանէս գտնուած է թէ ի Շիրակ եւ թէ ի Վիրս. այսպէս այցելած է Հայոց կաթողիկոսարանն յԱրգինա, ուր կը տեսնուի մինչեւ անգամ թէ երկար ժամանակ մ'ալ մնացած է, շրջագայած է Ախուրեանի եզերքն։ Այցելած է նաեւ Գուգարաց աշխարհն, տեսած հին Ցուրտաւի աւերակները (Բ. 34), ստէպ ուխտի եկած Ս. Շուշանկան գերեզմանին,[1] անկէ անցած Վրաց մայրաքաղաքն Տփղիս (Բ. 14) եւ սքանչացած անոր դրից եւ գեղեցկութեան վրայ (Բ. 35). Թէեւ, որչափ կ'երեւայ, ինքն անտեղեակ էր վրացերէնի, վասն զի Կիրակոս քահանային թարգմանել կու տայ երկու թուղթ վրացերէն բնագրէն (Բ. 14)։ Մեծ գործունէութիւն ցոյց տուած է նաեւ "Ծագ ազգին" դարձին համար (Ա. 14)։ Իրեն ծանօթ կը թուի Նարեկայ վանքն ալ, որուն ժամանակակից առաջնորդին՝ հանրածանօթ Անանիա Նարեկացւոյ ամենամտերիմ բարեկամն էր։ Կարելի չէ ստուգիւ պարզել թէ ինչ կապ էր այն անձուկ զօդն, որով յօդուած էին երկու եկեղեցականացս սրտերն իրարու հետ. ի նկատի առնլով այն պարագան, որ հեղինակս զԱնանիա իրեն "Տէրը եւ հոգեւոր հայրը" կ'անուանէ, եւ ինք զինքն յաճախ "քո յետին եւ տրուպ աշակերտս կամ թէ որդիս" (Ա. 10), կրնայ կարծուիլ թէ Ուխտանէս աշակերտած է ժամանակ մ'Անանիայի

---

[1] Հմմտ. Բ. 35. "Ջի բնակարան եղեալ (Ցուրտաւ քաղաքն) աթոռնի, եւ հանգստարան Ս. Շուշանկայ, ուր դեռ եւս կան տեղիք չարչարանաց նահատակութեան նորա, զոր մեր ճաշոցն անգամ իբրեւ ի համբաւոյ լուեալ զարմա-նեան տեղիսն"։

Նարեկայ վանքին մէջ, եւ եղած ամոխախ մը Գրիգոր Նարեկացւոյ։ Հ. Ալիշան "ոմանք[1], կը գրէ, սորա (Անանիայի) աշակերտ կարծեն զՈւխտանէս, յայտնին այս է որ բարեկամն էր"։ Թէ երբ պատահեցաւ իւր վախճանն, նոյնպէս անյայտ է, բայց կարելի է ենթադրել, թէ ալեւորեալ էր արդէն պատմութիւնն յօրինած միջոցին, յամենայն դէպս ԺԱ դարու սկզբին վրայ կնքեց իւր մահկանացուն։

Երբ Ուխտանէս Արգինա կը գտնուէր, իւր եւ Անանիայի բարեկամական յարաբերութիւնք կ'ամրապնդուէին բաց ի փոփոխակի այցելութենէն ստէպ թղթակցութեամբ, գրական նուէրներով։ Այդպիսի նուէր մ'էր նաեւ այն երեքմասնեայ պատմագրութիւնն, որ ունինք իր անուամբ այսօր. գեղեցիկ դիպուած մ'է բովանդակ շարժառիթն, որով յորդորուած է Ուխտանէս պատմագրելու, եզական պատմուածք մը Հայոց հին կեանքէն։ Եւ այսպիսի նպատակաւ ալ ի մէջ կը բերենք մանրամասնութեամբ։ Իմանալով օր մը Անանիայի բաղձանքն Հայոց համառօտ պատմութիւն մ'ունենալու, կը յօրինէ ծածուկ, եւ նուէր կը խաւրէ Փիլիպպոս քահանայի ձեռօք Անանիայի ի Նարեկ՝ թղթով մ'ի միասին։ Անանիա պատասխանն կու տայ նմանապէս գրաւոր նոյն Փիլիպպոս քահանայի միջնորդութեամբ։ Հոս Անանիա կ'առաջարկէ իրեն ուրիշ խնդիրք մ'ալ, պատմագրել Վրաց Հայոցմէ բաժանման պատմութիւնն եւ Ծադերու մկրտութիւնն։ Ուխտանէս ընդունելով խնդիրքս "ի ձեռն սիրելի եւ հաւատարիմ եղբօր մերոյ Փիլիպպոսի քահանայի" (Ա. 1), կը հրաժարի խոնարհաբար, "իւր տկարութիւնն" պատճառելով, բայց բուն դիտաւորութիւնն էր նոյն խնդիրքն ինքնին իսկ Անանիայի բերնէն

---

[1] Մեզ անծանօթ են այդ ոմանք։

լսել, վասն զի, ինչպէս կը գրէ, «լուեալ իսկ էր իմ զգալն քո միանգամ առ մեզ, եւ այնմ անձայի տեսանել զքեզ եւ բերան ի բերան խօսել»։ Եւ իւր այս գիտաւորութիւնն ակնարկած է եղեր մինչեւ անգամ «ի ձեռն Սիմէոնի քահանայի» խաւրած պատասխանին մէջ» (Ա. 2)։ Անանիա արդեամբք ալ կու գայ այցելութեան Խաչիկ կաթողիկոսին, որ նոյն ատեն կը նստէր «ի Շիրակ գաւառի ի գիւղաքաղաքին Արգինայ, յեզերս Ախուրեան գետոյ՝ ի հանգստարանի Տեառն Անանիայի Հայոց վերադիտողի» (Ասող. 185)։ Հոս էր նաեւ Ուխտանէս։ Երկու բարեկամք ժամանակ կ'ունենան խօսակցելու իրարու հետ «բերան ի բերան», շրջագայելու եւն եւն, երբ նաեւ պատեհ առիթ չէր պակսեր Անանիայի խօսք բանալու իւր խնդրած պատմագրութեան վրայ։ Այսպէս կը պատմէ հեղինակն այս մասին խօսակցութիւնն. ամառնային գեղեցիկ առաւօտ մը, Տրէ ամսոյն 11ին (Յուլիս) Կիրակի օր մը, երկու բարեկամք պտոյտի կ'ելլեն դէպ ի Ախուրեանի ծիծաղկոտ ափունքը, որոշուած էր իններորդ ժամուն պատարագն հոն մատուցանել, Ս. Աթանասի ընծայեալ պատարագամատոյցի վրայէն, որ եւ գործածական էր Ժ դարուն[1]։ Յետ պատարագին խօսակցութիւնն առաջարկեալ պատմագրութեան վրայ կ'ըլլայ. Ուխտանէս կը յաղթահարուի Անանիայի թախանձեցուցիչ խօսքերու առջեւ, եւ յանձն կ'առնու վերջապէս[2] Անանիայի

[1] Հմմտ. Սրբազան Պատարագամատոյցք Հայոց. էջ 268–337։ Մտադրութեան արժանի է որ առաջին անգամ Ուխտանէսն է Պատարագամատոյցիս Ս. Աթանասի ընծայելուն վրայ տարակուսողն — «զոր ասեն Աթանասի»։ Նոյնն կը կրկնէ պարզապէս Ասողիկ (էջ 81) — «զոր Աթանասի ասեն լինել»։

[2] Հմմտ. եւ Ուխտ. Բ. 114. «...վասն զի փոյթ քոյոյ յօժարութեանդ սակս խնդրոյն հաճոյ թուեցաւ մեզ, եւ զտկարութիւնս մեր ի բաց դնել, եւ ի վերայ քո հրամանիդ զդժուարութիւնն հեշտութիւն համարել»։

առաջարկութիւնն՝ պատմագրել Վրաց եւ Հայոց բաժանումն եւ Ծադերու մկրտութիւնն (Բ. 2, 12)։ Բայց որովհետեւ, ինչպէս ըսինք վերը եւ պիտի ապացուցանենք, նոյն վարդապետի խնդրանօք գրած էր Հայոց պատմութիւն մ'ալ, մատեանն պիտի բաղկանար երեք մասէ.

Ա. Պատմութիւն Հայոց.
Բ. Պատմութիւն բաժանման Վրաց ի Հայոց.
Գ. Պատմութիւն մկրտութեան ազգին, որ Ծադն կոչի։

Իւրաքանչիւր մաս կոչած է հեղինակն “Հատուած„, որոնք իրենց մէջ ունէին գլուխներու[1] բաժանում։ Մեզի ծանօթ մի միակ օրինակին մէջ, ինչպէս կանխեցինք ըսել, երրորդ հատուածն կը պակսի։ Նկատենք մէն մի հատուած ի մերձուստ։

Ուխտանիսի եռամասնեայ պատմագրութեանս Առաջին Հատուածին նախադուռը կը կազմէ առ խնդրողն Անանիա Նարեկացի ուղղուած ընծայական թուղթն (Ա. 1—15), որ մի եւ նոյն ժամանակ յառաջաբան մ'է գործոյն. այստեղ կը ներկայացընէ պատմագիրն իւր քրտանց պտուղը՝ սրտակից բարեկամին, եւ մեզ գրոց յօրինման պարագաները. տեսանք վերագոյն արդէն, թէ ինչպէս յորդորուեցաւ Բ. եւ Գ. հատուածներն պատմագրելու, նկատենք այժմ Ա. հատուածին շարժառիթն իւր իսկ խօսքերով. “Լուած էի, կը գրէ պատմագիրն առ Անանիա, թէ կը բաղձայիք, որ ձեռնարկուէր պատմութիւն մը 'սակաւ հատուածով յսկզբանէ Բագրատունեաց Հայոց մինչեւ ի մեզ„, յօրինեցի ըստ փափաքանացդ 'պատմութիւն Հայոց փոքր հատուածօք առ ի մխիթարութիւն ընթերցողաց եւ ի լուսաւորութիւն լսողաց եւ ի

1 Հեղինակն կը կոչէ նաեւ դրուագ, ճառ. Հմմտ. Բ. 62, 66 եւն։

պայծառութիւն սրբոյ Եկեղեցւոյ,, եւ նոյնն առաքեցի առ Տէրդ թղթով մը. եւ դուք 'յիշատակեալ զուրախարար գիր[ս իմ] պատմութեան Հայոց,, այն թղթին մէջ զոր ինձի խաւրեցիք, 'զայս եւս պատմութիւն (զլուծանման Վրաց եւ զմկրտութեան Ծաղաց) հայցէք,, ինձմէ, որոնց վրայ խօսած էի 'փոքր ի շատէ գրով իմով (այս է ի Պատմութեան իմում), որ բերաւ առ քեզ սակաւ ինչ յայտարարութեամբ ի ձեռն Փիլիպպոսի քահանայի, որպէս ի սկզբան ճառիս ասացաք,[1]. եւ բնաւ չէի յուսար, թէ այս դիպաց պատմութիւնն ալ ինձ պիտի յանձնէք„ (էջ 12—3)։

Թէ այս խօսքերն անկնարկութիւն են հեղինակին Ա. հատուածի մասին այն անկներեւ է ինձ եւ յուսամ թէ նաեւ ընթերցողացս. եթէ հարկ համարեցանք շեշտել այս կէտն մանաւանդ պատճառն կրկին էր, նախ վասն զի բնագիրն հոս շատ վրիպակալից էր եւ դժուարիմանալի, զոր աւելի մթնցուցած է հրատարակիչն շատ անիմաստ կիտադրութեամբ[2]. եւ երկրորդ, վասն զի այս պղտորութեան մէջ նշմարած է Հ. Ալիշան՝ Անանիա Նորէհկացւոյ այժմ կորուսած պատմագրութեան մը հետքերը[3]։ Բայց յուսախաբ պատրանք մ'է մեծա-

---

1 Այս վերջին կէտս աւելի պայծառ կը շեշտէ յէջս 2–3. "Զի զայսոսիկ հրամայեալս ի քէն՝ քե՛զ պարտ էր կատարել առ իմս խնդիր, որպէս յառաջագոյն գրեցի առ քեզ սակաւ ինչ զպատճառն յայս արարեալ պատմութեանս. զի յայսմ ամենայնի բնաւ իսկ ոչ ունէի (ակն) թէ լինիցի, այլ սակաւուք յայտարարութեամբ յիշատակել ի ձեռն գրոյ իմոյ՝ որ բերաւ առ քեզ„։

2 Յոռսէ՝ անշուշտ այս պատճառաւ՝ բոլորովին ի բաց ձգած է Ա. գլուխն իր թարգմանութեան մէջ. փոքր մաս մը տես Intr. p. VIII.

3 Հայապատում, Ա. § 60, "Հայցերն փոխելով հայցերի, այսպէս կը հասկընայ այս տողերս. "Երկու բան կ'իմանամ այս կրկին կրկին ըսուածէն, . . . որ Անանիա մեր ուրիշ

նուն Հօր նկատումը, զոր դիւրաւ կրնար յայտնել փոքր ինչ մտադիր ընթերցում։

Այս հատուածն ապա միացուցած է Բ. եւ Գ. հատուածոց — անշուշտ ինչ ինչ փոփոխութեամբ — եւ նուիրած կրկին՝ իբրեւ ամբողջական "Հայոց պատմութիւն" մը։

Հաւատարիմ յայտարարուած ծրագրոյն՝ յաջորդ գլխով կը սկսի Ուխտանէս պատմել "զԹիւ Թագաւորացն եւ հայրապետացն մերոց"։ Բայց ըստ խոստման ի գլուխ ելած չի ներկայանար մեզի՝ ձեռքերնիս հասած հատուածն. մինչ մեր Ընդհանրական եւ հայրապետական (այս է՝ կաթողիկոսաց) պատմութիւնն կը խոստացուի, կը պատմուի երկրորդ եւ յետագայ գլուխներու մէջ Ադամայ եւ անոր յաջորդ անուանի նահապետաց կեանքն, կը գծուին իւրաքանչիւրին գրուած երկրին սահմաններն եւն. հազիւ ԺԵ գլխով սկիզբ կ'ըլլայ Հայոց նախահարց՝ Հայկայ եւ իր պայազատաց պատմութեան, ուր մէջ ընդ մէջ կը հիւսուին ինչ ինչ Հրէից, Պարսից, եւ Հռովմայեցւոց ինքնակալաց մասին՝ իւրաքանչիւր ինքնակալի գահակալութեան տարեթուերով եւ շատ համառօտ տեղեկութիւններով, ուր կը տեսնուին նաեւ քանի մը վկայից վկայաբանութիւնքն, բերելով հասցնելով մինչեւ Կոստանդիանոս Մեծ եւ Հայոց ի քրիստոնէութիւն դարձն առ Տրդատաւ ի ձեռն Գրիգորի — ընդ ամէնն ՀԶ գլուխ։ Չկայ հետեւաբար ոչ Տրդատայ պայազատաց եւ ոչ Ս. Լուսաւորչի յաջորդ կաթողիկոսաց պատմութիւնն մինչեւ Ժ դար։ Ա՞յսչափ էր արդեօք Ուխտանիսի հեղինակածն ալ. ասոր չենք կրնար ճշդիւ պատաս-

---

պատմչաց սովորութեամբ ազգին բովանդակ պատմութիւնը գրած է, այս ինքն Հայկազանց եւ Արշակունեաց, երկրորդ որ փոքր հատուածովք գրեր է, այս ինքն համառօտ, կարճ գլուխ կամ հատուած բաժնելով"։

խանել, չունենալով ուրիշ վկայ, բայց եթէ ինքնին պատմագիրն, որ մինչեւ Ժ դար Հայոց համառօտ պատմութիւն բաղձացող Անանիայի ցանկութեան բաւականութիւն տալն կը վկայէ եւ հոն համառօտիւ նաեւ Բ. եւ Գ. հատուածոց բովանդակութիւնն գրած կը յիշատակէ։ Անագանագոյն ժամանակի պատմագրաց այս մասին լռելն չի կրնար իբրեւ ժխտական ապացոյց ծառայել հոս, որոնք Ա. հատուածին բոլորովին իսկ անծանօթ կը կերպարանին։

Այսպիսի բովանդակութեամբ Առաջին Հատուածն իբրեւ պատմական աղբիւր շատ դոյզն չափով ծառայութիւն կրնայ մատուցանել այսօր բանասիրաց, որոնց ծանօթ են արդէն ի ձեռին ունեցած գրուածներն, այսպիսի գրութիւններ են.

1. Կայսերաց գիրքն, ինչպէս կ՚անուանէ (էջ 42, 111) Հ. Սարգիսեանի հրատարակած "Անանուն Ժամանակագրութիւնն"[1], ուսկից օրինակութիւն է գրեթէ Ա. հատուածն ըստ մեծի մասին։

2. Մովսէս Խորենացւոյ Հայոց պատմութիւնը (համտ. էջ 22, 30, 35—6, 39, 58, 111, Բ. 34)։

3. Զենոբ Գլակ (համտ. էջ 79, 111, աւելորդ է նշանակել մի առ մի վկայաբանական եւ այլ մանր գրուածք[2]։

Այսու հանդերձ ունի միշտ բանասիրական

---

[1] Անանուն Ժամանակագրութիւն, խմբագիր յօրինեալ յԷ դարու ի հնագոյն ժամանակագրաց, Վենետ. 1904։

[2] Հայագէտն Կոնիբիր մասնաւոր հետազօտութեան նիւթ ըրած է առթիւ Մ. Խոր. ժամանակի քննութեան՝ Ուխտանիսի Ա. 102 էջն, ուր կը պատմուի Կոստանդիանոսի մկրտութեան զրոյցն (Հանդ. Ամս. 1902, էջ 6, 65--68), Հայագէտին եզրակացութիւնն կ՚ըլլայ. Ուխտանէս օգտուած է հոս աղբերէ մը, ուսկից նաեւ Խորենացին եւ այլք օգտուած են, եւ ոչ Սեղբեստրոսի վարքէն։

արժէք հին աւանդութեանց, զրուցաց քննութեան համար. այսպէս շահագրգիռ կրնան նկատուիլ ԿԱ գլուխն, ուր Սեբաստիոյ քառասնից վկայաբանութիւնն կը պատմուի (էջ 85—88), ՀԵ գլուխն, (էջ 109—111) "Յաղագս թագին երանելոյն Կոստանդիանոսի՝ թէ ուստի՞ կամ ո՞րպէս յաջողեալ եղեւ նմա ի Տեառնէ՝ Շապհոյ որդւոյ Աշոտոյ պատրկի տուեալ ի պատմութեան իւրում", ցորչափ անյայտութեան մէջ է Բագրատունեաց Պատմութիւնը[1]:

Աւելի մտադրութեան արժանի է Երկրորդ Հատուածն, որ ամբողջապէս նուիրուած է Վրաց Հայոցմէ բաժանման պատմութեան, որուն վերջին մասն դժբախտաբար թերի կ'աւարտի, թէեւ ոչ շատ անհրաժեշտ պակաս մը թողլով[2]:

Ուխտանէսի նպատակն է հոս մանրամասնութեամբ պատմագրել Է դարու առաջին տասնեկին (600—609) Վրաց Կիւրիոն եւ Հայոց Աբրահամ Կաթողիկոսաց օրով երկու ազգաց մէջ տեղի

---

1 Այս գլուխն իբրեւ նորագիւտ Նշխարք Շապհոյ հրատարակած էր Մ. Մսերեանց ի թերթին Ճռաքաղ 1861/2, էջ 129–130։ Անդ, 1860/1, էջ 89–90 նոյնպէս հրատարակուած է Ուխտանէսի ՀԲ գլուխն (էջ 104–105)։

2 Ըստ իս հազիւ մէկ կամ երկու գլուխ. այժմ վերջին գլուխն կը կազմէ գլ. Հ, ուր ի մէջ բերուած է Աբրահամու Շրջաբերական թուղթն առ Հայս, որով վախճան կը տրուի բաժանման խնդրոյ. այս թուղթն ամբողջութեամբ է Թղթոց Գրոց մէջ (էջ 189—195), ուսկից առած էր արդէն Ուխտանէս։ Հ. Ալիշան կ'ենթադրէ պատմուած ըլլալ այս թերի գլխոց մէջ՝ Կիւրիոնի թղթակցութեան մասին Գրիգոր Մեծ Քահանայապետի հետ, բայց անտեղի է այսպիսի մտածութիւն հոս. Հայոց անծանօթ է Մեծին Գրիգորի հետ թղթակցութիւնն, եւ եթէ ծանօթ իսկ ըլլար, պիտի պատմուէր Ուխտանէսէն Բ. Հատուածի սկիզբներն, ըստ ժամանակագրութեան վասն զի, ինչպէս առիթ պիտի ունենանք այլուր տեսնելու, Գրիգորի թուղթն առ Կիւրիոն գրուած է 601ին։

ունեցած եկեղեցական խնդիրներն, յուզուած Քրիստոսի մարդեղութեան շուրջն. երբ Կիւրիոն համաձայնելով Յունաց՝ պաշտօնապէս ընդունեցաւ Քրիստոսի երկու բնութեանց վարդապետութիւնն — հեռանալով Հայերէն, Մծխիթայի եւ Դունայ կաթողիկոսաց մէջ այսու ծագեցաւ գժտութիւն, որ աւելի սաստկացաւ Ցուրտաւայ Մովսէս եպիսկոպոսի եւ այլոց միջամտութեամբ։ Յետ անօգուտ եւ երկար թղթակցութեանց՝ Աբրահամ Շրջաբերականով մը խզեց Հայոց եւ Վրաց աւանդական խաղաղ յարաբերութեանց զօդն (608/9), սպառնալով նզովից հրացան շանթեր անոնց, որոնք որ եւ իցէ հաղորդակցութիւն կ'ունենան Վրաց հետ։

Այս՝ Հայոցմէ միշտ դառնութեամբ յիշուած իրողութեանս կրկին թարմացումն մանրակրկիտ հետազօտութեամբ ժ դարուն, դիւրին է ըմբռնել եթէ նկատենք ժամանակի ոգին, ժամանակ մը, երբ յուզուած էին վերստին իբրեւ զջուր յեռանդան՝ քաղկեդոնական եւ հակաքաղկեդոնական վիճմունք, երբ Աղուանք եւ Սիւնիք "ապստամբած" ընդդէմ Անանիա կաթողիկոսի (941—965, ըստ Ուռհ. † 976) միտած էին Վրաց, եւ վերջապէս երբ սաստկացած էին նաեւ երկու ազգացս՝ Վրաց եւ Հայոց մէջ թշնամական յարաբերութիւնք, նշանակալից եւ հետաքրքրական հարց մ'էր Հայոց համար հնագոյն բաժանման մանրամասնութիւնք, մանաւանդ Անանիա Նարեկացւոյ, որ ինքնին թունդ հակաքաղկեդոնական մ'էր, եւ նոյն միջոցներն զբաղած էր "Հաւատարմատ" մատենով, զոր Ուխտանէս կ'որակէ "ընդդէմ երկաբնակաց" (Ա. 11)։

Ուխտանէս այս հատուածիս մէջ չէ խնայած որ եւ իցէ ջանք իւր նիւթոյն յաջող ուսումնասիրութեան համար. մատենադարանաց յաճախակի այցելութիւն, հին պատմագրութեանց

ստէպ ընթերցում, ի հարկաւորութեան ճանապարհորդութիւն, հինօրեայ բանիմաց ծերերու հետ բանակցութիւն իրացս նկատմամբ եւն եւն, ամէնն ալ կը տեսնուի գործոյս մէջ. եւ այս ամէնն մէկ կամ երկամեայ ժամանակի արդիւնք չէ, այլ զբաղած է հեղինակն նուիթոմս երկար տարիներ (էջ 14), եւ այսու ստացած է լաւ հմտութիւն ճառած նիւթոյն, որչափ հնարաւոր էր այս յուսալ Ժ դարուն: Այսպիսի խնամք մը զգեցուցած է գործոյն անգնահատելի յարգ մը, որ արժանաւոր պատիւ կը բերէ մի եւ նոյն ժամանակ հեղինակին անուան:

Բաց ի կենդանի աւանդութենէն, իւր ձեռքն ունեցած է պատմագիրս նաեւ գրաւոր աղբիւրներ, որոնց մէջ գլխաւորագոյնն եղած է.

1. **Թղթոց Գիրքը**՝ զոր շատ ստէպ կը յիշէ ինքն ալ. այնպէս մեծ եղած է աղբերս կիրառութիւնն, որ կրնանք ըսել թէ բովանդակ Բ. Հատուածն Համառօտ Մեկնութիւն մ'է **Թղթոց Գրքի** 110—195 էջերուն: Այս պատճառաւ ալ այսօր քանի որ ունինք մեր ձեռքն այս հաւաքածոն ամբողջութեամբ, Ուխտանէսի երկասիրութիւնն սակաւիկ մը կը տուժէ այն յարգն, զոր ստացած էր օրինակի համար մինչեւ վերջին տարիներս յաչս ազգայնոց եւ օտարաց, երբ չէր ելած ի լոյս **Թղթոց Գիրքը**: Մասնաւորապէս անպէտ են այսուհետեւ թղթոց յառաջբերութիւնք, որոնք, ինչպէս հեղինակն ալ կը փութայ խոստովանիլ (էջ 103 եւն) եւ կարելի է տեսնել հարեւանցի համեմատութեամբ մը, ամբողջութեամբ չեն եւ ոչ

---

[1] Համմ. Բ. 23, 24, 45 54, 114, 122, 127. էջ 129 կը գրէ. "Արդ որ վասն Բաժանման Վրաց եղեւ ի ձեռն Կիւրիոնի վիճմունք որպէս եւ թուղթ ազգի ազգի՝ կարգեցաք ի պատմութեան աստ ըստ մերում հասողութեան քննել եւ ստուգել հաւաստի:

տուանց փոփոխութեան. շատ զգալի են այս տեսակէտով յատկապէս յաւելուածք, զեղչմունք, բառերու փոփոխութիւնք եւն, թող ձեռագրական աղճատմունք։ Այսուհետեւ խոհեմութիւն է ի հարկէ ինքնին ակնաղբիւրէն առնուլ ջուրն, որ այնպէս մաքուր է եւ յստակ կը բղխէ, քան տղմախառն գբէ։

Ունի առջեւն նաեւ 2. Մ. Կաղանկատուացւոյ "Աղուանից պատմութիւնն" (էջ 122 եւն) եւ 3. Սեբէոսի "Հերակլի պատմութիւնն" (էջ 56)։ Երկրորդական աղբիւրներէն յիշուելու արժանի են ի Տփղիս Կիրակոս քահանայէ մը վրացերէնէ թարգմանուած (էջ 14) երկու թղթերու (Մովսէս Կաթողիկոսի առ Կիւրիոն եւ Կիւրիոնի առ Մովսէս) պատճէնները, զորոնք ամբողջութեամբ ալ առած է իւր պատմութեան մէջ (էջ 8—13). այժմ ատոնց ոչ հայերէնն եւ ոչ վրացերէնն յայտնուած է այլուստ։ Ափսոս որ շատ տեղեր, երբ նոր եւ մանր տեղեկութիւններ կ'աւանդէ, կը լռէ աղբիւրն. եւ այսու առիթ կու տայ մեզի նկատելու զանոնք լոկ անձնական ենթադրութիւն կամ հնոց աւանդութիւն, եւ պատմական դիպաց համար անարժէք վկայութիւն։ Ինչպէս յիշատակեցինք՝ պատմագրիս աւանդութեան շնորհած է մասնաւոր ուշադրութիւն[1], եւ յատկացուցած է բաւական ընդարձակ էջեր. այսպիսիք թէեւ աննշանակ յինքեան, ինչպէս կը նկատէ եւ հեղինակն, բայց կը պատկերեն բաւականաչափ՝ իրողութեան թողու-

---

[1] Սոէպ կը կրկնէ Ուխտանէս այսպիսի տողեր. "Քանզի մեր ի վերայ հասեալ ստուգիւ ի Խորենէ դպրոցաց ոչ միայն խոմ ցեղխոց եւ խոմ ցեղեց, այլ ի բազմաց բազում անգամ ... վասն զի պատուէր ընկալայ յառաջագոյն ի քէն ամենայնի հոգ տանել եւ զհաւաստին կարգել մեզ ի պատմութեան աստ, որ ի լրոյ եւ ի գրոյ ... վասն զի զայս այսպէս ասեն յառաջնորդաբինին ծերոց ... (էջ 114—5, Հմմտ. եւ էջ 24 եւն)։

ցած հետքերն ապագայ սերնդեան սրտին վրայ — չորս դար վերջն ալ։ Կարելի չէ չնկատել հոս ալ միակողմանիութիւն. ամենեւին խօսք չ՚ըլլար Վրաց աւանդութեան մասին այս նկատմամբ։

Ամբողջապէս Վրաց բաժանման նուիրուած մասենէ մը դժուարին է յուսալ ի հարկէ մանրամասնութիւններ ուրիշ իրաց վրայ. բայց Ուխտանէս յընթացս պատմութեան խառնած է նաեւ ուրիշ հետաքրքրական զրոյցներ, օր. համար Վրաց ծագման, Ցուրտաւ քաղաքի (էջ 34—35), կաթողիկոսարանի կահուց (66–68), Ս. Շուշանկան (127—129) եւ Է դարու նշանաւոր անձանց մասին։ Այս եւ նման առաւելութեամբ Ուխտանիսի պատմագրոց այս հատուածն արժանի է միշտ ուշադրութեան տոհմային միւս պատմագրութեանց շարքին մէջ։

Նկատենք նաեւ գրութեան ոճն. այս տեսակէտով չի կրնար Ուխտանէս արժանանալ գրուատեաց, որ իւր շաղփաղփ գրչովն այնպէս զառածած է յաճախակի կրկնութեանց, խոտորմանց (digression) եւ աւելաբանութեանց մէջ, որոնց վրայ բարդուելով թղթոց յառաջբերութիւնք եւ մեկնութիւնք՝ բովանդակ գրութիւնն ձանձրացուցիչ գոյն մը ստացած է, զոր չի կրնար ընթերցողն առանց զգալու անցնիլ, եւ զոր ինքն անգամ զգացած է[1]. Թէեւ լեզուն սահուն ընթացիկ հայերէն մ՚է՝ հեռու խրթնաբանութենէ եւ թռիչքներէ, ինչպէս օր. համար կը սիրեն գրել Յովհ. Պատմաբան, Թովմաս Արծրունի եւ Գր. Նարեկացի, բայց չի կրնար համեմատուիլ բնաւ Եզնիկեան եւ նոյն իսկ Եղիշէի դարու հայերէններու հետ. չափազանց առատութեամբ կը նշմարուին ընդհանրա-

---

[1] Բ. 90. «Արդ զայսոսիկ միանգամայն եւ երկիցս գրեալ էաք յայլում տեղւոջ, և է ինչ, որ յերրորդանչեաց թղթոց անտի, եւ է ինչ որ միայն խոյ կրկնաբանեալ, որ կարծեմ ոչ զերծանիմք ի բամբասելոյ ի ձէնջ»։

պէս քերականական անկանոնութիւնք, եթէ վրիպակաց մեծ մասն ալ պէտք չէ վերագրել գրչագրաց։ Զուր է փնտռել Ուխտանիսի քով պատմելու յօրինուածական կարգ, թէպէտ կը պատմէ լաւ հմտութեամբ։ Յաճախ զոհ երթալով կրից սաստկութեան՝ կը կործանի իրեն շատ սովորական թերութեան՝ խոտորմանց (digression) մէջ, կը կորսնցընէ խաղաղ եւ հանդարտ պատմելու թելն, եւ աւելի սրտին զգացումներն արտաքս զեղուլ քան իրողութիւնն պատմել կ'ուզէ։ Այս տպաւորութիւնն կ'ունենայ ընթերցողն գլխաւորաբար երբ կը դարձընէ պատմագիրն խօսքը Կիւրիոնի մասին, այն տեղ մէն մի տող խճողուած է խիտ առ խիտ պէս պէս վերադիրներով՝ որոնք Վրաց Կաթողիկոսին անձն եղանակաւորելու նպատակն ունին. չկայ թշնամանիկ բառ կամ անուն, որ չգործածուի պատկերելու համար Կիւրիոնի նկարագիրն, որ միշտ յոռետեսութեամբ կը նկատուի։ Ուխտանիսի աչաց Կիւրիոն ամենայն ինչ է, որ վատ է, որ ստորին է։ Տեղ մը կ'անուանէ նա զԿիւրիոն՝ Սիմոն մոգ, Կերինթոս, Սաւուղ, Արամ, Յուդա, Վասակ, Նեստոր, Կախարդ... եւ այլուր կ'որակէ. "խաբեբայ, անմիտ, անիմաստ, աներկիւղ յԱստուծոյ, անզգամ, հէգ եւ թշուառական, ամբարիշտ, դաւաճան, մատնիչ, գտիչ չարեաց...„ (հմմտ. էջ 110—12). անհանդուրժելի պիտի ըլլար ականջաց եթէ ուզուէր երկարել այս տողանն, որ շատ հեռուներն պիտի ձգէր. եւ սակայն պատմագիրն կը տեղայ առատօրէն եւ անխնայ Վրաց Կաթողիկոսի վրայ։ Չափազանցութիւն արդարեւ եւ յետին աստիճանի մոլեռանդութիւն հայ պատմագրի կողմանէ. որ առանց տարակուսի իւր շարժառիթն ունէր Ժ դարու հայ-վրական ոչ լաւ յարաբերութեանց մէջ։ Սակայն հարկ է դիտել միանգամայն, որ Ուխտանիսի այս բուռն ատելութիւնն ընդդէմ

Վրաց եւ ժողովոյն Քաղկեդոնի, թէպէտ կը հաւանի մոլեռանդութեան բարձրագոյն աստիճանին, բայց մի եւ նոյն ժամանակ ամենայն ինչ վերին աստիճանի պարզմտութեամբ կը կատարուի։ Կուրացած նախապաշարեալ՝ կանխակալ կարծեօք այն ամէնն որ հակառակ է ազգային շահերուն՝ նկատած է յոռետեսութեամբ՝ բայց հոգեւոր մտօք. այս նախապաշարումն պատճառ եղած է իրեն շատ կէտերու մէջ սխալ դատել, յանդուգն խօսիլ եւ գործել ընդդէմ ստուգախօսութեան։ Այսպէս՝ նկատած է նա Կիւրիոնի քաղաքագիտութիւնն, բարձր կրթութիւնն, խելքի մեծութիւնն, խոհեմ վարմունքն, գրելու եւ համոզելու բնատուր ձիրքերն, սրբութիւնն եւն, բայց ըստ իւր տեսութեան՝ Կիւրիոն այս ամէն բարեմասնութիւններն ի չարն գործածած է, կեղծած, հակառակ խղճին եւ սնապարծիկ փառասիրութեան անձնատուր։ — Այս նկատումով իբրեւ պատմագրութիւն՝ զգուշութեամբ պէտք է հետեւիլ իւր վճռոց՝ միշտ հարցընելով նախ խորհուրդ Թղթոց գրքին։

Այս ոգին հեղինակին սրտին մէջ Ժ դարու ոչ լաւ յարաբերութիւնք ծնած են ըսինք. յիրաւի ալ անոր մտաց մէջ կենդանի էր դեռ երէկ ի Բասեան չարաչար կոտանօք ի սայր սուսերի սպանուած Յովհաննէս վարդապետն “Խաչակիրն Քրիստոսի„ “ի մոլեալ ազգէն Վրաց„ (Ասող. 185)։ Եւ արդէն այսպիսի յարաբերութիւններն նկատեցինք Ուխտանիսի խնդրովս զբաղելու պատճառներէն մին։ Ճիշդ նոյն դարուն այս խնդրովս կը պարապէր նաեւ Արսէն Վրաց կաթողիկոսն իւր գրուածքին մէջ — “Վրաստանի եւ Հայաստանի եկեղեցական բաժանման մասին„ (Հմմտ. ԱՐՐՏ, 1907, էջ 856)։ Գրութեանս դժբախտաբար անձամբ անծանօթ ըլլալով, չեմ կրնար ըսել ճշդիւ թէ հերքո՞ւմն է Ուխտանիսի հատուածին։

Պատմագրիս անունն անմահացնող մի միակ գրուածքն պէտք է համարիլ այս հատուածը. առաջինն խնդրոյ նիւթ չի կրնար ըլլալ, վերջինն ալ, ինչպէս քիչ յետոյ պիտի տեսնենք ան-յայտ է ցայժմ: "Կը կարծեմ, կը գրէ Բրոսէ (Intr. p. XI.), թէ Ուխտանիսի այս գործն մի միակ մատեանն է բովանդակ արեւելեան մատենա-գրութեան մէջ, ուր արեւելցի մը կ'ուսումնասիրէ մանրամասնօրէն պատմական խնդիր մը վաւերա-գիրներու համեմատ": Եւ երբ այսպիսի ալ կա-պուած կը գտնենք Ուխտանիսի անուան կից: Կիրակոս Գանձակեցի հին պատմչաց շարքին մէջ կը գրէ "Ուխտանէս եպիսկոպոս Ուռհայի, որ գրեաց զբաժանումն Վրաց եւ Հայոց ի ձեռն Կիւրոնի" (էջ 4). եւ նոյնն կը յիշատակէ պատ-մութեան ընթացքին մէջ. էջ 26 խօսելով Կիւ-րիոնի մասին կ'ըսէ. "Զայս ամենայն ստուգու-թեամբ ուսուցանէ քեզ Ուխտանէս եպիսկոպոս": Կ'օգտուի եւ Վարդան (էջ 58), թէեւ առանց մատնանշելու աղբիւրն: Իսկ Ստեփանոս Օրպէլեան մերթ յառաջբերութիւններ կ'ընէ "յՈւխտանիսի գրոց" (էջ 72) եւ մերթ կ'առաքէ — "ընթերցիր զՈւխտանէսն" (էջ 77): Ընդհանրապէս տարա-ծուած մատեան մ'էր հին ժամանակներս այս հատուածը. մտագրութեան արժանի է առ այս Յովհ. Դամասկացւոյ անուան ներքեւ կեղծող հայ-հոռոմի մը տողերս¹, զորոնք կ'ուղղէ Հայոց. "Զի՞նչ Եպիփան կուզն, զի՞նչ Անանէ Շիրակացւոյն գրեալն, զի՞նչ Ո—խտանէս, զի՞նչ Տօնապատճառն ձեր, ո՞չ այս ամենայն նոր եւ հակառակ առա-քելոցն դրուակի եւ նոցա եկեղեցեացն եւ աւանդից նոցա եւ սրբոյն Գրիգորի եւ իւրոց հետեւողացն," (էջ 357). եւ այլուր. "Այլք (ոմանք ի Հայոց)

¹ Տես Բարգէն Վ. Կիւլէսէրեանի հրատարակած գրուածքն. "Յովհաննու Դամասկացւոյ պատասխանիք առ Հայս". Լոյս շաբաթաթերթ. 1906, էջ 357 եւ 475:

արտաքոյ ի ժամատունն ընթեռնուն գիրս կամ զՍեւերոսին ... կամ Անանէին մի բնութեան արուեստս, կամ շՈ-խոտնէոֆ Հոյհոյո-Բէ-Ն Վրաց, կամ զՄաթէոսիկն պատմող, կամ զՏօնապատճառն" (էջ 475)։ Երկու տեղն ալ Բ Հատուածն կ'ակնարկէ կեղծանուն Հեղինակն, որուն ժամանակն անյայտ է։ Զարմանալի է որ ոչ Ասողիկ եւ ոչ Սամ. Անեցի ծանօթ կ'երեւան Ուխտանէսի գրոց։ Վրաց բաժանմամբ զբաղած են ԺԱ-ԺԲ դարուն նաեւ Անանիա Սանահնեցի եւ Սարկաւագ վրդ., որոնց գրուածներն սակայն ինձ մատչելի չըլլալով, աղբիւրներու մասին չեմ կրնար բան մ'ըսել։

Թէեւ իրեն բնաբան ընտրած է Ուխտանէս Մ. Խորենացւոյ առածն. "Ոչ է վկայութիւն ճշմարիտ առանց ժամանակագրութեան" (Ուխտ. Ա. 111), եւ այս հիմամբ ալ քննութեան առած է Տրդատայ գահակալութեան տարւոյն նկատմամբ հայ երկու՝ ժամանակագրութեան անծանօթ պատմչաց անհամաձայնութիւնն (Ա. 111—112), բայց շատ դոյզն չափով պէտք է պահանջել այս "պայմանն առանց որոյ ոչ" Ժ դարու պատմագրէ մը. ըստ այսմ ալ զարմանալու չէ, եթէ նաեւ իւր գործածած թուականներն մեծաւ մասամբ անճիշդ երեւան, մանաւանդ Ա. մասին մէջ, ինչպէս կը ցուցընեն Բրոսէի քննութիւնք (Intr. pp. XII ss.). Բ. մասն աւելի ճիշդ է, թէպէտ հոս ալ համեմատութեամբ նուազագոյն է կիրառութիւնն. յամենայնի ճշդութիւն յուսալի չէ երբեք մեր պատմիչներէ. հոս Ուխտանէսի գայթումն մասամբ կարելի է մեկնել կրկին աղբեր հետեւելէ. այսպէս երբ կը դնէ Մովսէսի մահն († 604) եւ Աբրահամու ընտրութիւնն (607) առ Մօրկաւ եւ Խոսրովու, վերջնոյս կ'ընծայէ 23 տարի կաթողիկոսութիւն, եւն։ Մեզ անիմանալի մնաց Ուխտանէսի գործածած աղբիւրն ստուգելու համար Բ. Հատուածի պատմական դիպաց ժամանակա-

գրութիւնն, որ այնպէս ճիշդ եւ այնպէս համապատասխան կու գայ այլուստ յայտնի ժամանակագրութեան հետ. օր. համար երբ Մովսիսի գահակալութեան տարիներու վրայէն կու տայ Կիւրիոնի Հայաստան գալու, Կաթողիկոս ձեռնադրուելու, Յուրտաւայ Մովսէս եպիսկոպոսի Դուին դիմելու եւն ճիշդ ժամանակն։ Իրականութիւններ, որոնք առանց յատակ աղբեր չէին կրնար յաջողել Ժ դարու պատմագրի մը. թերեւս աւանդութիւնն եղած ըլլայ հիմն. բայց չորս դարու անջրպետն կրնա՞ր այնպէս անաղարտ պահպանել, որ մեզի անհաւատալի կը թուի։

Երրորդ Հատուածով կը խոստանար Ուխտանէս պատմել Ծոփ ազգին մկրտութիւնն. նիւթ մը, որ այսօր յիրաւի հետաքրքրական է այնչափ աւելի, որչափ աղօտ է մեր ծանօթութիւնը պատմութեան առարկայ ազգին եւ իրողութեան մասին։ Ամենայն ինչ խանձող ժամանակն այրած անհետացուցած է ի սպառ զայն մեզմէ, կը կարծեմ թէ նաեւ հիներէն շատ կանուխէն, գոնէ ոչ ոք տեսած է ցայժմ այն Հատուածը, թէ Կիրակոս, թէ Օրպէլեան, եւ թէ Այրիվանեցի Վրաց Բաժանման պատմիչ միայն կը ճանչնային զՈւխտանէս, իսկ Վարդան նաեւ առաջին Հատուածին ծանօթ կը ցուցընէր ինք զինքը։ Եւ ոչ անգամ Ծոփերու մկրտութիւնն, որ նշանաւոր իրողութիւն մը կը թուի, կը գտնենք յիշատակուած Հայ Տարեգրոց մէջ։ Այս լռութիւնը աւելի զգալի կ'ընէ կորստեան մեծութիւնը. կասկածիլ կորստեանս առարկային վրայ անտեղի է, քանի որ բացայայտ է այս մասին հեղինակին վկայութիւնն, եւ Բ. Հատուածի վերջէն պակասը հաւանական կ'ընէ նոյնը. Ձեռագրին միութիւնն չի ներեր այս նկատմամբ ուրիշ ենթադրութեանց դիմել։

Հատուածիս բովանդակութեան եւ հանգամանաց վրայ չունենալով այլուստ մասնաւոր տե-

ղեկութիւն, պէտք ենք գոհանալ պատմագրին տուած ուրուագծով, զոր կը ներկայացընէ առ-խնդրողն իւր ընծայականին մէջ։ Վրաց Բաժանման պատմութենէն յետոյ պիտի պատմեմ, կը գրէ Անանիայի, նաեւ "Զմկրտութիւն ազգին՝ որ Ծաղն կոչի, նաեւ զգաւառս եւ զգեղս գլխաւորս եւ զքաղաքս եւ զբերդս իւրաքանչիւր գաւառօք՝ որ են յաշխարհին յայնմիկ՝ որպէս եւ կամք քո հրամայեցին, եւ զվանորայս հանդերձ վանականօք՝ անուամբ իւրաքանչիւրոց, եւ զանապատս միայ-նաւորաց, եւ որք բազմակեցք եւ որք միայնակեացք բնակեալ յապատս եւ յանապատս, եւ զօրի-նակ ցուցանել զօրութեանն Աստուծոյ, որ ի ծա-ծուկս եւ ի յայտնի գործէր ի մկրտեալսն՝ երեւ-մամբ նշանաց եւ արուեստից՝ տեսլեամբ եւ յայտ-նութեամբ, միանգամայն եւ զգործս հոգեւորս եւ զբան եւ զջան եւ զվաստակ եւ զհանդէս երանելի եպիսկոպոսացն Գրիգորի եւ իւրոյ պաշտօնէիցն, զգործակցութիւն եւ զհրաման թագաւորին Սմբա-տայ, եւ զնախանձ նախարարացն ի հոգեւոր գործն, եւ զհանդէս իշխանացն ըստ իւրաքանչիւր իշխա-նութեան, եւ զայլ եւս պատուաւորացն ըստ իւ-րաքանչիւր պատուոյ, որք գործակիցք լինէին մեզ ի բանս եւ ի գործ հոգեւոր։ Նաեւ զահ եւ զերկիւղ եւ սպառնալիս գազանամիտ եւ թե-թեւահաւատ (եւ) ճիւաղաբարոյ մարդկան այնոցիկ ի վերայ մեր։ Վասն զի այսոցիկ հրամայեալս ի քէն զստուգութիւն բերէ պատմութիւնս, թէպէտ եւ մեզ աշխատութիւն հասուցանէ յերկարութիւն բանիցս։ Այլ քանզի եւ ոչ այսու եւեթ բաւա-կանանային չարութեամբ, այլ ի մարտ մտանէին եւ ի կռիւ, եւ որսային ազգի ազգի հնարիւք մեքենայից հրացանութեամբ, եւ այլ եւս բազում եւ պէս պէս չարութեամբ՝ արդ եւ դաւաճանու-թեամբ. արդ զայսոսիկ խնդրեցեր ուսանել։ Դար-ձեալ եւ սկիզբն եւ զբնակութիւն եւ զպատճառս

տատացից, եթէ ուստի՞ կամ զի՞նչ եւ կամ զիա՞րդ եւ կամ է՞ր վասն, եւ կամ ո՞րպէս, եւ կամ որո՞վ օրինակաւ„ (Ա. 14—15):

Սակաւ տողերու մէջ կու տայ Ուխտանէս նորանշան տեսլեան մը համառօտագիծ պատկերը, պատկեր մը, զոր որչափ նկատենք, այնչափ աւելի պիտի հետաքրքրուինք իրողութեամբ, բայց միշտ մութ եւ տկար պիտի մնայ մեր ենթադրութիւնը, կազմած տեսիլը: Այս միայն պարզ է ըսուածներէն, որ գործողութիւնն կը կատարուի Հայաստանի սահմանակից աշխարհ մը, Ժ դարուն՝ Սմբատ Բ. Թագաւորին (977—989, Ասողիկ 187, 255) հրամանաւ եւ գործակցութեամբ Ուխտանիսի, Գրիգոր եպիսկոպոսի եւ այլոց: Բայց թէ ինչ ազգէին Ծադերն, ուր իրենց բնակավայրը եւ որպիսի կրօնքով, չլուծուած խնդիրներ են, թէեւ յաճախ խնդրոյ առարկայ դարձած[1], որ զմեզ ալ զբաղցընելու է հարկաւ հոս:

[1] Կը գտնենք հոս մատենախօսական ցանկ մը Ծադերու (Ծայթ) վրայ խօսող գրուածոց, որչափ ծանօթ են մեզի. 1. Ինճիճեան Հ. Ղ., Աշխարհագրութիւն չորից մասանց աշխարհի, Մասն Ա. հատ. Ա. Վենետ. 1806, էջ 303-305: — 2. Эминъ Н. О., О Цадахъ, Մոսկուա 1862 (թերթի մը մէջ), այժմ արտատպ. հեղինակին Изслѣдованія и статьи հաւաքածոյին մէջ Москва 1896, стр. 137-8: — 3. Brosset M., Deux hist. II, Intr. p. XI—XII. = Mél. As. VI. p. 21—22. — 4. Ter-Mkrtschian K., Die Paulikaner... Leipzig 1893, p. 74-78. — 5. Տէր-Յովհաննէսեանց Ա. Եպ., Ժամանակագրական Պատմ. Ս. Երուսաղէմի, հատոր Ա. Երուսաղէմ 1890, էջ 97-98: — 6. Ճանիկեան Յ. Կ., Հնութիւնք Ակնայ, Տփղիս 1895, էջ 8-9, 55—60: — 7. Ալիշան Հ. Ղ., Հայապատում, $8^0$ Ա. § 59, էջ 208-209. Բ, 3, § 363, էջ 177-178. — 8. Марръ Н., Аркаунъ, монгольское названіе христіанъ, въ связи съ вопросомъ объ армянахъ-халкедонитахъ. С.-Петерб. 1905 (Виз Врем., XII) стр. 30-33. 9. Կիւլէսէրեան Բ. Վ., Կոլոտ Յովհաննէս պատրիարք, Վիեննա 1904, էջ 74-78 եւ 202: Լոյս 1906, էջ 226:

Աչաց առջեւ առնլով հնոց գրութիւններն, կը տեսնուի թէ անուամբս Ծադ (Ծայդ, Ծաթ, Ծայթ) կը կոչուէին ընդհանրապէս այն քրիստոնեայք, որոնք կ'ընդունէին Քաղկեդոնի ժողովն. այսպէս կը յորջորջուէին հայերէն առ հասարակ թէ հայք, թէ յոյնք, թէ լատինք՝ եւ թէ վրացիք։ Բայց մասնաւորապէս սեպհականուած էր այն հայերուն, որոնք բաժնուելով Հայոց եկեղեցիէն եւ հասարակութենէն՝ դաւանութեամբ եւ ծիսով էին յոյն՝ հայ-հոռոմ, թէեւ լեզունին հայերէն։ Ի սկզբան իբրեւ անարգական վերադիր մը հնարուած կ'երեւայ, բայց ապա ընդհանրանալով եղած է գործածական նաեւ Յունաց բերանն, որոնք այս անուամբ կ'որոշէին յունադաւաններն բուն հայերէն, ինչպէս կը տեսնուի Նիկոն Սեաւլեռնցւոյ (ԺԱ դար) գրութիւններէն։ Սակայն ախորժալուր չէ լսուած երբեք հայ-հոռոմներէն, որոնք փոխադարձաբար Ծայն կ'անուանէին հայերն, ինչպէս Թէոփիստէի թղթէն յայտնի է։ Այս իմաստն շատ լաւ կը տեսնուի հետեւեալ վկայութեանց մէջ. Մխիթար Ապարանեցի (ԺԵ դար) խօսելով Հայոց մոլորութիւններու վրայ կը գրէ (Հայապատում, § 363) "Եւ ոմանք (ի Հայոց) կոչին Ծաթ հաեր, որ լեզուով եւ գրով ազգաւ են հայք, բայց դաւանութեամբ եւ ամենայն օրինօք են Յոյնք, եւ ամենայն կարգաւ հնազանդ նոցա, որպէս յայտ է այնոքիւք, որք են ի յԵզընկէն եւ ի յայլ Հոռոմոց տուն եւ ի Կաֆէն, ի Ղրիմն եւ ի յայլ բազում տեղիս". Եւ դարձեալ. "Մոլորութեան (Կայանադրաց) հետեւեցան ոմանք ի Յունաց եւ ոմանք ի Հայոց, որք

---

1 Կոստանդին կաթողիկոսի առ Հեթում թղթի խորագրին մէջ կը կարդանք. "Պատասխանի թղթոյն որ ի պապէն (Հռոմայ) բերաւ առ թագաւորն Հեթում ի ձեռն Ծոտ Ղիկաթին, որ կոչէր Ցիմանջ ի թուին Հայոց ՈՂԷ (1248) հմմտ. ԱՐՐՑ 1892, էջ 946. Մառ՝ Ցուցակ համառօտ Ձեռագրաց Վանուց Սեւանայ. Մոսկուա 1892, էջ 42։

մերձակայք են այնմ գաւառին (կեսարիոյ) եւ երկրին, որք կոչին Ծայթ Յոյնք եւ Ծայթ Հայք, որք ամենեւին գաւանութեամբ եւ օրինօք եւ պարագայիւք նոյն են Ծայթ Հայքն ընդ նոյն Յունաց, եւ յոյժ ատեն եւ բամբասեն զՀայսն»։

Նոյն իմաստով կը գործածեն անունս նաեւ Պօղոս Տարօնեցի եւ Խոսրով Անձեւացի. առաջինն կը գրէ առ Թէոփիստէ, «Որք ի Հռոմայ աշխարհն էին Հայոց յազգէս ի նոյնն միացին, եւ հռոմայն կարգօք եւ կրօնիւք եւ եղեն ընդունողք խմորոյ եւ ջրոյ, արդ այսպէս է Ծայթն, եւ ոչ որպէս դու ես գրեալ առ մեզ թէ Մեծին Խաչակայ եւ Մեսրոպայ եւ Ներսիսի են աշակերտեալք...» (Թուղթ Պ. Տարօնեցւոյ, Կ. Պ. 1752 էջ 207) եւ այլուր (էջ 273). «Ահա Ծայթեր դուք էք, որ հայ լեզու էք եւ ասէք զձեզ հռոմք»։ Իսկ Խոսրով (Մեկն. Ժամագրոց, Կ. Պ. 1840, էջ 199). «Որ ոք (ի Հայոց) այլոց ազգաց իրաւունս տացէ յիրս ինչ վասն ճշմարտութեան՝ Ծայթ կարդան եւ թերի ի հաւատս, ծանակ առնեն եւ հալածեն եւ ի մահ սպառնան, մինչ գրեթէ մազապուրծ լիցի»։ Իրականութիւն մը, որուն փորձն առաւ նաեւ Մեծին Խոսրովու որդին Գրիգոր Նարեկացի, ճիշդ այն պատճառաւ, որուն մասին է խօսքն. Գրիգոր, ինչպէս կը կարդանք անոր վարուց մէջ (Յայսմաւուրք, Թ. 213, Թղ. 195ա Մատենադարանին Միաբանութեանս) եկեղեցւոյ եղծեալ կարգերն կ'ուզէր հաստատել, աբեղայք «այպն առնէին զնա բիրտ եւ սուտ մարդիկք եւ համբաւէին զնա Ծայթ» (Թ. 10, ունի հոս «հերձուածող») եւ կը խորհէին «աքսորել զնա պատուհասիւ որպէս հերձուածող»։ Գեղեցիկ տուած է Ծայթերու նկարագրութիւնն նաեւ Նիկոն վանահայրը (տես իր յունարէն գրութեան սլաւերէն թարգմանութենէն քաղուածքներ այս մասին Մ——ի գործն էջ 33—38, յունարէնն անտիպ է ցայժմ), որուն թղթերէն օգտու-

ելով Անտիոքայ յոյն պատրիարքն Մակար կը գրէ իւր “Մեղուանոց„ մատենին մէջ (առ Տէր-Յովհաննէսեանի, էջ 97—8). “Եւ թէ բազումք էին ի քահանայից եւ ի վարդապետաց անտի Ծայնի կոչեցելոց բնակեալ յԵրուսաղէմ եւ ի սահմանս նորա… լեզու, գիրք եւ ընթերցուածք նոցա հայերէն, բանք նոցա ճշմարիտք իբրեւ գրոց մերոց, նոյնպէս եւ հաւատք նոցին„։ Նիկոն յականէ կը յիշէ նաեւ ծայթ վանականներ Սեաւլեռան վրայ եւ Ս. Սիմէոնի վանքը։ Ըստ այսմ տեղի չի մնար վիճել Ծայնի[1] գործածութեան եւ այդպէս անուանեալ ժողովրդեան հաւատքի մասին. խնդիր կարելի է ընել սակայն տեղւոյ վրայ, ուր կը բնակէին։

---

[1] Ծայն բառիս լեզուաբանական մեկնութիւնն պէսպէս օրինակաւ փորձուած է տալ. Հ. Ալիշան (անդ) “Ծթրիլ„ բառէն կ'ուզէ ածանցել, որ հարկաւ ծիծաղական է։ Ն. Մառ կը համեմատէր ասորերէն [illegible] (Ծադ) “բաժնուիլ„ բային հետ. աւելի հաւանական է Սմիռնովի արաբերէն زاهد zâhid “բաժանեալ„ բառէն ածանցելը, ինչպէս կը նկատէ Մառ (անդ 38 ծն. 6), որ լիով համաձայն կու գայ հնոց տուած իմաստին “թերի ճեղքեալ„ (տես Էմին, անդ. Ալիշան “ըստ նշանակութեանն ճեղքուած բաժնուած, ծռած ծրդած„)։ Տէր Մկրտչեան (անդ 77) “Ծադ„ ազգին մէջ կ'ուզէ նշմարել թոնդրակեան աղանդաւորաց մնացորդներն. Ծադ բառն, կը գրէ, որ առանց տարակուսի Հայերէն իրենց ուրացեալ եղբարց տրուած անարգական անուն մ'է շատ նման կը հնչուի Ἀστάτοι անուան, որ Սերգիոսի մահուընէ ետքը անորոշ ծագմամբ հերձուածող մը յերեւան ելաւ եւ նշանակալից դեր մը խաղաց։ Դիւրին էր, կ'ըսէ, Ծադ բառն յունաց բերանն Ածադի շրջուիլ։ — Քանի որ Ծադի ստուգաբանութեան քովն ենք, յիշենք նաեւ որ Հայոց եւ Վրաց ոչ անծանօթ՝ ի Կողքիս բնակող Լազ ժողովրդեան արքաներէն մին կը յիշուի առ Թէոփանեայ Խոստ. (Ժամանակագր. յամի 515 տպ. Բոնն, էջ 259–60) Τζάθος ὁ τῶν Λαζῶν βασιλεύς, որուն օրով դարձաւ ի քրիստոնէութիւն երկիրը։

Այս նկատմամբ ալ գոհացուցիչ տեղեկութիւն կու տան վերոյիշեալ մատենագիրք, որոնց համեմատ տարածուած էին Ծոդք գլխաւորաբար ի Փոքր Հայս, Կեսարիա-Սեբաստիա-Երզնկա-Կարին-Ակն, նաեւ Երուսաղէմ, որ բնական ալ էր, քանի որ շատ երկար կրած են այդ կողմանք յունական ազդեցութիւնն։ Ըստ տեղւոյ ենթարկուած էին յոյն պատրիարքաց իրաւասութեան, ինչպէս բացայայտ կը գրէ Նիկոն։ Այս սահմանն ի հարկէ նկատելու է միշտ “մերձաւորապէս„. վասն զի Ծոդերն չէին ամփոփուած բացարձակապէս որոշ սահմանագծի մը մէջ. նաեւ ի Մեծ Հայս եւ մինչեւ ի Ղրիմ կային Ծոդեր, ցորչափ կար Քաղկեդոնի ժողովին դաւանող։ Երկու անուանքս “Ծայթ„ եւ “Քաղկեդոնիկ„ հարկ է շատ դէպքերու մէջ մի եւ նոյն գաղափարի բացայայտիչ նկատել։

Ուխտանիսի յիշած “Ծադ ազգն„ համանիշ է այս Ծայթերու հետ։ Բրոսէ (անդ) եւ Մառ (էջ 31) “հաւանական„ կը կարծեն թէ Ուխտանիսի յիշատակած Ծոդերն ըլլան հիւսիսային Հայաստանի Ծաւդէացւոց գաւառին[1] բնակիչք,

---

[1] Նշանակելու է որ երկու Ծաւդէք անուն գաւառ կայ, մին Աղձնեաց նահանգին մէջ՝ Տիգրիսի արեւմտեան կողմն (հմմտ. Հիւբշ. “Հին հայերէն տեղւոյ անուանք„ էջ 182–3 եւ Մառ, անդ 31, ծն. 2) յիշուած առ Եղիշէի 10, 39, զոր ասորիք կ'անուանեն Bēϑ Zawdai, լատ. Zabdicena. Անունս “Ծաւդէք„ ըստ Հիւբշ. սխալ գրուածք մ'է փոխանակ Զաւդէքի յառաջ եկած շփոթութեամբ հիւս. Հայաստանի “Ծաւդէք„ անուան հետ, զոր Ագաթ. 597 ընդ մէջ Սիւնեաց եւ Ուտէացւոց կը յիշէ, եւ որուն բնակիչներն Խորենացւոյ քով (78) ընդ մէջ Ուտիացւոց եւ Գարգարացւոց կը յիշուին։ Հայոց նախարարութեան Գահնամակի մէջ կը յիշատակուի նաեւ տոհ մը “Ծայթունիք„ (Սոփերք Զ, 36 “Ծայթիունիք„)։ Նշանակենք նաեւ որ կայ անուն մը մերձ արտաքնովն յիշուածներուն՝ Ծոյթանացիք (= Ցիւրացիք, հմմտ. Ծայդան = Ցիւրոս)։ Հայկազնեան Բառարանն ի մէջ բերելով Ծոյթ

տարբեր չէ Դուրեան եպիսկոպոսի համոզումն ալ (Կոլոտ, 202)։ Առ այս նպաստաւոր երեւայ թերեւս Մ. Այրիվանեցւոյ մէկ վկայութիւնն, որ (յամին 821) կը գրէ. “Յաւուրս Տէր Դաւթի՝ Փարամեան քահանայ կակաղեցի որոշեալ ի Հայոց՝ ի Վիրս դարձոյց զԾոնդէացիսն, այս է Ծագն[1], որ կան այժմ ի Հոռոմս„ (էջ 69)։ Բայց Այրիվանեցւոյ այս տողերն շատ դժուարաւ կրնան նման հաստատութեան մը նպաստել, Մխիթար կ'ուզէ ըսել թէ

---

բառին տակ Բարսղի Վեցօրէից (էջ 30) մեկնութենէն նախադասութիւնս. “Մարկիոնիստայք եւ Ծայդանձիք,,, կը կցէ դիտողութիւնս. յունարէնն Վաղենտինեանք. թերեւս գրելի է “Ծայթ անձինք կամ Ծայդանեցիք,, արդեամբք ալ ի տպագրին կը տեսնենք նախադասուած “Ծայթ անձինք,,։ Բայց կարդալու է այն տեղին ըստ Անտ. Ձեռագրին “Դածանացիք,, որուն նման ունի ուրիշ հին օրինակ մ'ալ, ուր կը գրուի “Դայծանացիք,,, այս ինքն Բարդածանի աւորի աղանդաւորին հետեւողք, որ կ'ընդունէին Վաղենտինանոսի մոլար վարդապետութիւնը։ Հմմտ. եւ Եփրեմ Մեկն. Գ Կորն. (տպ. Վենետ. 1836, էջ 117) “Այս ուսումն վարդապետաց տանն Բարդեծանու է, եւ վասն այսորիկ ոչ թողին Դածանացիքն զայս թուղթ յառաջեալ իւրեանց,,, տես Նորայր, Բառաքննութիւն 63 Դոյծանոյէ+, կը դնէ Մառ, լեզուաբանական օրէնքով հնարաւոր էր ըլլալ նաեւ Ծայծանացիք Ծայդանացիք. բայց Ծայթի մեկնութեան համար հեռու են լոյս տալէ երկու անուանքս ալ։ — Աւելորդ չեմ համարիր այս առթիւ նշանակել նաեւ թէ մերձ ի Սանահին կայ գիւղ մը “Ծաթեր,, անուն, որ կրնայ առնչութիւն մ'ունենալ Ծոյներու հետ, քանի որ յիշատակարանք կը մատնանշեն հոն յոյն ազդեցութեան հետքերն (Հմմտ. Ջալալեանց, Բ. 104. Brosset, Description, p. 57)։ Ընիի եկեղեցւոյ մը արձանագրութեան մէջ կը կարդամ (Շիրակ. 73 Ծն.) “զայգին որ ի Ծոփնոցին է, ընծայեցի։,,

[1] Բրոսէ (ի գաղ. թարգմ. Այրիվ. էջ 83) կը կարծէ ըլլալ Ծոփ գաւառ մը ի Փայտակարան, Կուրի աջ կողմն, որ կողմերն ցայսօր իսկ կան կ'ըսէ 150 ընտանիք Հայ-Հոռոմ։

Փարսման Ծոնդէացիններն (ըստ Ն. Մառի՝ կարդալ Ծա–դէացիները) քաղկեդոնիկ ըլլալ եւ բաժնելով Հայոց իրաւասութենէն մտցուց քաղկեդոնիկ Վրաց իրաւասութեան ներքեւ, ըստ այսու զանոնք Ծադ-նման ի Հոռոմս գտնուածներու:

Ըստ իս Ուխտանէսի ակնարկած "Ծադ-ազգն„ նոյն է բոլորովին "Ծայթ„ Հայերու հետ, ազգ կոչուած է շեշտելու համար պարզապէս Ծայ-թերու բազմութիւնը: ∴. Ալիշան սոցա բնակա-վայրն կը համարի "Փոքուն Ասիոյ մէջ Եփրատայ արեւմտեան ափանց վրայ„ (ԲԶՄ. 1881, էջ 336) կամ "Կեսարիոյ եւ Սեբաստիոյ միջեւ„ (Հայապա-տում, անդ): Սեբաստիոյ շրջակայքն թէեւ շատ ի դէպ կու գայ Ուխտանէսի պատմութեան, բայց կը դժուարիմ այս կողմերն կատարուած ընդունիլ Ծադերու մկրտութիւնն: Սեբաստիոյ հայութիւնն ենթարկուեցաւ 986—1000 խիստ հալածանաց, երբ փոխանակ ի հայութիւն դարձի՝ կատարուեցաւ հակառակէն ի հոռոմութիւն դարձ, լռեցին եր-կար ժամանակ հայերէն "ժամաձայնք„, միով բա-նիւ հայ անունն հալածուած էր ի սպառ (Հմմտ. Ասողիկ 201—202). Հետեւաբար այս միջոցին են-թադրել պատմուած իրողութիւնն, անտեղի բան մ՚է: Բայց երթալով քիչ մը յառաջ դէպ ի Կիլի-կիա, կրնանք այն կողմերն կանգ առնուլ, ուր Ժ դա-րուն յառաջացաւ մեծաքայլ Հայոց եկեղեցին: "Յաւուրս Տեառն Խաչկայ հայրապետին Հայոց, կը գրէ Ասողիկ (էջ 258), սփռեալ տարածեցաւ ազգս Հայոց զկողմամբքն արեւմտից, մինչեւ ձեռ-նադրել նմա եպիսկոպոսունս յԱնտիոք Ասորւոց եւ ի Տարսոն Կիլիկեցւոց եւ ի Սուլնդայ եւ յամենայն գաւառսն յայնոսիկ„: Թէ յիրաւի այս գաւառներն էին Ուխտանէսի նկարագրելիքն, չենք կրնար ճշդի-ւ ըսել. բայց աւելի հաւանական կը թուի մեզ: Պատ-մագրին գործածած բառն "մկրտութիւն„ պէտք չէ պղտորել մեր միտքը, իբր թէ հեթանոս ժողովր-

դեան մը մասին ըլլայ խօսքն։ Ժամանակակից հայ կաթողիկոսաց (Անանիա Մոկացւոյ, Խաչկայ) եւ եկեղեցականաց անհանդուրժող աստուածաբանութիւնն անվաւեր նկատած էր քաղկեդոնականներու մկրտութիւնը. եւ Անանիա իրեն խորհրդակից աստուածաբան վարդապետներով սահմանած էր դրականապէս կրկին մկրտել դարձող քաղկեդոնիկները (Ծադերը)։ "Սոքա ամենեքեան (այս է Ժ դարու նշանաւոր վարդապետք, զորոնք կը թուէ պատմագիրն), խորհրդական ժննա–ընեածք ընտրութեամբք գրովք աստուածայնովք հրամանաւ Տեառն Անանիայի զքաղկեդոնական մկրտեալսն կրկին անգամ հրամայեցին մկրտել (Ա. 178)։ Ուխտանէսն ալ անշուշտ իրեն գործակից "Գրիգոր[1]" եւ այլ "երանելի եպիսկոպոսներով" այդ վարդապետաց թուին մէջ էր։ Աչքէ պէտք չէ հեռացընել այն պարագան ալ որ պատմագիրն կը խոստանար թուարկել նաեւ "զվանորայսն հանդերձ վանականօք" եւն, բան մը, որ լիով կը ճշգրտուի Սիւնիքեան Հայաստանի համար, մինչ նորադարձ նորատունկ ժողովրդեան մէջ շատ ժամանակի կը կարօտէր այնչափ բարգաւաճելու համար։

Մենք սակայն շատ հեռուներն տարածուեցանք՝ թողլով հիւսիսային Հայաստանը, ուր նուազ չէր նոյնպէս Ծադերու թիւն. թէ յԱղուանս, թէ ի Սիւնիս եւ թէ ի Շիրակ կար բազմութիւն մը Ծադերու — հոս վրական ազդեցութեամբ։ Ասողկան Պատմութենէն եւ Անանիա Մոկացւոյ թղթերէն յայտնի են այն խնդիրներն, որոնք ծագեցան Ժ դարուն հիւսիսային Հայաստան. Աղուանք

[1] Այս Գրիգորն է ապահովապէս Ասողկան (էջ 178) յիշատակած "Գրիգոր քահանայն յամուսնացելոց. յորդախօս եւ առատաբան ի պատգամս Տեառն,, որ մեծ գործունէութիւն ունեցած է Ժ դարու կրօնական խնդրոց մէջ. թերեւս այս եպիսկոպոս ձեռնադրուած ըլլայ, եթէ Ուխտանիսի յիշած Գրիգորն եպիսկոպոս է։

*եւ Սիւնիք կտրած հաղորդակցութիւնին Հայոց կաթողիկոսին հետ յարած էին Վրաց եւ ընդգրկած Քաղկեդոնի ժողովը. թէեւ Անանիա յաջողեցաւ կրկին հաստատել հին կապն, բայց իր յաջորդ կաթողիկոսն՝ Սիւնեաց Վահան եպիսկոպոսն — պարագլուխն "ապստամբութեան", վերստին յայտնեց իր հաճութիւնն Վրաց, որով ենթարկուեցաւ սաստիկ հալածանաց, ստիպուեցաւ թողուլ աթոռն, ապաւինիլ ի Վասպուրական — առանց տարակուսի "Ծայթ. Ապուսահլին. ուր եւ մնաց ցմահ ըստ Ասողկան: Վահանայ յաջորդ կաթողիկոսաց՝ Ստեփաննոսի եւ Խաչկայ գործն նոյնպէս կռուիլ եղաւ (Ծայթ) քաղկեդոնականաց այդ հզօր կուսակցութեան դէմ, որ շատ զօրացած էր։ Ուխտանէս, որ Խաչիկ կաթողիկոսի օրով կը պատմագրէր, չէր կրնար իր պատմութեան նիւթն ժամանակայս հիւսիսային Հայաստանի խնդիրներն՝ Աղուանից եւ Սիւնիքի յոյզերն եւ նուաճումն չընտրել։ Այս ալ հնարաւոր է ըստ այսմ. բայց հաւանականագոյնն առաջինն կ'երեւայ մեզի։*

*Երանի թէ յաջողէր օր մը Ուխտանէսի պատմագրութեան ամբողջական օրինակի մը գիւտն, որով միայն հնարաւոր պիտի ըլլայ տալ վերջնական լուծումն այն ամէն խնդրոց, զորոնք շօշափեցինք ցայս վայր, եւ գնահատել պատմագրիս արժանիքն ճշդութեամբ Հայոց եկեղեցական եւ մատենագրութեան պատմութեան համար։*

*Հոս կը վերջացընենք Ներածութեանս բաժինն, որ թէեւ ընդարձակեցաւ մեր կարծածէն աւելի, բայց անհրաժեշտ էր լաւ հասկնալու համար մեր ուսումնասիրութիւնն, զոր յաջորդ էջերու մէջ պիտի կատարենք։*

---

# ԿԻՒՐԻՈՆ ԿԱԹՈՂԻԿՈՍ ՎՐԱՑ

## ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ՀԱՅ-ՎՐԱՑ ՅԱՐԱԲԵՐՈՒԹԵԱՆՑ ԵՕԹՆԵՐՈՐԴ ԴԱՐՈՒ ՄԷՋ

—

### ԳԼՈՒԽ Ա.

**Միաբանութիւն էր Վրաց եւ Հայոց ընդ միմեանս.**

*‘. . . եւ այլ ինչ բանք եւ խօսք չէին ուրեք եղեալ ի ներքս. իսկ այժմ ուստի՞ եղեն„։*

*Այս խօսքերս կ'ուղղէր Կիւրիոն Հայոց Աբրահամ կաթողիկոսին թուականէս ճշդիւ 1300 տարի յառաջ՝ յամի 608, երբ սկսած էին խանգարիլ երկու եկեղեցեաց մէջ խաղաղական յարաբերութիւնք։ Ի՞նչ “միաբանութիւն„ էր այն, որուն քայքայման պատճառներն կը հարցաքննէ Կիւրիոն։ Երկու եկեղեցեաց պետերու հարցը հարկաւ եկեղեցական տեսակէտով ըլլալու էր, “Միաբանութիւն„ Խաչի դրօշի ներքեւ։*

*Քրիստոնէական բարձր վարդապետութեան հոսանքն Փոքր Ասիոյ հիւսիսային ժողովրդոց մէջ Յունական Արեւմուտքէն եւ Ասորիքէն, իւր խաղաղական նուաճումներն դիւրաւ կատարեց Հայաստան, Վրաստան, Աղուանք եւն. որչափ ալ զրուցախառն ըլլայ ժողովրդոցս դարձի պատմութիւնն, այն չի կրնար ուրացուիլ, թէ Դ. դարու առաջին տասնեակին քրիստոնէական լծոյն ներքեւ կը գտնուէին արդէն այս երեք աշխարհները — միջնորդութեամբ՝ գլխաւորաբար՝ Հայոց Լուսաւորչին։*

Այս է բնիկ ժողովրդոց դարաւոր համոզումն, եւ զայս կ'աւանդեն գրաւոր յիշատակարանք[1] Ե. դարէն ի վեր։ Լուսաւորչի այս դերն կապեց դրացի ժողովրդոց սրտերն Հայոց եկեղեցւոյն հետ հոգեւոր միութեամբ, եւ տուաւ Հայոց եկեղեցւոյն տեսակ մը գերիշխանութիւն հաւատոյ իրաց մէջ եւ եկեղեցւոյ աւանդութեան պահպանութեան նկատմամբ — Վրաց եւ Աղուանից վրայ. այս մասին խօսեցանք բաւականաչափ արդէն։ Այս համոզումն յաճախ կը նշմարուի Հայոց եկեղ. պատմութեան մէջ. Վրկանի մարզպանն Սմբատ կը գրէր 608ին Ցուրտաւայ Մովսէս եպ.ին "Սուրբն Գրիգոր զայն (հաւատ) ետ նոցա (Վրաց) եւ մեք զնոյն ունիմք" (174). Նոյնը կը յիշեցընէին իրարու Հայոց եւ Վրաց կաթողիկոսները (էջ 180 եւն) եւ Վրթանէս կաթ. տեղապահն յամի 606 Ցուրտաւայ եկեղեցւոյն (էջ 128), որ իւր պատասխանին մէջ կը դաւանէր նոյն "սուրբ եւ ուղիղ հաւատն, զոր Մեծին Ս. Գրիգորի սերմանեալ էր յայս ի Կովկասային կողմանս" (Գ. Թղ. 132)։

Գրիգոր Լուսաւորչի գործակցութեան եւ այնու այս ազգաց համար իւր մեծ նշանակութեան գեղեցիկ ցոյց մ'էր այն, որ Գրիգորի մահուընէն ոչ շատ վերջը անոր թոռը՝ Վրթանիսի մանկահասակ որդին՝ զԳրիգորիս իրենց կաթ. ուզեցին Վիրք եւ Աղուանք (Բուզ. Գ. գ. 12)։ Սրբոյն եղերական նահատակութենէն յետոյ յայտնուած խանդավառ. զգացմունքն եւ հանդիսաւոր յուղարկաւորութիւնն դէպ ի Ամարաս նոյնին գրաւականն էր (Բուզ. Գ. գ. 13)։ Անաղարտ պահեցին Վիրք իրենց յարգանքը դէպ ի կաթողիկոսական աթոռն եւ Ս. Գրիգորի տոհմը, այս-

---

1 Տե՛ս վերն էջ 1 եւն։ Հմմտ. եւ Ագաթ. 627–628. Փարպ. 50 եւն. Գիրք Թղթոց, 128, 132, 174, 180 եւն։

պէս Մեծին Ներսիսի. ձեռնադրուելու համար Կեսարիա ուղեւորած ժամանակ, ուղեկից էր նաեւ “եպիսկոպոսն Վրաց Փառէն„ — ըստ Մեսրոպ երիցու վկայութեան (Սոփ. Զ. 26), եւ ըստ Տարեգրոց (Hist. I. p. 136, Զուանշէր, 70) Ներսէս ձեռնադրած է նաեւ իւր Յակոբ (Յոբ) սարկաւագն Վրաց եպիսկոպոս (տե՛ս վերը էջ 15 ծ.)։ Դժբախտաբար շատ անապատ է մեր առջեւ հողը Դ. դարու վերջին կիսուն եւ գրեթէ ոչինչ գիտենք ժամանակիս յարաբերութեանց աստիճանի մասին։ Եթէ ուզենք քաղաքականէն եկեղեցականի մասին ալ հետեւութիւն հանել, շատ ձախող եզրակացութեանց հանդէպ պիտի նշմարենք զմեզ — գոնէ ըստ Փաւստոսի[1]։ Ինչպէս ալ եղած ըլլայ Դ. դարու վերջերը, Ե. դարու խաղաղական յարաբերութիւնք գեղեցիկ անցեալ մը կը պատկերեն։

Հայոց մատենագրութեան ոսկեդարուն, երբ կը փայլէին ի Հայս Սահակ մը, Մաշտոց մը ուսումնասէր Վռամշապուհի անդորր թագաւորութեան երջանիկ օրերուն՝ չէին կրնար չամրապնդուիլ դրացի քրիստոնեայ ազգաց հետ սիրոյ յարաբերութիւնք։ Գիտութեան նախանձաւոր առաքեալն՝ Մաշտոց Հայոց նշանագիրն յօրինելէն ետքը — դիմեց նաեւ դրացի սահմանակից աշխարհները, այն ժողովրդոց մէջ ալ ձգելու գիտութեան խայծը, դէպի մտաւոր բարգաւաճում սէր եւ եռանդ քարոզելու։ Այսպէս կը պատմէ ականատես կենսագիրն Կորիւն իւր վարդապետին գործունէութիւնն այս կողմերը.

“Առնոյր ընդ իւր զոմանս լաւագոյնս յաշակերտաց իւրոց, յարուցեալ գնայր իջանել ի կողմանս Վրաց, եւ երթեալ յանդիման լինէր թագաւորին, որում անուն էր Բակուր, եւ եպիսկո-

---

[1] Փաւստ. Ե. ժե. 177։ Հմմտ. ՀԱ. 1907 էջ 293—4։

պոսին (կաթողիկոսի) աշխարհին՝ Մովսէս։ Եւ առաւելագոյն հնազանդեալ ընդ նմա ըստ օրինացն Աստուծոյ՝ թագաւորին եւ զօրացն, հանդերձ ամենայն գաւառօքն։ Եւ նորա զիւր արուեստն առաջի արկեալ՝ խրատէր յորդորելով։ Ցորում եւ յանձն առեալ ամենեցուն զխնդրելին կատարել. եւ գտեալ այր մի թարգման վրացերէն լեզուին, որ անուանեալ կոչէր Ջաղայ, այր գրագէտ եւ ճշմարտահաւատ. հրաման տայր այնուհետեւ արքայն Վրաց՝ ի կողմանց կողմանց եւ ի խառնիճաղանջ գաւառաց իշխանութեան իւրոյ՝ ժողովել մանկունս՝ տալ ի ձեռն վարդապետին. զոր առեալ՝ արկանէր ի բովս վարդապետութեանն„ (էջ 26)։

Թէեւ շատ մութ են պատմագրին խօսքերն, եւ կը կարօտին լաւագոյն ընթերցուածի, բայց կը ներկայացընեն բաւականաչափ երանելւոյն գործունէութեան ասպարէզն եւ քաղուած շահն, որ մեծաշահ կ՚երեւայ։ Կրկին անգամ կը գտնենք զինքը ի Վիրս՝ նոյն գործունէութեամբ.

“Իսկ նորա, կը գրէ Կորիւն, անցեալ դիմեալ ի կողմանսն (Վրաց), առ որով ժամանակաւ Արձիւղ անուն թագաւորեալ Վրաց, որոյ առաւելապէս պայծառացուցեալ ծաղկեցուցանէր զվարդապետութիւնն. եւ նորա շրջեալ զամենայն աշակերտօք պատուիրեալ կալ ի ճշմարտութեանն„ (էջ 32)։ Վրական “կողմանք„ ըսելով պէտք է ի միասին իմանալ նաեւ Գուգարաց նահանգն, որուն եպիսկոպոս ձեռնադրուեցաւ նոյն իսկ Մաշտոցի աշակերտներէն մին՝ Սամուէլ[1] (հմմտ. Կոր. 26. ՀԱ. 1907, էջ 122)։ Մաշտոց երբ Վրաց աշխար-

[1] Աւանդութիւնը թէ Կորիւն եւս ձեռնադրուած ըլլայ Վրաց եպ.՝ հիմնուած ինքնին Կորեան վկայութեան վրայ՝ հիմնովին անճիշդ է, ինչպէս ցուցուց Նորայր Բիւզանդացի (Կորիւն Վրդ. եւ նորին թարգմանութիւնք Տփ. 1900 էջ 385—6)։

հէն անցաւ Գուգարք, ընդունեցաւ զինքը սիրով բդեշխն Աշուշայ «եւ ի ձեռն տայր նմա զանձն ամենայն գաւառովն իւրով. եւ նորա զամենայն ամփիւռ վարդապետութիւնն ոչինչ պակասութեամբ քան զայլոցն գաւառաց անդ ցուցեալ, եւ յանձն արարեալ զնոսա սրբոյ եպիսկոպոսին Սամուէլի» ինքն կը դառնար Հայաստան (էջ 31)։

Այսպէս իւր անխոնջ գործունէութեամբ «զամենայն կողմանս Հայոց, Վրաց եւ Աղուանից» «իւրով աւետարանական եւ ողջապատում գնացիւքն» լուսաւորեց Մեծն Մաշտոց (Կոր. 32)։ Եւ իւր արդիւնքն կարճատեւ նշանակութիւն չունեցաւ ընիկ ժողովրդեան վրայ, այլ նաեւ յաջորդ սերունդներէն չմատնուեցաւ մոռացութեան երկար ժամանակ։ Յամի 608 Աբրահամ կաթողիկոս Վրացիներն ի միութիւն յորդորելու համար կը գրէր. «Մի հեղգասցուք զսէրն հոգեւոր, որ կայր ի մէջ երկուց ազգացս՝ նորոգել, զայն, որ ի միջէ աղբերէ առեալ էր զվարդապետութիւնն, որ նախ ինքեանք զկենդանութեանն լոյս առին, որպէս ուսուցին մարգարէքն եւ առաքեալք, եւ ապա մեզ եւ ձեզ հասարակ ուսուցին զաստուածպաշտութիւնն, նախ երանելին սուրբն Գրիգոր, եւ տէր Մաշտոց, եւ զԳրոց ծանօթութիւն ի պնդութիւն հաւատոց» (Գ. Թղ. 180)։

Երանելւոյն առաքելական գործունէութիւնն նաեւ յիշատակարաններու վրայ անմահացուած մնաց։ Այսպէս ԺԳ. դարուն Վանական վարդապետ կը բողոքէր. «Եւ ընդ նոսա (ընդ Յոյնս) զի՞ զարմանաս. մեք ոչինչքս՝ Հայոց յետին ծառայքս՝ Վիրք այլ նախատեն զմեզ եւ ուրանան. Մեսրոպ էր Նոյա փէր էր զՎարթիլոյ խաչն Մեսրոպ է օրհնել. եւ յաջ թեւին կայ հայ գիր. եւ զայն ոսկւով ծածկեալ են, թէ թո՛ղ չերեւի» (Գ. Թղ. 534)։

Այս սէրը շարունակուեցաւ անվթար։ Իբրեւ դրացի, քրիստոնեայ միահաւատ, ժողովուրդ

կային երկակողմանի անդադար վաճառականական երթեւեկութիւնք, ուխտագնացութիւն, նաեւ խնամական կապ։ «Հայք եւ Վիրք սահմանակիցք են միմեանց, կը գրէ Մովսէս եպ. առ. Սմբատ, շատք յազատաց եւ յոլովք ի շինականաց՝ աստի անդր հասանեն, եւ անտի՝ այսր» (Գ. Թղ. էջ 172)։ Պրոկոպիոս (Վասն Պարսկ. պատ. Բ. իե, էջ 263) կը յիշէ թէ կային ի Դուին Վրաստանէն բազմաթիւ վաճառականներ։ Ծանօթ իրողութիւն է Վրաց բդեշխին տան Մամիկոնեանց հետ խնամութիւնն. Աշուշայի որդին Վազգէն «կին ունէր դուստր Վարդանայ՝ Հայոց սպարապետի Մամիկոնէի ... անուն նորա Վարդենի ի ծնողացն կոչեցեալ, եւ Շուշանիկ յորջորջանօք յետոյ անուանեալ» (Սոփ. Թ. էջ 11) եւ Վարդանայ երէց եղբօր Հմայեկի կնոջ քոյրն Անուշվռամ «ունէր ի կնութեան բդեշխն Վրաց Աշուշայ» (Փարպ. 111)։ Բայց պէտք է խոստովանիլ որ Գուգարաց դիրքը Հայոց հետ ուրիշ էր, քան որ էր Վրաց։ Այն աշխարհը իւր բախտին յաճախակի փոփոխութեամբն մերթ հայկական հող էր եւ մերթ վրական, այս պատճառաւ ալ ժողովրդեան մեծ մասն հայ էր եւ հայալեզու։ Կարեւոր նշանակութիւն ալ ունէր սակայն երկու ազգաց յարաբերութեանց համար, իբրեւ երկու աշխարհաց սահմանագլուխ, այնպէս որ Գուգարաց մայրաքաղաքն Ցուրտաւ երկու ազգաց՝ Հայոց եւ Վրաց յարաբերութեանց օղակն կը կազմէր։ Ցամի 607 կը գրէր Աբրահամ Կիւրիոնին. «Այժմ զչարագոյնն եւ զծանրագոյնն մեզ եհաս լսել, զի զմիաւորութիւն հաւատոյ եւ զասպնջականութիւն զերկոցունց աշխարհացս՝ Ցուրտաւայ եկեղեցին անշարժ միջնորդութեամբ պահէր, ուստի սէր եւ խնամութիւնք մարմնաւորականք եւ հաղորդութիւնք հոգեւորականք կատարէին ցնծալից ուրախութեամբ։ Աստի ի Մծխիթայի ի Խաչն [եւ ի Մանգղեաց խաչն, էջ 194]

գալով, եւ այտի ի սուրբ Կաթուղիկէ [Վաղարշապատու էջ 164] եւ յայլ վկայարանս յաղօթել” (էջ 169)։

Յուրտաւայ բնակչութեան մէկ մասին հայազգի եւ հայալեզու ըլլալուն համար տեղւոյն եպիսկոպոսք կ'ընտրուէին նաեւ Հայերէն (Գ. Թղ. 178)։ Ս. Շուշանիկ երբ ամուսնանալով Վազգէնի հետ կը բնակէր այս քաղաքը աւելի ճոխացան Հայք եւ Շուշանիկ ազգայնոց համար “կարգաւորած” էր Հայերէն լեզուաւ “պաշտօն” (ժամասացութիւն), զոր ազգայինք սրբուհւոյն խոստովանողական մահուընէ ետքն ալ շարունակեցին։ Ապա Կիւրիոն նոյնն վրացերէն ալ թարգմանելով՝ երկու լեզուաւ ալ կը պաշտուէր։ Յուրտաւ սակայն ուղղակի Վրաց կաթողիկոսին իրաւասութեան տակն էր։ Կիւրիոն 608ին թուելով Ս. Շուշանկէն մինչեւ իւր ժամանակ Յուրտաւայ եպիսկոպոսաց անունները, կը գրէ. “... եւ այլք եպիսկոպոսունք ի Հայոց եւ ոմանք ի Վրաց էին ի Հայս ուսեալք, գիտնականք եւ վարդապետք. Նոքա եւ մեր վարդապետք ընդ միմեանս խաղաղութեամբ կեցին. ի միմեանց ուսանէին եւ զմիմեանս ուսուցանէին. եւ մեր քան զմեր հարանցն ոչ թողեալ ինչ է եւ ոչ յաւելեալ ի հաւատոյ։ Եւ ազատ մարդիկն որ ի Հայոց ի Վիրս խնամութիւն արարեալ էր, ի սրբոյ Շուշանկայ պաշտօնն գային, եւ ի սուրբ Խաչս Մծխիթայի աղօթել եւ օրինաց հաղորդէին։ Նոյնպէս եւ որ աստի այդր գային ի սուրբ Կաթուղիկէ եւ յայլ եկեղեցիսդ աղօթել, անխիղճ ի միմեանց օրինաց հաղորդէին. եւ միաբանութիւն էր Վրաց եւ Հայոց ընդ միմեանս” (էջ 178—9)։

Միութիւնս ցուցուեցաւ նաեւ Վարդանանց եւ Վահանանց պատերազմներու ժամանակ ընդդէմ Պարսից մոգութեան։ “Պատգամաւորութիւն այնուհետեւ երեքին աշխարհքն (Հայք, Վիրք եւ Աղուանք) առ միմեանս առնէին եւ ուխտադրու-

թիւնս, եւ բազում երդմամբ Աւետարանին հաստատէին„ (փարպ. 47)։ Թեթեւ միջադէպք մը պէտք է նկատել Վախթանգայ երդման անհաւատարմութիւնն (փարպ. 132—135), որ երբեք առիթ չեղաւ բարեկամական սիրոյն քայքայման. համերաշխութիւնն ընդհանուր էր, կարեկցութիւնն հասարակաց. Ղ. Փարպեցին խօսելով Աղան Արծրունւոյ վրայ, վախճանելէն ետքը, կ'ըսէ, “յիշատակարանն ընդ անուանս վկայիցն սրբոց պատմեալ քարոզի մինչեւ ցայսօր եւ յաւիտեան անուն սրբոյն յամենայն եկեղեցիս Հայաստանեայց աշխարհիս, Վրաց եւ Աղուանից„ (էջ 6)։ Զարմանալի պէտք չէ երեւալ այս մեզի. նոյն իսկ եկեղեցական տարին բաւ մեծի մասին համապատասխան էր Հայոց տօնացոյցին։ Չնայելով բաժանումէն ետքը Վրաց ատէպ Հայոց հացէին ուղղած պարսաւանքներուն, յառաջագոյն իրենք ալ կը պահէին — նոյն իսկ հայերէն կոչմամբ, Առաջաւորաց պահքը։ Նաեւ Մատաղի սովորութիւնն, ինչպէս յերեւան հանեցին Ն. Մառի հետազօտութիւնք ի Սինայի, կը նշմարուի հին Վրաց յիշատակարաններու մէջ, թէեւ ապա արմատախիլ ընելով՝ յաճախ անգամ կը մեղադրէին Հայերը ատոր համար (հմմտ. ԲԶՄ. 1904, էջ 45)։ Այն պարագան իսկ, որ Ղազար Փարպեցի Վաղարշապատու սուրբ տեղիքը նորոգելու համար նաեւ Վրաց եւ Աղուանից աշխարհներէն նպաստ կը գտնէ (Թուղթ, 196), առանց տարակուսի մեծագոյն համերաշխութեան բացայայտ նշան մ'է։

Բայց հաւատոյ իրաց եւ եկեղ. աւանդութեանց մէջ ունեցած միութիւնն ցուցընելու գեղեցիկ առիթն ընծայուեցաւ Զ. դարու սկիզբներն՝ Հայոց Բաբգէն կաթողիկոսի օրով, որ եւ քարն գայթակղութեան եղաւ ապագայ քայքայման։ Լաւ լուսաւորուելու համար իրողութեանս մասին ab ove կարեւոր է լսել պատմութիւնը։

Մինչդեռ Հայք, Վիրք եւ Աղուանք ընդդէմ Մազդեզանց քրիստոնէական հաւատոց համար արիւն կը թափէին իրենց հայրենի աշխարհին մէջ, Բիւզանդական հողին վրայ կը դայրանային օր աւուր կրօնական բանակռիւք. դարձեալ Մարդեղութեան հրամանակարգ վարդապետութեան մասին էր վէճն, այժմ ընդ մէջ ուղղափառաց եւ Եւտիքեանց։ Քաղկեդոնի 451ի Դ. Տիեզերական սիւնհոդոսն կը դատապարտէր հանդիսապէս Եւտիքէսի հերետիկոսական նախադասութիւնն, — որ կը վարդապետէր է Քրիստոս յետ միաւորութեան մի բնութիւն, — հաստատելով հակառակէն է Քրիստոս երկու բնութիւն՝ աստուածային եւ մարդկային անշփոթ եւ անխառն, համաձայն Հռովմայ Լեւոն Ա. Մեծ Քահանայապետին (440 — 461) վարդապետական թղթին (Տոմար, τόμος)։ Ժողովոյն վճիռը աւելի սաստկացուց յոյզերը — հակառակ կայսերական իշխանութեան ձեռք առած խափանիչ միջոցներու։ Ժողովոյն Սահմանադրութիւնն հակառակութեան բախեցաւ մանաւանդ Ասորիք (Անտիոք), Եգիպտոս (Աղեքսանդրիա) եւ Պաղեստին (Երուսաղէմ)։ Յուզմանց առաջն առնուլ մտածեց Կ. Պոլսոյ Ակակ պատրիարքն Հենոտիկոնով (ἑνοτίχον = ‘Միութեան գիր.’), զոր Աղեքսանդրիոյ Պետրոս Ծանրախօս (μόγγος) պատրիարքի խորհրդով յօրինած էր եւ հրատարակած (482) Զենոն կայսեր (474—491) հաւանութեամբ եւ ի դիմաց։ Երկիմաստ գրութիւն մ'էր այս. վիճմանց առարկայ՝ Քաղկեդոնի ժողովոյն մասին կը լռուէր բոլորովին, “երկու բնութիւն” բացատրութենէն կը զգուշացուէր եւ հաւատոյ սահման կ'առաջարկուէր միայն Նիկիոյ, Կ. Պոլսոյ եւ Եփեսոսի տիեզ. ժողովները։ Բայց չյաջողեցաւ Ակակ իւր խորհրդեան մէջ։ Այժմ առաջին երկու կուսակցութեան վրայ աւելցաւ երրորդ մ'ալ, Հե-

[1] Հայ. Թարգմ. Գիրք Թղ. 269—271։

նոտիկոնի հետեւող։ Արեւելեայց այս ընթացքն բնականաբար Հռոմէն չէր կրնար հաշտ աչօք նկատուիլ. արդեամբք ալ ծագեցաւ արեւելեայց եւ արեւմտեայց մէջ անհամաձայնութիւն, որ տխրահռչակ “Ակակեան հերձուած„ անուամբ տեւեց 35 տարի (484—519)։

Զենոնի օրով՝ որչափ ալ ճիգ կ'ըլլար Հենոտիկոնին հնազանդեցընել արեւելեան եպիսկոպոսները, ի Հայս որ եւ իցէ խնդիր չեղաւ, Հայք եւ Վիրք դեռ նոր վերջ կու տային պարսկական կռուոյն։ Զենոնի յաջորդ Անաստաս Ա. կայսրն (491—518) ալ նման իւր նախորդին միաբնեայց կողմն բռնեց, եւ մեծ եռանդեամբ զամէնքը կը ստիպէր ստորագրել Հենոտիկոնին. այս բռնութիւնն ի գործ կը դնէր մանաւանդ պարսկական պատերազմէն ետքը (507/8)։ Մտադրութեան արժանի է Թէոփանէս Խոստովանողի[1] տողերս, զոր կը գրէ յամին 508 “Ցայսմ ամի թագաւորն Անաստաս ստիպէր զեպիսկոպոսն Անտիոքայ՝ զՓլաբիանոս ձեռն արկանել Հենոտիկոնին Զենոնի, որ արար իսկ ժողով եպիսկոպոսաց, որ ընդ իւրեւն էին, գրեաց գիր երկայնաձիգ, յորում ընդունէր զժողովս Նիկիայ, Կ. Պոլսի եւ Եփեսոսի, իսկ զժողովէն Քաղկեդոնի ամենեւին իսկ լռէր։ Նզովէր զԴիոդորոս [եւ զԹէոդորոս], մերժէր զչորեսին գլուխս„ եւն։

Հայոց, Վրաց եւ Աղուանից եկեղեցական կապն Անտիոքի պատրիարքութեան հետ ծանօթ իրողութիւն է։ Անշուշտ այս կապի շնորհիւ՝ Անտիոքի միջնորդութեամբ Անաստասի ձայնն լսուեցաւ նաեւ ի Հայս. եւ Զենոնի Հենոտիկոնին թարգմանութիւնն Անաստասի թղթին[2] հետ (յամէ 506) նաեւ ի Դուին խաւրուեցաւ յամի 508[3]։

---

1 Հմմտ. Թէոփ. 282 եւն։

2 Անաստասի թուղթը տես Գ. Թղ. 277-8։

3 Թուականիս մասին տես Հանդ. Ամս. 1904, էջ 211—212։

Անաստասի խնդիրքն լսելի եղաւ մանաւանդ այնու, որ ի Միջագետս եւ ի Հայս Պարսից դէմ տարած յաղթութիւնք (Թէոփ. 223—231) իւր անունն փառաւորած էին արդէն այն կողմերը։

Բաբգէնն էր այն ժամանակ Հայոց կաթողիկոսը (506/7—512/3)։ Պատասխանելու համար կայսեր խնդրանքին եւ Հենոտիկոնին, գումարուեցաւ ժողով մը։ “Գումարման տեղն այս անգամ Դուինն Հայոց ոստանն եղած չէ, հապա Նոր քաղաքը, այս ինքն Վաղարշապատ Մայր եկեղեցւոյ մէջ, անշուշտ սոսկ աւելի կեդրոնական ըլլալով Վրաստանէն, Աղուանից եւ Սիւնեաց երկիրներէն գալու եպիսկոպոսաց համար[1]„։ Ժողովոյն ներկայ էին Վրաց Գաբրիէլ կաթողիկոսն իւր եպիսկոպոսներով, Աղուանից եւ Սիւնեաց եպիսկոպոսները, եւ այլ բազմաթիւ ազատորեար (Գ. Թղ. 177)։ Վրաց եպիսկոպոսաց անունները պահուած են, թէպէտ “ի կարի ծածուկ եւ այլաձեւք„, Աբրահամ կաթողիկոսի առ Կիւրիոն երրորդ թղթին մէջ (Գ. Թղ. 182—83)։ Ժողովականք — անծանօթ հրապարակին վրայ եղած կրօնական վիճից, ըստ ամենայնի ուղիղ կը տեսնեն Հենոտիկոնի միտքը եւ միաբան Հայք, Վիրք, Աղուանք եւ Սիւնիք կը ճանչնան ուղղամիտ եւ “Հոռոմոց„ վարդապետութիւն, եւ իրենց Յունաց հետ ի հաւատս հին միութիւնն շարունակելու համար կ՚որոշեն ստորագրել։ Նման Անտիոքի եպիսկոպոսին, իրենք ալ կը գրեն հաւատոյ թուղթ մը — յետիններու բացատրութեամբ “պայման նամակ„ մը, զոր բացի

---

1 Գոմըրճեան Հ. Յ. — Իրաւախոհի կեղծիքը եւն, Բ. (անտիպ)։ Հմմտ. Յովհ. Պատմաբան, 36. “Բաբգէն առնէ ժողով եպիսկոպոսաց Հայոց, Վրաց եւ Աղուանից ի Նոր-քաղաքի ի Ս. կաթուղիկէին ի Մայրն եկեղեցեաց Հայոց։ Տէր Մինասեանց Ե. Վ. Die arm. Kirche, p. 32. անիմանալի պատճառաւ Դուինն կը համարի ժողովատեղին։ Այս մասին տե՛ս եւ մեր մատենախօսականը Հանդ. Ամս. 1904. էջ 212։

իրենց ընտանի լեզուները — հայերէն, վրացերէն, կը թարգմանեն նաեւ յունարէն (եւ ասորերէ՞ն), բնագիրք կը պահուին կաթողիկոսական դիւաններ իբրեւ հաւատոյ դաւանութիւն, եւ յունարէնն կը խաւրուի կայսեր[1]։

Զախող էր ժողովոյն վճիռը։ Բիւզանդիոն Ակակեան հերձուածի մէջ էր, ուսկից Անաստասի († 518) յաջորդք դիւրաւ կրցան կանգնուիլ՝ մեր-

1 Հետաքրքրական են Աբրահամու տողերը. "Ընդունեա եւ դու զժողովն Քաղկեդոնի եւ զտումարն Լեւոնի, որպէս նախնին քո երանելին Գաբրիէլ կաթուղիկոսն Վրացն ընդունեցաւ ընդ երանելի հարսն մեր հանդերձ աթոռակցօք իւրովք, որոց անուանքն են այսոքիկ. Որ ինքն Գաբրիէլ եպ. Մցխիթայի անուանի եւ Պաղգէն եպ. Թագաւորութեան տանն ...(24 թուով) Արդ՝ այս երանելի եպիսկոպոսունքս, որ յաշխարհէ ձերմէ էին, եւ ընդ Աղուանիւք եւ ընդ Սիւնիւք ի Հայս դիպեցան յաւուրս Բաբգենայ Հայոց կաթուղիկոսի. յայն ժողովի, յորում անիծաւն ի նոցանէն միաբանութեամբ ժողովն Քաղկեդոնի եւ տումարն Լեւոնի։ Եւ զի պայման նամակն, որ հայերէն գրով էր, յապստամբութեանն կորեաւ, եւ թարգմանեցաւ այս յՍուրհայ քաղաքի ի հոռոմ գրոյ. քանզի եւ նոքա ունէին ի մէնջ. եւ ստոյգ եւ սուրբ, որպէս արժան էր, չկարացին թարգմանել, զի են որ քաջ յայտնի են եպիսկոպոսաց եւ եպիսկոպոսարանացն անուանք, եւ են որ ի կարի ծածուկ եւ այլաձեւք։ Բայց թէ կամիք անուամբք եպիսկոպոսացն եւ յաջորդաւք տեղեացն եւ այլաձեւ անուամբք եպիսկոպոսացդ՝ որպէս գրեալ են, կարէք զստոյգ անուանս եպիսկոպոսարանացն գտանել, եւ զայլոցն եւս, քանզի եւ մեք զմերս այդ տարազու մարթացաք գտանել, եւ մանաւանդ թէ զպայման նամակն իսկ գտանիցէք գրով ձերով„ էջ 182—83։ Ժողովքիս ծանօթ կ'երեւայ Բէթ-Արշամայի Սիմէոն եպիսկոպոսը, երբ կը գրէ Անաստաս կայսեր օրով, թէ Հենոտիկոնն կ'ընդունէին եւ իր հաւատքին կը հետեւէին այժմ եւ ունէին յայտնի Վրաստանի (Gurzan) 33 եպիսկոպոսք իրենց թագաւորներու եւ նախարարներու հետ, ինչպէս եւ Պարսկահայոց 32 եպիսկոպոսք իրենց մարզպաններու հետ. Assemani, Bibl. Or. I. 355։

ժելով Հենոտիկոնը եւ ենթարկելով սաստիկ հալածանաց միաբնեաները։ Քայքայուած էր այլ եւս այն "միութիւնն„ Հոռոմոց հետ, զոր ստէպ սովոր էր կրկնել Բաբգէն իւր թղթոց մէջ. "Զայս հաւատ Հոռոմք եւ մեք՝ Հայք, Վիրք եւ Աղուանք ունիմք„ (Գ. Թղ. 45, 46, 51)։ Սկսան Հայք ուծանալ Յոյներէն եւ մօտենալ "ուղղափառ„ Ասորիներու։ Այս ընթացքը բռնեցին Ներսէս Բ. Աշտարակեցի (548—557), Յովհ. Բ. Գաբեղենեցի (557—574) եւ յաջորդք։

Վրաց եւ Հայոց յարաբերութիւնք տակաւին խաղաղ էին, եւ կը շարունակուէր հաւատոյ միութիւնն, թէեւ դէպ ի Երուսաղէմ յաճախակի երթեւեկութիւնք կը սպառնային խորտակում մը, ինչպէս իրագործուեցաւ այս Աղուանից եւ Սիւնեաց համար Զ. դարու կիսուն։

Երուսաղէմ նուիրական անուն մ'էր առաջին դարէն սկսեալ քրիստոնէից՝ իւր սուրբ յիշատակներով։ Գրեթէ միշտ անպակաս եղած են հեռաւոր եւ դրացի աշխարհներէ ուխտագնացութիւնք սուրբ տեղեաց, ասկէ հաստատուած են նաեւ գաղթականութիւններ եւ բազմութիւն մը վանօրէից։ Նուազ չէր ուխտաւորներու թիւը նաեւ Հայաստանէն, Վրաստանէն եւ Աղուանքէն։ Տարեգիրք (Hist. I. p. 137) կը յիշեն մասնաւորապէս Վրաց Վախթանգ թագաւորին ուխտագնացութիւնն Երուսաղէմ։ Դ—Ե. դարերուն կային արդէն հոն հայ վանքեր. բայց ծաղկեցան մանաւանդ Զ. դարու սկիզբները, այնպէս որ ժամանակակից մը՝ Անաստաս Վրդ. նոյն դարու վերջին քառորդին կը յիշատակէ յանուանէ 70 Հայոց վանք (Հայապատում, Բ. 1. էջ 514—521)։ Այս թուին հետ կրնային մրցիլ նաեւ Աղուանից մենաստանները նոյն տեղ (Անդ, 517 եւ Կաղանկատ. Բ, ծբ. 227)։ Ունէին առանց տարակուսի համապատասխան թուով Վիրք ալ, թէեւ ասոր մասնաւոր թուար-

կութեան պատահած չեմ։ Անաստաս Վրդ. իւր գրուածքին մէջ կը նշանակէ. «Ս. Յովհաննու վանքն ի դրանն Յարութեան (յառաջագոյն Հայոց էր), զոր այժմ Վրացիք ունին» (էջ 516)։ Պրոկոպիոս (Վասն Շինութեանց, Ե. Թ. տպ. Բոնն, էջ 328) կը թուէ Յուստինիանու Երուսաղէմ շինած վանօրէից թուին մէջ նաև τὸ τῶν Ἰβήρων ἐν Ἱεροσολύμοις. Իր յիշուի Երուսաղէմ վրական նշանաւոր վանք մը նաև «Ս. Խաչ» անուամբ (ROC. IV, 1899, 540—41). կային նման բազմաթիւ մեծամեծ վանքեր ալ, ուր կը գտնուէին վիր կրօնաւորներ (Brosset, Deux hist. p. 330, n. 1)։ Վրական վանքերու թուին մէջ նկատելու է նաև նոյն Անաստաս Վրդ.ի նշանակածներն «...Գուգարաց վանք։ Բդեշխի վանքն շինեալ ի նոյն կողմն, որ կոչի Ս. Սարգսի և Բագոսի» (էջ 515)։ Այն պարագան իսկ, որ Կիւրիոն ունի թղթակիցներ Երուսաղէմ, և հոն թարգմանել կու տայ չորս տիեզ. ժողովոց պատմութիւնն և սահմանները, որոնք «ի Ս. Անաստասիա և ի Ս. Սիոնի» կը խօսավանուին (ԱՐՐՏ. 1902, էջ 568), այս է Երուսաղէմի Ս. Յարութիւն և Ս. Սիոն եկեղեցիներու մէջ, նշան է թէ կային հոն բաւական թուով ազգակից կրօնաւորներ։ Ապա պիտի տեսնենք, թէ Կիւրիոն իւր առ Գրիգոր Քահանայապետ թուղթն ալ Երուսաղէմի վրայէն խաւրեց։ Երթևեկութիւնք Վրաստանէն մինչև Երուսաղէմ կ՚ըլլային ընդհանրապէս Հայաստանի ճամբով[1] և Ասորիքէն (Անտիոք). այս առթիւ կը մտնէին Ասորւոց հետ ալ մտերիմ յարաբերութեանց մէջ, և Անտիոք և սահմանակից Սևաւ լերանց մենաստան-

---

[1] Գիրք Թղ. 179. «Զի ապա ինձ ընդ Հայս, բայց թէ ճանապարհաւ հասանէ անցանել երբեք. թէ Աստուած արժանի առնէ երթեալ երկրպագել սուրբ տեղացն Երուսաղէմի» կը գրէ Կիւրիոն առ Աբրահամ։

ներն կ'ըլլային նաեւ ծննդավայր վիր կրօնաւորաց[1]։ Այս կէտերը ի զուր չէ որ կը յիշատակենք։ Վանականք, որոնք յառաջագոյն (մինչեւ Զ. դարու կէսն) կրնային միաբնեայ ալ եղած ըլլալ, Յուստինիանու եւ Յուստինոսի ստիպիչ հրամաններէն ետքը չէին կրնար միաբնեայ դաւանութեամբ Երուսաղէմ մնալ։ Հայ կրօնաւորներէն մաս մը, որ չուզեց հպատակել հրովարտակին, ստիպուեցաւ թողուլ քաղաքն (Հայապատում, էջ 519—20. ԱՐՐՏ. 1896, էջ 252)։ Այսպիսի անցք կրեցին անշուշտ նաեւ Վիրք իբրեւ Հայոց հաւատակից, եւ իրենցմէ ալ եղան հաւանողներ կայսեր հրամանին։ Երուսաղէմի հայրապետները վաղ իսկ ընդունած էին Քաղկեդոնի ժողովոյն սահմանն եւ հաստատուած էր հոն երկու բնութեանց վարդապետութիւնն։ Այսպիսի հողի վրայ երթեւեկութիւնք Փոքր Ասիոյ հիւսիսային աշխարհներէ անձուկ շփման մէջ կը դնէին ուխտաւորները Երուսաղէմացիներու եւ Ասորիքի յոյներու հետ։ Լուրջ հարցում մը. "ուստի՞ եղեն„ հաւատոց խառնութիւնք իրենց եւ Երուսաղեմացւոց մէջ, կրնար դիւրաւ խեղամտեցընել զիրենք իրին։ Նման անդրադարձութիւնք շատ անգամ կարծեաց փոփոխմամբ կը վերադարձընէին ուխտաւորներն Հայրենիք։ Աղուանք Զ. դարու խոնարհող կիսուն ազդուած այսպիսի հանգամանքներէ՝ հեռացած էին արդէն Հայերէն[2], իրենց հետեւած էին քիչ

---

1 Մանրամասնութիւնք Վրաց եւ Երուսաղէմի յարաբերութեանց նկատմամբ հմմտ. A. Zagarelli : Historische Skizze der Beziehungen Grusiens zum heiligen Lande und zum Sinai. Թարգմ. ռուսերէնէ A. Andres ի Zeitschrift des deutschen Palästina-Vereins. XII (1889) p. 35—73.

2 Թուղթ Յովհ. Բ. առ Աղուանս, Գ. Թղ. էջ 81—84, Կաղանկատ. 94–97. հմմտ. եւ Գ. Թղ. էջ 193։ Թուղթ Յովհ. Երուսաղեմացւոյ առ Աբաս, ԱՐՐՏ. 1896. էջ 252—256։

յետոյ նաեւ Սիւնիք[1] եւ ընդգրկած երկու բնութեանց վարդապետութիւնն եւ Քաղկեդոնի ժողովոյն սահմանը։ Յովհ. Երուսաղեմացի իւր թղթին մէջ կը յիշէ թէ իւր նախորդները գրած են թղթեր Աղուանից. հաշտակաւոր թուղթ է Երուսաղեմայ Մակար հայրապետի առ Վրթանէս Սիւնեաց եպիսկոպոս գրած կանոնականը[2]։ Վերք, որ այդ երկու ժողովրդոց հետ ալ յարաբերութեանց մէջ էին, շուտ թէ ուշ չէին կրնար ականատես չըլլալ եղելութեանց։ Մանաւորապէս թէ նաեւ Վրաց հետ թղթակցած են Երուսաղէմի հայրապետք, չկայ այս նկատմամբ յիշատակարան, թէեւ ենթադրել կու տայ պատմութիւնը։ Բայց անտարակոյս առանց գիտութեան եւ հրամանի Երուսաղէմի հայրապետին չէր ասորա-յունական բարձրագոյն հոգեւորականութեան երեւալն Վրաստան, ուր երկար ժամանակ տիրող տարրն եղաւ եւ մեծապէս նպաստեց բնակչութեան մէջ քրիստոնէական կրօնից բարգաւաճելուն։ Զ. դարուն մանաւանդ տեղի ունեցաւ այս գաղթականութիւնն Անտիոքի շրջակայ մենաստաններէն (Ջուանշէր, 91, 95). իրաւամբ պէտք է հրաւիրել մեր ուշադրութիւնն առանց մուտքն ի Վիրս ճիշդ այն ժամանակամիջոցին, երբ կ՚իջնայ յատկապէս վրական եկեղ. պատմութեան ամէնէն աւելի տագնապալի ճգնական վայրկեանն։ Հարկաւ այս հոգեւորական դասը իւր գործունէութիւնն պիտի

---

[1] Թուղթ Յովհ. Բ. առ Վրթանէս եւն. Գ. Թղ. 7—880. Օրպել. 66—69։

[2] Հրտ. Գ. Թղ. 407—412։ Յայժմ առ հասարակ կը կարծուի թէ նամակագիրն ըլլայ Երուսաղէմի Մակար Ա. Հայրապետն (312—335) եւ ուղղուած առ Վրթանէս կաթ. (333—341)։ Վերապահելով ուրիշ առթի մանր քննութիւնը՝ կը մատնանշենք հոս, որ գրուած է թուղթս Զ. դարու Բ. կիսուն Երուսաղէմի Մակար Բ. Հայրապետէն (565—572) առ Վրթանէս եպ. Սիւնեաց (558—580)։

կենդրոնացընէր յատկապէս կղերին ուղիղ հաւատքն ծանօթացընել։

Եւ ուրիշ մեկնութեան ալ չի կրնար հանդուրժել Ե. դարու սկիզբը Հայոց եւ Վրաց մէջ ծագած կրօնական մարտի ժամանակ Կիւրիոնի ձեռքը ծածանող դրօշին վրայ կարդացուած "Հաւատք Երուսաղէմի„ նշանաբանը (Գ. Թղ. 167; 174, 176, 179, 183), զոր զուր տեղ անիմաստ ցուցընելու կ՚աշխատէր Աբրահամ. "Մի դարձեցուք միայն քարգաւաճեալ եւ նախանձելի անուամբ սրբոյ քաղաքին Երուսաղէմի, յորմէ զԱստուածային փառսն կողոպտեալ մերկացուցին; եւ զհաւատոն առաքելական զերծեալ բարձին ի նմանէն, եւ յոլովս եւ զանազան հերձուածս ի հաւատս եւ ի գործս աղանդեցին ի նմա, զոր դուք այժմ եւս դարձելով գրեցէք առ մեզ, թէ հարցն մերոց եւ ձերոց սուրբն Գրիգորիոս զԵրուսաղէմ հաւատոն էր, եւ մեք զնոյն ունիմք։ Արդ քաջ քննեցէք եւ տեսէք, զի դուք եւ յոլովք այլք հանդերձ բնակչօք սրբոյ քաղաքին, փոխեցայք յայդմանէ, այլ ոչ եթէ զնոյն ունիք„ (Գ. Թղ. 176)։

Կարծեաց եւ համոզման փոփոխութիւնք պիտի իրագործուէին մանաւանդ երբ 572ի ապստամբութեան ժամանակ իրենցմէ ալ բաւական բազմութիւն հաստուածեցաւ Գուրգէն իշխանի առաջնորդութեամբ Բիւզանդիոն (Թէոփ. Բիւզ. էջ 485)։ Եւ ստուգիւ ալ հոս յանգեցաւ ի վերջոյ իրաց ելքը։ 572ին Բիւզանդիոն դիմած Հայք զիջան Յոյներուն եւ մտան անոնց հետ հաղորդակցութեան մէջ։ Այսպէս ըրին ապահովապէս Նաեւ Վիրք, ինչպէս հետագայ դէպքս կարծել կու տայ։

Narratio de rebus Armeniae անանուն գրուածքին հետեւելով[1], երբ Հայք ի Կ. Պոլիս

1 Migne, P. gr. **132**, 1237–258. Գրուածքն է դաւրու Բ. կիսէն կ՚երեւայ։

573/4ին Տիբերեայ հրամանաւ ժողովք ըրին Յունաց հետ միանալու նպատակաւ, ժողովքին մէջ ոմանք հաւանեցան եւ ընդունեցան Քաղկեդոնի ժողովոյն սահմանը, եւ ոմանք մերժեցին։ Վերջիններս դառնալով Հայաստան՝ թղթեր գրեցին Աղուանից Աբաս կաթողիկոսին, որ իրենց հետ միանայ ընդդէմ քաղկեդոնականներու, Աբաս սակայն բացասական պատասխանեց. նոյնպէս գրեցին նաեւ Վրաց. բայց անոնք ալ միտ չդրին[1], բացի քանի մը գաւառներէ, այսինքն Տաշիր, Ձորափոր եւ Գարդմանք եւ Արձախէն ոմանք։

Անանուն պատմագրին այս տողերը կարեւոր յիշատակարան մը կ'ընծայեն, որով ի վիճակի ենք ապագայ բաժանման նկատմամբ ի յառաջագունէ կռահում ընելու։ Անհամաձայնութեանց ծիլերն սկսած էին արդէն ջղվանալ, դէպի Բիւզանդիա համակրանքը բողբոջել. Մօրկայ եւ Խոսրովու 591ի դաշնագրութեամբ երբ Վրաստանի ալ մէկ մասն Յունական հող եղաւ, աւելի մղում առաւ։ Այսպիսի տեսլեան մ'առջեւ Հայոց Մովսէս Բ. կաթողիկոսի վարանումը, երբ Վիրք կաթողիկոս խնդրեցին իրմէ, այժմ կրնայ իւր ճշդրիտ մեկնութիւնն ընդունիլ։ Մովսէս կ'ընտրէ կաթողիկոս այնպիսի անձ մը, որ իւր վստահութեան լիուլի արժանացած էր, եւ քաջայայտ էր թէ Կիւրիոն ամրապինդ պիտի պահէ յաճախ վտանգի ենթարկուած կապը։ Առ այս երդում իսկ պահանջած է Կիւրիոնէն — ինչպէս ժամանակակիցք կը յիշատակեն։

Պակսելով մեր ձեռքը գրաւոր աղբիւր՝ չենք կրնար հոս խնդիր ընել կարեւոր կէտի մը վրայ, այս է, թէ ընդհանրապէս ի՞նչ չափով եղած են Զ. դարու մէջ Վրաց յարաբերութիւնք Յունաց հետ կրօնական տեսակէտով։ Այս մասին փոքր

---

[1] Ἴβηρας ἔγροψαν. Οἱ δὲ, σφοδρῶς αντειπόντες, οὐ κατεδέξαντο, անդ. col. 1245—1246.

իսկ ծանօթութիւնն պիտի տար մեզի հնարաւորութիւն բացատրելու Կիւրիոնի կատարած դերն այս նկատմամբ։ Կը կարծենք միշտ թէ երբեք այնչափ մոլեռանդն չէին եղած իրենց հայրենի հողին վրայ՝ վարդապետական վիճաբանութիւնք Յունաց կամ Ասորւոց հետ, ինչպէս Զ. դարու վերջերն Հայոց եւ Յունացը։ Պարզ է որ կրքի փոխուած վիճաբանութիւնք յամառեալ մնաց ուրիշ կերպ մտածել եւ գործել կու տան։ Ժողովուրդ մը, որ անծանօթ է դարերով վիճաբանութեամբ ծեծուած խնդրոց, դիւրաւ պիտի հրաժարի իւր կարծիքէն, երբ աւելի մտացին եւ ճշմարիտը համոզեցուցիչ ապացոյցներով ներկայացուի իրեն։ Վրական հողը այսպիսի հանգամանաց մէջ էր ըստ երեւութին։ Կիւրիոն, երբ կը պարսաւէր զինքը Աբրահամ, Յունաց հետ հաղորդութեան մէջ մտնելուն համար, պատասխան կու տար ի դիմաց Վրաց եկեղեցւոյն, թէ Մեր նախնիք Ս. Գրիգորէն այն հաւատքը ընդունեցան, զոր կը դաւանէին Երուսաղէմացիք եւ Հռոմք, եւ նոյն վարդապետութիւնն աւանդեցին մեզի, այս նկատմամբ "այլ ինչ բանք եւ խօսք չէին ուրեք եղեալ ի ներքս„ եւ կը հարցընէր "իսկ այժմ ուստի՞ եղեն„։ Եւ յիշեցընելով թէ իր դաւանած հաւատքն ալ այն հաւատքն է, զոր չորս պատրիարքական աթոռներն կը դաւանին, կը յաւելուր. "Արդ զոր նոցա հաւատն կալեալ է եւ մեզ տուեալ եւ մեր հարանցն եւ մեր մինչեւ ցայժմ պահեալ, այժմ զի՞արդ թողուցումք զայն եւ ձեզ հաւատասցուք„ (Գ. Թղ. 179)։ Խօսքեր, որոնք Հայաստան եւ Յունաստան յուզուած խնդրոց բոլորովին անտեղեկութիւն կը յայտնեն, եւ սակայն Կիւրիոն կը համարձակի ըսել ի դիմաց Վրաստանի Եկեղեցւոյն, թէեւ ինքն լաւ ծանօթ էր իրողութեանց։

---

[1] Հմմտ. եւ F. N. Finck: Die Georgische Literatur [Die Kultur der Gegenwart. I. 7.] p. 302.

## Գ Լ Ո Ւ Խ Բ.

### Հայկական ազդեցութիւնը Վրաց մատենագրութեան վրայ։

Քրիստոնէութեան մուտքը հեթանոս արեւելքի մէջ նախ մտաւոր կենաց վրայ գործեց ազդեցիկ փոփոխութիւն եւ եղբայրական այն "միաբանութիւնն", զոր նշմարեցինք երկու ազգացս եկեղ. յարաբերութեանց մէջ, մտաւոր կենաց համար ալ ունեցաւ իւր ճշմարիտ նշանակութիւնը։ Իրենց կրօնական միութիւնն այնուհետեւ կը ծառայէր միանգամայն Արեաց ազդեցութեան դէմ ամուր պատնէշ մը, եւ կը բանար դռները յունականին առջեւ. քրիստոնէական եղբայրակցութեամբը հաղորդութեան մէջ կը մտնէին բարգաւաճ յունական եւ ասորական արեւմուտքի հետ եւ երթեւեկութիւնք ի Բիւզանդիոն եւ յունական երկիրները շահաւէտ ազդեցութիւն յառաջ կը բերէին ճանապարհորդաց վրայ։

Առանց տարակուսի, ինչպէս Հայք, նոյնպէս Վիրք ունէին Յունաստան եւ Ասորիք ուսանողներ, որոնք հայրենի հողին վրայ ապագային գիտութեան մշակներ հանդիսանալու նպատակաւ կը դեգերէին յունական դպրոցները, թէեւ Վրաց համար չունինք յայտնի ակնարկութիւն հնոց քով։ Ջագարելլի (անդ, էջ 35), կը նշանակէ այսպիսի նպատակաւ մասնաւոր հաստատութիւն մը Անտիոք, ուր Վրացիք յունական եւ ասորական գիտութեան եւ լեզուաց պիտի ծանօթանային, եւ յոյն եւ ասորի պաշտօնեայք Վրացերէնի, ապա ի Վիրս գործելու եւ այլ եւ այլ թարգմանութիւններ կատարելու համար։ Վրաց տարեգիրք կ'աւանդեն նման նպատակաւ առաքելութիւններ ի Բիւզանդիոն եւ յԱնտիոք, եւ Անտիոքէն ի Վիրս եկած գաղթականութիւններ. բայց ապահովապէս

աւելի ստէպ էին ուսումնական տեսակէտով երթեւեկութիւնք իրենց դրացի աշխարհին՝ Հայաստան, եւ ասկէ Վրաստան, եւ կրնանք ըսել վստահաբար Գ. Ֆինկի հետ (անդ, էջ 301), թէ յունական տարրը վրական մատենագրութեան վրայ երբեք չգործեց այն աստիճանի ազդեցութիւն, որ նշանակալից մղում մը տար, ինչպէս Հայք ազդեցին ի սկզբան այնպէս բարձրագոյն կերպով։ Վիրք Հայոց միջնորդութեամբ ծանօթացան յունական գրականութեան եւ այն այնպիսի դարու մը մէջ, երբ տիեզերական եկեղեցւոյ հետ մի էին երկու աշխարհներն ալ, եւ հաւասարապէս հաղորդութեան մէջ։ Ստացուած այս հեղինակաւոր դիրքը շարունակուեցաւ գրեթէ մինչեւ բաժանում (Է. դար), երբ յունական ազդեցութիւնն աւելի զօրացաւ եւ տիրող հանդիսացաւ։ Այս հայկական շարժումն իւր ազդեցիկ դրից մէջ էր մանաւանդ Ե. դարուն, երբ Հայոց կողմանէ նոյն իսկ մասնաւոր առաքելութիւն ալ կ՚ըլլար ի Վիրս։ Յիշեցինք վերը Մաշտոցի կրկին երթն Վրաց կողմերը եւ անոր աշակերտներէն ոմանց այս կողմերու եպիսկոպոս ձեռնադրուիլը[1], որ մեծ նշանակութիւն ունեցած պիտի ըլլայ նաեւ Վրաստանի մտաւոր լուսաւորութեան համար։ Այս հանգամանքը յինքեան միայն ամփոփուած՝ եզական դիպուածք մը չէ։ Հայք ուրիշ շատ առիթներու մէջ ալ նոյն դերը կատարեցին։ Շատ բնորոշ են այս տեսակէտով Կիւրիոնի խօսքերն, որ դեռ Է. դարուն կը գրէր Հայոց Աբրահամ կաթողիկոսին, թէ իրենց եպիսկոպոսներէն եւ վարդապետներէն ոմանք "ի Հայս ուսեալք էին, եւ ի միմեանց ուսանէին եւ

---

1 Կոր. 26. Խոր. Գ. ծդ. 248. "Ընտրեալ մանկունս եւ յերկուս բաժանեալ դասս եւ վարդապետս թողու նոցա յաշակերտաց իւրոց զՏէր Խորձենացի եւ զՄուշէ Տարօնեցի"։

զմիմեանս ուսուցանէին„ (Գ. Թղ. 178): Այնպէս որ նոյն դարուն Վրթանէս Քերդող կը համարձակէր — թէեւ փոքր ինչ մեծամտութեամբ, ըսել Կիւրիոնին եւ Վրաց ազատներուն, թէ "գամք այդր եւ յայտ առնեմք զճշմարտութիւն բանիցս„ (անդ 139):

Նշանակալից կէտ մ'է միշտ ներկայ խնդրոյս համար Հայոց աւանդութիւնն (առ Խորենացւոյ), իբր թէ Մաշտոցն եղած ըլլայ Վրաց նշանագիրներու հնարողը: "Իսկ Մեսրոպայ երթեալ յաշխարհն Վրաց, առնէ եւ նոցա նշանագիրս տուեալ շնորհօքն ի վերուստ շնորհաւն, հանդերձ Ջաղայիւ ումամբ թարգմանաւ հելլեն եւ հայ լեզուի„ (Գ. ծդ. 248): Հայոց պատմագրին այս աւանդութեան հիմը կը կարօտի սակայն հաստատուն հողի, զոր չունի դժբախտաբար: Անտարակոյս այսպիսի ենթադրութեան առաջնորդած է զինք այն մեծ նմանութիւնը, զոր ունին երկու ազգաց նշանագիրները: Կորեան մութ խօսքերը անքոյթ կուսան չեն ընծայեր այս հաստատութեան, եւ փարպեցւոյ ալ անծանօթ է: Վրացի գիտունք՝ հետեւելով իրենց տարեգրոց, կասկածական կը նկատեն Խոր. վկայութիւնն, որոնց համակարծիք կ'երեւան նաեւ Եւրոպացի լեզուագէտք: Ինչպէս ալ ուզուի մեկնել Վրաց նշանագիրներու ծագումը[1], չի

---

[1] Վրաց Ցարեգրոց համաձայն վրական Այփաբետի ծագումն փրկչական թուականէն երեք դար յառաջ՝ Փառնաւազ Ա. թագաւորի ժամանակ կ'իյնայ. բայց որովհետեւ այսօր Վիրք երկու տեսակ նշանագիր ունին՝ Մխեդրուլի (զինուորական) եւ Խուծուրի (քահանայական), խնդիր կրնայ ըլլալ թէ Ցարեգրոց ակնարկածն ո՞րն է առանցմէ: Վրական աւանդութիւն մը Մխեդրուլի նշանագիրն կը համարի, որուն պաշտպան կը հանդիսանայ Յ. Լ. Օկրոմչեդելով, որ յամի 1881 իւր "Վրաց ալֆաբեթը ֆէտէր վրայ„ յօդուածին մէջ ջանաց միանգամայն ջրել հայկական աւանդութիւնն, թէ Մաշտոց է Վրաց նշանա-

կրնար ուրացուիլ, թէ կայ աղերս մը Վրաց եւ Հայոց Նշանագիրներու մէջ, եւ կը Նշմարուի երկուքի վրայ ալ մէկ կաղապարող ձեռք, որ Մաշտոցին ըլլալու է։ Ս՝եծին Մաշտոցի այս գործու-

---

գիրներու Հնարողը։ Ըստ իւր կարծեաց Մխեդրուլի նշանագիրք փոխ առնուած են զենդականէն, իսկ խուծուրիները ծագած են Մխեդրուլիներէն։ Մաշտոցի գործակցութիւնն միայն Մխեդրուլի նշանագրոց նախնական կլոր ձեւերուն ուղիղ գծերու փոխելու մէջ կը նկատէ։ Բայց Օկրոմչեդելովի այս մեկնութիւնն անհիմն է նոյն իսկ Վրացի բանասէրներու աչաց, որոնք ընդհակառակն Մխեդրուլիներու ծագումն մինչեւ Ժ—ԺԱ դար գործածական խուծուրիներէն կը համարին, նկատելով որ բոլոր հնագոյն ձեռագիրք գրուած են խուծուրիով (տե՛ս A. Chachanow: Über den gegenwärtigen Stand der grusinischen Philologie, WZKM, VII (1893), p. 310—337). Ֆր. Միւլլէր կը միտի ասեմական կամ լաւ եւս արամէական ծագումը ընդունիլ վրական գրերն, նոյնպէս հին ժամանակներէն, ինչպէս Տարեգիրք կը նշանակեն (Fr. Müller: Über den Ursprung der gruzinischen Schrift ի Sitzungsb. d. k. Akad. der Wiss. in Wien, phil.-hist. Cl. CXXXVII (1897). p. 1–12 ՀԱ. 1897, էջ 187), իսկ Մաշտոցի մասնակցութիւնն պակաս նշանագրոց լրացնելու եւ վերջին ձեւ տալու մէջ կը համարի։ Միակողմանի է Միւլլէրի ընթացքը, եւ որ շատ զգալի է բովանդակ յօդուածին մէջ. մտագիր զննութիւն մը յառաջ բերուած համեմատութեանց վրայ ակներեւ կը պատկերէ աչաց այն մեծ նմանութիւնը, որ կայ մէկ կողմանէ խուծուրի նշանագրոց եւ հին մեսրոպեան հայկականին մէջ եւ միւս կողմանէ նշանագրոց թուոյն, դասաւորութեան եւ անուններուն մեծ նմանութիւններն, որոնք մատնանիշ կ՚ընեն երկուքին վրայ հաւասարապէս գործած ձեռք մը, ըստ հետեւողի հայկական աւանդութեան հաւանական ճշմարտութիւնը։ Տեղւոյս չի հայիր այս մասին աւելի տողել։ Թէ՛ Խախանով (p. 319) եւ թէ՛ Ն. Մառ (Объ единствѣ задачъ арм.-груз. филол. p. 11), խնդրոյս վերջնական լուծումն միայն վրական հնագրութեան մանր քննութեամբ կը կարծեն թէ կրնայ տրուիլ, որ չէ ձեռնարկուած տակաւին։ "Վրաց եկեղեցական գիրք, կը գրէ

նէութիւնն եթէ երկրայական իսկ ձգենք, հարկ է ծանրակշիռ համարիլ արդարակորով Կորեան վկայութիւնն, թէ Մաշտոց ունեցած է գործակցութիւն Վրաց մտաւոր լուսաւորութեան համար եւ այն գլխաւորաբար քրիստոնէական գրականութեան համար անչափս կարեւոր Մատենին՝ Աստուածաշունչի (Հին եւ Նոր Կտակարանք) վրացերէն թարգմանութեան մէջ։ Իւր առաջին իսկ առաքելութեան ի Վիրս, համաձայնութեամբ Վրաց թագաւորին (Բակուր) եւ Մովսէս եպիսկոպոսապետին, Ջաղայ թարգմանին յանձնեց հայերէնի վրայէն թարգմանել վրացերէն՝ Ս. Գիրքը (Կոր. 26)։ Կորեան տողերն որչափ ալ մթագնած ըլլան՝ թէ այս իմաստով պէտք է հասկնալ, բացի Աբրահամ կաթողիկոսի վկայութենէն (Գ. Թղ. 180), ակներեւ կը ցուցընեն, ինչպէս Ն. Մառի ուսումնասիրութիւնք յերեւան հանեցին, նոյն իսկ վրացերէն Աստուածաշնչի հին թարգմանութեան մէջ տեսնուած կոյտ մը հայերէն բառերը, զորոնք թարգմանիչն ներս առած է հայերէնէն[1]։

Հայկական ազդեցութեամբ Վրաց մատենագրութիւնն ալ ի սկզբան եղաւ զուտ կրօնական բովանդակութեամբ։ Հաւանականաբար, բաց ի սուրբ Գրքէն, դեռ շատ նման թարգմանութիւններ ալ կատարուեցան այս դարուն, երբ Հայք գրաւուած գիտութեան սիրով՝ իրենց մայրենի լեզուին կը փոխէին յոյն եւ ասորի սուրբ հարց գլուխ գործոցները. շրջան մը, որ իրաւամբ սեպ-

---

Ն. Մառ, եթէ տուած էլ չլինի Հայ Մեսրոպը, բայց նա, անկասկած, կազմուեց Հայոց այբբենարանի օրինակի համեմատ, եւ, ըստ էութեան, Հայոց պատմագիրների հաղորդածը իրականութեանը բնաւ չի հակառակում» (Հայ-վրացական յարաբ. էջ 6)։

[1] Ն. Մառ՝ Հայ-վրացական յարաբերութիւնների մասին անցեալում. Տփ. 1898, էջ 42։ ԱՐՐՏ. 1899, էջ 208–209. Объ единствѣ задачъ арм.-груз. филол. p. 11.

հականած է իրեն "Հայոց մատենագրութեան ուղեցոյց" յօրջօրջումը։ Բայց դժբախտաբար անձեռնհաս ենք այս մասին ապացոյցներով խօսիլ, քանի որ ոչինչ հասուցած է ժամանակն Վրաց հին մատենագրութենէն։ Հազիւ Ժ. դարէն կը սկսին վրացերէն գրաւոր յիշատակարանք։ Նկատելով նոյն իսկ այն փոքր բեկորները, որոնք հնութեան ժանիքէն ազատ հասած են, կրնանք մեզի թոյլ տալ երեւակայել բաւականաչափ հայկական ազդեցութեան ծանրակշիռ չափը Վրաց մատենագրութեան վրայ։ Ն. Մառ[1] օրէ օր յերեւան կը հանէ նորանոր յիշատակարաններ այս մասին. թողլով Հիպողիտեայ Երգոյ երգոյն, Եպիփանու Սաղմոսաց Մեկնութեանց, Բարոյախօսոյ առակներու եւն հայերէնէ վրացերէն թարգմանութիւնքն Ը–ԺԱ դարուց մէջ, յիշենք հոս տասնեակ թուով վկայաբանութեանց հայերէնէ թարգմանութիւնքն, կատարուած "ոչ ուշ քան զԷ—Ը դար":

Եթէ այսօր այսպիսի յիշատակարանաց թիւն քիչ է, պատճառն բացի բարբարոս ազգաց գերող գերփող արշաւանքներէն՝ մասամբ պէտք է նկատել նաեւ երկու ազգաց մէջ ծագած հակառակութիւնները, երբ Վիրք Հայոցմէ իրենց որեւիցէ կախումն կամ կրած ազդեցութիւնն ժխտելու համար աշխատած են ջնջել ամէն այս կարգի յիշատակարան։

Մեր նպատակին համար մասնաւոր մտադրութեան արժանի է նոյն իսկ Կիւրիոնի անձն, որ յունական կրթութեան հետ, ստացած էր նաեւ հայկական կրթութիւն իւր Դուինոյ մէջ երկար դադարման ժամանակ։ Նա իւր նամակները հայերէն կը գրէր։

---

1 Մառ՝ Հայ-վրացական յարաբ. 43–44։ Изъ поѣздки на Аѳонъ. ԱՐՐՏ, անդ։ Тексты и разысканія по армяно-грузинской филологіи, գիրք I—VII, С. Петерб. 1900–1907.

Եւ ընդհանրապէս հայկական ազդեցութիւնը վրացերէն լեզուի վրայ յաճախակի յարաբերութեանց պատճառաւ ունեցած է հին ժամանակներէն արդէն կարեւորնշանակութիւն եւ, այն, աւելի քան որ ցայժմ պարզուած է, բայց այս կէտին քննութիւնն գործ է ընդարձակ աշխատութեան[1]։

Այս նկարագիրն ունէր Հայոց եւ Վրաց "միաբանութիւնը" գրեթէ մինչեւ Զ. դարու վերջաւորը։ Դարձնենք այժմ մեր ուշադրութիւնը Դուինոյ կաթողիկոսարանը, որուն հանգամանքներէն կախուած էր գլխաւորաբար միութեանս ոյժը եւ շարունակութիւնը։

## ԳԼՈՒԽ Գ.

### Մովսէս Բ. Եղիվարդեցի.

Հայաստանի եւ Վրաստանի տէրերն երկու հզօր ինքնակալներ էին այս շրջանին, Պարսկական թաժնի՝ "Անուշիրվանն" Խոսրով Ա. (531—579), եւ յունականին Յուստինոս Բ. (565—578). խաղաղ կ'ընթանային իրք երկու պետութեանց մէջ ալ. "խաղաղասէր եւ աշխարհաշէն" (Սեբ. 28) Խոսրով ամենայն կերպով ձեռնտու էր երկրին բարգաւաճման. քրիստոնէութիւնն առատապէս կ'ըմբոշխնէր ազատութիւնը՝ մանաւորապէս 562ի դաշնադրութենէն ետքը։ Յանկարծական փոթորիկ մ'անդորրութեան ովկիանին մէջ վեր ի վար յեղյեղեց ամենայն ինչ յանկարծօրէն. դարձեալ մոգերու հնարագիտութեամբ։ Զանդիկ դենն եւ քրիստոնէութիւնն երբեք հաշտ աչօք չէին նկատած զիրար. մոգութիւնն ապառապուռ ջնջումն կը խնդրէր քրիստոնէութեան. եւ Խոսրով ունկնդիր

---

1 Հմմտ. Հ. Աճառեան՝ Ձայնաբանութիւն վրացերէն հայերէնից փոխառեալ բառերի, ԱՐՐՑ. 1898, էջ 309–351. 365–371։

կ'ըլլար մոգերու անվերջ թելադրութեանց։ Կը ձեռնարկէ Արքայից արքան կրկին հալածել, ճնշել քրիստոնէութիւնն իր պետութեան մէջ ամենայն սաստկութեամբ (571/2)։

Բանակ մը մոգերու՝ անթիւ զօրաց ընկերակցութեամբ կը խուժէր նաեւ Հայաստան, Վրաստան՝ բովանդակ քրիստոնեայ բնակչութիւնն արեգական երկրպագու ընելու վախճանաւ։ Ատրուշան մը պիտի կանգնուէր նաեւ ի Դուին։ Սուրէն, Դըւնոյ պարսիկ մարզպանը, եռեւէ էր արագ արագ ի գլուխ հանել հրամանը՝ հակառակ տեղւոյն աշխարհիկ թէ եկեղեցական մեծամեծաց դիմադրութեան։ Կաթողիկոսն Յովհաննէս Բ. Գաբեղինեցի (557—574), տանուտէրն Մամիկոնէից եւ Հայոց սպարապետը՝ Վարդան, Վասակայ որդին, զուր կը յորդորէին զմարզպանը կասիլ գործէն. ատրուշանը կը բարձրանար...։

Յուզուած էր քրիստոնեայ բնակչութիւնն եւ ապստամբութեան ծրագիրն[1] չհնուած արդէն։ Սուրէն վերջապէս կը գիջանի նկատելով վերահաս վտանգն եւ կիսակատար թողուցած ատրուշանը՝ կը չուէ ի Դուռն նոր հրահանգներ առնելու համար արքայից արքայէն։ Արեաց տէրը սակայն նոյն մոգութեան ծառան է. հետակորոյս ջնջել կը սպառնայ արքունական հրամանաց ընդդիմացողները, փոխանակ յետս կոչելու յաճախ փորձուած եւ երբեք ի գլուխ չելած անխորհուրդ հրամանը։ Սուրէն կը մեկնի արքունիքէն դէպ ի Դուին

[1] Դունոյ 572-ի ապստամբութեան ընդարձակ նկարագրութիւնն կու տանք ուրիշ առթիւ. հոն կը դնենք նաեւ մատենախօսական ծանօթութիւնքը։ Երկար խօսած են այս մասին յատկապէս տոհմայիններէն՝ Սեբէոս եւ Ասողիկ, եւ. արտաքիններէն՝ Յովհաննէս Եփեսացի (Die Kirchengeschichte des Johannes von Ephesus. Aus dem Syrischen übersetzt J. M. Schönfelder, München, 1862, S. 61—65)· Թէոփանէս Բիւզանդացի եւ Եւագր։

15.000 զօրքով. բայց հազիւ թէ կը մօտենայ քաղաքին պարիսպներուն, կը կրէ ուժգին ընդհարում մը, ուր իր գլուխն ալ կը տուժէ Վարդանայ սրոյն — 2 փետրուարի 572։

Այսպէս կը բացուի այս շրջանը մեր առջեւ։ Կայսրն Յուստինոս երդմամբ խոստացած էր պաշտպանութիւն Հայոց դեսպաններուն, որոնք ի ծածուկ դիմած էին Բիւզանդիոն օգնութիւն հայցելու Պարսից դէմ, փոխարէն խոստանալով ենթարկել կայսեր իշխանութեան ներքեւ Պարսկահայաստանը։

Հայք շուտով զգացին ապստամբութեան դժնդակ հետեւութիւնն. գրգռուած էր Խոսրով։ Թէպէտ յաջող էր ի սկզբան պատերազմներու ընթացքն, եւ Վարդան կանգնած էր շքեղ յաղթութիւններ Միհրանի եւ Խոսրովու վրայ[1], այսու հանդերձ անկարող էին երկար դիմակալել Պարսից բուռն զօրութեան։ Դունէն, որ պատերազմաց կեդրոնն էր այնուհետեւ, քիչ վերջն հատուածեցաւ բազմութիւն մը փախստէից դէպ ի կայսերական մայրաքաղաքն, որոնց թիւն կը կազմուէր գլխաւորաբար ապստամբութեան առաջնորդ ոստանիկներէ, աշխարհական եւ եկեղեցական. անոնց մէջ էին Վարդան Մամիկոնեան իւր ընկերներով եւ կաթողիկոսն Յովհաննէս։ Կայսրն մեծաշուք ընդունելութեամբ պատուեց փախստեաները եւ զետեղեց արքունական թոշակով՝ փառաւոր ապարանքներու մէջ։

Բիւզանդիոնի այս ձեռնտուութիւնն նշան էր բեկման յոյն-պարսկական խաղաղական դաշանց (562). բայց ծերունին Խոսրով այլ եւս չունէր ախորժակ բանակի գլուխն անցնելու, եւ խաղաղութեան պատգամաւոր կ՚առաքուի ի Բիւզանդիոն Տեբուխտ. սակայն անհնարին կ՚ըլլայ խաղաղու-

---

[1] Սեբ. 26–27.

թիւն կայացընել եւ կը շարունակուին պատերազմներն վեց տարի անընդհատ։

Փախստէից թուին մէջ կը տեսնուէր նաեւ Յովհաննէս Բ. Կաթողիկոսը՝ շրջապատուած եպիսկոպոսներէ։ Կայսերական մայրաքաղաքին մէջ այժմ ուրիշ էին պարագայք. Կաթողիկոսն հակառակ քանի մը տարի յառաջ հայրենի հողի վրայ Յունաց հանդէպ ցուցուցած քաղաքականութեան՝ ստիպուած էր համաձայնիլ հիմայ անոնց հետ ի կրօնականս, ընդունիլ Քաղկեդոնի ժողովն եւ հաղորդութեան մէջ մտնել տեղւոյն պատրիարքին՝ համանուն Յովհաննէս Գ.ի (565—577) հետ. իրեն հետեւեցան միւս եպիսկոպոսներն ալ։ Համբաւն սակայն հաճոյքով չլսուեցաւ Հայաստան. եւ ծագեցաւ գժտութիւն ընդ մէջ Դունեցւոց եւ Բիւզանդացւոց, եւ արդիւնք՝ փոքր ժամանակէն կտրուեցան հաղորդակցութիւնք երկուստեք։ Տարագիր կաթողիկոսն օտարութեան մէջ երկու տարի հազիւ երկարեց բազմարդիւն կեանքը եւ "կացեալ յաթոռ հայրապետութեան ամս ԺԷ՝ վախճանի[1]„ ի Կ.Պոլիս 574ին[2]։ Կաթողիկոսին մահուան գոյժն մեծ ցնցում յառաջ չբերաւ ապահովապէս Դունեցւոց վրայ, որոնք թերեւս ընտրած էին արդէն ուրիշ մը, թէեւ այս մասին պատմագիրք ոչինչ կ՚աւանդեն, բաւականանալով ըսել թէ իրմէ վերջը Դուին ընտրուեցաւ կաթողիկոս (իր տեղապա՞հն) "Մովսէս, այրն Աստուծոյ,

[1] Յովհ. Պատմ. 38։

[2] Joh. von Ephesus. S. 65. Հարկ է ըսել որ հայ պատմագրաց քով լռուած է բոլորովին կաթողիկոսին փախուստն Կ.Պոլիս եւ հոն վախճանիլը։ — Մահուան թուականն նշանակեցինք 574, որուն ճշմարտութեան բացի ի Յովհ. Եփեսացիէն, վկայ է նաեւ ինքն Յովհ. Պատմաբան, երբ կ՚ընծայէ կաթողիկոսութեան 17 տարի. արդ Ներսէս Բ. վախճանեցաւ 557ին, որուն վրայ գումարելով 17, կը ստանանք 574։

որ յեղիվարդ գեղջէ, որ եւ ուսեալ ի Հայրապետանոցին սրբոյ» (ի Դուին)[1]։

Մեզի անծանօթ է Մովսէսի կաթողիկոսութեան առաջին տասնեակ տարիներու գործունէութիւնը. բայց յամենայն դէպս մեծ եղած պիտի ըլլայ եւ ամենայն աչալրջութեամբ։ Յոյն-պարսկական պատերազմներն կը շարունակուէին դեռ. Դուին ասպարէզ էր կռուոյ, եւ մերթ Յունաց եւ մերթ Պարսից աւերիչ արշաւանաց ենթակայ։ Մովսէս աւերակաց վրայ ստիպուած էր իշխել անշուք եւ անզարդ, աւելի կարեկցելով բեկեալ ժողովրդեան՝ քան նորանոր ձեռնարկութիւններով բարգաւաճման նկրտելով։ Դունոյ կաթողիկոսարանն՝ եւ կաթողիկէն՝ Ս. Գրիգոր այրած էր 572ի ապստամբութեան ժամանակ[2]. Մովսէս հետեւաբար պարապած պիտի ըլլայ նաեւ նոր Հայրապետանոց մը գտնելու եւ առ այն կարեւոր սպասներն հոգալու. վասն զի Հայրապետանոցի բոլոր կահերն Կարին տարուած էին ի պահեստ (Սեբ. 53)։

Մովսէսի նկարագիրն կու տայ Չամչեան (Բ. 256) կոչելով «այր մեծիմաստ». իբր այսպիսի ալ կը ներկայանայ պատմութեան մէջ, թէեւ շատ աղքատ են յայսմ պատմագրաց տեղեկութիւնները։ Հ. Չամչեան հետեւելով անագանագոյն դարուց պատմչաց՝ անոր մասին խօսած ժամանակ (էջ 256—258) կը յիշատակէ դէպքեր, որոնք արդիւնք են պարզապէս սխալ ժամանակագրութեան. եւ հոս չենք կրնար ի նկատի առնուլ իբրեւ ստուգութիւն. օր. համար, թէ նա 551ին իւր կաթողիկոսութեան առաջին փորձին (!) հանած է ի գլուխ ի վաղուց ցանկացուած Հայոց թուականին հաստա-

---

[1] Յովհ. Պատմ. 38։

[2] Սեբ. 26. «Ջեկեղեցի Ս. Գրիգորի, որ շինեալ էր մերձ ի քաղաքն, էին արարեալ համբարանոցս Պարսիկքն. հարին հուր եւ այրեցին, վասն որոյ եղեւ նոցա խռովութիւն մեծ»։

տութիւնը, կամ թէ իւր օրով նահատակուած է Ս. Յիզտիբուզդ եւ ինքը կատարած է յուղարկաւորութիւնն, ունեցած է խնդիրներ Յուլիանիանոսներու հետ եւ զանոնք մերժած Հայաստանէն եւն: Իրողութիւններ, որոնք ստուգիւ տեղի ունեցան Զ. դարու մէջ, բայց շատ այլազգ եւ ոչ Մովսէսի օրով:

Շատ անորոշ տեղեկութիւն է Յովհաննէս Պատմաբանի (էջ 38) աւանդածը, թէ "Յամի տասներորդի հայրապետութեան սորա եւ երեսներորդի առաջնորդի ամին Խոսրովայ՝ որդւոյ Կաւատայ արքայի Պարսից՝ լցեալ բովանդակեալ շրջանակ բոլորակի ՇԼԲ ամաց, ապա ի հրամանէ մեծին Մովսիսի քերթողք եւ գիտունք արուեստին եգին զկարգ թուականութեան թորգոմեանս համարոյ, որ է շարժումն յառաջախաղաց եւ հիմն պանապան մասանց արուեստին, եւ այսպէս ըստ հայկականս լեզուի տուեալ տոմար տոնից տարեկանաց եւ յայնմ հետէ ոչ կարօտանային իբրեւ մուրացիկ իմն առնելով յայլոց ազգաց զպիտանի խորհրդոցն արարողութիւնս„:

Պատմաբան կաթողիկոսիս մութ խօսքերս շատ օտարոտի մեկնութեանց պատահած են յետնոց քով, եւ ծառայած յենակէտ Հայոց թուականի հաստատութեան զրոյցին համար:

Ի՞նչպէս պէտք է միաբանել Մովսիսի (574 — 604) Ժ. կամ (ըստ Ձեռագրաց) ԺԵ. տարին (584 կամ 589) Խոսրովու (531 — 578) ԼԱ. տարւոյն (562) հետ. չմիաբանութիւնը ակներեւ է. որ դժուարաւ կրնայ հանդուրժել ուրիշ մեկնութեանց: Այլուր՝ առիթ ունեցած ենք երկար զբաղելու խնդրովս, եւ պատշաճ իմաստն պարզելու. Մովսէս Յովհաննէս Պատմաբանի դրուատեաց արժանացած է մի միայն տօնացուցի կարգադրութեան համար՝ ըստ հինգհարիւրեակի դրութեան:

---

1 Հանդ. Ամս. 1904, էջ 97—102, 218—224:

Յիշեալ տեղ ուսումնասիրուած է նաեւ թէ ինչ հիմամբ կը վերագրուի Մովսիսի 551ին Դուինոյ ժողով մը, ինչ հիմամբ Վարդան Պատմիչ (էջ 57) զՄովսէս կը համարի ձեռնադրիչ Աբդիշոյի եւն եւն (ՀԱ, էջ 224)։

Հ. Զամչեան (Բ. 291) կը յիշատակէ, թէ Յոյն-պարսկական պատերազմաց ժամանակ (578) Յունաց կողմն փախստեայ Հայոց համար բարեխօսած ըլլայ Մովսէս Խոսրովու առջեւ եւ Խոսրով ներողամիտ գտնուած։ Այս մասին անծանօթ է մեզի աղբիւր. կը կարծենք թէ Զամչեանի սոսկ ենթադրութիւնն գրի առնուած է հոս։

Մովսէս կաթողիկոսի անձնաւորութիւնն հետաքրքրական է աւելի՝ ժամանակի եկեղ. պատմութեան մէջ կատարած դերով. յատկապէս թէ ինչ դիրք բռնեց նա Յունաց հանդէպ։

Զ. դարու առաջին քառորդին երբ քայքայեցաւ Հայոց Յունաց հետ ունեցած միութիւնն, ծագեցաւ անհաշտ թշնամութիւն մը երկու ազգաց մէջ, որ տեւեց շատ երկար եւ շատ աղետալի հետեւութիւններով։ Նշանակալից էր քայքայումն այնու մանաւանդ, որ Հայաստան կրկին իշխանութեանց բաժնուած էր, Յունաց եւ Պարսից, եւ ապա՝ ենթարկուած կրկին անխուսափելի հոսանքներու։ Յունական բաժնի Հայք ընդգրկած էին Յունաց դաւանանքն՝ Երկու բնութիւն ի Քրիստոս. իսկ պարսկահայք՝ Մի բնութիւն։ Այսպիսի խտրութիւն մը բնականաբար կը սպառնար մի եւ նոյն միաշուրթն համալեզու ժողովրդեան մէջ եկեղեցական բաժանում։ Այս խտրութեան առջեւն առնելու համար, երկու կուսէ ալ շատ ջանք եղան՝ գլխաւորաբար Բիւզանդիոնի կողմանէ։

Առաջին փորձն տեղի ունեցաւ 573/4ին, երբ Հայոցմէ մեծ համոռւած մը ապաւինեցաւ Կ. Պոլիս։ Կայսերաց էրոց հեղինակն (էջ 75—76) այսպէս կը նշանակէ այս փորձը. "Տիբեր՝ ամս Է. առ սովաւ

եղեւ ժողովն ի Կոստանդնուպոլիս՝ Հայոց եւ Հոռոմոց, վասն սահմանին Քաղկեդոնին, յորում պատրեցան Հայք"[1]։ Ժամանակագիրն ընծայելով Տիբերեայ 7 տարի, կը հաշուէ գահակալութեան սկիզբը 574, երբ հիւանդ Յուստինեայ կամքով կը վարէր իշխանութիւնն իբրեւ աթոռակից. առանձին ելաւ գահը 578ին եւ վախճանեցաւ 582ին։ Այսու անորոշ անճշդպետի մէջ կը մնայ ժողովոյն տարին։ Այս մթութիւնն պարզելու համար կռուան մը կու տայ Փոտ իւր առ Զաքարիա թղթին մէջ[2], ուր ժողովոյս տարին յայտնի կը նշանակէ. "ի ԺԷ ամի Յուստինիանոսի", այս է (565+17) 582։ Բայց Յուստինեայ կեանքը այսչափ չերկարեցաւ. ըստ այսմ Փոտայ ընծայած թիւն կարդալու է "ի տասներորդ ամի". որով կը ստանանք 573/4։ Եւ յիրաւի ալ շատ ճիշդ կու գայ այս թուականն այլուստ ունեցած ծանօթութեանց։ Յովհաննէս Եփեսացի[3] կը պատմէ այս թուականիս ի Կ. Պոլիս Հայոց ժողով մը, զոր աւելի մանրամասնօրէն կը նկարագրէ De rebus Armeniae գրութեան անանուն հեղինակը։ Փոտի տեղեկութեան համաձայն ժողովոյն ներկայ գտնուած են 130 ժողովականք։ Ժողովոյն հետեւութիւնն կ'ըլլայ Հայոց եւ Յունաց միութիւնն, եւ Հայք "ձեռնագրով զժողովն Քաղկեդոնի" կ'ընդունին[4]։ Յովհաննէս Բ. Հայոց կաթողիկոսն ներկայ էր ժողովոյն։ Ժողովոյն սահմանը սակայն չեն ընդունիր Դուինայ հարք եւ կը զատուին կաթողիկոսէն եւ իրեն հետ եղող եպիսկոպոսներու հետ։

Մովսէս ընդդիմացող կողման կը վերաբերէր։ Եւ իւր այս ոգին նաեւ կաթողիկոսութեան ժամա-

[1] Այլ Ձեռ. "Ոչ հաւանեցան Հայք" կամ "Պարտեցան Յոյնք"։

[2] Թուղթ Փոտայ, էջ 181։

[3] Joh. von Ephesus, S. 64–65.

[4] Migne, P. gr. *132*, 1245. Փոտ. 182. Ասող. 85։

նակ պահեց։ Ժամանակակից մը՝ Սեբէոս կը վկայէր իրեն համար, թէ "Ամենեւին ոչ լինէր ի նոսա (ի Յոյնս) հուպ»[1]։ Մեզի անծանօթ է իր մասին մանրամասնութիւն մինչեւ 590, երբ Հայաստանի քաղաքական հանգամանքներն նաեւ եկեղեցականը խանգարեցին։

572ի ապստամբութեամբ ձեռք ձգուած Դուինը երկար ժամանակ չմնաց Յունաց ձեռքը։ Ձնայելով բազմամեայ պատերազմաց Յունաց եւ Պարսից մէջ, որոնք Հայաստանը յետին աղէտից հասցուցին, Պարսիկք գրաւեցին վերստին Դուինը եւ իրենց յառաջուան սահմանները։ Հազիւ 591ին Պարսկաստանի ներքին խռովութիւնք փոփոխեցին իրաց վիճակն, երբ Վահրամ Չոբինէն հալածական Ապրուէզ Խոսրովն իւր երկիրներուն հարուստ մասն մը Յունաց տալ խոստացաւ եթէ կայսրը Մօրիկ ապահովէր իրեն գահը։ Այդ մասն էր ըստ համայրին պատմչաց[2], վասն զի արտաքինք կը լուեն այս նկատմամբ, հետեւեալը։

Բոլոր Արուաստանը (Ասորիք) մինչեւ Մծբին, Աղձնիքը, Տանուտէրական իշխանութեան աշխարհը (այս է Այրարատեան գաւառը) մինչեւ Դուին եւ Հուրազդան (Զանգու), լաւ եւս Ազատ գետն, Կոտէից գաւառը մինչեւ Գառնի աւանը, եւ այն երկիրն, որ կը սահմանուի Բագնունեաց ձորով, Առեստաւանով, Կոգովիտ գաւառով եւ Հացիւն ու Մակու քաղաքներով։ Բոյ անկից Վրաց երկրին մեծ մասը մինչեւ Տփղիս։ Այնպէս որ "Երկու տէրութիւններու նոր սահմանը կը ներկայանայ մէջէ գծով մը Մծբինէն մինչեւ Ընձաքիսար լեռը՝ Վա-

[1] Սեբ. 53։

[2] Սեբ. 33, 45. Յովհ. Կաթ. 39–42. Համմ. նաեւ այս H. Gelzer, Georgii Cyprii Descriptio orbis Romani. Lipsiae 1890, p. XLVI–LXI. Մասնաւորապէս Հ. Հիւբշման՝ Հին Հայոց տեղւոյ անունները. Թարգմ. Հ. Բ. Պիլէզիկճեան, Վիեննա 1907, էջ 43–48։

նայ ծովուն հարաւ արեւմտեան կողմը, եւ Առեստաւանէն՝ Վանայ ծովուն արեւելեան ափին հիւսիսակողմը՝ Մակուի, Հացիւնի, Ազատ գետին եւ Գառանի աւանին վրայէն մինչեւ Հուրազգանի վերին ընթացքը. այս ինքն՝ Հռովմ իւր արդէն գրաւած Բարձր Հայք եւ Դ. Հայք հայկական գաւառներուն վրայ ընդունեցաւ գէթ Տայքը, Այրարատը (առանց Դվինոյ), Տուրուբերանն ու Աղձնիքը, Թերեւս նաեւ Գուգարաց մեծ մասը[1], այնպէս որ Պարսից ձեռքը մնացին միայն Մոկք, Կորդուք, Վասպուրական, Պարսկահայք, Դուին ու շրջակայքը, Սիւնիք, Փայտակարան եւ Աղուաններէն Պարսից անցած Ուտի եւ Արցախ նահանգները[2]„ :

Հայաստանի այս նշանակալից բաժանումը դոյզն նշանակութիւն չունեցաւ երկրին համար՝ գլխաւորաբար եկեղ. պատմական տեսակէտով: Այսու Մեծ Հայաստանի ընդարձակ մաս մը Յունաց կ'անցնէր եւ կայսեր բաժնին մէջ նաեւ հայախօս ժողովուրդն կը բազմանար: Հայք տակաւին Դունոյ կաթողիկոսին իրաւասութեան տակն էին. եւ հետեւաբար անձուկ յարաբերութեան մէջ պարսկահպատակ Դունեցւոց հետ: Բնականաբար Մաւրիկ, որ բռնի կարի յունացնելու կը նկրտէր կայսերական սահմանները, իւր քաղաքագիտութեան հակառակ պիտի նկատէր զայս. կասկածն աւելի կը յաճախէր այն պարագան, որ Հայք՝ Պարսկահայաստան եւ նոր ստացուած երկիրներու մէջ, դաւանութեամբ օտար էին իրմէ: Անտարբեր իրողութիւն չէր այս

1 Յանուանէ յունական գաւառ կը յիշուին առ Սեբ. 51, եւ ի Գիրս Թղթոց, 151, «Սեպհական Դունդն, Ապահունիք, Մամիկոնէանց (Տարօնի) մէկ մասն, Վաշհեւունիք, Բագրեւանդ, Վանանդ, Տրպատունիք, Ամատունիք, Այրարատ՝ Վաղարշապատով, Յովհաննավանքով, Պողավանքով, Փարպիով, Աղցքով, Արուճով, Արծափքով, Ուրդով, Դատավանքով եւ Բագարանով:

2 Հիւբշման, անդ, 47—48:

մանաւանդ յաչս Մորիկան, որ իւր բովանդակ հնարագիտութեամբն հակահայկական քաղաքականութեան հետեւեցաւ՝ ջանալով միշտ ընկճել, սպառել՝ ըստ ոմանց իրեն համարիւն հայութիւնը: «Ազգ մի խոտոր եւ անհնազանդ են, կը գրէր Մորիկ առ Խոսրով (Սեբ. 47), կան ի միջի մերում եւ պղտորեն: Բայց եկ, ասէ, ես զիմս ժողովեմ եւ ի Թրակէ գումարեմ. եւ դու զքոյդ ժողովէ եւ հրամայէ յԱրեւելս տանել: Զի եթէ մեռանին՝ թշնամիք մեռանին, եւ եթէ սպանանեն՝ զթշնամիս սպանանեն. եւ մեք կեցցուք խաղաղութեամբ: Զի եթէ դոքա յերկրի իւրեանց լինիցին, մեզ հանգչել ոչ լինի»: Թէ ստուգիւ Սեբէոսի այս տողերն դիւանագիտական արժէք ունի՞ն, կարելի չէ հաստատել, բայց այս էր իւր ձգտումն արեւելեայց՝ յատկապէս Հայոց հանդէպ:

Օգտուելով ժամանակի հանգամանքներէն իւր ծրագիրն նաեւ եկեղեցական նուիրապետութեան մէջ ի գործ դնել փորձեց: Յայտնի է քիչ շատ մինչեւ իւր ժամանակ բիւզանդականաց առ այս ցոյց տուած ընթացքն Յունական Հայաստանի մէջ, ուր ըստ արտաքնոյն ձուլուած էին գրեթէ ազգայինք Յունաց հետ, Փոքր Հայոց հայկական թեմերն յունական մետրապոլտութեան ենթարկուած եւ ըստ հետեւորդի անջատուած էին բոլորովին Հայ Եկեղեցիէն: Իրողութեանս պատկերն սիրուն կերպով նկարած է Գէորգ Կիպրացի (իբր յամի 600) իւր Եպիսկոպոսանիստ աթոռներու կարգաւորութեան մէջ:

Մորիկ իւր խորհրդեան յաջողութիւնն յուսաց տեսնել հաստատելով միութիւն ի հաւատս Հայոց եւ Յունաց մէջ: Դժուարութիւնն մի միայն Հայոց Կաթողիկոսէն էր, որ ի Դուին, Պարսկահայաստան կը գտնուէր: Պէտք էր Կաթողիկոսարանը յունական բաժինն փոխադրել, որով խայծ մը կը ձգուէր նաեւ պարսկահպատակներու,

դաղթել դէպի կայսերական հող։ Առ այս, Սեբէոսի խօսքերով, «Հրաման ելանէ դարձեալ ի կայսերէն վերստին այլ՝ քարոզել զժողովս Քաղկեդոնի յամենայն եկեղեցիս Հայաստան երկրի, եւ միաւորել հաղորդութեամբ ընդ զօրս իւր»։ Քարոզին թէեւ հնազանդողներ գտնուեցան, բայց եղան եւ այնպիսիներ, որոնք կամ փախստեամբ կամ թաքստեամբ եւ կամ հրամանն առ ոչինչ գրելով մնացին անխաղաղ. «Իսկ մանկունք Ուխտի եկեղեցեացն Հայոց, կը շարունակէ Սեբէոս, փախստական գնացեալ յօտար երկիր վարէին։ Եւ բազմաց առ ոչինչ համարեալ զհրամանն՝ զանգի կալան եւ անշարժ մնացին։ Եւ բազումք հաւանեալ փառասիրութեամբ հաղորդեալ միաւորեցան օրինաւ[որ]ք»[1]։

Ընդդիմադրութիւնն սակայն չկասեցուց զկայսրը, որ առանց երկար դեդեւելու վճռեց կայացնել երկու յունական եւ պարսկահայկական եկեղեցեաց մէջ կերպական բաժանում։

Այս նկատմամբ, բարեբախտաբար, ունինք մանրապատում աղբիւր De rebus Armeniae յաճախ յիշուած գրուածքը[2]. տոհմայինք շատ համառօտախօս են այս մասին։ Սկզբնաւորութիւնն եղաւ այսպէս։

Երբ Խոսրով Բ. յոյն զօրաց օգնութեամբ նուաճեց պարսկական ապստամբութիւնն եւ ապահովցուց գահն (591), կայսեր զօրքն թողուց այլ եւս Տիզբոնն եւ քաշուեցաւ յունական սահմանները։ Հայ բանակին սպարապետն էր Մուշեղ Մամիկոնեան, որուն արքունիքէն հրաման ելաւ զօրաց հետ կայսեր պալատը ի Կ. Պոլիս[3] չուել։ Մուշեղ համաձայն հրահանգին կը մեկնի եւ կը հասնի Կ. Պոլիս երբ քաղաքացիք մեծաշուք հանդէսով կը

---

1 Սեբ. 52–53։
2 Migne, P. gr. *132*, 1248–49։
3 Հմմտ. Սեբ. 45։

տօնախմբէին Ս. Խաչի տօնը։ Մուշեղեանք չէին մասնակցիր սակայն տօնախմբութեան, եւ առ հասարակ ի կրօնականս Յունաց հետ հաղորդութենէ կը զգուշանան։ Հայ բանակին այս Ներանշան ընթացքը անհաճոյ աչօք կը դիտէ Մօրիկ. եւ Մուշեղէն պատճառը կը խնդրէ. որուն կը պատասխանէ սպարապետը, թէ երկու ազգաց կրօնական խնդրութիւնն է շարժառիթը։ Կայսրը անտեղի կը համարի այս պատճառաբանութիւնն յիշեցնելով 573/4ին Յովհ. Բ. Կաթողիկոսի եւ Վարդան Մամիկոնեանի օրով կայացած համերաշխութիւնն։ Առ այս կը պատասխանէ Մուշեղ, թէ անոնք առ երկիւղի կամ ագիտութեամբ հաւանութիւն շնորհած են. եւ կը խնդրէ Կայսեր թոյլտուութիւնը ի Կ. Պոլիս մասնաւոր ժողով մը գումարելու եւ այս մասին Հայոց վարդապետաց կարծիքն հարցնելու։ Հրամանն կ'ելլէ եւ զինուորական յատուկ պաշտպանութեամբ կը հրաւիրուին ի Կ. Պոլիս Մովսէս Կաթողիկոս եւ այլ եպիսկոպոսներ։ Մովսէս սակայն կը հրաժարի բացէ ի բաց, հեգնելով իմն պատասխանելով. «Քաւ լիցի ինձ անցանել ընդ գետն Ազատ եւ ուտել ի պատարագի զեփեալն ի փուռն եւ ըմպել զջերմ բաժակն»[1]։ Նման ոճով հրաժարեցան նաեւ Վասպուրականի[2] եւ Պարսկահայոց եպիսկոպոսները։ Բայց Տարօնի եւ առ հասարակ Յունահայաստանի եպիսկոպոսներն՝ ընդ ամէնն 21 թուով[3], հետեւեցան կոչին։ Ժողովքը, «որում վեցերորդ ժողովն կոչեն» ըստ

---

1 Οὐ μὴ γὰρ παρέλθω τὸν ποταμὸν ᾿Αζὰτ, οὐδὲ μὴ φάγω φουρνητόριν, οὐδὲ μὴ πίω θερμόν. Միտքը պարզ է. կ'ակնարկուի Յունաց սովորութիւնն, որոնք պատարագը խմորեալ՝ փուռն մէջ եփած հացով կը մատուցանէին եւ բաժակին հետ տաք ջուր կը պաշտէին։

2 ᾿Ασπουραν. Վասպուրականը պարսկական հող էր. Սեբ. 45։

3 Թուղթ փոստոյ. էջ 182. «Գումարեցան ԻԱ եպիսկոպոսք»։

Փոտի, գումարուեցաւ ի Կ. Պոլիս, ուր հետազօտեցին դաւանաբանական խնդրութիւնները. եւ դաւանեցան Յունաց հաւատքն երդմամբ եւ ժողովոյն պատճէնին յատուկ ձեռքը ստորագրելով:

Մովսէս կաթողիկոս եւ իրեն համախոհ Պարսկահայաստանի եպիսկոպոսներն սակայն իրողութիւնս չնկատեցին հանդուրժող աչքը. մերժեցին Թղթոյն ստորագրողներն իրենց հաղորդութենէն, որով երկու կողման մէջ ծագեցան երկարատեւ անհամաձայնութիւն եւ խռովութիւն:

Պարսից եւ Յունաց բաժիններու ազգային մէջ այս անհամաձայնութիւնք գեղեցիկ առիթ համարեցաւ Մօրիկ բոլորովին կտրելու իր հպատակներու յարաբերութիւնքն Դունայ աթոռոյն հետ. այսպիսի նպատակաւ կ'ընտրէ իւր սահմանին վրայ Հայոց կաթողիկոս զՅովհաննէս, “որ էր ի Կոգովտայ, ի գեղջէն Բագարանայ„, եւ աթոռն կը հաստատէ Աւան գիւղը (591, 2)[1]:

Այս առաջին եկեղեցական բաժանումն է Հայոց պատմութեան մէջ. որուն նշանակութիւնն շատ մեծ եղաւ այս եւ յաջորդ դարուց համար, ինչպէս ընդհուպ պիտի տեսնենք:

---

1 Անծանօթ չէ իրս Հայոց պատմիչներուն. Կոյսերոյ՝ ֆէյէքը (էջ 76) կը գրէ այս մասին. “Ի նորին (Մօրկայ) աւուրս եղեւ գործեալ միաբանական ժողով Հայոց եւ Հոռոմոց՝ վասն նորին աղանդոյն Քաղկեդոնի. ժողովին ի Կ. Պոլիս, եւ եղեն պառակտեալք Հայք. ի սորա յաւուրս բաժանեցին զերկիրն Հայոց՝ Հոռոմոց եւ Պարսից թագաւորքն եւ երկու կաթողիկոսք նստան ի Հայս. Մովսէս Դուինի՝ Պարսից կողմանն, ուղիղ հաւատով, եւ Յովհան ի Հոռոմոց կողմանէ՝ Քաղկեդոնի աղանդոյն„: Եւ Սեբէոս (էջ 53) “Բաժանեցաւ ապա եւ Աթոռ կաթողիկոսութեանն յերկուս. անուն միոյն Մովսէս, եւ միւսոյն Յոհան: Մովսէս ի Պարսից կողմանէ եւ Յովհան՝ Յունաց: Եւ Յովհան ընդ նոսա հաղորդեալ միաւորեցաւ, բայց Մովսէս ամենեւին ոչ լինէր ի նոսա հուպ„ Հմմտ. եւ Յովհ. Պատմաբ. 42:

Յոյն անանուն պատմիչն Մովսիսի մնացած տարիներու մասին այսչափս միայն կ'աւանդէ թէ "վէճերը շարունակուեցան դեռ 14 տարի (591 + 14 = 604/5) մինչեւ Մովսիսի մահը, որ տարին Խոսրով կրկին պարսկական հող ըրաւ Յունաց պարգեւած Հայաստանը։ Այս շրջանին, իր կաթողիկոսութեան 25րորդ տարին (598/9), կ'իյնայ Կիւրիոնի, որ երկար ժամանակէ ի վեր ծառայած էր իրեն կաթողիկոսական գործերու մէջ, Վրաց կաթողիկոս ձեռնադրութիւնը. որուն մասին երկու տարի վերջը (600/601) լսելով թէ Խուժիկ Նեստորականներու հետ բարեկամական յարաբերութիւն ունի, զգուշացուց թղթով մը, նոյն եւ ուրիշ հերձուածներէ, ի մէջի այլոց նաեւ Յոյներէն։ Այս նկատմամբ կը խօսինք վարը մանրամասնութեամբ։

Իւր օրով (յամի 601/602) առաքելութիւն մ'եղաւ դէպի Վրկանի կողմերը, ուր կային Հայաստանէն, Ասորիքէն եւ Յունաստանէն բազմութիւն մը քրիստոնէից, որոնք Պարսից թագաւորներէն գերութեան վարուած էին եւ "նստուցեալ առ ստորոտով անապատին մեծի, որ ի Թուրքաստանի եւ ի Դեհաստանի կողմանէ„. երկար օտարութեան մէջ մոռցած էին մայրենի լեզունին եւ քրիստոնէութիւնն գրեթէ անհետանալու վրայ էր։ Կային ատոնց մէջ, կը գրէ Սեբէոս (էջ 59—60), բաց ի Ասորիներէ եւ Յոյներէ, նաեւ "Ազգք Կոդրեացն, որք գերեցան մերովքն արամբք„։ Սմբատ Բագրատունի այս կողմերն արշաւանք կատարած ժամանակ կը ծանօթանայ ատոնց, կը յորդորէ կրկին ընդգրկել քրիստոնէութիւնն. արդեամբք ալ կ'անսան յորդորին, "հաստատէին ի հաւատս եւ ուսանէին դպրութիւն եւ լեզու, եւ հաստատէին ի կարգ քահանայութեան յաշխարհի անդ երեց մի ի նոցանէ, որ անուանեալ կոչէր Աբէլ„։ Աբէլ ձեռնադրուեցաւ անշուշտ Մովսիսէն, ինչպէս

բացայայտ կը հաստատէ Վարդան (էջ 60)։

Ուրիշ մանրամասնութիւն յայտնի չէ իր կեանքէն։ Յովհաննէս Պատմաբան (էջ 39) կաթողիկոսութիւնն 30 տարի երկարած կը դնէ, որ յիրաւի շատ ուղիղ կու գայ ընդհանուր ժամանակագրութեան. «եւ կացեալ ամս երեսուն» կը փոխուի յաստեացս յամի 604[1]։

Ծերունի էր նա՝ սպիտակացեալ ալեօք. եւ կրնանք ըսել, թէ ծերութեան տկարութենէ վախճանեցաւ բնական մահուամբ։ Սեբէոս (էջ 64) պարզապէս կը գրէ. «վասն զի վախճանեալ էր Մովսէս կաթուղիկոսն երանելին»։ Որչափ իւր առ Կիւրիոն թղթէն[2] ներելի է դատել, հեզ եւ խաղաղասէր նկարագրով անձնաւորութիւն մը կը պատկերանայ մեր առջեւ։ Հ. Յ. Գաթրճեան «հանդարտ» անձ մը կը նկատէր ի նմա[3], «քաղաքագէտ եւ շրջահայեաց» միտք մը՝ Մ. Էմին[4]։ Չէր յունասէր եւ ժամանակակցաց բացատրութեամբ «քաղկեդոնիկ», բայց չէր նաեւ մոլեռանդ հալածող մը անոնց հանդէպ։ Թէեւ Սեբէոս (էջ 53) եւ Կայսերաց գրոց հեղինակն (էջ 76) Հոռոմոց ամե-

---

1 Մովսէսի մահն տարւոյն վիճելի. հարկ է դնել 604ին, այս է ամենէն ճիշդը եւ համապատասխան նախորդ եւ հետեւորդ դիպաց։ Տէր-Մինասեանց (Die arm. Kirche, p. 60. Յարաբ. 137–138) կը զետեղէ կաթողիկոսութեան 30 տարիները 573–602/3, զոր շատ ուղիղ չենք տեսներ։ Վերագոյն Յովհ. Բ.ի վրայ խօսած ժամանակի նշանակեցինք մահուան թուականն 574, գումարելով ասոր վրայ 30 տարիներն կը ստանանք 604. այսպէս պիտէ եւ Ուխտ., որ Մովսէսի մահուընէն մինչեւ Աբրահամու ընտրութիւնն (607) երեք տարւոյ անջրպետ կը դնէ, կը համապատասխանէ ասոր նաեւ De rebus Armeniae գրուածքն, որ 591/2էն մինչեւ Մովսէսի մահը 14 տարի կ'ընդունի։

2 Ուխտանէս Բ. 8–12։

3 Իրաւախոհի Կնձիքը. Բ։

4 Изслѣдованiя и Статьи, Москва 1896. стр. 156.

նեւրին «Հուպ» չեղող կը ներկայացընեն զինքը, առ որ Անանունի ի մէջ բերած խօսքերն ալ վկայ են, բայց իւր Սիւրիոնի ցուցուցած ասպնջականութիւնն ուրիշ գոյն կու տայ իրեն։ Եւ Սիւրիոն, որ Մովսիսի ամէնէն սրտակից բարեկամն էր, այսպիսի ոգւով անձ մը կը ճանչնար ի Մովսէս, երբ անունն յիշատակելով կը բացատրէ ինք զինքը այսպէս. «Մինչ Մովսէս օրհնեալ կենդանի էր, գրեաց առ իս, թէ չէր պարտ հաղորդել ընդ Խուժիկաց, գիտէի թէ արդար է, ըստ նորա հրամանի հեռացուցի զնոսա ի մէնջ[1]»։

Մովսիսի կաթողիկոսութեան կատարածն ալ առաջին վայրկեննին նման շփոթ ժամանակ մը կը պատահի։ Յոյն-պարսկական պատերազմներն միանգամ սկսած էին բորբոքիլ։ Խոսրով Ա. Անուշիրվանի գահն Խոսրով Բ. Պարուէզ փոխանակած էր. որ իւր երախտաւոր Մօրիկ կայսեր մահուան վրէժն Փոկասէն լուծելու պատրուակաւ խաղացուցած էր բանակն դէպի Յունական երկիրներն եւ հին սահմանն կրկին գրաւած։ Երկրին աղէտալից շփոթ հանգամանքներն, որոնց պատկերն տեսանք համառօտիւ (էջ 32—35), եւ ազգայնոց անհամաձայնութիւնք իրարու հետ, չեն ներեր ժողով գումարել Դուինոյ աթոռոյն վրայ յաջորդ մը բարձրացնելու. եւ առ ժամանակեայ տեղապահ կը կարգուի Վրթանէս Քերդող, որուն օրով գլխաւորաբար ծագեցան Հայ-վրական յարաբերութեանց խնդիրք։

## ԳԼՈՒԽ Դ.

### Յովհաննէս Կաթողիկոս Բագրեւանդացի։

Տերունի Կաթողիկոսին՝ Մովսիսի մահուամբն կ՚ակնկալուէր հայրապետական երկփեղկեալ աթոռոյն ցանկալի միութիւնը. գոնէ այս էր երկու կողման

---

[1] Գիրք Թղթոց 178։

ալ ընդհանրապէս՝ անկախութիւնը։ Յովհաննէս Բագրեւանդացի պիտի ճանչցուէր ընդհանուր Հայոց կաթողիկոս։ Ծանօթանանք անձնաւորութեանս եւ ժամանակակից խնդրոց ի մերձուստ մանրամասնութեամբ։

Յովհաննու ծննդավայրն կը նշանակեն պատմագիրք Յունական Հայաստանի Կող կամ Կողովիտ գաւառի Բագարան գիւղը[1]։ Թէ եղա՞ծ է ժամանակաւ նաեւ գաւառիս եպիսկոպոսն ոչինչ կ՚աւանդուի այս մասին. վարագուրէս ներս կը մնան առ հասարակ անոր կաթողիկոսութենէ յառաջ ապրած կեանքը, այնպէս որ այսօր մեզի անյայտ է բոլորովին անգամ թէ ունէ՞ր եկեղեցական որ եւ իցէ աստիճան։ Պատմիչք, Յովհան Պատմաբան եւ իրմէ Վարդան կը գրուատեն զինքը իբրեւ "այր ճշմարիտ եւ արդար եւ առաքինի ի վարս"[2], "այր սուրբ եւ ընտրեալ յամենեցունց"[3]։ Հ. Ալիշան[4] կ՚անուանէ զՅովհաննէս "Միւնական", բայց թէ ինչ աղբերէ ուսեալ եւ ինչ իմաստով, անյայտ է ինծի։

Պատմութեան մէջ յերեւան կ՚ելլէ իր անձնաւորութիւնն վեցերորդ դարու վերջին տասնեակին (591), երբ Մօրիկ կայսերական՝ այս է արեւմտեան Հայաստանի համար որոշեց հաստատել առանձին կաթողիկոս, հակառակաթոռ Դունայ Պարսկահայոց Մովսէս կաթողիկոսին՝ անկախ բոլորովին անկէ։ Յովհաննու կը վիճակի ընտրութիւնն (591/2), որ ապահովապէս արդէն յառաջացած տարիքի մէջ ըլլալու էր[5]։

---

1 Յովհ. Պատմ. 42. Սամ. Ան. 77. Գրատաշ. կաթ. (անտ.) 271։ De rebus Arm. 1249 ունի հոս. Ἀπὸ τοῦ Κωνστᾶ Παγηράτων χώρας, որ յայտնապէս աղաւաղուած է "ի Կողովտայ ի Բագարան գեղջէ" հայերէն բնագրի մը։

2 Յովհ. Պատմ. 42։

3 Վարդան 60։

4 Այրարատ. 292։

5 Ընդհանրապէս դարուս պատմագիրներէն ոմանք

Կայսերական Հայաստանը փոքր չէր, ինչպէս սահմանէն կը տեսնուի. եւ Յովհան իւր թեմովը կարող էր մրցիլ Մովսէսի հետ։

Բիւզանդականաց այս որոշումն իրեն վախճան ունէր, ինչպէս կանխեցինք ըսել, կտրել կայսերական բաժնի Հայոց յարաբերութիւնքն Պարսկահայոց հետ, եւ հակառակէն իրենց ձգել զանոնք։ Սոյն այս վախճանաւ անշուշտ Նոր հայրապետին կաթողիկոսարանն հաստատուեցաւ Դունայ արեւմտեան կողմը[1], Կոտայք գաւառի Աւան[2] գիւղաքաղաքը, Ազատ գետի յունական բաժնի մէջ, ոչ շատ ասպարիսօք հեռու, հետեւաբար, Դունայ կաթողիկոսարանէն։ Աւելի անշքացնելու համար Դունայ աւերակ կաթողիկոսարանն եւ Պարսկահայոց հրապոյր մը տալու համար կամաց կամաց Բիւզանդականաց համակրելու եւ դէպի յունական երկիրներն գաղթելու յորդորելու՝ թողլով Դուինն եւ իւր "աւերածին" վրայ նստող կաթողիկոսն, ինչպէս այսուհետեւ սովոր էին ըսելու յունահայք[3], ձեռնտու եղան յոյնք Յովհաննու՝ Աւանին մէջ

---

եւ Նոր մատենագիրք կը վրիպին ընդհանրապէս երբ Յովհաննու կաթողիկոսութեան բարձրանալն կը դնեն Մովսէսի մահուընէ ետքը (Ալիշան, Այրարատ 292, "յետ մահուանն Մովսէսի կաթողիկոսի"), կամ Աբրահամու օրով (Կիր. 26. Սամ. 77. 275 եւն)։ Շփոթութիւնս ծագած է ապահովապէս Մովսէսի կաթողիկոսութեան 30 տարիներու սխալ դասաւորութենէ։ Մասնաւոր հերքման չեն կարօտիր հոս։

[1] Այժմեան Երիւան քաղաքէն ոչ շատ հեռու՝ Քանաքեռ գիւղին մօտ։ Աւանի մասին տես Այրարատ, 290։

[2] Յովհ Պատմ. 42. Սեբ. 77. Վարդ. 60. Գանձակ. 275։ Անտեղի է Սամուէլի. Օրպէլեանի (95) տեղեկութիւնն թէ "Յովհան ոմն ի Թէոդուպոլիս եղեւ կաթողիկոս եւ եկեալ եդ աթոռ ի Կոտայսն յԱրամօնս գիւղ", զոր իրաւամբ կը մերժէ Հ. Ալիշան, Այրարատ, 290։

[3] Հմմտ. Թուղթ. Սոփրենայ, 90։

շքեղ կաթողիկոսարան մը եւ Եկեղեցի մը կառուցանել, զոր եւ հանեց ի գլուխ, եկեղեցւոյն շուրջն ալ «յարդարելով իւր կայեանին կալուածները»: Շուտով զարդարուեցաւ կաթողիկոսարանն կարեւոր սպասներով, վասն զի Դունայ հին կաթողիկոսարանի բոլոր կահերն ու կազմածները — «սպասք ամենայն եկեղեցւոյն», —, որոնք 572ի ապստամբութեան ժամանակ Վարդանայ եւ Յովհ. Գաբեղինեցւոյ[1] խորհրդով փոխադրուած էին Կարին ի պահեստ, յատկացուեցան նոր կաթողիկոսին[2]:

Եկեղեցին դեռ Ժ. դարուն կանգուն եւ իւր պայծառութեան մէջ էր, եւ սքանչացուցած է Պատմաբան կաթողիկոս մը, որ կ'անուանէ զայն «Պայծառակերպ քաւարան սուրբ»: Այսօր սակայն աւերած վիճակ է. Հետազօտութեան կարօտ աւերակներն դեռ ցայսօր կը դրաւեն այցելուաց ուշքն, ըստ Խաչիկ Վրդ. Դադեանի վկայութեան, որոնք «արտաքին ճարտարապետութեամբ ըստ ամենայնի յիշեցնում են Հռիփսիմեանց եկեղեցին»[3]:

Յովհաննէս իբրեւ յունական ազդեցութեան ներկայացուցիչ հարկ էր ըլլալ Յունաց հետ համակրօն ի վարդապետականս եւ էր նաեւ համոզմամբ: Եւ այս կէտը կը շեշտեն պատմագիրք մասնաւորապէս. «Եւ Յովհան ընդ նոսա հաղորդեալ միաւորեցաւ» (Սեբ. 53. Գիրք Կոյս. 76): Այս պատճառաւ ալ իւր բոլոր գործերն անհաճոյ աչօք նկատուած են Պարսկահայերէն. որոնց աչքին Յովհաննէս մինչեւ անգամ «Նեռին ասպնջական եւ առաջնորդ եւ կարապետ» էր, «որ ազգի միոյ ապստամբութեան պատճառ» եղած է, «եւ զարս ի կանանց վարատելոյ եւ զկանայս յարանց, յորոց բազումք թափառական կենօք ի տար աշխարհ

---

1 Սեբ. 74. Յովհ. 42:

2 Սեբ. 53. Հմմտ. Գիրք Թղթ. 93—94, ուր Վրթանէս Քերթող ցաւօք կը գանգատի Սուրէնի՝ այս մասին:

3 ԱԶԳ. ՀԱՆԴ. ԺԶ (1907), էջ 195 Ծան.:

վախճանեցան՝ Թաղման անգամ ոչ լեալ արժանի, որ "մանաւանդ յիւր բնակ եւ յուղղափառ վարդապետաց կարգէ օտարանալով է փախուցեալ եւ տարագիր եղեալ յամբիծ եւ հաշտական եւ կենցուցանող նոցին հաւատոց[1]": Այս խօսքեր, որոնք ժամանակակցաց բերնէն ելած են, եւ ժամանակի զգացման ամենապայծառ Թարգմանները են: Ժ. դարուն դեռ Յովհ. Պատմաբան (42) խօսելով իր մասին ինք զինքը կը բացատրէ. "Թէպէտեւ Յոհան այր ճշմարիտ եւ արդար էր եւ առաքինի ի վարս, սակայն հակառակաԹոռ գոլով՝ յերկուս հատուածս ճեղքեալ լինէր միատարր միութիւն հայրապետական աթոռոյն. եւ տայս ոչ սակաւ հակառակութիւն կրեալ լինէին կողմանքն երկոքին": Առանց հիման անշուշտ չէ առղած պատմագիրս երկու կողմին այս Թշնամական յարաբերութիւնքը. եւ աչաց առջեւ ունէր պատմական հիմ եւ արդիւնք: Երկու երես առ երես կանգնուած կաթողիկոսարանք այնպիսի տագնապալից մրցման մէջ, երբ մին միւսին մահ կը սպառնար, բնականաբար չէին կրնար համակիր գտնուիլ միանգամայն: Հանդոյն Պատմաբանի կը նկարագրէ դարին նաեւ Անանուն. "Երկու կողմանք շատ վէճեր ունեցան իրարու հետ Քրիստոսի երկու բնութեանց եւ Քաղկեդոնի ժողովոյն նկատմամբ"[2]:

Յունական կողմը պատուար ունէր իրեն կայսերական հզօր իշխանութիւնն, որ արդէն ինքնաբերաբար կը գործէր նոյն ոգւով: Կը վկայէր Սեբէոս Թէ ինքնին Մօրիկ հանած է հրաման միաբնեայ հայերն Քաղկեդոնի ժողովոյն հնազանդեցնելու, առ որ ձեռք կ'առնուէր մինչեւ անգամ հալածանք, կոչկոճում, գան եւ նմանիք, որոնց հանդէպ շատերն կը ստիպուէին նոյն իսկ պանդխտու-

---

1 Թուղթ Վրթանիսի առ Սմբատ. 93:

2 De rebus Armeniae, անդ:

թեան ցուպն ի ձեռին՝ օտար երկիր փախտեայ երթալ։ Այնպէս որ Վրթանէս Տեղապահ կը գրէր առ Սորմէն (էջ 94)․ «Բազումք՝ ի ձէնջ հալածական եղեալ յաւուրս ձմեռայնոյ՝ վէրս ընկալան եւ ցարդ եւս մորմոքին»։ Եւ Դունոյ 606ի ժողովոյն կանոնաց յառաջաբանին մէջ․ «Այժմ բազումք ընդ խոստովանողս եւ ընդ ընդունաւղս ժողովոյն Քաղկեդոնի եւ տումարին Լեւոնի հաղորդեցան յաշխարհէս մերմէ. ոմանք կամաւորութեամբ յաղագս սնոտի փառասիրութեան՝ եւ աչառութեան, եւ կէսք ակամայ բռնադատեալք ի նոցանէ. եւ այլք առ տգիտութեան եւ կամ անձեռնհաս լինելոյ» (էջ 146)։

Այսպիսի վարմունք ի հարկէ միայն յունականներէ չէր․ Դունեցիք եւս նոյն շաւղով կը հետեւէին մովսիսական արդարութեան օրինաց, ինչպէս Սորմէնի թղթէն կ'երեւայ բացայայտ եւ բնական է մտածել։

Սորմէն, Յունական Հայաստանի այս ժամանակի տիրատէրը եւ Հայոց զօրավարը, Սեբէոսէն (70) «Սուրէն» յորջորջուած[2], պարսաւելով Պարսկահայոց քաղկեդոնականաց հանդէպ ցուցուցած անհանդուրժող վարմունքը՝ կը յիշատակէ թէ ձեռք կը ձգուին քաղկեդոնականաց կանգնած սեղաններուն, կը կործանեն զանոնք․ քաղկեդոնականներէ մկրտուածներն «որպէս զպիղծ ինչ եւ զանօրէնութեամբ թաթաւեալս» «վերստին մկրտել» կու տան, վանից երէցներն եւ անմեղ քահանաները գրով Քաղկեդոնի ժողովն նզովելու կը ստիպեն եւն։ Գործեր, որոնց առաջն առնելու համար կը հարկադրուի Սորմէն մինչեւ անգամ Կայսեր (Փոկասու) դիմել[3]։

---

1 Հմմտ. եւ Սեբ. 52։

2 Շատ ուղիղ կը գտնենք Հ. Գալթըրճեանի այս նոյնացումը. Իրաւախոհք Կեղծիք, Բ.։

3 Թուղթ Սորմ. 91։ Հմմտ. եւ 169։

Այս յոյզերը բորբոքեցան մանաւանդ Մովսէսի աչուըները փակելէն յետոյ Վրթանիսի օրով, երբ Դունոյ աթոռն դատարկացած էր։

Թէեւ երկու կողման ալ ընդհանուր բաղձանքն էր տեսնել "մի հօտ եւ մի հովիւ". բայց դժուարին էր համաձայնութիւնն, որուն համար համոզումներ պիտի զոհուէին։ Յովհաննէս Աւանի մէջ ընդհանուր Հայոց կաթողիկոս պիտի հռչակուէր, որով քաղկեդոնիկ յունահայք պիտի տանէին յաղթութիւնն. բան մը, որ շատ ծանր էր եւ անհանդուրժելի Դունեցւոց համար։ Սակայն յայամ երկակողմանի զիջողութիւններով միաձայնելու համար գրուեցան բազմաթիւ թղթեր, առաջարկուեցան նաեւ բանակցութիւն եւ ժողովներ։

Այսպիսի բանակցութիւններէ հատ մը կը յիշատակեն Սամ. Անեցի եւ Մխիթ. Այրիվանեցի. "Գրիգոր եւ Վրթանէս վարդապետք գնացին ի Յոյնս եւ ոչինչ օգտեցուցեալ զնոսա դարձան նզովելով"[1]։ Դժբախտաբար այս մասին ժամանակաւ մերձաւորներէ բան մը չէ աւանդուած։ Բայց խնդրոյս համար ունինք մեծարժէք երկու վաւերագիր՝ գրուած ժամանակիս նշանաւորագոյն անձերէ, Մովսէսի մահուընէ ոչ շատ ետքը՝ միութեան հարցի առթիւ։

Մին Սորմէն Ստրատեղատէն է՝ ի դիմաց Յունահայոց ուղղուած առ Վրթանէս Տեղապահ. եւ երկրորդը Վրթանիսի պատասխանը։ Ահա թէ ինչ կը գրէ[2] Հայոց զօրավարը այսպիսի հասցէով.

"Փառաւորելոյ Տերանց[3] Վրթանիսի Տերանց

---

[1] Սամ. Անեցի, 76. Մխիթ. 64։

[2] Ի դէպ համարեցանք աշխարհաբար ի մէջ բերել կրկին թղթերս (Գիրք. Թղթ 90–92. 93–98) Հ. Գաթըրճեանի թարգմանութեան հետեւելով (Իբրաախոհէ Կեդծէք Բ.)։

[3] "Տեարք" յոյնակի ձեւով սովորութիւն էր կոչել Բարձրաստիճանները (Եկեղեցական, Զինուորական եւն). Հմմտ. Գիրք Թղթ. 90, 91, 150, 171 եւն։

նուիրակի եւ վարդապետի Քչկան որդւոյ ի Սորմենայ ստրատելատէ եւ Հայոց զաւրավարէ։

“Մենք շատ անգամ ներկայ եղած ատեններս բանիւ բերանոյ, ներկայ չեղած ատեններս՝ գրով Ձեր իմաստութեանը հետ խօսեցանք. եւ կը յուսայինք, թէ զՁեզ, իբրեւ մի եւ նոյն ժառանգութեան տէր, ըստ աւազանին հարազատ եղբարք եւ մեր Հօրը սրբոյն Գրիգորի հաւասարակից հաւատոյ որդիք պիտի գտնենք։ Սակայն դուք շատ բանով իբրեւ օտար վարուեցայք մեզի հետ, այնպէս որ հիմակուան պատասխաններնիդ[1] ալ առաջիններուն պէս խարդախութեամբ եւ անհիմն պատրուակներով լեցուն է։

“Վասն զի՝ եթէ իրօք, ինչպէս գրած էք, առանց աթոռակիցներու մեզի հետ խօսելու եւ մեզմէ լսելու իշխանութիւն չունի Ձեր եկեղեցւոյն տեղապահը կամ, ինչպէս կ'ըսէք, Ձեր Քերդողը, որ Դունոյ աւերակներու մէջ, իբրեւ հաւատոյ Նոր կարապետ եւ Նեռին առջեւէն քալող, պաճուճուած սնափառութեամբ մը՝ տխմար եւ պակասամիտ մարդկան մէջ ինք զինք այնպէս մը կը ցուցընէ, թէ Ես իսկ եմ վարդապետութիւն։ (Մէկ կողմանէ կ'ըսուի թէ) Պէտք եմ սպասել, որ ամէնքը համախոհութեամբ միաբանին եւ կամ ժողովական թղթերով իրարու հաւանութիւննին տան, (եւ մէկալ կողմանէ) յանկարծ եւ թեթեւ միտք իբրեւ հասարակ ոչինչ բան մը, սրբազան հայրերէն հաստատուած սեղանները կործանել, եւ իբրեւ թէ պղծեալ եւ անօրէնութեամբ թաթաւեալ ըլլան, (քաղկեդոնականները) վերստին մկրտել կու տայ, եւ անմեղ քահանաները բռնադատելով՝ իրենցմէ ստորագրութիւն կ'առնու, որ մեր ուղղափառայս[2] հետ հաղորդութիւն չընեն։

---

1 Դժբախտաբար չէ պահուած այսօր մեզի ակնարկուած թուղթը։

2 “Ընդ մեր բարեպաշտութեանս„։

«Լսեցինք նաեւ զինուորական կարգին ըստածնիդ, անոնց իսկ բերնէն, թէ «Այդ ըստ դոյա կամաց լինիցի, — որպէս զի այս ալ եռքը ձեզի իբրեւ պատճառանք ծառայէ, — առաքեցէք զորս կամիք, թող դան, զհարցն հաւատ կարգեալ տեսանեն։»

«Եթէ Դիոսկորոսի հաւատքն է հաւատք ըստածնիդ, եւ կամ Տիմոթէոս Աղեքսանդրացւոյնը, որոնք հոգեկիր հարց ուղղափառ վարդապետութեանը դէմ խօսելու ժպրհեցան, եւ անոր համար ալ սուրբ եկեղեցիէն մերժեցան եւ անջինջ յիշատակաւ նզովքի վիճակեցան. այդ մենք ալ աղէկ գիտենք եւ ճշմարիտ հաւատոյն կապարճին մէջ ունինք զանոնք սուտ, օտար եւ անգործածելի նետերու պէս։ Ուրիշ բան մը եթէ ունիք, որ մեզի հասած չըլլայ, խաւրեցէք։ Իսկ եթէ սրբոյն Աթանասինը կ'ըսէք, որ հոգելից ժողովոյն[1] զարդն եղաւ, Մեծին Բարսղինը, չորս Գրիգորներունը[2], եւ Տեառն Յովհաննու անխարդախ վարդապետութիւնը եւ անոնց նմաններուն, անիկա մեր սրտին մէջն է, մեր քովը, չունինք պէտք Խորասանիկ եւ Ատրպատիճ կանոնադրութեան եւ վարդապետութեան[3]։ Հոս ունինք նաեւ Կիւրղի Աղեքսանդրիոյ եպիսկոպոսապետին, Մեծ Հօրը, սիւնհոդոսական թղթերը, որ Նեստորի մոլար վարդապետութիւնը հերքեց ջրեց եւ կը յուսանք ասոնց ամենուն աղօթիւքն ու բարեխօսութեանը եւ նոյն իսկ մեր Տեառն Յիսուսի Քրիստոսի ճշմարիտ Աստուծոյն՝ որ մարմնացաւ ու մարդացաւ ի սուրբ եւ աստուածածին միշտ Կուսէն Մարեմայ, եւ չարչարանք յանձն առաւ, խաչի համբերեց, մեռաւ, թաղեցաւ, յա-

1 Իմա՝ Նիկիոյ 325ի Սիւնհոդոսը։

2 Այսինքն՝ Գրիգորի Լուսաւորչի, Գր. Սքանչելագործի, Գր. Աստուածաբանի եւ Նիւսացւոյ։

3 Կ'ակնարկուի ըստ Հ. Գաթըրճեանի՝ Արդիշոյ եւ իւր կատարած գիրը։

րեաւ, երկի՛ք ելաւ ու Հօր աջ կողմը նստաւ, որ կը պահէ անսասանելի եւ անխռով իր ընդհանրական սուրբ եկեղեցին։

«Սա կը փափաքէինք, որ իմանայիք, եղբարք, թէ ձեր աչքին թեթեւ եւ չնչին բան երեւցածը՝ մեզի տառապեալներուս շատ ծանր եկաւ, այնպէս որ շատ մը ողբալէ եւ արցունք թափելէն ետքը, հարկ եղաւ որ մեր բարեպաշտ եւ խաղաղասէր տիրոջը՝ ծանուցանենք։ Ոչ ոք պարապ տեղը փորձէ կամ ջանայ, ինչպէս սովորաբար կ'ընեն կեղծաւորելով ու ձեւանալով՝ մտնել սիրոյ նեղ դռնէն եւ երթալ բանալ թշնամութեան լայն դուռը։ Այսպիսիները պէտք են շատ մեծ խիղճով վարուիլ եւ նայիլ Աստուծոյ անաչառ ատեններին դատաստաններուն, իրաւունքներուն եւ վրէժխնդրութեանց թէ՛ հոս եւ թէ՛ անդիի աշխարհքը։

«Որչափ ալ այսպիսի շատ մը նիւթերու վրայ ի հարկէ տարածուեցաւ մեր խօսքը, ի վերայ այսր ամենայնի քաջ եւ յաղթող նահատակն այն է, որ Քրիստոսի սիրոյն համար կը խոնարհի եւ գլորածը՝ ոտք հանելու կ'աշխատի։ Անոր համար այս անգամ ալ կ'աղաչենք, որ եթէ կը հաճիք, հրաման ընէք, որ ժողվին եպիսկոպոսունք եւ երեւելի քահանայք, որոնց համար կը կարծէք թէ դիտութիւն բանի ունին։ Առ այս յարմար տեղ մ'ալ որոշեցէք՝ ժամանակն ալ ճշդիւ ծանուցանելով։ Մենք մեր եկեղեցւոյ Առաջնորդը[2] կ'աղաչենք, որ ասոնք ալ ներկայ գտնուին։ Որ յուսանք մեր Աստուծմէն ի Քրիստոսէ որ այսպիսի համբաւներէ յառաջ եկած ու սնոտի երկպառակութիւնք՝ իրարու քով դէմ յանդիման գտնուելով՝ վախճան կ'առնու, եւ աւետարանական խօսքին համեմատ՝ կ'ըլլանք մի հօտ եւ մի հովիւ։»

---

1 «Տերանց», այս է՝ կայսեր փոկասու։

2 Այսինքն՝ զՅովհաննէս կաթողիկոսը։

Առ այս կը պատասխանէ Դունոյ Տեղապահը որուն թուղթը խորագիր կը կրէ.

«Պատասխանի թղթոյն Սորմենայ, որ առ Վրթանէս Վարդապետ գրեաց։»

«Գիտենք որ շատ եւ պէսպէս եղանակներով խօսեցաք, որպէս զի ցուցընէք թէ մեզի համախոհ եւ միաբան էք այն հաւատքին վրայ, զոր Քրիստոսի երանելի նահատակն ու մեր հայրը Գրիգորիոս անկեց ի մշտնջենաւոր պայծառութիւն Հայաստան աշխարհիս։ Ենթադրեցինք որ այդ-այդպէս է։ Անոր համար ալ շատ անգամ թախանձեցինք սրբասէր եպիսկոպոսս[1], որ քննութիւն ընէ եւ սորվեցուց մեզի, թէ առանց միաբանական ժողովոյ օրինաւոր չէ։ Իսկ դուք զայս ծաղր բրած էիք ձեր պատասխանին մէջ՝ մեր երեսին շատ մը թշնամանքներ յաճախելով, որ եթէ (տեղապահն) իշխանութիւն չունէր, ինչու ուղղափառներէն հաստատուած (պատարագի) սեղանները կործանեց, նորէն կնունք (վերստին մկրտութիւն) բրաւ։ Այս խնդրոյս համար տեղեկացանք, որ այդպէս չէ[2], այլ ի կանոնայ որոշուածն ու իրաւացին բրած է։ Բայց դուք, մէկուն բանծին պէս, բոլոր յաղթութիւններէ նախադաս եւ գերադոյն համարեցաք՝ անարգանօք յաղթելը, եւ մեր Քերդողը Ներսին կարապետն ընելով թշուառութեան վրայ խնդացիք ըսելով, թէ Դունոյ այրած ու փլած եկեղեցւոյն մէջ կը նստի եւ նորաձեւութիւն կը սորվեցընէ։ Ներսին հիւրընկալ, առաջնորդ ու կարապետ զանիկա[3] պէտք է կոչել, որ պատճառ եղած է բովանդակ ազգի մը ապստամբելուն, էրիկները իրենց կնիկներէն եւ կնիկներն իրենց էրիկներէն անջատե-

---

1 Դժուարին է լուծել, թէ ո՛վ է ակնարկուած եպիսկոպոսը։

2 Ըսել կ'ուզուի, թէ՝ Ձեր ըսածին պէս ապօրէն—ոչ կանոնաց հակառակ գործ մ'ըրած չէ։

3 Կ'ակնարկուի Կոճողջեան Յովհաննէս։

լու։ Որոնցմէ շատերն հեռու երկիրներ թափառելով մեռան՝ առանց թաղման իսկ արժանի ըլլալու. առաւելապէս իրեն բնիկ եւ ուղղափառ վարդապետներու դասէն հեռու խուսած է, ամպարիշտին պէս՝ առանց մէկէ մը հալածուելու՝ փախչելով, եւ տարագիր ըլլալով անբիծ, հռչակաւոր ու փրկարար հաւատքէն՝ զոր անոնք (իրենց բնիկ ու ուղղափառ վարդապետք) ունին։

“Սակայն այս ալ պէտք է խորհրդածել, որ մէկ կողմանէ բերնով կ'օրհնէք, այսինքն Ս. Գրիգորի հաւատքին ժառանգը կը համբաւէք զձեզ, մէկալ կողմանէ՝ Ս. Գրիգորի եկեղեցւոյն այրեցման եւ աւերածոյն ընծան դուք անոր[1] մատուցած էք։ Իսկ թէ վանքերուն առաջնորդները եւ անոր քահանաները, որոնք ստորագրութիւն տալով Քաղկեդոնի անօրէն ժողովը նզովեցին, առանց բռնութեան տակ ըլլալու ըրին, ամէնուն յայտնի է. վասն զի որոնք որ այս ստորագրութիւնը տալ չուզեցին, դեռ հոս տեղս կը շրջին առանց իրիք խոշտանգանաց. ոչ թէ ինչպէս դուք ըրիք՝ շատերը հալածելով ձմեռուան ժամանակ, որոնք վէրքեր առին եւ դեռ մինչեւ հիմայ կը հեծեն։

“Մենք՝ որովհետեւ մեր հարց եւ ճշմարիտ վարդապետաց հաւատոյ սահմանին վրայ վստահ էինք, անոր համար ոչ թէ ակամայ, այլ երանելի եպիսկոպոսին[2] եւ ուրիշներուն ուզելովը կը կանչէինք զձեզ, որպէս զի թէ՛ մեր պարծանքն երեւայ եւ թէ՛ խաղութեան պտուղ մը տեսնուի։

“Բայց սա՛ մանաւանդ հիանալի է եւ շատ մեծ զարմանք կը պատճառէ, որ մէկ կողմանէ երդմամբ կը հաստատէիք թէ ձեր հաւատոյ դրութիւնը՝ Հայաստանի մէջ այս եկեղեցւոյս առաջնորդներէն ընդունուածէն ոչ աւելի եւ ոչ պակաս

---

1 Իմա՛ Յովհաննու։

2 Այսինքն՝ հանգուցեալ կաթողիկոսին Մովսէսի։

է — Հիմայ ձեր գրածներուն մէջ՝ սաստ հակառակը տեսանք։ Դիոսկորոսն ու Տիմոթէոսը անձինք նզովեց արժանի կը համարիք, զորոնք մեր պատուական հայրերը ու հոգեկիր վարդապետները ուղղափառ հովիւներուն եւ մարտիրոսներուն մէջ դասած են։ Իսկ մոլար, չարապաշտ եւ հերձուածող Քաղկեդոնիտները բարեփառ կ'անուանէք, եւ միաբանութեան միջոց կ'առաջարկէք։...

"Սակայն ըսելիքնիս բոլորովին ծաղրական է։ Ճամարտակած էիք, թէ Խորասանիկ եւ Ատրպատիճ կանոնաց ու վարդապետութեան կարօտ չէք։ Բայց շատ սուտ է ըսածնիդ. միայն անոնց չէ ձեզի ալ նոյները կը վերաբերին։ Վասն զի Խորասանիկը առտուանց՝ ելածին պէս կը լուացուի եւ կը կարծէ թէ իր բոլոր աղտեղի գործերը անով մաքրեց։ Դուք ալ բոզերու երթալէն ետքը՝ բաղնիք երթալով, անոնց պէս զձեզ մաքուր կը կարծէք, անոր համար ալ անխտիր տէրունական մարմնոյն կը հաղորդուիք, գործ մը, զոր աստուածային պատգամն ըսած է թէ դատապարտութեան տակ է։ Իսկ Ատրպատիճներու գալով՝ ասոնք ալ չիմանալով որ տարակոյսը հաւատքը կը լուծէ [1], շատ աստուածներու՝ այսինքն միշտ մէկ աստուածէն մէկալ աստուած համբոյր կը փոփոխեն։ Նոյնը ձեզի համար ալ ճշդութեամբ կրնայ ըսուիլ՝ արցունքով մէկտեղ։ Վասն զի անդադար ալեկոծեալ, պղտորեալ ու շփոթեալ էք, չէք կշտանար ետեւէ ետեւ տեսակ տեսակ՝ հաւատոյ սահմանադրութիւններ շինելով։ Ուրեմն սուտ է եւ շատ անյարմար՝ Խորասանիկներն ու Ատրպատիճները բամբասելը։ Վասն զի չէք կրնար ժխտել եւ ըսել՝ թէ սատանիկ չէ։... [Երկար խօսքով իբրեւ թէ ցու-

1 Ըստ Հ. Գաթըրճեանի կ'ակնարկուի հոս Յովհ. Ոսկեբերանի Մեկն. Ա. Տիմ. Ճառ Ը. 7. "Խնդիրն հաւատոցն խափանիչ է, եւ որ խնդրէն՝ յայտ առնէ թէ չեւ եւս եգիտ, եւ ոչ հաւատալ կարէ, որ տակաւին խնդրիցէ։"

ցընելէն ետքը՝ թէ Խաչը Երրորդութենէն չի կրնար բաժնուիլ] Դուք պէտք էք նստիլ ձեր երկրին վրայ անմխիթար սգալ ու տրտմիլ՝ որ իրարմէ ճեղքուած եւ աղմկոյ մէջ էք՝ անթիւ աղանդներու զանազանութեամբ, անոր համար ալ ոչ մէջերնիդ կրնաք միաբանիլ եւ ոչ մեզի կրնաք բարկանալ, երբոր ըսենք որ եթէ մէկը իր տանը մէջ չի դիտեր կամ չի կրնար կառավարութիւն բանեցընել, ի՞նչպէս բարձրէն հրապարակախօս ըլլալու համարձակելով՝ կրնայ պատուէրներ տալ ճոռոմաբանելով: Ո՞չ ապաքէն ամենէն պիտի ծաղրուի. եւ փոխանակ նեղ դրան՝ թշնամանքէն լայնը պիտի բանայ:... Թէպէտ այս այսպէս է, սակայն եւ այնպէս պէտք ենք յուսալ ի Քրիստոս Աստուած մեր, որ ձեռնտու կ'ըլլայ եւ կը բառնայ մէջտեղէն ի Քաղկեդոնի Լեւոնի արձանի շնորհիւ բռնի սերմանուած նորոգաձեւ գայթակղութիւնը: Վասն զի անիկա միայն է քաջ եւ յաղթող հովիւ եւ իւր պատուէրները պահողներն սիրող, խոնարհ եւ այցելու. որ ինչպէս երբեմն Արիանոսաց ճոխութիւնն քակեց քայքայեց, նոյնպէս կը հաւատամ, թէ պիտի տեսնեմ քայքայուած անոր օգնութեամբն զձեզ՝ քաղկեդոնիտոներդ: Այնուհետեւ հնարաւոր կրնայ ըլլալ մեր եպիսկոպոսներու եւ բոլոր սուրբ ուխտի ճշմարիտ քահանայից միաբան հաւաքումն, խորտակել մէջտեղէն վերցնելու համար տիեզերակործան Արձանին գայթակղութիւնը. եւ անբաժանելի եւ անփոփոխելի քաջ Հովիւը մեր փրկիչը եւ Տէրը խոստովանելով ձայնը լսելի ընել:„

Չենք կրնար դժբախտաբար այս կարեւոր թղթակցութեան թելը հոս երկնցնել, վասն զի ինչպէս անկէ առաջինը չունինք, նոյնպէս անկէ ետքինն ալ մեզի հասած չէ: “Սակայն մէկ ըղունգէն բոլոր առիւծը կ'իմացուի„ կը նկատէ Հ. Գաթըրճեան: Թղթերուս մէն մի խօսքը ունի իւր կրակոտ շեշտը, բղխած ժամանակի յուզմանց հնո-

ցէն. աւելորդ է երկարագոյն խորհրդածութիւններով պարզելու աշխատիլ: Մեզի թոյլ կուտանք հոս այս թղթակցութենէ յետոյ իրաց առած կերպարանքն նկարագրել նոյնպէս Հ. Գաթըրճանի խօսքերով:

«Իրերն այս վիճակի մէջ էին, երբ Տեղապահը կ՚աճապարէր ու կը ստիպէր, որ ժողով մը գումարուի, ոչ թէ հաւատոյ խնդիրներ ընելու, վասն զի անիկա ինքը լմնցուցած էր, հապա Դունոյ դատարկ աթոռոյն վրայ կամ ինք եւ կամ իրեն համախոհներէն մէկն ելլէ: Քիչ չէ, 50 եպիսկոպոսունք եւ 390 Հարք (վանաց) եւ քահանայք ժողված Դունոյ մայր եկեղեցին[1]: Եպիսկոպոսաց մէջէն յանուանէ նշանակուածներն, ուստի գլխաւորաբար խօսքի տէր եղողներն սա 12ները եղած կ՚երեւան. Թէոդորոս Մարդպետական, Յովհան Արծրունեաց, Քրիստափոր Սիւնեաց, Մանասէ Բասենոյ, Աբրահամ Ռշտունեաց, Յովհան Ամատունեաց, Գրիգոր Անձեւացեաց, Սիոն Գողթան, Ահարոն Մեհնունեաց, Ներսէս Բժնունեաց, Յովհաննիկ Ելոյ (?), Թադէոս Առնայոյ (?) եպիսկոպոսունք: Ասոնց մէջ Յունական Հայաստանի եպիսկոպոսներէն մինակ մէկը կայ, այս ինքն Թէոդորոս Մարդպետական կամ Սեպհական գնդին եպիսկոպոս: Չենք կարծեր՝ որ քիչ աղմկով

[1] Դեռ Ս. Գրիգոր չէր շինուած, բայց հարկաւ անոր մօտերը առ ժամանակեայ պաշտօնատեղի մը եւ բնակարան մը եւ կամ նոյն քաղաքին մէջ ուրիշ եկեղեցի մը իբրեւ մայր եկեղեցի առժամանակեայ կը գործածուէր: Ժողովոյն կանոնաց յառաջաբանը կ՚ըսէ. «Մայրաքաղաք եկեղեցիս Դունեայ»: Ժողովոյս պատմութիւնն եւ կանոնք պահուած են Թղթոց Գրքին մէջ, 146—148 այսպիսի խորագրով. «Կանոնք որ եդան ի Դունի, մինչդեռ միաբանութիւն էր ժողովելոյ եպիսկոպոսացն կարգել կաթուղիկոս եւ խափանեցան այնմ անգամ»: — Ժողովական հարց թիւն կը նշանակէ Հ. Գաթըրճ. 306. (Ց եւ Ջ.), տպագիրն ունի Ց. եւ Ղ.:

ժողվուած ըլլայ այսչափ բազմութիւն քահանայից։ Նաեւ եպիսկոպոսաց թիւը Հայաստանի մէջ ժողով գումարելու համար բաւական հանդիսական թիւ էր. Շահապիվանի աշխարհաժողովին, որ դարձեալ Տեղապահի մը ատեն գումարուեցաւ, ասկէ աւելի եպիսկոպոս չունէր։ Ի վերայ այսր ամենայնի՝ կաթողիկոսի ընտրութիւնը չյաջողեցաւ[1]։ Չունինք հիմայ կռուան մը իմանալու՝ թէ ինչ դիտմամբ կամ որ ներքին կամ արտաքին ազդեցութեամբ մնաց ընտրութիւնը։ Սակայն եւ այնպէս, առանց կաթողիկոսի ալ, կանոնական սահմաններ դնելու միաբանեցան, հոս ամենեւին բացայայտ կանոնաց դէմ ընելէն չվախնալով, որոնք առանց մետրապոլտի կամ կաթողիկոսի երեւելի գործողութիւն մ'ընելու հրաման չեն ի տար նաեւ իրենց ձեռքն ունեցած հայերէն մատեաններուն մէջ։ "Որովհետեւ յառաջագոյն սուրբ հարք եւ ուղղափառ վարդապետք սոսկալի նզովներով մերժած ու հերքած էին բոլոր հերետիկոսները[2], զՍաբէլ, զԱրիոս, զԵւնոմիոս, զՄանի, զՄարկիոն[3] եւ անոնց նմանները, զՊօղոս Սամոսատացի, զԴէոդորոս (կարդա՝ Թէոդորոս), զԴիոդորէ (կարդա՝ Դիոդորոս) եւ անյիշելի Նեստորը, զԹէոդորիտոս, զԵւտիքոս, զՍեւերոս, զԱնդրէաս եւ անոնց համախոհները, զԵւգոյիոս

---

1 "Բացայայտ նշանակուած է ասիկա վերոյիշեալ յառաջաբանին գլուխը, այսինքն թէ կաթողիկոս ընտրելու մտօք ժողվեցան, բայց չեղաւ այն անգամ"։ Կեղծիք Բ։

2 Հերձուածողաց յաջորդ ցանկը յօրինուած է Անաստաս Կայսեր թղթի համեմատ. հմմտ. Թուղթ, զոր առար Անաստաս թագաւորն ընդդէմ ամենայն հերձուածողաց". Գիրք Թղթ. 277–78, որ արդէն Բաբգէնի օրով թարգմանուած էր ասորերէնէ եւ յաճախ անգամ գործածուած Բաբգէնի եւ Ներսիսի թղթերու մէջ։ Այս մասին կը խօսինք այլուր առանձինն։

3 "Ժամանակի կարգ շատ պէտք չէ փնտռել թէ՛ հոս եւ թէ մանաւանդ հետեւեալ անուններուն մէջ, վասն զի իրենց պատմական հմտութիւնն ասկէ անդին չէր անցներ"։

Նիկոմեդացւոց եպիսկոպոսը եւ անոր համախոհները, Քաղկեդոնի անօրէն ժողովն ու Լեւոնի պիղծ տումարը, որ վերոյիշեալներէն շատերուն հերետիկոսութիւնը նորոգեց, եւ վասն զի հիմայ ալ Հայաստանէն շատերը նոյն Քաղկեդոնի ժողովին եւ Լեւոնի տումարը դաւանողաց եւ ընդունողաց հետ հաղորդութեամբ միաւորեցան, ոմանք ազատ կամօք՝ փառասիրութեան եւ ակնածութեան համար, ոմանք ակամայ բռնադատուած անոնցմէ, ոմանք ալ վերջապէս օգտէն եւ անկարող ըլլալով, այս պատճառաւ ժողվեցանք... կանոններ սահմանելու անոնց համար՝ որոնք խոստովանութեան կու գան իրենց կամաւ կամ ակամայ գործած յանցանքին ու մեղքին վրայ զղջալով՝ զոր գործեցին„ ։ — Հինգ են աս ժողովէն սահմանուած կանոններն, բոլորն ալ մինակ եպիսկոպոսաց եւ քահանայից համար։ Անկիւրիոյ Սինհոդոսին՝ հալածանաց ատեն կամայ կամ ակամայ կուռք պաշտող քրիստոնէից համար տուած կանոններուն վրայ ձեւուած կամ բառ մասին անոր լեզուն առած։ Առջի կանոնը չէ թէ “փառասիրութեան կամ գօշաքաղութեան„ համար, հապա ի բռնութենէ կամ անկարողութենէ կամ տգիտութենէ եղած հաղորդակցութեան համար՝ ներողական ապաշխարութենէն զատ՝ որ ապաշխարողապետին խոհեմութեանը կը յանձնուի, կը պահանջուի՝ որ եկեղեցւոյ մէջ ամենուն առջեւ նզովիւք հրաժարի հերետիկոսութենէն՝ ստորագրութիւն տալով եւ երդում ընելով։ Ուրիշ յիշատակարաններէն՝ կ'իմա-

1 Այսպիսի յիշատակարան մ'է “Սրբասէր եպիսկոպոսաց Մանասէի, Յովհաննէսի եւ Տեառն Գիգայ Դաշտակարանի եւ Տեառն Սարգսի եւ Տեառն Վարդապետի (Վրթանիսի) ի Սահակայ կորուսեալ ծառայէ խոնարհ երկրպագութիւն„ խորագրեալ թուղթը, Գիրք Թղթ. 108–109, որով Սահակ Համազասպեան որդին “յԱրածի գեղէն„ յետս կոչում կ'ընէ՝ նզովելով Նեստորը եւ իւր հերետիկոսութիւնը համաձայն ժողովոյս Ա. եւ Բ. կանոններու։ Դժուարին է սակայն

նանք՝ որ այս երդումը ինք իր անձին վրայ տրուած սարսափելի չարամաղթութիւններ են[2]: Այս ըլլալէն եւ ապաշխարութիւնը լմննալէն ետքն ալ՝ չի կրնար իր աթոռը քիչերուն հաւանութեամբը նստիլ, հապա պէտք է՝ որ բոլոր եպիսկոպոսունք քննեն եւ հաւանին: Երկրորդը անոնց համար՝ որոնք համոզուած ըլլալով որ ըրածնին գէշ է, կամակար նոյն հաղորդութիւնն ըրած են հերետիկոսաց հետ եւ ուրիշներն ալ ստիպած են նոյնն ընելու. կը պահանջուի ծանր քննութիւն, շատ փորձ, մեծ ապաշխարանք ապաշխարողապետին կողմանէ, երդում ուղղափառութիւն պահելու, նզովք հերետիկոսութեան ստորագրութեամբ: Եթէ բոլոր եպիսկոպոսներով մէկտեղ Կաթողիկոսն իրեն նորէն աթոռը շնորհէ, բոլոր կեանքը պղջմամբ պէտք է ըլլալ: Քահանայից ալ սոյն համեմատ: Երրորդը անոնց համար՝ որոնք մէյ մը ինքնայօժար ի խոստովանութիւն կու գան եւ իրենց ստորագրութեամբը նոյն հերետիկոսութիւնը նզովելէն ետքը նորէն իրենց փոխածը կը դառնան, բայց ետքէն երկրորդ անգամ կու գան, կը սահմանուի աւելի խստագոյն ապաշխարութիւն, քննութիւն եւ սաստիկ յանդիմանութիւն ու սաստ, անանկ որ ուրիշներուն ալ վախ բերէ: Եթէ երկայն ատեն ուղղութիւն եւ առաքինութիւն ցուցընեն, միայն այն ատեն նորէն իր աթոռը ելլէ, այն ալ եթէ բոլոր եպիսկոպոսունք ուզեն: Չորրորդը կը սահմանէ որ եթէ մեր (Միա-

---

ստուգիւ ըսել, թէ ինչ կ'իմացուի "Նեստոր" անուան տակ: Քաղկեդոնի ժողո՞վն, թէ խուժիկ Նեստորականք: Առաջինն ճշդագոյն կը թուի, վասն զի Արած գիւղն Յունական Հայաստանի մէջ գտնուելով՝ (մերձ ի Դուին), դժուարաւ գործ կարելի էր ունենալ խուժկաց հետ, որոնք վաղ իսկ մերժուած էին Հայաստանէն: Արոծ գիւղի մասին՝ Այրարատ. 445:

[2] Օրինակի աղագաւ՝ "Նզովեալ ըլլամ Սուրբ Երրորդութենէ, կենօք ու մահուամբ" եւն: Հմմտ. Գիրք Թղթ. 108:

ընակայ) հաւատոյն հաղորդութենէն չեղող եւ աս մեր միաբանածէն օտար (քաղկեդոնիկ) եպիսկոպոսներ կամ քահանաներ առթիւ մը կամ պէտք մ'ունենալով մեզի գան, չըլլայ՝ որ մէկը անոր հետ հաղորդուի կամ քահանայական պատուով պատուէ, հապա միշտ անանկ ընդունի զանոնք, ինչպէս աշխարհական մը կ'ընդունի. ընակութիւն տալով եւ ուրիշ ասոր պէս բաներով։ Հինգերորդը կը սահմանէ որ քահանայիցմէ դարձողները՝ իրենց ստորագրութիւնն ան եպիսկոպոսին տան՝ որուն թեմին մէջ որ կ'ուզեն մնալ. եւ չըլլայ թէ վանքերու գլխաւոր երէցը կամ քահանայք առանց եպիսկոպոսին հաւանութեանը ասանկներէն մէկն իրենց ընտանութեանը կամ հաղորդութեանն ընդունին։

“Այս լուսագոյն դատի մը արժանի կանոնները պահողներուն օրհնութիւն տալէն ետքը՝ վերջապէս այս “աստուածահաճոյ ու փրկաւէտ պատուիրաններէն„ ապստամբողներուն՝ ըլլան իշխան, քահանայ, եպիսկոպոս կամ ժողովրդական, ամենուն վրայ՝ սա անէծքի կերպարանք ունեցող նզովքը կը կարդան այս ժողովին անդամները՝ “Նզովեսցին հոգւով եւ մարմնով եւ ամենայն կենցաղով իւրեանց եւ ընկալցին անողորմ պատուհաս յարդար դատաստանացն Աստուծոյ, աստ եւ ի հանդերձելումն[1]։„

“Ան չենք գիտեր թէ արդեօք Կաթողիկոսի ընտրութեան վրայ խօսուելէն առաջ թէ վերջն սոյն կանոնք գրուած են։

“Այսպէս կ'եռար գրեթէ բոլոր Հայաստան իբրեւ կաթսայ յեռանդան։ Կրնայ երեւակայուիլ ան աղմուկն երբոր երեքհարիւր քահանայք վանքերէն ու գեղերէն դղրդմամբ կը ժողվէին, որոնց շատերն անշուշտ Քաղկեդոնի եւ Լեւոնի անունէն

---

1 Գէրժ Թղթ. 148։

ուրիշ բան լուած չէին, բայց հիմայ մարդուս մա-
գերը վեր տնկող երդումներով սաստկացած, ծուռ
նախապաշարումներով նպարակուած տեղերնին կը
գաւառային քաղաքներն, աւանները, գեղերն ու
ագարակները նոյն ոգին սփռելու։ Աս ամէնը
Է. դարու առջի տարիները կ'ըլլար, երբ քաղա-
քական հովն արդէն դարձած էր առ ժամս,
Ապրուէզ Խոսրովայ (Բ.) թագաւորութեան ատեն՝
Պարսից զօրութիւնն Հայաստանի մէջ աւելնալով
այս վերջին անգամ։ Սակայն այնպէս ալ ստուգիւ
իրերը մինչեւ հոս չէին հասներ, եթէ այս տես-
լեան մէջ մէկը պակսէր կամ չըլլար այնպէս ինչ-
պէս էր։ Ուրիշ մէկը չէր ասիկա, բայց եթէ
Սմբատ Վրկանայ մարզպանն։ Ասիկա բնականապէս
իրեն քաղաքական դիրքէն չէր կրնար Յունաց շատ
բարեկամ ըլլալ, բայց ինք նաեւ կրօնական վէճին
մէջ ալ շահուեցաւ ի նպաստ Դուինի տիրող հաւատ-
քին, եւ անկէ ետքը՝ ուր որ այս կուսակցութեան
միութիւն կը պակսէր, հոն իր զօրաւոր բազուկը
կ'երկնցընէր։ Ասիկա տեսնելով որ եպիսկո-
պոսունք չէ թէ մինակ երկու իրաւասութեան,
այսինքն Կարնոյ եւ Դունոյ բաժնուած են,
հապա Դունոյ մէջ ալ չկրցան միաբանիլ,
ստիպմամբ եւ բուռն հրամանաւ նորէն կը
ժողվէ այս վերջինները ի Դուին[1], ինք ձեռնարկ
տալով նախընթաց Դունոյ ժողովոյն մտաց համե-
մատ, բոլոր եպիսկոպոսներէն ալ նոյնը կ'առնու՝
մերժել տալով զորբազան Ժողովն եւ սրբազան
Քահանայապետին տումարը, եւ անկէ ետքը եր-
կայն ատեն դատարկ մնացած աթոռին գահակալ

---

[1] Ժողովոյն ձեռնարկն տես Գիրք Թղթ. 149—50.
"Ձեռնարկ, զոր խնդրեաց Սմբատ Վրկան մարզպան ցայն
եպիսկոպոսունս, որք դարձեալ ժողովեցան նորին հրամա-
նաւ ի Դուին, կարգել կաթուղիկոս Հայոց յետ մահուանն
Մովսիսի. եւ զայս ձեռնարկ ետ նոցա"։

մը գտնելու համար նախ ինք իր քուէն վերոյիշեալ ժողովոյն մէջ գլխաւորաբար ձայն ունեցող եպիսկոպոսներէն Ռշտունեաց եպիսկոպոսին տալով՝ վերջապէս կը յաջողցընէ ընտրութիւնն եւ ասանկով կը նստի Աբրահամ՝ Ապրուեզ Խոսրովայ 17երորդ տարին (607)։ Սմբատ եւ Աբրահամ իրենց ոչ գովելի գործունէութեամբը եւ իրենց դիմացիններուն տկարութեամբը՝ Յունական կողման մէջ գտնուած եպիսկոպոսներէն ալ շահեցան, որոնք իրենց ձեռնարկներն Աբրահամու յանձնեցին[1]։ Ասոնց մէջ կան նաեւ նշանաւոր տեղերու եպիսկոպոսներ, վանահարք եւ քահանայք[2]։ Ասանկով դարձեալ կաթողիկոսութեան աթոռը մէկ մնալով՝ սկսուեցաւ կատարուած "միաւորութիւն աշխարհիս Հայոց," ինչպէս կ'անուանէ այս եւ նոյն ձեռնարկին գլուխը դրուած փոքր տեղեկութիւնը։ Բայց յայտնի է՝ որ գոնէ մէկ մեծ մաս մ'ալ ուղղափառ վարդապետութեան հաւատարիմ մնացած էր, որովհետեւ կեցած էր դեռ Կարին կամ Կարնոյ մօտերը իրենց օրինաւոր Կաթողիկոսը Յովհան։"

---

1 Հմմտ. Ձեռնարկ, զոր ետուն Աբրահամու Հայոց կաթուղիկոսի ի միաբանութեանն աշխարհիս Հայոց. այնոքիկ որ էին ընդ իշխանութեամբ Հոռոմոց ի թագաւորութեանն Մաւրկանի" Գիրք Թղթ. 151–52։ Վերջին խօսքերն պէտք է հասկնալ. "որոնք Մօրկայ օրով Հոռոմոց իշխանութեան տակ եղող Հայաստանին կը գտնուէին, որ այժմ Պարսից եղած է։

2 Թէոդորոս Սեպհական գնդին եպիսկոպոս, զոր արդէն Դունայ նախընթաց ժողովոյն մէջ տեսած էինք, Ստեփանոս Բագրեւանդայ եպիսկոպոս, Մովսէս Խորխոռունեաց եպիսկոպոս, Քրիստափոր Ապահունեաց եպիսկոպոս, Ներսէս Վանանդայ եպիսկոպոս, Աբրահամ սրբոյ Կաթողիկէի վանից երէց, Սամուէլ սրբոյ Հռիփսիմէի, Բարիւղաս սրբոյ Յովհաննու վանաց երէց, Խոսրով Աշականու, Յաւիտեան Աղիվարդայ, Դաւիթ Երեւանայ, Իսմայէլ Գառնոյ եւ այլք։ Անդ 151։

Այսպէսով մէկ վայրկենի մէջ չքացան այն ամէն հեռապատկերներն, որոնցմով գրաւուած Յունահայք երկար ատեն քրտինք թափեցին ի զուր։ Պարսկահայք տարին յաղթութիւնը, իրենց ձգելով հակառակէն յունահայ եպիսկոպոսներու թիւ մը, որոնք այլ եւս առանց որ եւ իցէ երկիւղի եւ կասկածանաց կրնային շարժիլ ըստ համոզման եւ զգածման[1]. վասն զի այլ եւս այն գաւառներն, որոնք 591ի դաշամբ անցած էին Յունաց, կրկին Պարսից եղած էին. այսու Յովհաննու ընդդարձակ թեմն այլ եւս անձկացած էր։ Աբրահամ չդանդաղեցաւ օգտուելով ինքն ալ ժամանակի նպաստաւոր հանգամանքներէն, ջնջել անհետացնել նոր ստացուած գաւառներէն յունական ազդեցութիւնն եւ առ այս, ինչպէս յոյն Անանունն կը վկայէ, Յովհաննու բաժնի վրայ ալ գործածեց իւր իշխանութիւնն ամենայն խստութեամբ, ստիպելով եպիսկոպոսներն նզով կարդալ Քաղկեդոնի Սիւնհոդոսին վրայ — ըստ սահմանին Դունայ ժողովոյն. չհաւանողներն հալածական վարեց ի Տայս կամ Յունական երկիրներն, ուր օտարութեան մէջ ալ վախճանեցան։

---

[1] Իրենց 607ին Աբրահամու տուած Ձեռնարկին մէջ կ'ըսուի. "Եկեղեցւոյ յանդիման մեր ուղղափառութեան խոստովանեցին՝ նզովելով նոյնաձեւ ըստ երանելի հարցն մերոց (այս է՝ ըստ 606ի Դունայ ժողովոյն կանոնաց) զամենայն հերձուածողս... եւ զժողովն Քաղկեդոնի, եւ զտոմարն Լեւոնի, եւ ողջունս մատուցանելով առաջի մեր՝ խոստանալ զինքեանս ի միաբանութեան Եկեղեցւոյ ճշմարիտ հաւատոյն Քրիստոսի. Եւ առաջին միաբանութեամբ ամենեքեան, թէ զխոստովանութեան եւ զսահման զոր հաստատեցին երանելի հարքն մեր անշարժ պահեսցուք առաջի Աստուծոյ եւ հոգեւոր հարանցդ մերոց, եւ զապաշխարութիւն զոր առայք, յաւժարութեամբ ընդունիմք եւ կամաւք կատարեմք, եւ ի հաղորդութենէ նզովելոցդ ամենեւին հեռանամք։ Եւ թէ խաբէութիւն ինչ լիցի ի կամս ուրուք, նզովեսցի հոգւով եւ մարմնով յամենասուրբ Երրորդութենէ,,։ Ընդ, 152։

Թէ Յովհաննէս ինչ ընթացքի հետեւեցաւ այս յուզմանց ժամանակ, յայտնի չէ։ Բիւզանդականք, որոնց յեցած էր կաթողիկոսն, իրենց օրհասին մէջ չէին կրնար այս մասին երկար խորհել։ Իսկ Յովհաննէս ստիպուած էր ըստ հաճոյս թողուլ եպիսկոպոսներն՝ ազատօրէն որոշելու ինք զինքնին։ Առանց տարակուսի եպիսկոպոսներէն ամէնն ալ համամիտ չէին իրեն, ինչպէս 607ին տրուած ձեռնարկէն կը տեսնուի, ուր մինչեւ անգամ կաթողիկոսանիստ Աւանէն կար "Յունանէս" երէց մը (էջ 150)։

Դունայ 607ի ժողովով "միութիւնն" հաստատուելով՝ նաեւ ծագած գժտութիւնք եւ վէճք դադրեցան. զայս յայտնի կ'ըսէ Անանուն. "Երբ Խոսրով արքայն ետ առաւ Հայաստանի գաւառները (զորոնք Մօրկայ տուած էր), նոյն տարին ընտրուեցաւ նաեւ կաթողիկոս՝ Աբրահամ եւ նոյն տարին ժողվելով եպիսկոպոսներն ու երէցներն եւ վանականները նզովեց Քաղկեդոնի ժողովն եւ (համամիտներն) վտարեց իւր սահմաններէն։ Անոնք նզովեցին եւ դադարեցաւ վիճաբանութիւնը։"

Շատ երկար չապրեցաւ այսուհետեւ Յովհաննէս։ Խոսրովու բանակն օր աւուր կը յառաջանար յունական երկիրներն։ Դարայի նուաճումէն յետոյ յաղթ բանակաւ մը մտաւ Հայաստան Աշտատ-Յեզտայար Բասէնի կողմանէ (608), ուր Դու եւ Որդու սահմանագլուխ աւաններու քով խորտակելով Յունաց զօրքն չուեց գնաց եւ բանակեցաւ Կարնոյ քով. քաղաքացիք վայրապար տեղ դիմադրելէ ետքը՝ անձնատուր եղան։ Աշտատ-Յեզտայար հոն պահապան կարգելով յառաջացաւ Հաշտեանք եւ հնազանդեցուց Չիթառիճ, Սատաղ, Առաստիա եւ Նիկոպոլիս Փոքր Հայոց քաղաքներն, եւ դարձաւ։ Քիչ յետոյ եկաւ իւր տեղ Շահէն Պատգոսապան, որ յաջողութեամբ զարնելով յունական զօրքն Կարնոյ

գաւառին մէջ՝ Խոսրովու ԻԱ տարին (610/611) անոր հրամանաւ գաւառին բնակիչներն խախտեց տարաւ Ահմատան շահաստան. “ընդ նոսին ըմբռնեալ եւ երանելի ծերունի կաթուղիկոսն Յովհան,” որ Աւանի նուաճուելոյն՝ բերուած էր պարսիկ զօրքէն ի Կարին[1], “վարեցաւ ի գերութիւն հանդերձ ամենայն սպասիւք եկեղեցւոյն։”

Ահմատան օտարութեան մէջ նոյն տարին կը վախճանի ծերունի կաթողիկոսն, որուն մարմինն սակայն կը բերեն իր կաթողիկոսանիստ գիւղն Աւան՝ եւ հոն իր շինած եկեղեցւոյն մէջ կը թաղեն[2]։

Պատմագիրք[3] կու տան իրեն միաբան[4] 26 տարի կաթողիկոսութիւն, որ չի համաձայնիր ժամանակագրութեան հետ, որ հաշուով վախճանն կ'իյնայ (591/2—26 =) 617/18ին։ Պէտք է չփոթութիւն մ'ենթադրել հոս եւ ի բաց ձգել վեց տարիներն. որով ստացուած 20ը ուղիղ կա-

---

1 Բացայայտ կ'ըսէ զայս Անանուն. “Երեք տարի վերջը (607+3=610) կռիւ եղաւ ի Բասեն (?) (τοῖς Φρασιανοῖς) եւ Պարսիկք յաղթեցին Հռովմայեցւոց, Փոկաս կայսեր Է. (602+7 = 609/10)) եւ Խոսրովու Ի (609/10) տարին. Նուաճեցին Ջիթառիճը (Κιτρίς) եւ Թէոդոսուպոլիսը, եւ ուրիշ շատ աւաններ, որոնց մէջ էր նաեւ այն գիւղը, ուր կը բնակէր Յովհաննէս կաթողիկոս, որ էր Հռոմոց իշխանութեան տակ եղող Հայաստանին մէջ։ — Իսկ Յովհ. Պատմ. 43. կը գրէ. “Ն. վասն զի ծերունի կաթողիկոսն Յոհան կայր ի փախստականութեան ի նմա (ի Կարին) ընդ նոսին եւ նա ըմբռնեալ...”։

2 Սեբ. 54, 76—77։

3 Յովհ. 43. Կիր. 26. Սամ. 77, 275։

4 Միայն Ասողիկն (86) է, որ ԺԶ կամ ըստ Ձեռագրին Զ տարի գահակալած կը համարի։ ԺԶ սխալ է բոլորովին. Թերեւս իմաստ մ'ունենայ պարզապէս Զ. Մովսէսի մահուընէ (604) ետքը իբրեւ օրինաւոր կաթողիկոս նկատուած։

*րելի կ'ըլլայ զետեղել 591/2—610/11 տարիներու մէջ[1]։*

*Յանկարծատեսիլ երեւոյթ մ'եղաւ Յովհաննէս պատմական հորիզոնին վրայ, որ իւր բովանդակ գործունէութեամբն կը պատկերէ միանգամայն բիւզանդական ազդեցութեան մարմնացումն։ Բիւզանդականք ջանացած էին եւ ջանացին դեռ երկար ատեն Կ. Պոլսոյ "տիեզերական պատրիարքին" իրաւասութեան ներքեւ նուաճել Հայաստանն, բայց ի զուր։ Պարսիկ պետութիւնն իրագէտ էր իրեն ոխերիմ թշնամւոյն քաղաքագիտութեան եւ ուրիշ քայլերով գիտցաւ ուղղել Հայոց եկեղեցին։ Եւ արդեամբք ալ, առանց նպատակի չէր Յովհաննու գերութիւնն յԱհմատան "եկեղեցւոյն բոլոր սպասներով"։*

*Թէ Բիւզանդականք խորհեցա՞ն իւր աթոռոյն վրայ[2] յաջորդ մ'ընտրելու, այս մասին բան մը չենք գիտեր, բայց դիւրին է ժխտել։ Իրենց ճգնաժամին մէջ այլ եւս ի վիճակի չէին այսպիսի թռիչներ փորձելու։*

[1] *Պէտք է ըսել թէ Սեբէոսի խօսքէն, ուսկից սորված ենք նաեւ յետինք, կարելի չէ հետեւցնել, թէ անպատճառ նոյն թուին* (610/11) *վախճանած է Յովհաննէս. պատմագրին բացատրութիւնն է. "Եւ անդէն վախճանեցաւ"։ Բայց միշտ բանագրօսիկ կ'ըլլայ երկարագոյն ձգձգումը, եւ այսու Աբրահամու մահուան տարին ալ դժուարութեանց կը բաղխի։*

[2] *Յովհաննէս պատմութեան մէջ հարկ է նկատուիլ հակառակաթոռ, քանի որ օրինաւոր կաթողիկոսին՝ Մովսէսի կենդանութեան ժամանակ կը բարձրանայ աթոռն, եւ այն ոչ միաձայն հաւանութեամբ ազգին։ Ուղիղ են ըստ այսմ Յովհ. Պատմաբանի "Հակառակաթոռ" անուանելը (էջ 42). եւ Ուխտանէսի (Բ. 63) խօսքերը. "Նստուցին կողմն (sic) Հռոմայ հակաթոռ Մովսէսի զՕհան ոմն երկայնակ, որ ոչ համարեցաւ ի թիւ հայրապետացն Հայոց"։ Վերջին տողերս սակայն ամենայն մասամբ ուղիղ չէ. վասն զի յետնոց քով Յովհան եւս կը գտնուի կաթողիկոսաց թուին մէջ։*

## ԳԼՈՒԽ Ե.

### Աբրահամ կաթողիկոս Աղբաթանցի։

Դուինոյ կաթողիկոսն եւս շատ չերկարեց Աթոռոյն վրայ. Սեբէոսի (78) վկայութեան համաձայն "ի նմին ամի", յորում կնքեց կեանքը Բագրեւանդացին, վախճանեցաւ նաեւ "երանելին Աբրահամ կաթողիկոսն" ծերութեան ալեաց մէջ։

Աբրահամ հայրենեօք Ռշտունեաց գաւառի Աղբաթանից գիւղէն էր[1]։ Սեբէոսի մէկ տեղը[2] կարծել կու տայ, թէ նախ քան եկեղեցական վիճակն ընդգրկելը՝ մնած ըլլայ աշխարհիկ եւ եղած հայր որդւոց։ Զինքը սակայն պատմութեան մէջ կը գտնենք առաջին անգամ Ռշտունեաց եպիսկոպոսական գահուն վրայ[3], այսպէս Դուինոյ 606ի ժողովոյն կանոններուն ստորագրող եպիսկոպոսներէ մին ալ ինքն էր։ Յաջորդ տարին եւս (607 Մարտ-Ապրիլ) կը գտնենք զինքը ի Դուին, ուր Պարսկահայ 10 եպիսկոպոսաց հետ ժողված "ի սուրբ եկեղեցւոջ", ստորագրած է իբրեւ "աթոռակից" Բասենոյ Մանասէ եպիսկոպոսի՝ Սմբատ Վրկանայ մարզպանի տուած Ձեռնարկին (Գիրք Թղթ. 149)։

Նոյն 607ին՝ Պարսից Խոսրով Բ.ի ԺԷ տարին, ապահովապէս նոյն Մարերի ամսոյն (Մարտ-Ապրիլ)՝ Զատկէն յառաջ[4] "զկնի երեք ամաց մահուանն Մովսիսի" (Ուխտ. Բ. 23) Սմբատայ հրա-

---

[1] Յովհ. կաթ. 41. եւ այլք։

[2] Գրեթէ 17 տարի ետքը Կոմիտասի յաջորդ կ'ընտրեն "զոմն անապատական յԱբրահամեան տանէ՝ որում անուն Քրիստափոր". Սեբ. 98։

[3] Գիրք Թղթ. 146։ Նկատելով զԱբրահամ այս թուականին ալեւորեալ, կարելի է ըսել թերեւս, թէ Ռշտունեաց աթոռոյն վրայ բարձրացած ըլլայ Քրիստափորէն ետքը, որ կը յիշատակուի Յովհ. Բ. Գաբեղինեցւոյ († 574) առ Աղուանս գրած թղթին մէջ (Անդ. 81)։

[4] Ուխտ. Բ. 61։ — Գիրք Թղթ. 163։

մանաւ եւ հակողութեամբ կը գումարուի ի Դուին նոր Նիստ մ'ալ կաթողիկոսական ընտրութեան համար եւ կ'ընտրուի կաթողիկոս Ուշտանեաց եպիսկոպոսը՝ թէեւ ըստ ինքնագիր վկայութեան՝ "ակամայ ածեալ յաշտիճանս քահանայապետական"[1]: Ձեռնադրութիւնն կը կատարուի "զկնի սրբոյ Զատկին յաւուր Կիւրակէի՝ յելս ամսոյն Մարերի"[2]:

Կաթողիկոսական գահին նորոգութիւնը ընդհանուր խնդութիւն պատճառեց. ահա թէ ինչ կը գրէ ժամանակակիցներէն մին. "Լուայ, Հայր պատուական, պայծառութեամբ զնորոգութիւն սրբոյ աթոռոյդ Տեառն Գրիգորի, եւ բազում խնդութեամբ լցաւ անձն իմ տառապեալ, զի ի վաղուց հետէ փափաքեալ սպասէի լսել զայդ... Քանզի ահա արդէն իսկ օրհնեաց Աստուած յաւին քում զաշխարհս Հայոց, եւ ամենայն բարեաց հիմնադրութեան սկիզբն եւ առաջնորդ... սրբոյ եկեղեցւոյդ շինութեան եւ նորոգութեան աշխարհիս յերկոցունց կողմանց հոգեւոր եւ մարմնաւոր պատառմանն՝ անդրէն միաւորութիւն: Եւ որպէս հիմնս բարեօք եդաւ ի ձեռն ձերոյ սրբութեան յուսամք... զկատարումն եւս լաւագոյն լինել"[3]:

Աբրահամ հետեւեցաւ իւր նախորդ կաթողիկոսաց շաւղին, նոյնպէս կրօնական-վիճական ասպարէզին մէջ: Խնդիրք կը յուզուէին դեռ, մանաւանդ թէ մասամբ աւելի բորբոքեցան իր օրով: Բացի Յունահայերէ եւ Աղուաններէ, այժմ նաեւ

---

1 Գիրք Թղթ. 189–190. Համմ. եւ 163:

2 Ուխտ. Բ. 61: Օրինակին փոխ. Մարերէ ունի վրիպակաւ Նաւասարդ: 607ին Զատիկն կը պատահէր Ապր. 23ին, որ կը համապատասխանէր Հայոց Մարերի ամսոյն 30ին: Իմա ըստ այսմ յելս Մարերէ ամսոյն: Մարերի ամիսն կը կշռէր Յունաց 25 Մարտ—23 Ապր. ամիսներու:

3 Թուղթ Մովսէսի Ցուրտաւայ Եպ. առ Աբրահամ. Գիրք Թղթ. 161:

Վիրք դրօշ պարզած էին Կիւրիոնի առաջնորդութեամբ։

Որչափ կը տեսնուի ժամանակիս թղթակցութիւններէ, որովհետեւ մեծ կրթութեան տէր անձ մը չէր Աբրահամ, Կաթողիկոսին գլխաւոր օգնականն եւ խորհրդատուն եղաւ այս խնդրոց մէջ ժամանակիս անուանի քերդողներէն մին Վրթանէս, որ բուռն ախոյեան մը հանդիսացաւ մի եւ նոյն ժամանակ Քաղկեդոնականաց հանդէպ։ Ինքն էր մանաւանդ ժամանակին ոգին եւ կեանքը, որով անհրաժեշտ անձնաւորութիւն մ'ալ դարձաւ։

Իր անձն եւ գրական արժանիքն բաղձալի էր հօս առնուլ ի նկատի, եթէ երկիւղ չունենայինք ընտրուած ծրագիրն խանգարելու։

Կաթողիկոսն իր առջեւ ունէր ուղեցոյց խորհրդատու նաեւ Դունայ ժողովոյն կանոնները, որուն հետեւելու երդմամբ ալ պարտաւորած էր ինք զինք։ Արդեամբք ալ կը տեսնենք թէ իւր բոլոր գործունէութիւնն քիչ շատ այս կանոններու համեմատ եղած է եւ ի նոյն ստիպած Յունահայերը, Վրացիներն ու Աղուանները։ Բայց յընթացս գիտցաւ յախուռն գրուած կանոններն փոքր ինչ մեղմել՝ աւելի հանդուրժողութեամբ, ինչպէս վարը պիտի տեսնենք։

Առ ժամն թողով Յուրտաւայ Մովսէս եպիսկոպոսի եւ Կիւրիոնի հետ ունեցած թղթակցութիւնքն, ուշադրութիւնն դարձնենք Աղուանից հետ ունեցած խնդրոց։

Աղուանք, որոնք արդէն Յովհ. Բ. Գաբեղինեցւոյ օրով խզած էին Դունայ Աթոռոյն հետ իրենց յարաբերութիւնն, կ'երեւայ թէ Աբրահամու կաթողիկոսութեան օծման առթիւ հրաւիրուեցան ի հանդէս եւ ի միութիւն, ինչպէս Վրաց համար կ'ըսուի յայտնապէս։ Բայց ի զուր։ Աղուանք կը հրաժարին հրաւերէն։ Այսպիսի իմաստով գոնէ գրուած կ'երեւայ պատասխանը Ամարասայ Մխի-

թար եպիսկոպոսի կողմանէ. որուն պատճէնն դժբախտաբար Մովսէս չէ առած Թղթոց Գրքին մէջ։ Մխիթարայ Թուղթը կը բերէ Սիւնեաց Գրիգոր Նախարարը, եւ որ տխուր ազդեցութիւն կը թողու Կաթողիկոսի եւ աթոռակցաց վրայ. Կը յանձնուի Վրթանէս Քերթողի պատասխան մը գրել առ այս ի դիմաց Աբրահամու եւ իւր աթոռակցաց։ Վրթանէս կը գրէ[1] կրկին ի միութիւն հրաւիրելով։ Հետեւութիւնն սակայն ոչինչ կ'ըլլայ, եւ Աբրահամ յաջորդ տարին (608/09) իւր շրջաբերականին մէջ[2] կը գրէր. "Քանզի եւ դեռ որպէս զքաղցկեղ ճարակի խմոր հերձուածոյն, մինչ զի եւ գրեթէ ի սահմանակիցս եւ միով վարդապետութեամբ լուսաւորեալս ժամանեաց, զՎրաց ասեմ եւ զԱղուանից, որք զժահահոտ սերման նախատացելոցն (Քաղկեդոնականաց) մեծարանօք ընկալեալ յինքեանս հաստատեցին... Նոյն հրաման (այս է՝ Դունայ 606ի ժողովոյն մէջ սահմանուած նզովքները) եւ վասն Աղուանից անշարժ կացցէ, զի պատկառեալ դարձցին ի թիւր ճանապարհէն„։

Կաթողիկոսութեան առաջին երկու տարիներուն մէջ գրուած կ'երեւայ[3] Գրիգոր Քերթողի թուղթը առ Աբրահամ[4]։ Գրիգոր Քերթող կ'երեւայ թէ նշանակալից դիրք չինած էր իւր դարուն մէջ եւ անուն հանած, որ Սամ. Անեցւոյ եւ Մ. Այրիվանեցւոյ համեմատ մինչեւ անգամ Կ. Պոլիս ժողովքի գացած է Վրթանէս Քերթողի հետ

---

1 "Պատասխանի ի Հայոց թղթոյն Աղուանից Վրթանիսի քերթողի„, ԱՐՐՏ, 1896, էջ 477–488, հմմտ. առ այս Կ. Վ.ի յառաջաբանն 443–447։ Վերջէն թերի է Թղթոց Գրքին մէջ, էջ 196–211, իսկ Կաղանկատուացի (219–222) քանի մ'էջ հազիւ յառաջ բերած է։

2 Գիրք Թղթ. 193–194։

3 Մովսէս կը զետեղէ 607/08 տարեաց մէջ գրուած թղթոց մէջ։

4 Գիրք Թղթ. 153–160։

(Հմմտ. վերը էջ 130)։ Թուղթը խորագիր կը կրէ «Սրբասիրի Տեառն Աբրահամու Հայոց կաթողիկոսի ի Գրիգորէ Նուաստէ քերդողէ», որով Գրիգոր կը դիտէ պարզել Աբրահամու առջեւ ժամանակակից ինչ ինչ կենդանի հարցեր։

Ինչպէս Սորմէնի եւ Վրթանիսի թղթակցութիւններէ եւ Դունայ 606ի ժողովոյն կանոններէ տեսնուեցաւ՝ Դունեցիք կազմած էին այն համոզումը թէ հերձուածողներէ, այս է՝ Քաղկեդոնիկներէ կամ Նեստորականներէ կանգնուած սեղանները, կամ այն սեղանները, որոնց վրայ անոնցմէ մին պատարագած է, անսուրբ են. հետեւաբար չէին կրնար իրենք այսպիսի սեղաններու վրայ պատարագել։ Այս համոզմամբ տոգորուած՝ կը քանդէին կը կործանէին եկեղեցիներու մէջ այսպիսի սեղանները։ Աբրահամ, որ Դունայ սահմանին եռանդուն ստորագրողներէն մին էր, այս կէտիս մէջ աւելի հանդուրժող ստիպուեցաւ ըլլալ, եւ՝ փոխանակ կործանել տալու՝ հրամայած է պարզապէս օրհնել եւ «լոկ ի հացէն եւ ի բաժակէն օրհնութեանց» (Քաղկեդոնականներու) հեռու կենալ։ Դարձեալ Դունայ ժողովոյն Ա. Բ. եւ Գ. կանոններու համաձայն եկեղեցական մը որ հերետիկոսութենէ կը դառնար ծանր պատիժներէ ետքը միայն կրնար իր աթոռն նստիլ. Աբրահամ այս ալ մեղմացուցած է, եւ կը գրէ Գրիգոր. «իսկ յաթոռոցն իշխանութեան արժանաւորելոյ ըստ կանոնին սահմանի՝ դուք առաւել ողորմութեան արժանի արարէք, եւ այժմ զայս եւս մինչ ընդարձակեցէք» (էջ 156, հմմտ. եւ 155)։ Գրիգոր այս հանդուրժողութեանց համամիտ չէ. եւ ի Ս. Գրոց երկար ապացոյցներ բերելով կը ջանայ Կաթողիկոսին քայլերն անտեղի ցուցնել։ Նա առ հասարակ Նեստորական խուժիկներն եւ Քաղկեդոնականները հաւասարապէս հերձուածող կը նկատէ, եւ իբր այսպիսեաց հանդէպ Աբրահամու բռնած ուղւոյն մէջ հակասութիւն կը

տեսնէ: Վասն զի Կաթողիկոսն Նեստորականաց նկատմամբ չէ գտնուած այնպէս մեղմ, ինչպէս Քաղկեդոնականաց հանդէպ: Այսպէս, Գրիգորի խօսքերու համաձայն, Կաթողիկոսն "յԱրեւելս ի Պարս, ի Տիզրոն եւ յայլ տեղիս" խստիւ արգելած է եղեր ազգայնոց՝ Նեստորականներու եկեղեցին երթալ, մինչեւ իսկ "եւ զգուշնաքեայ անդ երկրպագութիւն դատապարտութիւն ի հոգեւորին ուսուցանէք", եւ "վասն այսորիկ սեղանակտաւս օրհնեցէք եւ երիցունս արձակեցէք, կարեկցե[ա]լ նոցա, որք արքունի հրամանաւ անդր երթան" (էջ 156):

Այս ամէնուն դիմաց Գրիգորի "հայցումն" է, որ ոչ թէ հին "ուղղափառ" հայրերէն կանգնուած սեղանները կործանուին մոլեռանդաբար, այլ գոնէ Քաղկեդոնիկներէ նոր շինուածները. "փոխել զսեղանս նորա՝ ի նորոց հաստատեալս, որ ոչ ըստ հարանցն մերոց, որ ի Քրիստոս կացեալ այլ ըստ օտարատեսուչ հովուաց յաջորդութիւն առին.": Այսչափ միայն կը պահանջէ այս մասին, ընդունելով թէ ինչպէս որ քաղկեդոնիկները, որոնք նախապէս ուղղափառ էին, կրկին ուղղափառ դառնալով կը փոխուին իրենց սխալ մտքէն, նոյնպէս սեղանները կը զգենուն իրենց հին օրհնութիւնը[1], բայց ոչ այսպէս հերետիկոսութեան մէջ օրհնուած սեղանները, որոնք երբեք ճշմարիտ օծում չեն ընդունած:

Այս է թղթոյն էական բովանդակութիւնը: Գրիգոր զայս կողմնակցութեան մը կողմանէ գրած է, ինչպէս կը տեսնուի ոճէն, եւ մանաւանդ վերջաւորութենէն. "Իսկ սեղան ուրեմն փոխել իրա-

---

1 "Քանզի որպէս նոքա զեարեպաշտութիւնն խոստովանելով յառաջին ի մտացն փոխեցան, այսպէս գոյ հնար փոխարկել յառաջին սրբութեանն պատուականութիւն եւ զսեղանս": Վասն զի "Հաստատուն հիմն Աստուծոյ կայ եւ ունի զկնիքս զայս, զորոց ասեն թէ Ծանեաւ Տէր զիւրանս: Իսկ յանօրինացն եւ յանհաւանելեացն բացակայի." էջ 155:

ւունք են։ Այս ի մէնջ աղերս առ Ձեզ, եւ խնդիր ըստ Գրոց. ուղղել ի պատուիրանաց զսխալումն կամաց մերոց Ձեզ է բաւականութիւն. ապա թէ իշխանութեամբ ինչ կամիք եւ ոչ ըստ Գրոց, մեր վերջին բան վասն այդր սոյնդ է„ (էջ 160)։

Ընդհանրապէս շատ դատարկաբանութեամբ եւ բռնազբօսիկ ոճով տողուած գրութիւն մ'է, ուր գաղափար եւ բառ ամենեւին առնչութիւն չունին իրարու հետ. խրթնաբան եւ մութ նախադասութիւններով խճողեալ ոճ մը, որ յատուկ է գրեթէ մեր ամէն “քերդող„ յորջորջմամբ պարծող հեղինակներու։ Գրուածքն սակայն արժանի է ուշադրութեան իր բովանդակութեամբն, մանաւանդ այն տեղն, ուր կը գրէ Գրիգոր թէ դարձողներն մեծ համոզմամբ մը չէ որ կը դառնան, եւ շատ անգամ առ երեսս միայն կը կերպարանին (էջ 155—156)։

Թէ առ այս ինչ պատասխանած է Կաթողիկոսն կամ այսուհետեւ ինչ ընթացք բռնած, յայտնի չէ։

Կաթողիկոսի ընտրութիւնն ի գլուխ հանելէ յետոյ Սմբատայ առաջին գործերէն մին եղաւ նաեւ Կաթողիկոսարանի մը եւ Կաթողիկէի մը շինութիւնք. առ այս ամէն թոյլտուութիւն առած էր արդէն արքայից արքայէն (Սեբ. 64)։ Անմիջապէս նոյն տարին (607/608) իւր ներկայութեամբ կատարել տուաւ Ս. Գրիգոր եկեղեցւոյն հիմնարկէքը. “ժողովեաց ճարտարապետս քարի, կացոյց ի վերայ նորա հաւատարիմ գործակալս, եւ հրաման ետ փութանակի հասուցանել ի կատարումն„ կը գրէ Սեբէոս։ Եկեղեցւոյ տեղն ընտրուած էր 572ին այրուած Ս. Գրիգորի հողը, որ շինուած էր “մերձ ի քաղաքն„ (Սեբ. 26), եւ “կարի մերձ„ բերդապարսպին, որով նոր շինութիւնը բերդը “վնասակար ի թշնամեաց„ կ'ընէր։ Զայս նկատելով բերդապահն եւ մարզպանը արքայից

արքային ամբաստանագիր մը կը գրեն, պարզելով իրեն եւ խափանելու հրաման խնդրելով։ Բայց Խոսրով, որ արքայատուր առատաձեռնութեամբ իւր "սիրելւոյն„, Սմբատայ, ամէն ազատութիւն շնորհած էր, չի հաճիր նոր կարգադրութիւն ընել, պատուէր կը խաւրէ. "Զերդն քակեսցի եւ եկեղեցին անդրէն ի նմին տեղւոջն շինեսցի„։

Շինութեան բարձրագոյն հսկողութիւնն յանձնուած էր Կաթողիկոսին, վասն զի Սմբատ գարնան փութով ի դուռն կոչուած էր։ Մեծ էր, ինչպէս կ'երեւայ, Աբրահամու վշտակցութիւնը, այնպէս որ նա հակառակ ցանկութեանը, չի կրնար ելլել իւր հօտին այցելութեան, եւ կը գրէ—ողջին շրջաբերականին մէջ. "Կամէաք մերով բարբառով առնել ի բարեպաշտացդ լսելիս, բայց է հարկէ դիւրոյէց ըն-Նաստծոյ էկեղեցւոյս հասարակաց Հայաստանեայցս, որ ի Դուինի՝ արգելեալ եղեաք„[1]։

Որչափ ալ փութանակի ի գլուխ հանել պատուիրուած էր, այսու հանդերձ Աբրահամու օրով չելաւ ի յանդ. որ երեք տարիէն[2] կը վախճանի (610, 611)։ Իրեն կը յաջորդէ Կոմիտաս Տարօնոյ եպիսկոպոսը, եւ "առ սովաւ կատարի շինուած եկեղեցւոյն Ս. Գրիգորի„ (Սեբ. 78)։

Հետաքրքրական խնդիր է թէ Սմբատ ինչ ազգէ ճարտարապետներ աշխատցուց եկեղեցւոյս վրայ։ Թ. դարէ ի վեր (Թովմ. Արծր. 231) ցայսօր աւերակ եւ առանց քննութեան մնալով դժուարալուծանելի խնդիր մ'է այս Հայոց ճարտարապետութեան պատմութեան համար։ Սմբատ՝ Խոսրովու շահերուն այնպէս վրէժխնդիր եւ Յունաց այնպէս հակառակորդ անձ մը՝ չէր կրնար յոյն մը դնել

---

1 Գիրք Թղթ. 190–191։

2 Աբրահամու կ'ընծայեն Պատմագիրք ԻԳ տարի կաթողիկոսութեան, որ անհնարին է. թերեւս ԻԳ հարկ ըլլայ կարդալ "ի Գ (կամ Դ) ամի (եւ վախճանի յերրորդ ամի) կաթողիկոսութեան„, ինչպէս է ճշմարիտը։

գործոյն գլուխ մանաւանդ 607ին, երբ Պարսից եւ Յունաց մէջ ծագած էին սաստիկ պատերազմներ։ Հարկ է ենթադրել թէ կամ ի Դուին կային անուանի ճարտարապետներ, եւ կամ Տիզբոնէն բերած էր հետը։ Վերջինս պաշտպանելու պէտք չկայ, քանի որ այլուստ կը տեսնենք թէ չէին պակսեր ի Հայս ազգային ճարտարապետներ։ Անշուշտ սոյն եկեղեցւոյս ճարտարապետներն գործածեց Կոմիտաս 618ին կառուցած Ս. Հռիփսիմեանց եկեղեցւոյ համար ալ[1]։

## ԳԼՈՒԽ Զ.

### Սմբատ Բագրատունի Վրկանի Մարզպան։

Ի վերջոյ քանի մը խօսք ալ Սմբատ Վրկանի Մարզպանի վրայ, որ ոչ դոյզն դեր ունեցաւ այս շրջանի մէջ։

"Իսկ եղեւ ի ժամանակին յայնմիկ հաճոյանալ Սմբատայ Բագրատունւոյ յաչս Խոսրովու արքային. տայ ի նա զմարզպանութիւնն երկրին Վրկանայ[2]"։ Այսպէս յանկարծական շեշտով մը

---

1 Հայոց ճարտարապետութեան եւ հնագոյն եկեղեցեաց մասին հմմտ. Մ. Տէր-Մովսէսեան՝ Էջմիածին եւ Հայոց հնագոյն եկեղեցիներ։ ԱԶԳ. ՀԱՆԴ. (1907) էջ 418 եւ այլն։

2 Վրկան (Hyrcania, պարսկ. Gurgàn) Կասպիական ծովու հարաւ արեւելեան անկիւնը տարածուած հայ մատենագրաց (Փաւստ. 86, 93 եւ) ծանօթ երկիրն է։ Անունս ընդհանրապէս այս ձեւով յայտնի է հիներու (Փաւստ. անդ Սեբ. 61, 65 եւն, Եղիշ. 110)· զոր յաճախ կը հոլովեն ալ "ի Վրկանի, ի Վրկանէ (Փաւստ.) եւ" Վրկանայ, Վրկանի, ի Վրկանէ, երկրին Վրկանայ, ի Վրկան աշխարհի, (Սեբ. 59—61, 65 եւն) ձեւերով։ Բացառաբար Սմբատայ անուան կից անհոլով եւ երբեմն ալ պարսկական հնչմամբ կը գործածուի Սեբէոսի քով եւ Թղթոց Գրքին մէջ. այսպէս "Սմբատ Վրկան մարզպան" "Տեառն Սմբատայ Վրկան մար-

*կը սկսի Սեբէոս* (59) *պատմել անձնաւորութեանս գործունէութիւնը։ Որչափ մանրապատում են պատմագրին խօսքերը Սմբատայ քաջագործութեանց վրայ, այնչափ, դժբախտաբար, համառօտ են անոր նախորդ կենաց մասին։ Ի՞նչ արդիւնքներով հաճոյացաւ նա* Խոսրովու, Բագրատունի *մը նախարարի որդին էր։ Կը լռէ Սեբէոս այս նկատմամբ։ Ունինք սակայն ուրիշ աղբիւր, որ բաւականաչափ կրնայ բաւականութիւն տալ մեզ։*

Թուղթոց Գրքէն *կ'իմանանք թէ տակաւին* 607*ին ունէր կենդանի "եղբայրներ"* (150), *այդ թուականի մօտերն կենդանի էին նոյնպէս Հայրն ու Մայրը, որոնք զինքը սնուցած են "առաջի* խաչին Մծխիթայի", *եւ ի մանուկ տիոց գացած է յաճախ Մծխիթայի "պատուական եւ սուրբ* խաչին" *երկրպագութեան։* Քաջ *ծանօթ եւ բարեկամ եղած է Վրաց եւ յատկապէս Կիւրիոնի հետ. որմէ* Ս. Խաչէն *մասունք մ'ալ խնդրած է ծնողացը համար*[2]։

607*ին ունէր արդէն որդի Վարազտիրոց անուն* (Գիրք Թղթ. 171), *որ* Խոսրովու *շատ սիրելի էր, այնպէս որ Սեբէոսի* (63) *խօսքերով՝* Խոսրով *սնուցած էր "իբրեւ զմի յորդւոց իւրոց" եւ անուանած էր "Ջաւիտեան* Խոսրով[3]"։ Պատմութիւնն *զՎարազտիրոց իւր միմիակ որդին կը ներկայացընէ*[4]։

---

*գրկանի"* (Գ. Թղ. 149, 15 *եւ* 168), *ի Սմբատայ* Գուրգէնն *մարզպանէ* (*անդ.* 168, 170, 172)։ Անուանս *մասին հմմտ.* Hübsch. Arm. Gr. 86. Marquart, Eranšahr, 72.

2 "Յ*որմէ խնդրելով պարգեւեցար Հօր եւ* Մ*օր քում, եւ սորա առաջի սնար եւ սորա առաջնորդութեամբ ի բարի հասեր"։* Թուղթ Կիւրիոնի առ Սմբատ. 150։

3 Սեբ. 68, 97, 101։

4 Սեբ. 136 *կը գրուի "... զ*Մանուէլ *զայրն առաքինի, որ էր աներ Սմբատայ ասպետի որդւոյ* Մեծին Սմբատայ Խոսրովայ Շում *կոչեցելոյ"։* Ուսկից *կը հետեւի թէ*

Կ'երեւայ թէ Սմբատ իբրեւ քաջ ռազմագէտ մասնակցած է այլ եւ այլ պատերազմաց, եւ հռչակ հանած, որ մինչեւ Պարսից Դուռը հասնելով՝ Խոսրովու ուշադրութիւնն յինքն յանկուցած է։ Ինչպէս ալ ենթադրենք, յամենայն դէպս պիտի առաջնորդուինք հոն, թէ մեծ եղած է Խոսրովու վստահութիւնն իւր ռազմագիտութեան վրայ, որ յամի 599,600[1] ի Վրկան եղած ապստամբութիւնն ջնջուցանելու եւ այն կողման վայրագ ազգաց ասնձգութիւնքն կարճելու համար Արքայից արքայէն կը կարգուի Վրկանայ մարզպան եւ "իշխան ի վերայ ամենայն կողմանն այնորիկ„։

Սմբատ պատերազմաւ կը նուաճէ ապստամբած գաւառներն՝ Ամաղ, Ռոյեան, Ջրէճան եւ Տապարաստան, եւ ձեռք կը զարնէ իւր մարզպանութեան երկիրներն, որոնք թշնամեաց արշաւանքներէն քանդուած էին, շինել եւ բարեկարգել։ Մինչդեռ ինքը երկրին նորոգութեան զբաղած էր՝ Վստամ, Վահրամ Չոբինի եղբայրն, որ Քուշաններու ապաստանած էր, յինքն միաբանելով Քուշանաց Պարիովկ Թագաւորն եւ Սմբատայ զօրաց մէկ մասը, Խոսրովու վրայ խաղալ կը մտաբերէ, բայց դաւաճանութեամբ մը Վստամ իւր խորհրդեան զոհ կ'երթայ։ Իսկ զօրքը, իբր 2000 հոգի, Խեկեւանդ գիւղը կը բաղխի Սմբատայ հետ, բայց արիւնահեղ ճակատը Սմբատ կը

---

Սմբատ համանուն զաւակ մ'ալ ունեցած է։ Բայց ըստ մեզ վրիպակ մը կայ հոս. կ'առաջարկենք ընթեռնուլ. "..անէր Սմբատայ որդւոյ Աշոտի, որդւոյ Մեծին Սմբատայ...„։ Եւ Սեբէոսի Վարազտիրոց յաճախ Աշոտ ալ կը կոչուի. Համմ. 101. 102. 114 եւն։

1 J. Marquart, Eranšahr, 73. Սմբատայ մարզպանութեան ութ տարիներն (Սեբ. 63) կը զետեղէ 595–602, որ անընդունելի է. Պատմագիրն յայտնի կ'ըսէ թէ 8 տարի յետոյ եկաւ Հայաստան, որ է 607ին։

վատակի (602)։ Ցաղթականը մեծապայծառ կը մեծարուի Խոսրովէն, որ «առ Սմբատ առաքէր շնորհակալութիւն մեծ»։

Յաջորդ տարին ալ նման յաջողութեամբ կը նուաճէ Տապարաստանի նոր ապստամբութիւնն, զոր կը վարձատրէ Խոսրով խաւրելով դոհութեան հրովարտակ, ուր մի եւ նոյն ժամանակ Արեաց տէրութեան մարզպանաց գերագոյն՝ կ՚անուանուէր։ Կ՚երեւայ թէ դայս կը բացատրէ Սմբատայ «Տերանց գինուոր» տիտղոսը[2]։

Սմբատ այս պաշտօնով դեգերեցաւ Վրկանի կողմերն 8 տարի (Սեբ. 63), մինչեւ որ Արքայից արքան «բազում մեծարանօք» ի դուռն հրաւիրեց (606/7). ուր մեծաշուք պատուեցաւ ընդունելով նաեւ ազատ թոյլտուութիւն երթալու հայրենիք եւ լիուլի իշխանութեամբ աշխարհին ներքին՝ յատկապէս եկեղեցական իրերն կարգի դնելու, որուն վատթարութեան մասին լսած էր ինչ ինչ բաներ նաեւ Արքայից արքան։ Այս նկատմամբ կը գրէր առ Կիւրիոն. «Արքայից արքայ բարերարութեամբ արար եւ զմեզ յաշխարհարձակ, հաւատոյ եւ եկեղեցւոյ կարգի աւելագոյն պատուէր ի վերայ արար, զի ընդ միմեանս խաղաղութիւն եղիցի, քանզի էր ինչ որ լուաւ[3]»։ Խոսրովու գահակալութեան ԺԷ տարւոյն (607) սկիզբներն Հայաստան կոխած էր արդէն Սմբատ ի մեծ հրճուանս իրեն եւ քրիստոնէայ բնակչութեան։ Այս խնդակցութիւնն շատ սիրուն բացատրուած է Կիւրիոնի առ Սմբատ թղթին մէջ, ուր կը գրէր. «Գոհանամ զամենասուրբ Երրորդութենէն՝ որ զքեզ Տէր Սմբատ ի ժամանակի յայսմ փորձութեան պատրաստեաց ի բարեխօսութիւն բարերար տերանց (Խոսրովու.),

---

1 Սեբ. 63. «պատուով մեծացուցանէ ի վեր քան զամենայն Մարզպանս իւրոյ տէրութեան առնելով»։

2 Գիրք Թղթ. 150, 168, 170, 170։

3 Գիրք Թղթ. 168—9։

որ գոհ են զքէն՝ եւ ետ մեզ։ Քանզի ազատհնդ-ձեր եւ փառաւորութիւն մեծութեամբ հանդերձ ոչ միայն Հայոց աշխարհիդ խնդութիւն է, այլ եւ Արաց„. "Վասն այդր բարերարութեան հրամանի (այս [Ն. Ք.]՝ վասն խաղաղելոյ զաշխարհի ելեղ-խռովութիւնս) եւ զՑէր յայտ գործ պարապե-ցուցանելոյ, Աստուած զարքայից արքայ անմահ արասցէ եւ զքեզ, Տէր, աւելի տերանց վասպուրա-կանագոյն[1] արասցէ զաւակաւդ հանդերձ, քան որչափ եադ[2]„։

Առաջին ուշադրութիւնն կաթողիկոսի ըն-տրութեան մասին կ'ուղղէ Սմբատ. եւ նոյն տարին, ինչպէս տեսանք վերագոյն, ընտրել կու տայ զԱբրահամ։ Այս նկատմամբ կը գրէր առ Կիւրիոն. "Եւ մինչ բարեաւ յաշխարհս հասաք առաջնոր-դութեամբ սրբոյ Հոգւոյն հայրապետ կարգեցաւ, եւ ամենայնի՝ հակառակութեան եւ թերութեան ուղղութիւն եղեւ„ (169)։

---

[1] Վասպուրականագոյն (Գիրք Թղթ. 170)։ Բառիս այսպիսի ձեւի մէջ առաջին անգամ հոս կը պատահինք, ինչպէս նկատուած է (Hübsch. Arm. Gr. 80—81. Տեղւոյ անուանք, 18, 94. Յուշէան՝ Հանդէս Հայերէն դասական լեզուի, 641, Թիրեաքեան՝ Կարնամակ, 47) Վասպուրական (Սեբ. 45,) համառ է պահլ. Vâspuhrakānի, որ կը յարաբերէր "ազնուականաց ամէնէն բարձր դասակարգը՝ Սասանեանց պետութեան մէջ կամ ամէնէն ազնուատոհմ եօթն ընտանեաց անդամները„, եւ Սեբէոսէն (48) ալ գործածուած է այս իմաստով "Վասպուրական համարակար — հարկահաւաք ազնուականաց„։ Ըստ այսմ Վասպուրական իմաստ մը կ'առնու մերձաւորապէս հայ. "նախարարական„ի, կամ ըստ Թիրեաքեանի "ազատազգի, ազատազնեայ, վեհազուն„։ Այսու Կիւրիոնի մաղթանքի իմաստն կ'ըլլայ. "աւելի ազգ., վեհագոյն ընէ, ամէնէն բարձրագոյն նախարարութեան հասցընէ„։ Արդեամբք ալ յաջորդ տարին ճոխացաւ բարձրագոյն պատիւներով՝ "Մեծ Տանուտէրութեամբ„, "Երրորդ նախարարութեամբ„ եւն։

[2] Գիրք Թղթ. 170, հմմտ. եւ 161։

Հրաման առած էր Արքայից արքայէն նաեւ Ս. Գրիգորի շինութեան համար, որուն հիմն իւր ներկայութեամբ դնել տուաւ։

Բայց հազիւ բոլորած տարի մը, «յանցանել ձմերայնւոյն, ի գալ գարնայնւոյն ժամանակի» Արքայից արքայէն փութով ի Դուռն կը կոչուի (608, Ապրիլ 7էն յառաջ), վասն զի Վրկանի կողմերը կրկին շարժման մէջ էր, Քուշանք սկսած էին նորէն տապատակել պարսկական սահմանները։ Այս անգամ Խոսրով կու տայ Վրկանայ մարզպանին նաեւ «Տանուտէրութիւնն[1], կը յորջորջէ «Խոսրով Շնում[2]», եւ մեծապաս զարդարած շքեղ հանդերձիւք, չորեքձայնեան փողերով եւ արքունի հետեւակ զօրքէն անոր անձնապահ կարգած կը խաւրէ Քուշանաց դէմ բազմագունդ բանակով մը։ Սմբատ հասնելով Վրկանի Կոշմ գաւառը իրեն կը կանչէ «զբուն ձեռական զօրսն իւր զհամաշխարհիկն», որոնց թիւն Պատմագիրը մինչեւ 2000 հեծելազօր կը բարձրացընէ, եւ կը խաղայ թշնամեաց վրայ։ Երկիցս կը զարնուի, եւ երկու անգամ ալ կը խորտակէ թշնամիներն. յաղթական կ'ելլէ նաեւ Հեփթաղաց թագաւորին հետ ունեցած մենամարտութեան մէջ, որուն հետեւութեամբ Քուշանք յետս քաշուիլ կը ստիպուին բոլորովին, եւ Սմբատ հետապնդելով աւարի առած Հարեւ, Վատագէս, Տոխորստան եւ Տաղական գաւառներն եւ ամրութիւնքն քանդած եւ աւերած կը դառնայ Մարգ եւ Մարգռոտ գաւառներն կը նստի։

---

1 Կոմիտաս կաթ. (Գիրք Թղթ. 218) կ'անուանէ ակէ «Մեծ Տանուտէր»։

2 Խոսրով Շնում (Սեբ. 65, 97 եւ), կամ Շնում, Շնումն, կամ Խոսրովայ Շնումն, (Սեբ. 121), Խոսրովշնում կը համապատասխանէ պահլ. šnum = ուրախութիւն բառին. իմաստն է ըստ այսմ «Խոսրովու ուրախութիւն»։ Հմմտ. Hübsch. Arm. Gr. 214 եւ Պատկանեանի ծանօթութիւնն՝ Սեբ. 199։

Յաղթութեանցս լուրը աւետաւոր հրեշտակներն շուտով կ'աւետեն Արքային, որուն խնդութիւնն անպատմելի կ'ըլլայ։ Գոհութեան հրովարտակ մը կը գրէ եւ Սմբատ ի Դուռն կը կոչէ։ Մեծ ձաղանօք կ'ըլլայ ընդունելութիւնը Խոսրովէն, որ կ'ուղղէ առ Յաղթականն ի մէջի այլոց այս խօսքերը. “Մինչեւ ցայսօր մեզի ամենայն հաւատարմութեամբ ծառայեցիր, եւ մենք գոհ ենք քու եւ գործոցդ վրայ. այսուհետեւ հոս մեր քովը կեցիր, առ, կեր եւ խմէ„։

Արդեամբք ալ Սմբատ այսուհետեւ կը մնայ Տիզբոն, իբրեւ “երրորդ նախարար ի տաճարի թագաւորութեանն Խոսրովայ արքայի„ (Սեբ. 68)։

Թէ վերջին անգամ քանի՞ տարի զբաղած էր Սմբատ Վրկանի կողմերն, Սեբէոս որոշ բան մը չ'ըսեր. բայց յամենայն դէպս հրաւէրն պատահեցաւ 609/610ին։

Այսպիսի անդորրութեան մէջ ապրեցաւ այնուհետեւ Սմբատ “ժամանակս սակաւ„, մինչեւ Խոսրովու ԻԸ. տարին, այս է 616/617, երբ վախճանեցաւ Տիզբոն։ Մարմինը կը փոխադրուի Հայաստան “ի բնիկ հանգստարանսն„ Բագրատունեաց, Կոգովիտ գաւառի Դարիւնս գիւղը։

Մինչ կենդանի էր դեռ եւս Սմբատ, կը պատմուի թէ Խոսրովէն “ստիկան„ կարգուած ըլլայ 615/16 ի Տիզբոն գումարուած քրիստոնէից ժողովին[1], ուր Հայոցմէ ալ ներկայ էին Կոմիտաս — իբրեւ եպիսկոպոս Մամիկոնէից, եւ Մաթէոս Ամատունեաց եպիսկոպոսը, որոնք խաւրուած էին Հայաստան Պարսիկ կուսակալներէ գործադրուած բռնութեանց մասին գանգատելու Խոսրովու առջեւ։ Սմբատայ միջնորդութեամբ յաջողեցան ապահովապէս իրենց նպատակին մէջ։

---

[1] Սեբ. 121. Գիրք Թղթ. 218։ Հմմտ. առ այս Ե. Վ. Տէր-Մինասեան՝ “Այսպէս կոչուած Պարսից ժողովը„. ԱՐԲՏ. 1907, էջ 179-195։

*ժողովոյն հետեւութիւնն կ'ըլլայ. «Ամենայն քրիստոնեայք որ ընդ իմով (Խոսրովու) իշխանութեամբս են, հաւատ զՀայոց կալցին»[1]։*

*Սմբատ իւր քաջագործութեանց համար, որոնք ճշմարտութեան սահմաններն կ'անցնին Պատմագրին գրչի տակ, իրաւամբ կոչուած է «Մեծ»։ Ապրեցաւ հեռու հայրենիքէն պատերազմի դաշտին վրայ, եւ մեռաւ արքայական յարկի ներքեւ, բայց իւր հայրենական հաւատքն եւ հայրենասիրութիւնն վառ պահեց կրծոցը մէջ։ Իւր կրօնասիրութեան եւ ազգասիրութեան առհաւատչեաներն են հոյակապ Ս. Գրիգորի շինութիւնն, կաթողիկոսական խնդրոյն լուծումն, եւ Վրկանի կողմերն մեռած հայութիւնն կանգնելը։ Սեբէոս* (63) *կը պատմէ թէ անգամ Վրկանի խորքերն ունէր բանակին մէջ հայ երէցներ եւ մատուռ մը։ Եթէ իւր առ Կիւրիոն եւ Աբրահամ Կաթողիկոսներ, եւ Յուրտաւայ Մովսէս եպիսկոպոսը գրած թղթերն ուղղակի իւր գրչի արդիւնքներն են, կը փայլի մի եւ նոյն ժամանակ նաեւ իւր հմտութիւնն գրաւորին մէջ։*

*Այս է Սմբատայ դերը պատմութեան մէջ. բայց ո՛րչափ գրողներով մթագնած է յետնոց քով։ Ցայսօր՝ Հայաստանի Մարզպան կը ճանչցուի Սմբատ՝ Վրկանի մարզպանը որ յառաջ եկած է մի միայն «մարզպան» տիտղոսին թիւրիմացութենէն։ Սմբատայ օրով ի Հայս պաշտօնս կը վարէին պարսիկներն, ինչպէս բացայայտ կ'ըսէ Սեբէոս* (64)։

## ԳԼՈՒԽ Է.

### Սուրէնէ առաջին կեանքը եւ Կաթողիկոս յետնորդութիւնը։

*Գուգարաց նահանգին ինը գաւառներէն մին էր Ջաւախք, այժմ Ախալքալաքի գաւառ, շրջապատուած Սամցխէ, Կղարջք, Արտահան եւ*

---

1 Սեբ. 123։

Չորոխոր գաւառներէ, արեւմուտքէն ունենալով իրեն սահման Կուր գետը, ոչ շատ անջրպետով հեռու Տփղիսէն[1]: Ջաւախքը, ինչպէս բովանդակ Գուգարք բդեշխութիւնը, Հայ Արշակունի թագաւորութեան ժամանակ գրեթէ միշտ հայկական հող նկատուած է, սահմանագլուխ Հայաստանի եւ Վրաստանի. 387ին Հայաստանի բաժանման ատեն միացաւ Վրաստանի հետ եւ մնաց Պարսից գերիշխանութեան ներքեւ, որուն տակ մնաց մինչեւ 591, երբ անցաւ Յունաց, եւ թէեւ 602ին Խոսրով կրկին յետս գրաւեց, բայց Հերակլի արշաւանքներու արդեամբք (624 – 628) դարձեալ Յունական սահման եղաւ[2]: Երկրին այսպէս մերթ հայկական եւ մերթ վրական հող ըլլալովը՝ բնակչութիւնն ալ կը կազմուէր կրկին տարրներէ, հայերէ եւ վրացիներէ:

Այս հայ-վրական գաւառէն էր Կիւրիոն[3],

---

1 Ջաւախքի տեղագրութիւնն ընդարձակօրէն տես Ե. Լալայեանց՝ Ջաւախք. Նիւթեր ապագայ ուսումնասիրութեան համար. ԱԶԳ. ՀԱՆԴ. Ա. (1897), էջ 125 եւն:

2 Հմմտ. Հանդ. Ամս. 1907, էջ 124:

3 Ի վիճակի չենք որոշելու թէ “Կիւրիոն” անունս մանկութեան ժամանակ ընդունեցաւ, թէ ապա ի Նիկոպոլիս: Այսպէս կը գրուի անունս հայ մատենագրաց շատերու քով: Առաջին անգամ կը յիշատակուի յորջորջումս Ուխտանէս քերթողի առ նա ինքն գրած թղթին մէջ “Տեառն Կիւրոնին” ձեւով (Գիրք. Թղթ. 138, ուր Ուխտ. Բ. 42 կարդացած է “Կիւրոնի”): Աբրահամ կաթողիկոս իր Ա. եւ Բ. թղթերու մէջ կը գրէ “Տեառն Կիւրոնին” (164, 176). իսկ Գ. եւ Դ. թղթոց մէջ (էջ 180, 194) “Կիւրիոն” եւ “Կիւրիոնին”: Սմբատայ թղթին մէջ է “Տեառն Կիւրոնի”: Իսկ ինքն Կիւրիոն իւր թղթերու մէջ կ'ուղղագրէ մերթ “ի Կիւրիոնէ” (166) եւ մերթ “ի Կիւրիոնէ” (170, 178): Թղթոց Գրքի հաւաքողն՝ Մովսէս եպ. միշտ. “Կիւրիոն” (164, 168 176, 180) կը գրէ: Վերջին ձեւովս ունին յետին պատմիչք՝ Յովհ. կաթ. 38, 41–2. Ասողիկ՝ 86. Վարդան՝ 58, 60, Կիր. 25–26, թէեւ երբեմն կը գրեն նաեւ “Կիւրոն”, ինչպէս

ըստ Ուխտանիսի[1]՝ այժմ անծանօթ Սկուտրի գիւղէն։ Ինչպէս ծնողացը, նոյնպէս առաջին տիոց մասին կը պակսին մեզի մանրամասնութիւններ։ Գիտենք որ ազգաւ Վրացի էր եւ տեղեակ վրացերէնի եւ հայերէնի[2]։ Ծնունդն պէտք է դնել 560—70ի մէջերը։

Բախտն ուրիշ ասպարէզ քան շինական կեանքը պատրաստած էր մանուկ Կիւրիոնին։ Մատաղ հասակէն փոխադրուած կը տեսնենք անշուք Սկուտրի գիւղէն Փոքր Հայոց յունական քաղաքականութեամբ բարգաւաճեալ Նիկոպոլիս եպիսկոպոսանիստ քաղաքը (578)։ Թէ ինչ շարժառիթով բաժնուած է Կիւրիոն հայրենիքէն, դիւրին չէ պարզել։ Ուխտանէս կը գրէ պարզապէս. "Երթեալ յերկիրն Հոռոմոց բնակեցաւ անդ ամս ԺԵ ի գաւառին որ կոչի Կողոնիա[3], եւ բնակեցաւ

---

միօրինակութեամբ ունի Ուխտ.։ Մեծն Գրիգոր իւր առ Կիւրիոն թղթին մէջ գիտէ անունս՝ Quirico կամ ըստ այլ ձեռագրաց՝ Quirio episcopo ձեւով։ Ըստ Brosset-ի (Deux hist. II. p. 278, n. 2) ծագած է անունս Յունաց Κυριων, Κουριον, Curio ձեւերէն։ Անտիոքայ ժողովոյն եպիսկոպոսաց ցանկին մէջ Յունաց Κυριωνը կը շրջուի հայերէն "Կիւրիոնէն" ձեւով. Հմմտ. Ցուչեան՝ "Ցուցակ, 652։

1 Հարկ է հաւատալ թէ Ուխտ. հոս վաւերական աղբիւր մ'ունեցած է աչաց առջեւ։ Մովսէս Կաթողիկոս առ Կիւրիոն թղթին մէջ կ'ըսէ պարզապէս. "բնակութեամբ (իմա՝ հայրենեօք) յաշխարհէն Վրաց" էր։

2 Չամչեան (Պատմ. Հայոց, Բ. 301) եւ ապա Ջարբանալեան (Պատմ. Հայկ. Հին Դպր. Գ. տպ. 417) "Հմուտ էր, կ'ըսեն յոյն, հայ, պարսիկ եւ Վրացի լեզուաց"։ Պարսկերէնի ծանօթութիւն թէեւ կարելի է ենթադրել, բայց պատմագիրք չեն յիշատակեր բնաւ։

3 "Թանակաթեմ" կ'իմանայ անշուշտ հոս Ուխտանէս "Կողոնիա գաւառ" ըսելով. այլապէս անծանօթ է այլուստ այս անուն գաւառ ի Փոքր Հայս։ Կար յիրաւի Նիկոպոլսոյ քով Կողոնիա, բայց քաղաք եւ ոչ գաւառ, զոր այժմ գիտունք,

անդ ի մեծ քաղաքագեղն Նիկոպոլիս կոչեցեալ՝ յեզր գետոյն, որ կոչի Գայլ”։ Հոս Ուխտանիսի գործածած աղբիւրն անյայտ է մեզի։ Մովսէս Բ. Եղիվարդեցւոյ խօսքերն նկատելով կը ստիպուինք ըսել թէ ակամայ լքած է Կիւրիոն հայրենիքը. “Վաղ ուրեմն, կը գրէ Մովսէս առ Կիւրիոն, հեռացեալ եւ օտարացեալ ի Հռովմայեցւոցն վարեցար յաշխարհ[1]”։ Խօսքեր, որոնք կարծել կուտան թէ կամ ծնողաց հետ գաղթած է 570 - 578ի մարտից ժամանակ, եւ կամ Յոյներէն իբրեւ գերի վարուած։ Ջինչ եւ իցէ, Նոր Հայրենիքն Նոր զգա-

---

Ramsay (Histor. geogr. pp. 57, 267) եւ Cumont (Studia Pontica. II. Voyage d'exploration archéologique dans le Pont et la Petite Arménie, par Fr. et E. Cumonts Bruxelles, 1906, p. 296) կը նոյնացընեն Քարա-Հիսարի հետ, ըստ Պրոկոպեայ (Վասն Շին. Գ. 4. էջ 253, տպ. Բոնն) կառուցուած Պոմպէոսէն իբրեւ բերդ, որ յետոյ քաղաքանանալով՝ Յուստինիանոս պետութեան առաջնակարգ ամրութիւններէն մին ըրած է եւ յետ Յուստինիանոսի մինչեւ իսկ այն կողման բանակաթեմին գլխաւոր կայանն դարձած եւ իւր անուամբ յորջորջած բանակաթեմն (Հմմտ. Գելցեր՝ Բանակաթեմեր. 55. V. Chapot, La frontière de l'Euphrate de Pompée à la conquête arabe. Paris, 1907, p. 354.)։ Ղեւոնդ երէց Ը. դարուն Կողոնիան կը ճանչնայ իբրեւ “բերդ քաղաքաց” (Հրտ. Ս. Պետերբ. 157)։ — Ստ. Օրպէլեան (75) առանց յիշելու Նիկոպոլիսը պարզապէս Կիւրիոն Կողոնիա գնաց կ՚ըսէ։

[1] Ուխտանէս, ինչպէս եւ Մովսէս Կաթողիկոս, ընդհանուր անուամբ կը կոչեն հոս Նիկոպոլիսը “Հռովմայեցւոց աշխարհ”, զոր պէտք է իմանալ “երկիր, որ Յունաց իշխանութեան ներքեւ էր”, վասն զի Նիկոպոլիս Գայլ գետի եզերքը Ա. Հայքի մէջ էր՝ ըստ Յուստինիանոսի 536ի բաժանման (Հիւբշ. Տեղւոյ անուանք, 39 Գելցեր, Բանակաթեմ. 19) անուանի Սատաղ քաղաքին քով, նշանաւոր հանդիսացած մանաւանդ Տիգրան Մեծի օրով։ 608/9ին Աշտատ-Յեզդայար Չիթառիճի եւ Սատաղի հետ նուաճեց Պարսից լծոյն ներքեւ (Սեբ. 77)։

ցումներ պարթուցին անշուշտ պատանւոյն վառ-
սրտին մէջ։

Պոմպէաշէն «Մեծ գիւղաքաղաքն» Նիկոպո-
լիս, «Գայլ (Lycos) գետէն 6 մղոնէ աւելի հեռու»
կառուցուած՝ այժմեան 200 տնով Փուրք հայաբնակ
քաղաքն է, Հոյակապ եւ անուանի երբեմն, ուր քրիս-
տոնէութիւնն բարգաւաճեցաւ ծաղկալից, եւ
Ս. Բարսեղէն Եկեղեցին արժանի եղաւ «Մայր Կո-
ղոնիոյ եկեղեցւոյն» կոչուելու։ Թէեւ 499ի եր-
կրաշարժն, որ բովանդակ Հայաստանն եւ Պոն-
տոսը ցնցեց, քանդեց կործանեց գետնայատակ նաեւ
Հոյակապ Նիկոպոլիսը, բայց Յուստինիանոսէն նո-
րոգուեցաւ կրկին, եւ կանգնուեցաւ հոն Քառա-
սուն Մարտիրոսաց վանքն, նախնի փայլն սակայն
չստացաւ երբեք այսուհետեւ, թէպէտ Եպիսկո-
պոսանիստ աթոռն մնաց անխախտ երկար ժա-
մանակ՝ Սեբաստիոյ մետրապոլտութեան ներքեւ։

Հոս կը դաստիարակուի Կիւրիոն յունական
բարձր կրթութեամբ մը, կը սորվի «զդպրու-
թիւն Յունաց եւ զայլ եւս չարարուեստ (!)
գիտութիւն, որով որոշեցաւ ի մէնջ» (Ուխտ.
Բ. 1), կը հմտանայ յոյն լեզուի եւ եկեղե-
ցական գիտութեան, ուսկից պիտի հետեւցընենք
թէ նա ինք զինքը նուիրեց ի մանուկ տիոց նաեւ
եկեղեցական վիճակի տեղւոյն Եպիսկոպոսարանի
մէջ կամ Ս. Քառասնից վանքը։ Տասն եւ հինգ
տարւան միջոցին (578—593), ընդունեցաւ հոն
նաեւ քահանայական ձեռնադրութիւն[1]. գոնէ
այս վիճակի մէջ էր նա երբ եկաւ ի Դուին։

---

[1] Ստ. Օրպէլեան կը գրէ (75) «Գնացեալ ի սուր-
բ առաքելոցն ի Կողոնիա՝ բնակեալ էր առ երկարնակ
երիցու միոյ եւ ներկեալ յաղանդն». բայց ի՞նչ աղբերէ
գիտէ զայս Սամփանաս, որուն մի միակ աղբիւրն Կիւրիոնի
մասին Ուխտանէսն է։ Հարկ է իբրեւ ինքնաստեղծ եղ-
ջերուաքաղ մերժել բոլորովին։

593/4ին կը մեկնի Նիկոպոլսէն Պարսկահայաստան՝ Դունայ կաթողիկոսարանն, ուր կաթողիկոսական գահին վրայ կը բազմէր ալեզարդն Մովսէս Բ. Եղիվարդեցի. «եւ բնակէ առ նա ի սուրբ կաթողիկէին, որ ի Դուին քաղաքի[1]»։ Ապահովապէս իւր քաղցր բնաւորութեամբն եւ աստուածաբանական իրաց հմտութեամբն քիչ ժամանակէն սիրելի կ'ըլլայ կաթողիկոսին եւ բոլոր վստահութիւնն յինքն կը գրաւէ, որ արագ արագ մեծամեծ պաշտօններու կը բարձրացընէ. «եւ նա (Մովսէս) կացուցանէ զնա (զԿիւրիոն) Վանայ երէց Ս. Կաթուղիկէին[2], այլ եւ Քորեպիսկոպոս՝ տալով

---

[1] Ըստ Հ. Զարբ. (անգ. 417) կ'անուանէ զԿիւրիոն «աշակերտ Մովսիսի», որ ճիշդ չէ բառին խիստ առմամբը։

[2] Ուխտ. Բ. 4։ Պատմագրիս տողերն շատ պարզ են հոս. եւ ինքնին կ'իմացուի թէ խօսքն Դունայ կաթուղիկէի մասին է, ուր իշխեւանեալ ալ էր։ Հ. Ալիշան՝ Յու. Օրպէլեանի հետ (էջ 75. «եւ լեալ էր նա [Կիւրիոն] փակակալ սուրբ Կաթուղիկէին ի Վաղարշապատ») հոս ընդհակառակն ակնարկուած կը համարի Վաղարշապատու Ս. Կաթուղիկէն Էջմիածին. (Հմմտ. Այրարատ, 214. «Յետ Ղազարու [Փարպ.] մինչեւ ցԿիւրիոն՝ ոչ յիշի ոք Վանահայր [Ս. Կաթուղիկէին Էջմիածնի]. իսկ Կիւրիոնդ առ Մովսիսիւ մերով կաթողիկոսիւ՝ եկաց յայնմ տեսչութեան զամս եօթն եւ ապա ընտրեցաւ ի Կաթողիկոսութիւն աշխարհին Վրաց»)։ — Հմմտ. առ այս եւ Մովսէս Կաթողիկոսի խօսքերը (Թղ. առ Կիւրիոն. 11) «Յիշեա զի եկիր բնակեցար ընդ հովանեաւ Ս. Կաթուղիկէիս (Դունայ), եւ ծառայեցեր միամտութեամբ սրտի քո ի ձեռն հոգեւոր ծառայութեան, որ հաւատացաւ ի մէնջ»։ Դունայ Կաթողիկէն Ս. Գրիգոր թէեւ այրած էր այս ժամանակ, բայց կար առժամանակեայ «Մայր Եկեղեցի» մը — Կաթուղիկէ։ Մատադրութեան արժանի է որ Կիւրիոն իւր այս պաշտօնավարութեամբն նկատուած է ժամանակակիցներէն «այդր որբոյ Աթոռոյդ» այս է՝ Դունայ «աշակերտ» (Թուղթ Մովսէսի առ Վրթ. 183)։

նմա վիճակ զգաւառն Այրարատեան[1]"։ Այս "Հոգեւոր ծառայութիւնը" 5 տարի[2] կը վարէ Կիւրիոն ամենայն լրջութեամբ եւ "միամտութեամբ սրտի" ըստ վկայութեան Մովսէսի, մինչեւ կաթողիկոս ընտրուիլը (594—598/9)։ Զարմանալի է սակայն Մովսէսի պէս անձի մը այսպիսի տապնջականութիւն ցուցնելը առ Կիւրիոն։ Յայտնի ըլլալով հանդերձ իրեն Կիւրիոնի "Հռովմայեցւոց" երկրէն գալը, չի կասկածիր ամենեւին "հոռոմացած" ըլլալուն վրայ, մինչդեռ ինքը ուրիշ կողմանէ կը խորշէր Հոռոմներու "հուպ լինելէ"[3]։

Կիւրիոն իբրեւ վանահայր Ս. Կաթուղիկէին եւ իբրեւ ծերացեալ կաթողիկոսին աջակից քորեպիսկոպոս, ընդարձակ ասպարէզ ունէր գործունէութեան, թէեւ անծանօթ են մեզի յառաջ բերած արդիւնքները։

Այս միջոցներբ ի Վիրս կը վախճանի (598/9) Վրաց Կաթողիկոսն, որուն անունը յականէ անծանօթ է մեզի[4]։ Հարկ էր յաջորդ ընտրել։ "Ըստ սո-

---

1 Յովհ. կաթ. 38. եւ Ասողիկ, 83, զԿիւրիոն միայն Ս. Կաթողիկէի վանաց երէց կը ճանչնան. իսկ Կիր. Գանձակեցի, 25, "Փակակալ Իւրոյ (Մովսէսի) Եկեղեցւոյն" գիտէ։

2 Վարդան, 58, որուն կը հետեւի հոս Հ. Ալիշան (Այրարատ, 214) վաներէցութեան տարիներն կ'երկարէ "ամս եօթն", ապահովապէս գրչագրի վրիպակ մը կայ հոս շփոթմամբ Է եւ Ե գրերու։

3 Սեբ. 53։ Հմմտ. վերը 124։

4 Անագանագոյն՝ ԺԳ դարու մատենագիրն Մխիթար Գոշ կ'ենթադրէ թէ Կիւրիոն յաջորդած ըլլայ Գաբրիէլի, որ ինչպէս վերագոյն տեսանք (էջ 21) անհնարին է։ Մխիթարայ խօսքերն են "Մեռաւ Գաբրիէլ եւ եկաց ի տեղի նորա Կիւրիոն, որ ունէր ի ծածուկ զաղանդն Քաղկեդոնի"։ Թուղթ առ Վիր. ԱՐՐՏ. 1900, էջ 503։ — Ընդհանրապէս Հայոց եւ Վրաց եկեղեցիներու իրարու հետ ունեցած յարաբերութեանց եւ Զ. դարու ծանօթ կա-

վորութեան„ պատգամաւորութիւն մը կը կազմուի, քանի մը Վրացի իշխան եւ Պետրոս եպիսկոպոս[1] կու գան Դուին եւ կը խնդրեն Հայոց Կաթողիկոսէն թափուր աթոռին համար արժանաւոր անձ մը։ Մովսէս պատրաստ կը ցուցընէ ինք զինքը, եւ յիշելով 506ին Վրաց Գաբրիէլ Կաթողիկոսի ժամանակ Վաղարշապատ հաստատուած հաւատոյ միութիւնը, նոյնն աւելի սերտ ընելու դիտմամբ, միանգամայն աչաց առջեւ ունենալով Աղուանից այս ուխտին դրժումը, պատշաճ կը համարի այս անգամ "իւր տնէն„ մէկը ընտրել Կաթողիկոս Վրաց։ Առ այս ատակութիւն նշմարեց յանձին Կիւրիոնի, որ հինգ տարիէ ի վեր քովն էր եւ վստահութիւնն վայելած լիովին։ Որչափ Մովսէս Կաթողիկոսի առ Կիւրիոն գրած թղթէն կը տեսնուի, Կիւրիոն եւս իւր կողմանէ պատրաստակամութիւն ցուցացած է. "Եւ մեք վստահացեալ ի կեանս քո, առ սէր քո արարաք զկամս քո՝ առաջնորդ զքեզ կացուցանելով աշխարհիդ այդմիկ„։ Ձեռնադրութիւնն կը պատահի ըստ Ուխտանիսի, որ կը համապատասխանէ ճշգրիտ ժամանակագրութեան, Մովսէսի ԻԵ տարին[2] յամի 598/9։ Ձեռ-

---

թողիկոսաց վրայ խօսեցանք բաւականաչափ Ներածութեան մէջ (հմմտ. էջ 22 եւն)։

[1] Պետրոսի մասին կը խօսինք յետոյ առանձինն։

[2] Ուխտանիսի տուած այս թուականին համեմատ կարելի է գծել Կիւրիոնի ժամանակագրութիւնն այսպէս.

Կը ձեռնադրուի Մովսէսի ԻԵ տարին (574+25 =) ուրեմն 598/9։

Դուին մնացած էր 5 տարի (598/9—5 =), ուրեմն 593/4—598/9։

Նիկոպոլիս մնացած էր 15 տարի (593/4—15 =), ուրեմն 578/9—593/4։

Այս հաշուով հայրենիքէն բաժնուիլն կը պատահի 578/9ին։ Ներածութեան մէջ եւ այլուր պարզած ենք Ձամչեանի եւ այլոց ժամանակագրութեան սխալն Կիւրիոնի

նադրութենէն յառաջ, որչափ Աբրահամ կաթողիկոսի խօսքերէն կ'երեւայ, Կիւրիոն "գրով„ յանձն կ'առնու Մովսիսի առաջարկած պայմանն թէ Հայոց հետ մի պիտի մնայ, եւ նոյնը յետոյ նաեւ ի ձեռն "պատգամաւորի„ կրկնած է [1]։

Վիր պատգամաւորք առած նորընտիր կաթողիկոսն, կը մեկնին Դունէն "մեծաւ պատուով„ դէպ ի կաթողիկոսանիստն Մծխիթա [2], ուր կը բազմեցընեն շքով կաթողիկոսութեան աթոռն։

Կիւրիոն, այս մեծ մարդը, յորում անչափ ազգասիրութեան (Nationalstolz) հետ զուգուած էր իւր ժամանակին համար զարմանալի հմտութիւն մ'ալ, գիտցաւ իւր քսանամեայ օտարութեան օրերուն քաջ ըմբռնել Հայոց եւ Յունաց մէջ եղած բանավէճերն եւ իւր եկեղեցին ընդհանուր Եկեղեցւոյ հետ զօդելու անհրաժեշտ հարկը ճանչնալ։ Այս ծրագրին համաձայն ուղղեց իւր բովանդակ գործունէութիւնն այսուհետեւ։ Բայց Յառաջ քան իւր գործունէութեան անցնիլը լսենք հոս նախ հեղինակաւոր Հ. Յ. Գաթըրճեանի անձնաւորութեանս տուած նկարագիրն։ "Ասոր գովեստին նոյն իսկ իրեն թշնամիները կը միաբանին իրեն ուսմանը եւ խորագիտութեանը նկատմամբ եւ իրօք չենք գիտեր հայ մը, որ իրմէ աւելի եկեղեցական արիութիւն եւ խոհեմութիւն միանգամայն ունեցած ըլլայ։ Այսօրուան օրս ունինք ձեռքերնիս իրեն թղթակցութիւնը, որմէ յայտնի

պատմութեան մասին (Համմ. մասնաւորապէս Brosset Addit. p. 111—112. Deux hist. II. Intr. եւ p. 280—282։

[1] Յամի 608 կը բողոքէր Աբրահամ, թէ ինչու Կիւրիոն դրժած է այն խոստման, զոր "գրով եւ պատգամաւորաւ յանձն էր արարեալ„ (Գիրք Թղթ. 164)։

[2] Վրաց կաթողիկոսարանն այս ժամանակներս Տփղիս էր՝ Ս. Սիոն եկեղեցին (Համմ. Ջուանշէր. 98). մերթ կը նստէին նաեւ Մծխիթա։

է թէ ժամանակին պարագաներն աղէկ գործածած է իր մեծ նպատակին համար, եւ երբեք չէ ունեցած միտք եկեղեցական ստորակարգութեան կապը խզել՝ եթէ ճշմարտութիւնն ընդունուի„[1]։ Այս նշանաւոր գծերը լրով պիտի հաստատուին յաջորդ տողերուս մէջ։

## ԳԼՈՒԽ Ը.

Կիւրիոնի գործունէութիւնն ի Վիրս։ Խաղկեդոնականաց խնդիրը եւ Գր. Մեծի Թուղթը առ Կիւրիոն։

Ուխտանէս (Բ. 4) կրօնական տեսակէտով միայն նկատած է Կիւրիոնի գործունէութիւնն, զոր կը պատմէ այսպէս. Յորժամ “եհաս Կիւրոն ի վիճակ իւրոյ իշխանութեանն եւ ի քաղաքն իւրեանց որ կոչի Մցխիթայ, ժողովէ առ ինքն զեպիսկոպոսունսն հանդերձ լաւօք աշխարհին եւ զիշխանս եւ զնախարարս, եւ նուաճէ նոքօք հանդերձ առ հասարակ զամենայն աշխարհն ընդ իւրով իշխանութեամբ„։ Այս ընդհանուր խօսքերէն սակայն դժուարին է որոշ բան մ՚եզրակացնել։

Արտասովոր խռովութեան մէջ էր, երբ կոխեց Կիւրիոն հայրենի հողին վրայ, թէ ինչ պատճառաւ, կարելի չէ ճշդիւ ըսել[2]։ Բայց կը յաջողի խաղաղել, շնորհիւ արքայից արքայի՝ Խոսրով Բ.ի տուած առանձնաշնորհութեանց եւ ճոխութեան։ Այս մասին մեր տեղեկութիւնն կը քաղենք ինքնին Կիւրիոնի թղթէն, ուր Սմբատայ այսպէս կը նկարագրէ. “Վասն որոյ է ինչ որ այժմ եղեւ հակառակութիւն ի մերում աշխարհիս, որ մինչեւ յարքայից արքայ եհաս. եւ արքայից արքայ բարերարութեամբ արար զիս աշխարհարձակ, եւ վասն եկեղեցեաց եւ հաւատոյ եւ ընդ միմեանս խաղա-

---

1 Իրաւախոհի Կեղծիքը. Բ։

2 Հմմտ. 33–34։

զութիւն ունելոյ պատուէր ի վերայ արար. եւ յորժամ բարեաւ յաշխարհ եկաք, ի մեր ձեռն Աստուած զհակառակութիւնն զայն եբարձ ի միջոյ[1]»: Եւ «բարերարութեանս» իմաստն քիչ վերջը կը պարզէ. «զի ազտիհ որ[2] ինձ հաստատեալ է ի տերանց վասն իւրեանց բարերարութեան»: Դժբախտաբար ասով ալ մութ կը մնայ դեռ իրողութիւնը, որուն լուսաւորութիւնն այնպէս հետաքրքրական է: Այլուստ (Թուղթ Կիւրիոնի առ Աբր. 167) որչափ կ'երեւայ այս «բարերարութիւնը» կը հայի նաեւ մասնաւորապէս Կիւրիոնի անձին. վասն զի յիշելով Խոսրովու Վրաց շնորհած «բարերարութիւն»ները կը յաւելու «եւ բարի անձինս իմոյ՝ լաւագոյն քան զամենայն ընկերաց իմոց»: Այս առանձնորհութիւնք սակայն դժուարին է հաստատել թէ երբ ընդունեցաւ Կիւրիոն. յամենայն դէպս 598—607ի մէջերը: Մտադրութեամբ կարդալով յիշեալ տողերն, կը տեսնուի նաեւ թէ Կիւրիոն Վրաց իրերն խաղաղելու համար անձամբ ներկայացած ալ է Խոսրովու եւ այնպէս յաջողութեամբ ի գլուխ հանած ամենայն ինչ:

---

[1] Գիրք Թղթոց էջ 170:

[2] Ազտիհ կամ Ազտիհոր, զոր կը գործածէ հոս Կիւրիոն եւ այլուր կը գրէ առ Սմբատ. «Ազտիհդ ձեր եւ փառաւորութիւն» (Գիրք Թղթ. 171), այլուստ անծանօթ է: Կ'երեւայ թէ պարսկական է ծագումը. Հմմտ. պարսկ. azadeskari, ազատ, ինքնիշխան. Հոմանիշ կը թուի ատոր «աշխարհարձակը», զոր կը գործածէ Կիւրիոն (Հմմտ. եւ Արքայից արքայ բարերարութեամբ արար եւ զմեզ յաշխարհարձակ հաւատոյ եւ եկեղեցեաց կարգի աւելագոյն պատուէր ի վերայ արար, զի ընդ միմեանս խաղաղութիւն եղիցի. քանզի էր ինչ որ լուաւ... անդ էջ 168): — Այս ազտիհն կ'ակնարկեն արդեօք Յուրտաւայ Եկեղեցւոյն առ Վրթանէս թղթին մէջ Կիւրիոնի համար ըսուածները. «թէպէտ եւ ի ժամուս ի սնոտի մեծութենէն իբրեւ զգետ ինչ յարուցեալ...» (անդ էջ 133):

Կիւրիոն իւր առ Սմբատ Թղթին մէջ ակնար-կած “Հակառակութեամբ„ մասամբ իւիք կը յա-րաբերէ “Խուժիկ Նեստորական„ներու խնդիրը ի Վիրս, զոր այնպէս ուժգնութեամբ ջանաց լուծել։ Այս ուրիշ շատ կողմանէ նշանակալից՝ բայց ցայսօր ոչ բաւականութեամբ պարզուած խնդիրը կարեւոր է ընդարձակօրէն առնուլ հոս ի նկատի։

Հիներն Խուժիկ կ՚անուանէին Պարսկաստանի հիւսիսային կողմն տարածուած Խուժաստան երկրին բնակիչներն։ Քրիստոնեայ կենդրոնէն հեռու այս երկիրը, թէեւ Դ. դարէն ի վեր մուտ կրցաւ գտնել քրիստոնէութիւնն, բայց երկրին արտաքոյ կարգի օտարադէն ազդեցութեանց ենթակայ ըլլալուն, բնակչութիւնն եղած է միշտ անհամբոյր բարուք, խաբեբայ եւ անահաւատ, որով շրջակայ քրիստո-նեաներէն նկատուած են միշտ արհամարհանօք, իբրեւ աղանդաւոր եւն։ Այնպէս որ Ե. դարու վերջերն Ղ. Փարպեցի խօսելով Ղեւոնդեանց պատ-մութեան մէջ դեր կատարող խուժկի վրայ կը գրէր. “զոր անուանել յայսմ հետէ խուժիկ ծան-րանամ„ (էջ 104)։

Վաճառականութեամբ կը պարապէին ընդ-հանրապէս. եւ այս արուեստով կը յաճախէին ստէպ Պարսկաստանի, Հայաստանի եւ Վրաստանի շահաստաններն, կ՚ընդելանային նաեւ այս երկիր-ներու լեզուներուն։ Արդէն երանելի խուժիկն Փարպեցւոյ քով այսպիսի մէկն էր. “ըստ օրինի վաճառականութեան շատ անգամ ճանապարհոր-դեալ էր ի Հայս, որ եւ զլեզու հայերէն խօսից քաջ տեղեկաբար գիտէր„ (էջ 94)։

Խուժիկները Զ. եւ Է. դարուց հայ մատե-նագրաց քով առ հասարակ դաւանութեամբ “Նեստորական„ կը ներկայանան[1], թէեւ դաւանած

---

1 Յարգէն կաթողիկոսն միայն ճանչցաւ Արդիշոյեան խուժիկն եւ իւր ընկերները “ուղղափառ„. Հմմտ. Գիրք Թղթ. 47։

վարդապետութիւններին կարի այլազգ կը նկարագրուի, քան որ էր Ե. դարու Նեստորի վարդապետութիւնը: "Նեստորական" յորջորջումս յառաջացած է ապահովապէս Զ. դարուն մերիններու քով տարածուած այն կարծիքէն, թէ Նեստոր Փոքր Թէոդոսէն այս կողմերը աքսորուած է. կարծիք մը, որ իւր բոլորովին անհիմն ըլլալովը հանդերձ արձագանգ գտած է Ներսէս Բ. Աշտարակեցւոյ, Յովհ. Բ. Գաբեղենեցւոյ Թղթերու[1] եւ Կայսերաց գրոց մէջ[2]: Յիրականին սակայն "Նեստորական" անուան ներքեւ իմացած են միշտ Մանիքեցիները[3], ինչպէս բացայայտ կը տեսնուի Ներսէս Բ.ի Թղթէն եւ Սիր. Գանձակեցիէն (էջ 29): Պարսկաստանի հիւսիսային կողմերն արդեամբք ալ տարածուեցան Մանիի հետեւողք Գ. դարէն ի վեր, որոնք վարակեցին իրենց ամբարիշտ վարդապետութեամբ բովանդակ այն կողմերը եւ Խուժաստանը. Խուժիկներն վաճառականութեան պատրուակաւ դեգերելով այլեւայլ քաղաքներ հա-

---

1 Գիրք Թղթ. 70, 72, 79:

2 Անանուն Ժամանակագրութիւն, էջ 60, "Հալածական արարին զՆեստոր ի կողմանս Մծբնացւոց, որոց յարեցաւ ի Խուժաստան յարուեալ" (sic). եւ էջ 63. "Եւ հրամանաւ թագաւորին դարձուցանել զՆեստոր, զի կենդանի էր ի կողմանս Խուժաստանի":

3 Զայս կարելի ըլլայ թերեւս մեկնել Հերձուածոց [illegible] մէջ Մանիքեցւոց վերագրուած վարդապետութեան Նեստորի մոլորութեան հետ ունեցած աղերսէն. "Մանիքեցիք. որք Մանեայ պարսկի աշակերտք էին եւ պաշտեն զարեգակն եւ զլուսին եւ զաստեղս: Նոյն երդնուն յարեգակն եւ ասեն. լուսիկ արեւիկ քաղցրիկ, լի ես տիեզերօք: Զի Քրիստոս զարեգակն խոստովանին եւ դիւաց երկրպագանեն եւ զՔրիստոս [illegible] [illegible] եւ խաչեալ ոչ ընդունին: Երկու իշխանութիւն (ἀρχή) ասեն՝ չար եւ բարի եւ զՀին Կտակն հայհոյեն": (Հրտ. Տաշեան՝ էջ 127—128): Հմմտ. եւ Յ. Օձնեցւոյ Ընդդէմ Պաւղիկ. Ճառն ուր յայտնապէս նոյնացուած են երկու անուանքս:

տատեցին իրենց "ժողովարան"ներ եւ նաեւ քրիստոնեաններէ որսացին իրենց աղանդոյն մարդիկ։ Զ. դարու առաջին կիսուն այս ոճով մտան նաեւ Հայաստան[1], յատկապէս Դուին եւ հաստատեցին հոն իրենց ժողովարանը[2]. զոր գեղեցիկ եւ մանր կը պատմէ Ներսէս Աշտարակեցի իր թղթերուն մէջ այսպէս. "...վասն չար աղանդին Խուժկացնեստորականաց, զորս նզովեաց սուրբ Հոգին ի ձեռն սրբոց ուղղափառ եպիսկոպոսաց... (երից Տեղ. Սիւնհոդոսաց), որոց անիծեալ զՆեստոր խզեցին ի բաց ընկեցին, արարեալ զնա հալածական յաւտար աշխարհ ի կողմանս Մծբնացւոց, զորս երթեալ խմորեաց չարագիւտ արուեստիւ իւրով զոգիս նոցա՝ արարեալ զնոսա փշաբերս եւ խաւարաբնակս, յոր ըմբռնեցան եւ կողմանքն Խուժաստանի, յորոց ոմանք հասեալ յառաջագոյն յաշխարհ մեր, վաճառաշահութեամբ կեցին ընդ հարսն մեր եւ ընդ մեզ, միաբանութեամբ ի մեր եկեղեցւոյ խոստովանելով զինքեանս միահաւատ ընդ մեզ։ Եւ ի տասն եւ յեւթներորդ ամի Խոսրովու արքայից արքայի, ի մարզպանութեանն Նիհորականայ, արարին իմն շինած յանուն Մանաճրհի Ռաժկի[3]... եւ ապա անուանեցին զնա տեղի ժողո-

---

1 Ստուգութիւն կ'առնուն ասկէ Միք. Ասորւոյն խօսքերն, որ Յուստինիանոս Բ.ի (իմա Ա.ի 527—565) օրով եղած հերձուածներն թուելով կը գրէ թէ Բորբորիանիտք, այս է Մանիքեցիք Պարսկաստանէն վռնտուելով Հայաստան եկան, եւ հոն արք եւ կանայք կրօնաւորական սեւ զգեստներ հագած քրիստոնեայ կը կեղծաւորէին, մինչդեռ ի ծածուկ ամէն պղծութիւն կը գործէին. Հմմտ. Ed. Chabot I. p. 248—249.

2 548ի մօտերն կ'իյնայ Ս. Յիզտիբուզտի նահատակութիւնը ի Դուին, որուն հետ խաչ հանուող երկու մահապարտներէն մին էր "ի ծողովոյն" Խուժկաց. Վարք եւ վկայաբ. Բ. 129։

3 Հմմտ. Գ. Տէր-Մկրտչեան, Գրիգոր Մանաճիհր Ռաժիկ. Միհրան տոհմից. Վաղարշապատ, 1902, 8° էջք 26։

վոյ պղծութեան իւրեանց: Ածին եւ վարդապետս՝ առաջնորդ կորստեան ինքեանց, որք եկեալ ձեռնարկեցին զապականութիւն իւրեանց բերելով ի սուրբ եւ ի ճշմարիտ հաւատ մեր. եւ պատրեցին ի ժողովրդականաց ոգիսաց զարս եւ զկանայս 1. հաղորդել հաւատոյ յաղտեղութեան աղաւթից նոցա. 2. տանել հաց ընծայի ի տեղի անաւրէնութեան նոցա. 3. ընդունել ի ձեռաց նոցա հաղորդութիւն իբրեւ յուխտէ նուիրաց Պաւղիկենաց. 4. յանդգնեցան տալ զիւրեանց ջնջագիր կնիք անկնիք մանկանց ժողովրդեան մերոյ՝ առ ի մեռանել նոցա առանց մկրտութեան զմահն յաւիտենական. եւ 5. զգողս եւ զպոռնիկս եւ զայլ մնասակարս, զոր մեք արտաքոյ եկեղեցւոյ եւ աւրհնութեան առնէաք եւ չհամարէաք արժանի սրբոյ հաղորդութեանն, երթային առ նոսա եւ նոքա ընդունէին յիւրեանց ի պիղծ եւ յանաւրէն աւրհնութիւնն եւ հաղորդութիւն ժողովարանին՝ հակառակ մեզ: Զայս աղէտ հոգեւոր տեսանելով ի նոցանէն, համայք՝ թէպէտ եւ անագան, ի վերայ պատճառող սուտութեան նոցա, զի կեղծաւորութեամբ ունելով զանուն քրիստոնէութեան եւ ուրանան զճշմարտութիւնն: Իսկ մեր ոչ կարացեալ համբերել այսպիսի չար գործոց նոցա, համաւրէն ամենեքեան արարաք զգիրս զայս... քանդեալ աւե-

---

Մտադրութեան արժանի է որ Մանանճիհր Խուժիկ Նեստորական վկայ մը կը թուի, որով մասնաւորապէս յարգութեան արժանացած է. Հմմտ. էջ 16:

1 Ի "Թղթին մեղադրութեան առ եպիսկոպոսունսն" կը գրէ Ներսէս. "վասն անիծեալ Խուժկաց Նեստորականաց, որ եկեալ բնակեցան յաշխարհիս մերում պատճառաւ վաճառաշահութեան, եւ այժմ չարահնար պղծալից անիծաբեր արուեստիւ իւրեանց ցոգխս մեր ապգեցին. մինչեւ իւրեանց պղծութեան հաւատոյ առաջնորդ [illegible] ա-ծեալ", Գիրք Թղթ. 70:

ընցաք զտեղի ապաւէնի անաւրէնութեան նոցա, եւ բարձաք ի մէնջ գիշերայինն զայն խաւար„[1]:

Ներսէս Բ. որչափ ալ ջանաց արմատախիլ ընել ասոնց հետքն Հայաստանէն սահմանելով ամենեւիմբ մի վիճել ընդ նոսա հակառակութեամբ, այլ հեռանալ ի նոցանէն արդարեւ որպէս ի թշնամեաց Քրիստոսի Աստուծոյ„, եւ կարգալով նզով այն ամէնուն վրայ որ "խորհիցի բանիւ եւ կամ գործով հաւանել երբեք միաւանդամ չինութեան քանդման աւերեցելոյն միաբանեալ Նեստորիանոսաց„ եւն, այսու հանդերձ չյաջողեցաւ բոլորովին հետախաղաղ ընել, որոնք Ը. դարուն ուրիշ անկիւն մը յերեւան ելան կրկին. այս մասին կը գրէ Յովհ. Օձնեցի իւր Ընդդէմ Պաւղիկեանց ճառին մէջ. "...նախկին մծղնէութեան պայղակենութեան խնչերանք, որք խրատեալք եւ ոչ իմաստնացեալք ի Ներսիսէ (Բ. Աշտարակեցւոյ) կաթողիկոսէ զկնի նորա մահուանն խուսեալք հոգան ղօղեցան յոլորտս ուրեք աշխարհիս մերոյ[2]„: Եւ ապա ԺԱ—ԺԲ դարուց մէջ Մագիստրոսի[3] եւ Ներսէս Շնորհալւոյ ժամանակ "Արեւորդեաց„ անուան տակ:

Ինչպէս Հայաստան նախ ի Դուին, նոյնպէս Վրաստան առաջին անգամ Տփղիս շահաստանին մէջ հաստատած էին խուժիկները ժողովարան. "Զ. դարուն, կը գրէ Կաուլէն, Վրաց եկեղեցին

---

1 "Ու խտ միաբանութեան Հայոց աշխարհիս„ եւն. Գիրք Թղթ. էջ 72-73: — Նզովի ձեւեր եւ այլ որոշումներ այս մասին տես անդ. էջ 76—77 "Որոշումն Նեստորականացն ի սրբոյ եկեղեցւոյ„:

2 Մատենագր. 39:

3 Մատագրութեան արժանի է որ Մագիստրոս Արեւորդւոց ծագման համար կը գրէ. "Ահա եւ այլ ոմանք ի Զրադաշտ մոգէ, մոգք պարսկականք են այսմ ի նոցանէ դեղձացեալ Արեւորդիացւոց, զոր Արեւորդիս անուանեն եւ ահա են յայդմ գաւառի (ի Միջագետս) բազումք, եւ

կրեց տեւական ազդեցութիւն Ասորիներէն։ Ասորի քարոզիչները մեծապէս նպաստեցին կրօնաւորական կենաց վերածնութեան, սակայն նաեւ Մանիքեցի քարոզիչներ մուտ գտան ի Վիրս Ասորիքէն, եւ իրենց աղանդն տարածելու համար ժողովարան մը հաստատեցին հոն։ Վերջինքս սակայն չարաչար հալածուեցան, թէեւ իրենց գնոստիկեան գրութիւններն ձգեցին հոն եւ այսու ոչ սակաւ վնաս հասցուցին[1]„։ Դժբախտաբար անյայտ է մեզի Կատուլէնի աղբիւրն վերջին տողերուս համար։

Թէ ինչ մատեաններ եւ երբ թարգմանուեցան, կը լռուի. սակայն կարելի է ամբողջացընել տեղեկութիւնս Սամ. Անեցւոյ (էջ 76—77) եւ Կիր. Գանձակեցւոյ (էջ 29) Պատմագրութիւններէ, որոնք կը պատմեն թէ "Ի Ժ ամի Տեառն Աբրահամու„ կամ ըստ Սամուէլի՝ փրկչական 590 եւ Հայոց ԼԷ թուին "եկին ի Հայս ասորիք ոմանք արք քաջաբանք եւ կամէին սերմանել զաղանդն Նեստորի, եւ նզովեալք հալածեցան։ Բայց ոմանք ընկալան. նոքա թարգմանեցին զնոցա սուտ գիրս, զԳորտոսակ, զԿիրակոսակ, զՊօղոսի տեսիլն, զԱդամայ ապաշխարութիւնն, զԴիաթէկն՝ զՄանկութիւն Տեառն, զՍեբիոս (Կէր.՝ զԵբիոս) եւ զՃիւն օրհնութեան. եւ զանթարչելի մատեանսն եւ Աւետարանի մեկնութիւն զՄանեայ. եւ որ հաւատայ նոցա՝ նզովի յուղղափառացն„։

Ասոնց գալն ըստ այսմ պատահած է ի Հայս Զ. դարու երկրորդ կիսուն, թէեւ տրուած թուա-

---

ինքեանք քրիստոնեայք զինքեանս յայտնապէս կոչեն. բայց թէ որպիսի մոլորութեամբ եւ անառակութեամբ վարին, գիտեմք՝ զի ոչ ես անտեղեակ„։ Թուղթ առ Կոմնոզէնոսն Ասորւոց. հմմտ. Հանդ. Ամս. 1896, էջ 13. Ի հարկէ հոս "Ջրադաշտ մոգ„ բացատրութիւնն յընդհանուրն պէտք է առնուլ, իբրեւ ակնարկուած ասոնց պարսկական ծագումը։

[1] Ի Kirchenlexikon, VI, 562։

կանոն չէ ճիշդ բառ ամենայնի: Հաւանականաբար այս դարուն անցան Հայաստանէն նաեւ Վրաստան եւ նոյն "Նեստորի", այս է Մանիքեցւոց աղանդն հոն ալ սերմանեցին եւ գնոստիկեան վարդապետութեամբ գրուած յիշեալ մատեաններն թարգմանեցին վրացերէն: Այսպէս թէ այնպէս Խուժիկ Նեստորականք բոյն դրին Վրաստան, եւ երկրին անհաստատ կառավարութեան օրերուն աճեցան եւ տարածեցին իրենց ամբարիշտ ուսումը: Այնպէս որ Կիւրիոն զանոնք ի զօրութեան գտաւ ի Վիրս եւ զանոնք արտաքսելու, անոնց ազդեցութիւնը ջնջելու անհրաժեշտ հարկին առջեւ հրատարակեց ահագին կռիւ մը, որ թէեւ տեւեց տարիներ, բայց արդիւնքն եղաւ շահաւէտ եւ ելքն յաղթական:

Ներսէս Բ. իրմէ կէս դար յառաջ այս կռուի մէջ հետեւած էր խիստ, անզիջանելի ընթացքի մը: Կիւրիոն չուզեց այս ընթացքն բռնել, որ թէեւ իւր կողմանէ հանդուրժողութեան առհաւատչեայ մ'էր, բայց ոչ շատ խոհեմ բան մը իւր դարուն եւ առ եղեռանէ իրեն:

Խուժիկ Նեստորականք թէեւ աղանդաւոր էին, այլ քրիստոնեայ միանգամայն, կը խորհէր Կիւրիոն, հետեւաբար անոնք, որոնք սրտիւ "զիւրեանց զհաւատն եւ զկրօնան կը նզովեն եւ ուղիղ կրօնը կը խոստովանին", կարելի էր առանց դեդեւելու ընդունիլ ի ծոց կաթողիկէ եկեղեցւոյ[1]: Բայց հօս մտատանջութիւն պատճառեց իրեն դարձողներու մկրտութեան խնդիրը: Խուժիկ Նեստորականք, ինչպէս Ներսէս Բ.ի թուղթը կը ցուցնէ, "կեղծաւորութեամբ եւեթ ունէին զանուն քրիստոնէութեան", առանց հաւատալու ի սրտէ Ս. Երրորդութեան եւ Քրիստ. հաւատալեաց, որով իրենց տուած մկրտութիւնն կը կորսնցնէր վաւերականութեան կնիքը. եւ արդեամբք ալ անվաւեր

---

[1] Ս.ՐՐՏ. 1902, էջ 567:

համարած էր Ներսէս։ Ի՞նչպէս ընթանալ այս տարակուսի մէջ. կրկի՞ն մկրտել, թէ պարզապէս դաւանութիւն խնդրելով, խնդիրն լուծուած համարիլ[1]։

Այս անորոշութեան մէջ կը գումարէ Կիւրիոն եպիսկոպոսաց ժողով մը, եւ կ'առաջարկէ խնդիրն։ Կ'երեւայ թէ լուծումն անհնարին կ'ըլլայ. եւ կ'որոշուի հարցընել ի Հռոմ քահանայապետին եւ անոր խորհուրդն եւ հրահանգն խնդրել այս մասին։

Այս ժամանակներս Հռոմ յաթոռն Պետրոսի կը բազմէր Մեծն Գրիգոր Ա. (590—604) քահա-

---

1 Է. դարուն ընդհանուր յուզուած խնդիր է Հերետիկոսաց մկրտութեան հարցը. Նշանակալից է Տիմոթէոս երէց Կոստանդնուպոլսեցւոյ գրութիւնն այս նկատմամբ (Ցուցակ հերետիկոսաց. Migne, P. gr. 86, 72–73), ուր երեք տեսակ հերետիկոսութիւն կը զանազանուի (հմմտ. եւ վարը Գր. Քահանայապետի թուղթը). առաջնոյն կը վերաբերին անոնք, որոնք պէտք են վերստին մկրտուիլ։ Բ.ին անոնք զորոնք եկեղեցին կ'ընդունի ի հաղորդութիւն Ս. Խորհրդոց պարզ օծմամբ սուրբ միւռոնի։ Գ. խումբն կը կազմեն անոնք, որոնք արդէն եկեղեցւոյ մէջ կը նկատուին եւ ուղղափառութեան համար միայն իրենց մոլար վարդապետութեան հերքում կը պահանջուի առանց մկրտութեան եւ օծման։ Հակաքաղկեդոնական Հայք վերջին երկու կէտերու մէջ համակարծիք չէին. ոմանք այսպիսեաց մկրտութիւնն վաւեր կը համարէին, եւ այլք անվաւեր։ Եւ Տիմոթէոսի ըսածն կը ստուգուի հայ մատենագրութենէն. տեսանք վերագոյն, թէ Վրթանէս Քերթող եւ Դունոյ 607ի ժողովն Քաղկեդոնականներն, որոնք դաւանութեամբ միայն կը զանազանուէին, վերստին մկրտել կու տային. եւ նոյնը դեռ Ժ. դարուն կը շարունակուէր։ Թէեւ ի տեսականին ուրիշ էր Հայոց վարդապետութիւնն այս մասին. այսպէս Մխիթար Գոշ իւր “վասն Արիոսականաց եւ այլոց հերձուածողացն, զի յորժամ զղջանան„ Աղօթքին մէջ կ'ենթադրէ նման “օծում սուրբ իւղով„ եւ աղօթքներ, առանց մկրտութեան, մինչեւ անգամ ծանուցանելով թէ Նեստորի եւ Եւտիքէսի աղանդէն դար-

նայապետն[1], որ իւր բազմամեայ նուիրակութեան օրերուն ի Բիւզանդիոն, քաջ ծանօթացած էր արեւելքին, եւ յետոյ, երբ քահանայապետ կարգուեցաւ, իւր թղթակցութիւններով Անտիոքայ, Մելիտինոյ, Երուսաղեմի եւ այլ աթոռներու հետ հռչակ հանած էր Արեւելք. որ նաեւ աշխատեցաւ մանաւորապէս Հռովմայ եկեղեցւոյն ազդեցութիւնն տիեզերական ընել այս կողմերը. առ այս տարածելով իւր խնամքն յատկապէս արեւելեան միանձանց եւ ուխտաւորներու վրայ։ Ոչ միայն Սինայի միանձանց հետ թղթակցութեան մէջ էր եւ կը խաւրէր անոնց նպաստ, այլ եւ յամի 600 խաւրեց Պրոբոս անուն աբբայ մը Երուսաղէմ, պատուէրով, որ հաստատէ հոն ուխտաւորաց համար հիւրանոց[2]։

Կ'երեւայ մինչեւ Վրաստան հասած էր Քահանայապետիս հռչակը Երուսաղէմի ուխտաւորներու միջոցաւ. եւ Կիւրիոն հմայուած անոր անունէն, խորհած է գրել ուղղակի՝ նամակով։

Թէ եւ Կիւրիոնի առ Գրիգոր թղթերն չեն հասած մեզի, ուսկից թերեւս լուէինք ուրիշ մանրամասնութիւններ ալ, սակայն բովանդակութիւնն ծանօթ է Գրիգորի պատասխանէն, որուն համաձայն թղթերն կը խաւրուէին Երուսաղէմի վրայէն, բայց անյայտ պատճառով մը ուրիշ իրաց հետ Երուսաղէմ կը կորսուէին. եւ Կիւրիոնի խնդիրն կը

ձողներն վերատին օծել պէտք չկայ. թող թէ մկրտել. Համմ. Ցուցակ հայ. Ձեռ. Տփղիսի. (Թ. 27.) էջ 29։ Հերետիկոսաց մկրտութեան մասին ընդհանրապէս համմ. P. A. P. La rebaptisation des iatins ches les grecs ի թերթին Revue de l'Or. Chr. VII. 1902, p. 618–646 եւն

1 Գրիգոր Մեծի մասին համմ. F. Homes Dudden, Gregory the Great. His place in history and thought. 2. հատ. London, 1905, 8°, XVI+476 եւ VI+473 էջք։

2 L. Bréhier, L'Eglise et l'Orient au moyen age. Paris, 1907, p. 15–16.

ներկայանայ Քահանայապետին Թղթատարներու բերանացի աւանդութեամբ. այսինքն է, թէ պէտք է մկրտել “Նեստորականութենէ„ դարձողները: Բայց դժբախտաբար Գրիգորի սխալ բացատրուած է Կիւրիոնի միտքն եւ “Նեստորականութեան„ նշանակութիւնը, որով պատասխանն ալ — ապահովապէս — անգոհացուցիչ եղած է:

Գրիգոր Մեծի պատասխանն պահուած է իւր նամականներու հաւաքածոյին մէջ[1], զոր լատին բնագրով ի մէջ կը բերենք հոս ամբողջութեամբ.

Gregorius Quirico Episcopo, et ceteris in Hiberia catholica ecclesia episcopis.

Quia caritati nil longe est, quos dividunt loca jungat epistola. Lator itaque praesentium ad beati Petri apostolorum principis ecclesiam veniens fraternitatis vestrae se asseruit ad nos epistolas accepisse easque in Hierosolymorum urbe cum rebus quoque aliis perdidisse. In quibus, sicut ipse ait, studuistis inquirere, sacerdotes ac plebes quae Nestorianae haereseos errore confusae sunt, cum ad matrem electorum omnium catholicam ecclesiam revertuntur, utrum babtizari debeant, an certe solius verae fidei confessione eiusdem matris ecclesiae visceribus adjungi.

Et quidem ab antiqua patrum institutione didicimus, ut quilibet apud haeresim

---

1 Gregorii I. Papae Registrum Epistolarum (Ed. L. M. Hartmann ի Monumenta Germaniae) T. II. Pars II. Berolini 1890 (1899), p. 324—327

in Trinitatis nomine babtizantur, cum ad sanctam ecclesiam redeunt, aut unctione chrismatis aut impositione manus aut sola professione fidei ad sinum matris ecclesiae revocentur. Unde Arrianos per impositionem manus occidens, per unctionem vero sancti chrismatis ad ingressum ecclesiae catholicae oriens reformat. Monofisitas vero et alios ex sola vera confessione recipit, quia sanctum babtisma, quod sunt apud hereticos consecuti, tunc in eis vires emundationis accipit, cum vel illi per impositionem manus Spiritum sanctum acceperint vel isti per professionem verae fidei sanctae et universali ecclesiae visceribus fuerint uniti. Hi vero haeretici qui in Trinitatis nomine minime babtizantur, sicut sunt Bonosiaci et Cataphrigae, quia et illi Christum dominum non credunt, et isti sanctum Spiritum perverso sensu esse quendam pravum hominem Montanum credunt, quorum similes multi sunt alii, cum ad sanctam ecclesiam veniunt, baptizantur, quia baptismum non fuit, quod in errore positi in sanctae Trinitatis nomine minime perceperunt.

Nec potest hoc ipsum babtisma dici iteratum, quod, sicut dictum est, in Trinitatis nomine non erat datum. Nestoriani vero quia in sanctae Trinitatis nomine baptizantur, sed eos iudaicae perfidiae similes

incarnatione unigeniti suae hereseos error obscurat, ad sanctam ecclesiam catholicam venientes de verae fidei firmitate et confessione docendi sunt, ut unum eumdemque Dei et hominis filium, Deum dominum Jesum Christum credant, ipsum existentem in divinitate ante saecula, et ipsum factum hominem in fine saeculorum, quia „Verbum caro factum est et habitavit in nobis". Verbum vero carnem dicimus factum non inmutando quod erat, sed suscipiendo quod non erat. Incarnationis enim suae mysterio unigenitus patris nostra auxit, sua non minuit. Una itaque persona est verbum et caro, sicut ipse ait: „Nemo ascendit in caelum, nisi qui descendit de caelo, filius hominis". Qui filius Dei in caelo, erat filius hominis, qui loquebatur in terra. Hinc Johannes ait: „Scimus, quia filius Dei venit, et dedit nobis sensum". Qui nobis quem sensum dederit, illico subjungit: „Ut cognoscamus verum Deum". Quem hoc loco verum Deum insinuat, nisi patrem omnipotentem? Sed quid etiam de omnipotente filio sentiat, adjungat: „Et simus in vero filio eius Jesu Christo". Ecce ait verum Deum patrem, verum filium ejus Jesum Christum. Quem verum filium quid esse sentiat, apertius ostendat: „Hic verus Deus et vita aeterna". Si igitur juxta errorem Nestorii

alius verbum atque alius esset homo Jesus Christus, qui verus est homo, utique verus Deus non esset et vita aeterna. Sed unigenitus filius verbum ante saecula factus est homo. Hic est ergo verus Deus et vita aeterna. Certe cum hunc sancta virgo conceptura esset et loquentem ad se angelum audiret, ait: „Ecce ancilla Domini, fiat sicut dicis". Quae cum eum concepisset, et ad Elisabeth cognatam suam pergeret, ab eadem Elisabeth protinus audivet: „Unde ego digna, ut mater domini mei veniat ad me"? Ecce eadem virgo et ancilla Domini dicitur et mater. Ancilla enim Domini, quia verbum ante saecula unigenitus aequalis patri, mater vero, quia in eius visceribus ex sancto Spiritu qua eius carne factus est homo. Nec alterius ancilla, alterius mater, quia dum unigenitus Dei existens ante saecula ex eius utero natus est homo, investigabili miraculo facta est stancilla hominis per divinitatem et mater verbi per carnem. Non autem prius in utero virginis caro concepta est et postmodum divinitas venit in carne, sed mox verbum venit in utero, mox verbum servata propriae virtute naturae factum est caro. Et perfectus homo, id est in veritate carnis et animae rationalis, natus est per uterum virginis filius Dei. Unde et unctus prae participibus dicitur, sicut psalmista ait:

„Unxit te Deus Deus tuus oleo laetitiae prae consortibus tuis". Unctus quippe est oleo, dono videlicet Spiritus sancti. Sed prae consortibus unctus est, quia omnes nos prius peccatores homines existimus et postmodum per unctionem sancti Spiritus sanctificamur. Ipse autem qui existens Deus ante saecula per sanctum Spiritum in utero virginis homo conceptus est in fine saeculorum, ibi ab eodem Spiritu unctus est, ubi conceptus. Nec ante conceptus est et postmodum unctus est, sed hoc ipsum de Spiritu sancto ex carne virginis concipi a sancto Spiritu ungueri fuit. Hanc igitur veritatem nativitatis eius, quicumque a perverso errore Nestorii revertuntur, coram sancta fraternitatis vestrae congregatione fatentur eundem Nestorium cum omnibus suis sequacibus ac reliquas hereses anathematizantes. Venerandas quoque synodos quas universalis ecclesia recipit se recipere et venerari promittant, et absque ulla subitatione sanctitas eos vestra servatis eis propriis ordinibus in suo coetu recipiat, ut dum et per sollicitudinem occulta mentis eorum discutitis atque eos per veram scientiam recta, quae tenere debeant, docetis et per mansuetudinem nullam eis contrarietatem vel difficultatem de propriis suis ordinibus facitis, eos ab antiqui hostis ore

rapiatis et tanto vobis apud omnipotentem Deum aeternae gloriae crescat retributio quanto multos colligitis, qui vobiscum in Domino sine fine glorientur. Sancta itaque Trinitas orantes pro nobis sua vos protectione custodiat vobisque in amore suo dona adhuc multipliciora concedat.

Data die Xa. kalendarum Juliarum indictione IV.

*Թղթոյս կարեւոր բովանդակութիւնն թարգմանաբար է հետեւեալը․*

*«Գրիգոր Կիւրիոնի՝ եպիսկոպոսի եւ այլոց եպիսկոպոսաց Կաթողիկէ եկեղեցւոյն որ ի Վիրս*[2]*։*

*Որովհետեւ սիրոյ առջեւ հեռաւոր բան չկայ, զանոնք, որ տեղեաց բացարձակութիւնք կը բաժնէ, թուղթը կը յօդէ։ Առաջիկայիցս բերողը (թղթաբերը) գալով առաքելոց գլխաւորին Պետրոսի եկեղեցին, պատմեց թէ Ձեր Եղբայրութիւնն առ մեզ թղթեր յանձնած էր իրեն, եւ թէ անոնք Երուսաղէմ ուրիշ իրաց հետ կորսուած են։ Որոնցմով, ինչպէս ըսաւ նա, կը խնդրէք եղեր տեղեկանալ, թէ արդեօք այն քահանայք եւ ժողովուրդք, որոնք Նեստորի աղանդոյն մէջ ինկած են, երբ դառնան առ մայրն ամենայն ընտրելոց, յեկեղեցին կաթուղիկէ, պէ՞տք են մկրտուիլ թէ պարզապէս միայն ճշմարիտ հաւատոյ դաւանութեամբ նորին մօրն եկեղեցւոյ որդւոց թուոյն մէջ խառնուին»։ Առ այս կը պատասխանէ Ս․ Գրիգոր․ «Հին Հայրերէն*

---

[1] *Ձեռագիրք ունին* Quirio, Quiricho, Quirioca, Quirigo, Quirico.

[2] *Ձեռագիրք ունին* Hiberia, Iberia, Hibernia, Ibernia.

սորված ենք որ անոնք որ հերետիկոսութեան մէջ յանուն Ս. Երրորդութեան մկրտուած են, երբ ուզեն ի ծոց եկեղեցւոյ դառնալ, կ'ընդունուին կամ օծմամբ միւռոնի (unctione chrismatis), կամ դրութեամբ ձեռաց եւ կամ պարզ դաւանութեամբ հաւատոյ։ Այսպէս Արեւմուտք Արիանոսներն կ'ընդունուէին դրութեամբ ձեռաց, իսկ Արեւելք օծմամբ միւռոնի։ Եւ Միաբնեայք եւ այլք պարզապէս ճշմարիտ դաւանութեամբ. վասն զի սուրբ մկրտութիւնն, զոր այնպիսիք ի հերետիկոսութեան ընդունած են, ի նոսա կը ստանայ զօրութիւն սրբացուցանելոյ, երբ անոնք ճշմարիտ հաւատոյ դաւանութեամբ սուրբ եւ ընդհանրական Եկեղեցւոյ որդւոց հետ կը միանան։ Բայց այն հերետիկոսները, որոնք յանուն Ս. Երրորդութեան չեն մկրտուիր, ինչպէս Բոնոսեանք (Bonosiaci) եւ Կատափրիւգք (Cataphrigae), (որոնք Քրիստոսի չեն հաւատար եւ զՍ. Հոգին զՄոնտանոս կը համարին,) որոնց նմանք շատ են, երբ գան ի ծոց եկեղեցւոյ, պէտք են մկրտուիլ, վասն զի այսպիսեաց մկրտութիւնն մկրտութիւն չէ, քանի որ յանուն Ս. Երրորդութեան չի տրուիր։ Գալով Նեստորականաց, անոնք վասն զի յանուն Ս. Երրորդութեան կը մկրտեն, բայց Հրէից անհաւատութեան նմանելով Միածնին մարմնաւորութեան չեն հաւատար, երբ դառնան ի սուրբ կաթուղիկէ եկեղեցի, պէտք են լաւ մը սորվիլ ճշմարիտ հաւատոյն ստուգութիւնն եւ դաւանութիւնն„։ ...Հոս Սրբազան Քահանայապետը կը դնէ համառօտիւ Նեստորի մոլորութեան ցրումն եւ կաթողիկէ վարդապետութիւնն Մարդեղութեան նկատմամբ, իբրեւ ուղեցոյց Վրաց կաթողիկոսի ձեռքը. զոր աւելորդ կը համարինք ի մէջ բերել։ Կը թարգմանենք նաեւ թղթոյն վերջին մասն որ նոյնպէս արժանի մտադրութեան է. ահաւասիկ.

“Արդ անոր (Քրիստոսի) ծննդեան այս ճշմարտութիւնը, անոնք որ Նեստորի թիւր մոլորութենէն

կը դառնան Ձեր Եղբայրութեան սուրբ ժողովոյն առջեւ դաւանին, եւ զնոյն ինքն զՆեստոր ամէն անոր հետեւողներովն եւ միւս հերետիկոսութիւններն նզովեն: Խոստանան ընդունիլ եւ յարգել այն ամէն սուրբ ժողովներն, զորս ընդհանրական եկեղեցին կ'ընդունի. եւ առանց որ եւ իցէ տարակուսի Ձեր Սրբութիւնը կրնայ ընդունիլ իւր ժողովրդեան մէջ զանոնք՝ պահելով անոնց յատուկ կարգերն (աստիճաններն), որպէս զի թէ հոգաբարձութեամբ անոնց մնաց ծածուկները պարզես, եւ թէ անոնք ի ձեռն ճշմարիտ գիտութեան այն ամէն ուղղութիւններն, զորոնք պէտք են պահել, սորվեցընեն եւ թէ քաղցրութեամբ անոնց որ եւ իցէ հակառակութիւն եւ դժուարութիւն չյարուցանես իրենց յատուկ կարգերու (աստիճ.) նկատմամբ, զանոնք հին թշնամւոյն բերնէն յափշտակես. եւ այնչափ Ձեր՝ ամենակարող Աստուծոյ քով յաւիտենական փառաց վարձքը կ'աճի, որչափ որ շատերը ժողվես, որոնք Ձեզի հետ ի Տէր անվախճան պիտի փառաւորուին: Ասոր համար Ս. Երրորդութիւնը իւր պաշտպանութեամբ զձեզ պահպանէ, եւ ձեզ ի սէր իւր այժմէն իսկ բազմապատիկ տուրս շնորհէ: — Տուեալ ի Ժ. աւուր Կաղանդացն Յուլեայ. ի Դ. Ինդիկտիոնի,:

Թղթոյս գրութեան տարին է 601, ամիսն եւ օրն տարակուսական է՝ ձեռագրաց անմիաբանութեան պատճառաւ. գրուած է Յունիսի կամ հաւանականագոյն եւս Յուլիսի 22ին:

Թէ թուղթս գրուած է Վրաց Կիւրիոնին, եւ ոչ Սպանիա համանուն անձի մը մեզի համար հոս դեդեւելու հիմ չկայ բնաւ:

Վրաց Կաթողիկոսը ստիպուեցաւ այս հրահանգի համաձայն ընթանալ: Սրտիւ զղջացողներն որոշեց ընդունիլ առանց կրկին մկրտութեան: Մինչեւ անգամ անոնցմէ զոմանս ըստ հրամանին բարձրացուց սուրբ աստիճաններու:

Այսպէս կաթողիկոսութեան երրորդ տարին (601) Կիւ անուն անձ մը, որ ըստ Ուխտ. 6. կը թարգմանուի "խստութիւն"[1], կը ձեռնադրէ եպիսկոպոս կամ "օտարատեսուչ" այս ինքն աղանդաւոր եպիսկոպոս" (Ուխտ. 5), խաբուելով անոր կեղծաւորութենէն, որուն հետ թերեւս յառաջուընէ ծանօթութիւն ալ ունէր։ Կիւ, ինչպէս Ուխտանիսէն (5) կ'իմանանք, "եկեալ էր առ նա յաշխարհէն Հոռոմոց՝ ի գաւառէն Կողոնիայ, բնակութեամբ ի գեղջէն որ կոչի Ջուատրիմայ[2], մերձ ի Նիկոպոլիս, եւ էն երկոքեան յեզր Գայլ գետոյ"։ Անկէ կը հետեւի թէ Կիւ ծանօթ էր յոյն, անշուշտ նաեւ հայ եւ վրացի լեզուաց, եւ այսպիսի օգնական մը շատ կարեւոր էր Կիւրիոնի։ Բայց կարծուածին պէս չեղաւ։ Ասիկա խուժիկ Նեստորական էր. եւ երբ Կիւրիոն կը հալածէր զանոնք Վրաստանէն ինք զինք քրիստոնեայ ուղղադաւան կեղծեց. եւ ձեռնադրութիւն խնդրեց, զոր ընդունելով՝ կրկին փոխածին դարձաւ։ Փոխանակ կաթողիկոսին հետ միաբան ձեռն ի ձեռն ուղղութիւնը քարոզելու՝ կը միաբանի իրեն համամիտ աղանդաւոր խուժկաց հետ եւ "Նեստորականո-քնեան" ջատագով կը հանդիսանայ։ Շուտով բարեբախտաբար յերեւան կ'ելլէ կեղծիքը։ Կիւրիոն անյապաղ եպիսկոպոսաց ժողով կը գումարէ,

1 Կէս անուան այս թարգմանութիւնը բառերու երբայական իմաստն է. Համմ. Brosset, Deux hist. 279, n. 2։

2 Ջուատրիմա անծանօթ վայր մը կը համարին Brosset (Deux hist. II. 279 n. 3.) եւ Cumont (Stud. Pont. II. p. 312). արդեամբք ալ չի տեսնուիր աշխարհացոյցներու վրայ։ Եթէ ներելի է փոքր ուղղագրութիւն մը Ուխտանիսի կամ Պտղոմեայ քով, կարելի էր համեմատել տեղս Պտղոմեայ Ζωπαρισσοςի հետ, որ Սեբաստիոյ եւ Մելիտինէի մէջերը կը նշանակուի (Պտղոմ. Ե. 6, 21)։ Երկու անուանցս մօտաւորութիւնն ըստ ձայնի եւ աշխարհագրական դիրք անհնարին չի ցուցըներ համեմատութիւնս։ Համմ. V. Chapot անդ 355, ծն. 2։

մանր կը քննէ իրողութիւնն եւ միաձայն եպիսկոպոսաց հետ կը մերժէ կարգընկեց։ Այսպէս կը գրէ այս մասին Մովսէս Կաթողիկոսին. "Բայց եւ հանդերձ եպիսկոպոսօք իմովք եւ լաւօք աշխարհիս խորհուրդ արարի օրէնս համարելով ոչ արգելուլ ի գալոյ զամենեսեան զայնոսիկ՝ որք ի զղջումն գան եւ յապաշխարութիւն։ Իբրեւ իմացաք զնորա չարութիւն, դարձեալ մերժեցաք ի մէնջ եւ արգելաք զմարդիկ ոչ տալ ողջոյն նմա" եւ քիչ վերջը. "որպէս գրեցաք վերագոյն, վաղ մերժեցաք զնա ի մէնջ, եւ հրամայեցաք մերոց ոչ ընդունել զնա"։ Նոյնը ապա Աբրահամ Կաթողիկոսին ալ պատմելով կ'ըսէր. "Եւ իմ զնորա ընդունելն վասն այսր իրաց եղեւ, զի զիւրեանց զհաւ·ատն եւ զկրօնսն նզովեցին եւ զմերս խոստովանեցին։ Եւ զի վասն իւրեանց չուառութեան դարձեալ անդրէն յիւրեանց չարութիւն դարձան, նզովեցաք, որպէս արժան էր զանհաւատս, եւ ի մեր եկեղեցւոյ ի բաց հանաք"։

Մինչ դեռ Կիւրիոն Նեստորականաց խընդրով կը զբաղէր, ամբաստանութիւններ կը հասնին Հայոց Մովսէս Կաթողիկոսին ականջը, թէ Կիւրիոն Խ. Նեստորականաց հետ հաղորդութեան մէջ մտած է եւ անոնց եպիսկոպոսներ կը ձեռնադրէ։ Ուխտանէս Ցուրտաւայ Մովսէս եպիսկոպոսի կու տայ այս գուշակութիւնը, սակայն այս մասին որ եւ իցէ յիշատակութիւն չըլլալով ոչ Մովսէս եպիսկոպոսի, ոչ Կաթողիկոսի եւ ոչ Կիւրիոնի թղթերու մէջ՝ անհաւանական կը կարծենք։

Ծերունի Կաթողիկոսն այս լուրերը լսելուն պէս կը հաւատայ միամտութեամբ, եւ իրն "անդիտութեամբ" գործուած համարելով, թուղթ մը կը փութայ գրել առ Կիւրիոն, զոր կ'առաքէ "ի ձեռն Ստեփաննոս եպիսկոպոսի, որ էր ի տան իւրում" (Ո–խր. 7)։ Թուղթս գրուած կ'երեւայ 601/602ին։

Մովսէս կը զգուշացընէ զԿիւրիոն — “իւր սիրելի որդեակը„ — հերձուածողներէ, եւ մեղմով կը մօտենայ բուն խնդրոյն. “բայց արդ, կ'ըսէ, լսեմ թէ հերձուածք գոն ի քեզ, եւ սակաւ ինչ հաւատացի[1]. բայց հաւատացի, վասն զի ի հաւատարիմ վկայից եղեւ ծանուցեալ։ Եւ լուաք այսպէս, եթէ այր մի Խուժիկ Նեստորական եկն առ քեզ, եւ ի քէն առեալ ձեռնադրութիւն եպիսկոպոսութեան„ եւն։ Կը յորդորէ ի վերջոյ մերժել եւ նզովել այն Խուժիկ չեպիսկոպոսը[2]։

Որչափ հայրական գորովով համեմեալ էին Մովսիսի խօսքերն, այնչափ ալ որդիական մեծարանօք էր Կիւրիոնի պատասխանը։ “Տէր եւ Վարդապետ եւ Հայր հոգեւոր, որպէս եւ էքդ իսկ„, կը գրէ (Ո–խփ. 13) Մովսիսի համար. եւ տեղն ի տեղն ծանուցանելով իրողութիւնն կը խնդրէ որ ուրիշ անգամներ ալ չզլանայ այսպիսի զգուշացուցիչ թղթեր։ Մտադրութեան արժանի են այս նկատմամբ վեց տարի յետոյ Աբրահամ Կաթողիկոսին ուղղած խօսքերը. “Մինչ Մովսէս օրհնեալ կենդանի էր՝ գրեաց առ իս, թէ չէր պարտ հաղորդել ընդ Խուժիկս, եւ գիտէի թէ արդար է, ըստ նորա հրամանի հեռացուցի զնոսա ի մէնջ„[3]։

Մովսէս իւր թուղթն յատկապէս “Նեստորականաց„ նկատմամբ կը գրէր, եւ անոնց զազիր

---

1 Հմմտ. Ա. Կորն. ԺԱ. 19. “Լսեմ եթէ հերձուածք գոն ի ձեզ, եւ սակաւ ինչ հաւատացի„։

2 Ո–խփ. Բ. 8։ Մովսիսի այս թուղթը ամբողջապէս, ինչպէս՝ եւ Կիւրիոնի պատասխանը պահուած է մեզ Ուխտանէսի (Բ. 8–12, 12–13) քով, վրացերէնէ նոր թարգմանութեամբ։ Պէտք է չեշտել հոս որ Մովսէս Կաթուղիկոս մէկ Թուղթ միայն գրած է առ Կիւրիոն, եւ ոչ “Թղթեր„, ինչպէս սխալմամբ կը գրեն Ասողիկ 84, Մ. Էմին՝ Изслѣд. 156, Հ. Մ. Պոտուրեան ԲԶՄ. 1906, էջ 403։

3 Գիրք Թղթ. 178 = Ո–խփ. 81։

վարդապետութենէն կը զգուշացընէր, թէեւ յընդհանուրն կը խօսէր Քաղկեդոնականաց եւ այլոց մասին ալ, բայց առանց թեթեւ իսկ կասկած յայտնելու, թէ Կիւրիոն անոնց որ եւ իցէ կերպով թէկն կ'ածէ եւն։ Այս իմաստով կարդացած է Կիւրիոն թուղթը, եւ բողոքած, երբ Աբրահամ ուրիշ իմաստներու տարած է. Մովսէս իւր թղթին մէջ, կը գրէ Կիւրիոն, կը խօսէր "վասն զՆեստորականսն ընդունելոյ, այլ ոչ եթէ վասն հաւատոյ ինչ իրաց, թէ չէք ուղղահաւատ, որպէս դուք իսկ գրեցէքն[1]"։ Այս իմաստով կ'իմանայ եւ Վրթանէս Քերդող, որ կը գրէ առ Պետրոս. "Երանելի հայրապետն մեր Մովսէս գրեաց յաշխարհդ հեռանալ ի Խուժիկ չեպիսկոպոսէն խաբէութեանց. առաւելագոյն եւս պարտիմք յանօրէն ժողովոյն Քաղկեդոնի հայհոյութեանց" (հեռանալ, էջ 136)։

Կիւրիոնի այս ընթացքին հետ լիով կը համաձայնին իւր այլ եւ այլ առիթներու մէջ խօստովանածները։ Այսպէս առ Աբրահամ կը գրէ (Գ. Թղ. 167 = Ուխտ. 76). «Եւ որ գրեալ էր (Ձեր) թէ յառաջագոյն երանելի հայրապետն մեր Մովսէս գրեաց առ ձեզ միաբանութիւն յաղագս հաղորդելոյ ձեր ընդ այնոսիկ, ընդ որս չէր արժէն, եթէ վասն Խուժկացն ասէք, մեք յայնժամ ընդ աշխարհի խորհելով՝ հանդերձ եպիսկոպոսօքս աթոռակցովքս իմովք եւ լաւօք աշխարհիս, եւ որպէս արժէնք հրամայեն, ոչ ի բաց ընկենուլ, այլ ընդունել՝ որք դառնան ի չարութենէ ինչ եւ կամ ի հերձուածոց յապաշխարութիւն, այն իրաւք ընդունելութիւն արարաք։ Այլ յորժամ գիտացաք թէ նոքա գլխաւորութիւնն ստութեամբ արարին եւ անդրէն յիւրեանց տիղմն չարութեան դարձեալ կործանեցան, նզովեցաք զնոսա, եւ ի բաց կործանեցաք ի կաթուղիկէ եկեղե-

---

[1] ԱՐՐՏ 1902, էջ 567։

ցուոյ, եւ ի մէնջ քրիստոնէից։ Այժմ նոյա ողջոյն ոչ ոք իշխէ տալ„։ Թէ յիրաւի մերժեց նա Նեստորականները եւ գչեպիսկոպոսը, կը վկայէ Աբրահամ (Գ. Թղ. 194)։

Սակայն հոս քննութեան արժանի կէտ մը կայ. արդեօք Կիւրիոն առաջին անգամ Մովսիսի՞ թղթէն լսեց թէ ի Վիրս խուժիկ Նեստորականներ կան եւ թէ իւր ձեռնադրածն ալ անոնց թուէն է։ Առ այս մեր պատասխանն ժխտական է ըստ որում պատմեցինք արդէն վերը։ Կիւրիոն իմացած էր արդէն իւր սխալմունքը, երբ ընդունեցաւ Մովսիսի թուղթը։ Առ այս ապացոյց է, Կիւրիոնի առ Մովսէս գրած թղթին սա խօսքը "վաղ մերժեցաք զնա ի մէնջ„, ինչպէս եւ բովանդակ թղթին բացատրութեան ոճը։ — Ուխտանէս այլազգ կը հասկնայ մինչեւ ցայժմ խուժկաց մասին ի մէջ բերուածները. իբր թէ Կիւրիոն չհամարձակելով Մովսիսի երախտեաց հանդէպ ապախտաւոր գտնուիլ, ջանաց պատ ի պատ բանիւք համոզել ծերունի կաթողիկոսն թէ հնազանդելով բանծներուն՝ մերժած է գչեպիսկոպոսը, "թէպէտ եւ ի ծածուկ զնա ունէր„ "եւ բնաւ ոչ մեկնէր ի նմանէ„ (Ուխտ. 15) մինչեւ Մովսիսի մահը, իսկ յնուհետեւ աներկիւղ ազատադէմ մէջտեղ հանած։ Աւելորդ է երկար խօսիլ հետեւութեանս ստուգութեան վրայ, որ լոկ անձնական կարծիք է ըստ ախորժանաց շինուած զուրկ որ եւ իցէ բանաւոր հիմէ, որուն կը հակառակի նոյն իսկ Աբրահամ, երբ կը գրէ իւր շրջաբերականին մէջ. "նոյնդ իսկ սուտանուն կացեալ գլուխ եկեղեցւոյն Վրաց, ի նմին ժամանակս Խոսրովու արքայից արքայի որդւոյ Որհմազդի, ընկալեալ ի Նեստորի ուսմանէն եպիսկոպոս զոմն, եւ ի նոյն հայհոյող վարդապետութիւն ընկեալ, յառաջ ունելով զՔաղկեդոնի ախտն, ապա Բեդեր եւ ղոյրն մերժեալ, զի մրուր մեղացն պահեցին„ եւն (էջ 194—5)։

Աւելորդ է նոյնպէս երկար զկայ տանուլ Աբրահամու տողերուն քով. Հայոց Կաթողիկոսն չէր կրնար զանազանել Խուժիկ Նեստորականաց եւ Հռոմոց դաւանութիւններն Կիւրիոն "ի նոյն հայհոյող վարդապետութիւն„ անձնատուր եղաւ, զոր այնպէս չարաչար հալածեց. այս զարմանալի չէ նկատելով ժամանակի ոգին: Նոյն ոգւով կը գրէր նաեւ դարուն հռչակեալ Քերդողն Վրթանէս առ Պետրոս թէ "առաւելագոյն եւս„ քան ի Խ. Նեստորականաց "յանօրէն ժողովոյն Քաղկեդոնի հայհոյութեանցն„ պէտք է փախչիլ:

## ԳԼՈՒԽ Թ.

### Կիւրիոն եւ Մովսէս Ցուրտաւայ եպիսկոպոսը:

Կիւրիոն միշտ երախտագէտ գտնուեցաւ առ իւր բարերարն Մովսէս Կաթողիկոս, եւ ջանաց որչափ հնարաւոր էր Հայոց հետ սէրն եւ միութիւնը անխախտ պահել: Չենք լսեր մինչեւ 605, եօթը տարուոյ անջրպետ, որ եւ իցէ անհամաձայնութիւն երկու ազգաց մէջ. 601/2ին Խուժկաց խնդրոյն առթիւ ծագած դէպքն թիւրիմացութիւն մ'էր լոկ, որ եւ շուտով խափանուեցաւ: Ահա թէ ինչ կը գրէ Կիւրիոն առ Աբրահամ այս նկատմամբ. "Ցառաջագոյն քան զքեզ, որ յայդ աթոռ նստէր երանելին Մովսէս՝ մեծ սէր էր ընդ իս եւ ընդ նա: Եւ ապա եղեւ ժամ մի զի սրտի պակասութիւն եղեւ նորա ընդ իս վասն զՆեստորականսն ընդունելոյ . . .[1]„:

Այսպէս Հայոց հետ միաբան եւ լուսաւորուած Մեծին Գրիգորի եւ Մովսիսի թղթերէն. մինչդեռ ի Վիրս Խուժկաց դէմ մաքառմամբ կը զբաղէր Կիւրիոն, Դուին կը վախճանի Մովսէս (†604): Յաջորդի ընտրութիւնն, ինչպէս տեսանք,

---

[1] Ա. ԲՏ. 1902, 567:

առ ժամ մը անհնարին կ՚ըլլայ եւ ժամանակաւոր տեղապահ կը կարգուի Արթանէս քերդող։ Արթանէս, անհանդարտ անձ մը եւ քաղկեդոնականաց մոլեռանդ հակառակորդ մը, տեղապահութեան առաջին տարին որ եւ իցէ խնդիր չունեցաւ Կիւրիոնի հետ։ Թէ անձամբ ծանօթացած էր սա Կիւրիոնի, անկարելի չէ ենթադրել, ի Դուին ժամանակ մը լաւ կամ գէշ յարաբերութիւն կրնար ունեցած ըլլալ հետը։ Անհամաձայնութեան առիթն սակայն չուշացաւ, կայծն տուաւ Ցուրտաւայ Մովսէս եպիսկոպոսը։

Մովսիսի մասին ընդարձակ տեղեկութիւններ ունինք Ուխտանիսէն (Բ. 36—39), որուն աղբիւրներն ինչպէս այլուր, նոյնպէս հոս անծանօթ են մեզ մասամբ։

«Սա էր ի գաւառէն Տաշրաց, ի դեղջէն Մեհենկերտոյ»[1]։ Ծնունդն Ուխտանիսի (Բ. 7) տուած

---

[1] Ուխտ. Բ. 36։ — Միհէնկէրդ անուն գիւղ մ՚ի Տաշիրս այլուստ անծանօթ է։ Ուշադրութեան արժանի է այս մասին Յակոբ Կարնեցւոյ (ԺԷ դար) «Տեղագիրն վերին Հայոց» (Հրտ. Կ. Կոստանեանց, Վաղարշապատ, 1903, էջ 20), որ նկարագրելով Ներքին Բասենը կը գրէ. «իսկ Ներքին Բասենն է պարոնանիստ, եւ ունի գիւղաքաղաք Խորասան առ յափն Երասխայ. եւ ունի բերդ Ջիւին, Մեհենկերտ եւ Կեչէվան» եւն։ Կը կարծենք թէ Մեհենկերտի վրայ է հոս խօսքը։ Ընդհանրապէս կարեւոր հատուած մ՚է Յակոբ Կարնեցւոյ այս կողման նկարագրութիւնն հայ-վրական յարաբերութեան պատմութեան համար յաջորդ դարերու մէջ. ի մէջ կը բերենք հոս հետեւեալ տողերը. Տեղագիրն կը նկարագրէ Տայքը եւ դրացի գաւառներն՝ իշխանանիստ, Թորթում եւն. «Կայ ի մէջ ձորոյն (Թորթումի), կը գրէ, մեծամեծ վանորայք Վրաց՝ ի գիւղն Խախու, Ոշկ եւ Իշխան, որ յար եւ նման ոչ գոյ նոցա, բայց թէ լինի միայն սուրբ Սոֆի ի Կոստանդինուպօլիս։ Եւ էին բնակիչք երկրիս կէսն հայ ազգաւ եւ կէսն կրօնիւ Վրացի, բայց հայն լեզուաւ խօսէին»։ Վիրք՝ նեղուած

ժամանակագրութեան համաձայն պէտք է զե-տեղել 570ին։

Մատաղ հասակին արդէն՝ կ՚երթայ Ցուրտաւ-քաղաքը՝ եւ հոն եպիսկոպոսարանին մէջ կը

---

1642ին մահմեդականաց բռնութենէն "դարձան յօրէնս Մահմետին,, եւն (էջ 17–18)։

¹ Ցուրտաւայ մասին հմմտ. Հանդ. Ամս. 1907, էջ 125. Ուխտ. 34. Ալիշան՝ Յուշիկք. Ա. 375—76, Brosset, Addit. p. 109, n. 3, Նոյն՝ Deux hist. II. 295–96, n. 2, 297, n. 5. Որովհետեւ յաջորդ տողերուս մէջ բոլոր մեր խօսքը Ցուրտաւայ շուրջը պիտի դառնայ՝ կանխաւ կ՚արժէ ծանօթանալ համառօտիւ քաղաքիս պատմութեան։ Ցուր-տաւ, "որ այժմ (Ժ. դարուն) յորջորջեալ կոչի Գաջենք (Ուխտ. 3, 6, 34, 68), երբեմն էր Գուգարաց "լի եւ ընդար-ձակ մայրաքաղաքը՝ մեծ եւ հաշտակաւոր,, իսկ Ժ դարուն Ուխտանէսի օրով "փոքրեալ եւ չափաւորեալ քաղաքա-գեղ,, այսօր "գրեթէ բոլորովին մոռացեալ,, գիւղ մը, կը գտնուի "հանդէպ լերինն Կաւկասու,, Բողնոփոր գաւառին հարաւային ցածագոյն ծայրն, "յեզրն Դաշտին Վրաց,, "յիւր անուն Գաջենագետ կամ Ցուրտաւագետ,, կոչուած հարաւային կովկասեան լեռներէ իջնող Բոլնաւրի (Բող-նեաց գետ) վտակին հետ խառնուող ձորակնաց գետակին եզերքը, երկու աշխարհաց՝ Վրաց եւ Հայոց "միջասահման,, եւ "սահմանակից ... ականաւոր մեծի մայրաքաղաքին Տփղեաց,, (Ուխտ.), իբրեւ կիսաւուր ճամբով միայն հեռու անկէ։ Վրաց աւանդութեան մը համաձայն քաղաքիս հիմ-նադիրն եղած է Հայկայ եղբօրորդին Քաջ, որուն անուամբ ալ կոչուած է "Գաջենք,,։ Բրոսէ կը ջանայ մեկնել Ցուր-տաւ անունս հայերէն ցուրտ բառէն, որ ենթադրութիւն է լոկ։ Վիրք կը գրեն անունս Ցուրտաւի, Հայք առ հա-սարակ Ցուրտաւ, երբեմն նաեւ Ցրտաւ. այս քաղաքս կ՚ակնարկուի ապահովապէս Աբրահամու թղթին մէջ (էջ 178) Ուրտաւէ ձեւին ներքեւ։

Ինչպէս իրաւամբ կը նշանակէ Ուխտանէս երբեմն մայրաքաղաք էր Ցուրտաւ Գուգարաց նահանգին, ուր կը բնակէին Գուգարաց բդեշխք դեռ Ե դարու առաջին քա-ռորդին (Գիրք Թղթ. 110. "ուր եւ պարգեւեցաւ իսկ ինձ արժանի ի Տեառնէ հասանել յաթոռ վարդապետական. նոյն Ցան դրանն Բդեշխին,, կը գրէ Մովսէս)։ Բայց ի Բդեշ-

կրթուի եւ կը խնամուի (Ուխտ. Ղ)։ Երբ յարբունս կը հասնի, կը ձեռնադրուի քահանայ եւ վարդապետ տեղւոյն եպիսկոպոսէն (Յովհաննէ՞ս[1])։ Պատմագիրս հոս յեցած է Մովսէսի խօսքերուն, որ Վրթանէսին կը գրէ իր մասին. «Դէպ եղեւ ինձ ի տիս տղայութեան հասանել յեպիսկոպոսարանն Ցուրտաւայ, որոյ եկեղեցւոյն ըստ օրինաց աշակերտ իսկ էի. ուր սնայ եւ ուսայ դպրութիւն Հայերէն եւ վրացերէն. ուր եւ պարգեւեցաւ իսկ

---

խութեան մայրաքաղաքը ըլլալէ, նաեւ Եպիսկոպոսանիստ աթոռ էր, որուն եպիսկոպոսաց ցանկն Ե դարէն ի վեր (Ս. Շուշանկի ժամանակէն սկսեալ) ի մեզ բերած է Կիւրիոն (Գիրք Թղթոց) բայց աթոռն աւելի հին ժամանակ հաստատուած էր արդէն. Ս. Ներսէսի Վարուց մէջ անոր ի Կեսարիա ուղեկցող եպիսկոպոսաց թուոյն մէջ կը յիշուի նաեւ «Զաւէն եպիսկոպոս Ցրտաւայ» (Սոփ. Զ. 26)։ Թեմս սակայն Վրաց կաթողիկոսի իրաւասութեան կը վերաբերէր հին ժամանակ, որ ապա ԺԴ դարուն, երբ անշքացած էր այլ եւս, Հաղբատայ արքեպիսկոպոսին անցաւ (Հմմտ. Ստ. Օրպէլ. 76)։

Ցուրտաւ, իբրեւ «սահմանագլուխ» Վրաստանի եւ Հայաստանի, նշանակալից դիրք ունէր երկու ազգացս յարաբերութեան համար. անկէ կ'ըլլային երկուստեք երթեւեկութիւնք՝ Հայաստանէն Վրաստան Մցխիթայի, Մանգղեաց Ս. Խաչերու եւ այլ ուխտատեղեաց, եւ Վրաստանէն Հայաստան՝ Վաղարշապատի եւ այլ սրբավայրերու։ Բաց աստի Ցուրտաւ գրաւիչ էր իւր մէջն ամփոփուած ունենալուն համար երկու ազգացս սրտի սրբուհւոյն Ս. Շուշանկան սուրբ նշխարքները։ «Ուր, կը գրէ Ուխտանէս (Բ. 36), դեռ եւս կան տեղիք չարչարանաց նահատակութեան նորա եւ հանգստարան սուրբ եւ պատուական նշխարաց նորա, զոր մեք բազում անգամ երթեալ եւ համբուրեալ զսուրբ տեղին»։ Այսպիսի շարժառիթներով նկատուած էր այն երկու ազգաց յարաբերութեան կամուրջն, ուր կային նաեւ բազմութիւն մը ազգայնոց, այնպէս որ հոգեւոր պաշտամունք հոն կը կատարուէին կրկին լեզուներով ալ՝ Հայերէն եւ վրացերէն. Հմմտ. վերը էջ 88–89։

1 Հմմտ. Գիրք Թղ. 178։

ինձ արժանի ի Տեառնէ հասանել յաթոռ վարդապետական նոյն տան դրանն Բգեշխի[1]„։

Ցայտնի չէ թէ քանի տարեկան հասակի մէջ քահանայացաւ. գիտենք սակայն (Ո–խտ. Բ 7), թէ "երեսնամեայ գոլով„ Կիւրիոնի կաթողիկոսութեան առաջին տարին, այն է 599/600, "մինչդեռ յուղղափառութեան էր„ Կիւրիոն, ձեռնադրուեցաւ եպիսկոպոս Ցուրտաւայ (Ո–խտ. 6, 36), իբրեւ հովիւ տեղւոյն հայ եւ վրացի ժողովրդեան։

Եպիսկոպոսութեան երկրորդ տարին, ինչպէս կը պատմէր Ուխտանէս (6—7), իմանալով որ Կիւրիոն Կիւս անուն Խուժիկ Նեստորականին եպիսկոպոսական ձեռնադրութիւն տուած է, թղթով մը կ'իմացընէ Մովսէս Կաթողիկոսի, եւ ինքն ալ "վարեցաւ հրով Հոգւոյն սրբոյ, եւ յանդիմանէր զԿիւրիոն միանգամ եւ երկիցս եւ երիցս, առանձին եւ առաջի վկայից„ (Ո–խտ. 38—39)։ Բայց այս, ինչպէս կանխեցինք ըսել, անհաւանական է։ Ըստ Ուխտանէսի կասկածական տեղեկութեան, Մովսէսի այս ընթացքն Վիրք՝ Կիւրիոն եւ Նախարարք, իրենց ծրագրին հակառակ կը տեսնեն, եւ այսպիսի շարժառիթով կը սկսին հալածել. "մինչ զի, կը գրէ Ուխտանէս (39), թողեալ զաշխարհն եւ զվիճակ իւր եւ ի բաց հեռանալ ի տար աշխարհ„։

Ուխտանէս այս եւ յետագայ տողերու մէջ կողմնակցութեամբ կ'ընթանայ՝ միշտ յոռետեսութեամբ նկատելով Կիւրիոնի ընթացքը[2]։ Ըստ այսմ խնդիրն լուրջ ուսումնասիրելու համար հարկ է համեմատել իւր եզրակացութիւնքը աղբիւրներուն հետ, որչափ անոնք ծանօթ են մեզ։ Հոս Ուխտանէսի աղբիւրներն են գլխաւորաբար Մովսէսի եւ Կիւրիոնի թղթերն գրուած առ Վրթանէս, Աբրահամ եւ Սմբատ։ Հոն սակայն ոչինչ խօսք կ'ըլլայ այսպիսի վարմունքի մասին։

---

1 Գիրք Թղ. 110 = Ո–խտ. Բ. 25։

2 Հմմտ. վերը էջ 67—68։

Երբ մեռաւ Հայոց կաթողիկոսն Մովսէս, կը շարունակէ Ուխտանէս, Կիւրիոն կասկածելով, որ իւր գործերու մասին Մովսէս կաթողիկոսին լուր հասցընողն Ցուրտաւայ եպիսկոպոսն է, մանաւանդ որ զինքը երեք անգամ ալ յանդիմանած էր, մարդ կը խաւրէ եւ իրեն կը կանչէ Մովսէս եպիսկոպոսը։ Կիւրիոն, կը նկատէ հոս Ուխտանէս, "հանդերձ իշխանօք աշխարհին" խորհուրդ բրած էր "չարիս" հասցընել անոր։ Մովսէս կ'իմանայ դաւն, եւ յանձն չ'առնուր երթալ, մինչեւ անգամ "ուխտ իսկ եդեալ էր ի սրտի իւրում բնաւ ոչ տեսանել զնա" (Ուխտ. 18)։

Այսպէս յայտնի ակնարկութիւն չկայ Թղթոց Գրքին մէջ. եթէ ուրիշ աղբիւր չուզենք ենթադրել, ինչպէս ըստ իս հարկ ալ չէ, պէտք ենք պատմագրիս հիմն փնտռել Կիւրիոնի հետեւեալ տողերուն մէջ. "Լսեցի որ Մովսէս ինչ ինչ 'չարին գործոց, գործած է, քննելու եւ յուղղութիւն բերելու համար ինծի կանչեցի, բայց չեկաւ[1]"։ Ուսկից սակայն չի հետեւիր բնաւ այն, զոր Ուխտանէս կը հետեւցընէ։ Այսահովապէս պատմագիրս այսպիսի բռնազբօսիկ մեկնութիւն մը տուած է, որպէս զի միաբանէ յաջորդ հատուածին հետ։

Բայց ի վերջոյ, կը գրէ Ուխտանէս, հակառակ իւր ուխտին, կը զիջանի երթալ առ Կիւրիոն, յուսալով որ գուցէ տեսնելով զինքը Կիւրիոն, յիշէ այն ուխտն, զոր Հայք եւ Վիրք ուխտած էին երբեմն Բաբգէնի օրով։

---

1 "Այլ վասն Ցուրտաւայ եպիսկոպոսին հալածման գործք իւր ծանուցանեն, եթէ վասն ուղիղ հաւատոյ գնացեալ է, թէ վասն այլ իրիք . . . ։ Եւ զնա ոչ հալածեցի, այլ էր ինչ որ լսեցի վասն նորա չարին գործոց. եւ կոչէի առ իս եւ կամէի խրատ տալ, եւ ուսուցանել որպէս պարտ է աշակերտի. իսկ նա յիմ կոչ չեկն, այլ զեկեղեցին եթող եւ ի գիւղերի գաղտ գնաց"։ Թուղթ Կիւրիոնի առ Աբրահամ. 166—167։

Կիւրիոն այս առեն Տփղիս էր, Սուրբ Սիոն եկեղեցին, «որ էր մերձ յապարանս արքունի»: Մովսէս քայլերն կ'ուղղէ դէպ ուղիղ եկեղեցին, եւ զկայ կ'առնու «ի գաւթի սուրբ Սիովնի», զոր տեսնելով Կիւրիոնի սպասաւորները, կ'իմացընեն կաթողիկոսին. «իսկ նա առաքէ ընդ առաջ նորա զմի ումն ի սպասաւորացն իւրոց, եւ արգելու զնա յերեսաց իւրոց»: Մովսէս այսպէս անտեսուած կը թողու տեղն եւ կ'երթայ կ'իջեւանի Յակոբ անուն քահանայի մը տունը, «որ էր մերձ ի սուրբ Սիովն»[1]. ուր 9 օր կը մնայ: Անկէ Կիւրիոնի հետ պատգամաւորի մը[2] միջնորդութեամբ կը խօսի աներկիւղ «դատաստանաւ». կը պարսաւէ, թէ ինչու թողուցած է Կիւրիոն երեք սուրբ ժողովոց հաւատքն, այն հաւատքն, զոր Ս. Գրիգոր սորվեցուցած է, եւ յարած է Քաղկեդոնականներու, զորոնք ժամանակաւ նզովուած են միաբան երկու. աշխարհաց հարք, եւայլն եւայլն: Կը յանդիմանէ նաեւ Խուժկան հանդէպ ցոյց տրուած զիջողութիւնն եւ ի վերջոյ կը յայտարարէ թէ ինքը կը հրաժարի այնուհետեւ անոր հետ որ եւ իցէ հաղորդութենէն. «Արդ ես անպարտ եղիցիմ եւ քաւեալ ի միջնորդութենէց քումմէ» (Ու-խ. 19—20):

Հոս ալ շատ ազդուած է Ուխտանէս երեւակայութենէն: Բովանդակ հիմն, որուն վրայ հա-

---

[1] Տփղիս Ս. Ս'ոն եկեղեցին ըստ Տարեգրոց Վրաց հիմնուած է Գուարամ († 600, Հմմտ. վերը էջ 31) եւ շինութիւնն աւարտած Ատրներսեհի օրով (Hist. de la Géorgie I. 222): Չնայելով Տարեգրոց ժամանակագրութեան՝ կրնանք արդէն 605ին Ս. Ս'ոն եկեղեցիս աւարտած ընդունիլ Ուխտանիսի հետ, բայց թէ մերձ յեկեղեցին կա՞ր արքունի պալատ մը եւ Յակոբ քահանայի ապարանքն, տարակոյս կրնայ վերցընել:

[2] Բրոսէ (Addit. 112) «Թուղթ մը գրեց» կ'ըսէ. բայց Ուխտանիսի խօսքն է հոս. «Ցղէ այնուհետեւ եւ պատգամ առ Կիւրիոն», էջ 18:

տպաւորուած կը նկարագրէ իրողութիւնն, կը կարդանք Մովսէսի կրկին թղթերն՝ ուղղուած առ Վրթանէս եւ Սմբատ, ուր կը գրէ Մովսէս թէ ինքը իմացած է որ Վիրք, որոնք առ երեւս միայն ունէին քրիստոնէական կրօնք իբրեւ «զտերեւս կանաչս», Քաղկեդոնի ժողովն ընդունած են. եւ անմիջապէս ընդդիմացած է եւ ի վերջոյ հռչակած հոս եւ հոն. «վասն որոյ զբանն ի վեր առեալ՝ թշնամի եղեալք կաթուղիկոս անուանն (իմա Կիւրիոնի) եւ ամենայն իշխանացն եւ աշխարհին. եւ վախճան՝ հալածեցայ»: Այսպէս առ Վրթանէս Թղթին մէջ[1]: Նման կը բացատրէ նաեւ Ցուրտաւայ եկեղեցւոյն. «Ցանկարծակի իմն ի վերայ հասեալք հայհոյութեան ինչ, զոր յՈրդին էր հաստատեալ շնորհակորուացն, առ որս ծանուցեալ զվէրս անհնարինս, եւ չիշխեալ ընկենուլ ընդ լաւութեամբ զուխոն. զոր եւ շարժեցաք իսկ: Վասն որոյ եւ թշնամի եղեալք ամենեցուն եւ որչափ յանդիմանեցաք, առաւել եւս ապառնացեալ եղեալք, ի քահանայապետից (= Կիւրիոն) եւ յիշխանաց, մինչեւ հալածել» (Գիրք Թղ. 114): Աւելի բացայայտ եւ մանր պարագայիւք կը պատմէ Սմբատայ. «Մանաւանդ զի հալածանացն ժամ, զինն օր ի Տփղիս ի նորա (Կիւրիոնի) դրուռն կացի, եւ յանդիմանն չարար. եւ աշխարհն ամենայն գիտէր զի չէր վասն այլ ինչ իրաց, բայց վասն հաւատոյ[2] եւ յետ ինն աւուրն...» (անդ. 172): Ուխտանէսի կցկցանքներն կ'երեւան հետեւաբար Ս. Սիոնի, Յակոբ քահանայի եւն յիշատակութիւնք:

---

[1] Գիրք Թղ. 110 = Ուխտ. 25:

[2] Ուխտանէս (100) այս տողերս ունի. «Մանաւանդ զի ի հալածանացն ժամ, զինն օր ի Տփղիս ի նորա դրունս կացի եւ յանդիմանն չարար. եւ աշխարհն ամենայն գիտէր, զի չար(ար) վասն այլ ինչ իրաց, բայց վասն հաւատոյ: Այլ ես բազում բանիւք ի ձեռն պատգամի խօսեցայ ընդ նա, եւ ծանուցի նմա զամենայն որ ինչ տեսեալ էր իմ զնոսա

Մովսիսի պատգամներն ի զուր կ'ելլեն. Կիւրիոն չպատասխաներ ամենեւին: Պատճառն կը կարծէ Ուխտանէս. "Քանզի գիտէր ի միտս իւրում, եթէ յորժամ կաթողիկոս նստի Հայոց, դարձեալ խնդիր լինի իմոցս իրացս". անոր համար կարճառօտիւ ուզեց կտրել խնդիրը: Մովսէս յուսահատ եւ տրտում կը դառնայ իւր վիճակն Ցուրտաւ, ողբալով Վրաց կորուստն, միանգամայն վախնալով Կիւրիոնի "նենգութենէն", վասն զի "որսայր զնա ի մահ": Քիչ վերջը իւր վիճակն ալ թողլով կը մեկնի Ցուրտաւէն դէպի Յունական բաժինն եւ եօթն օրէն կը հասնի Յովհաննու Մկրտչի վանքն յՈտին Արագածու (Ո–խտ. 20—23):

Թէ յիրաւի Մովսէս Տփղիսէն կրկին Ցուրտաւ անցաւ, կը լռուի Թղթոց Գրքին մէջ. Մովսէս պարզապէս կը գրէ. "Յետ իմն աւուրն ինքն (Կիւրիոն) ի Մծհիթա գնաց, եւ այսր (ի Յովհաննու վանս) լուսով գնացի եւ ոչ ընդ խաւար, որպէս նոքայն գրեցին, եւ որ օր եւթն էր ի Ս. Յովհաննու վանս եկի" (էջ 172):

Մինչեւ ցայս վայր ջանացինք ամփոփել Ուխտանէսի պատմածները. որոնք հիմնուած էին բացարձակապէս Մովսիսի վկայութեանց վրայ, անտեսելով բոլորովին Կիւրիոնի կամ հակառակ կողման վկայութիւնքն, զորոնք Ուխտանէս նկատած է "համակ ստութիւն": Սակայն անաչառ հարկ էր ըլլալ: Հետեւաբար զոր պատմագիրն զանց ըրած է, մեզ կը մնայ կատարել:

Կիւրիոն այլազգ կը պատմէ բովանդակ իրողութիւնն: Ըստ իւր վկայութեան Մովսէս զոր-

---

եւ իմացեալ՝ ոչինչ զանգիտացեալ զնմանէ: Եւ նա ոչ ետ պատասխանի եւ ոչ յանդիման արար զիս, եւ յետ իմն աւուր" եւն: Այսպէս Թղթոց Գրքի՞ մէջ կարդացած է Ուխտանէս, թէ իւրովի ընդլայնած. կարելի չէ ապացուցանել: Ըստ մեզ հաւատարմագոյն է Թղթոց Գրքի տուած ընթերցուածը:

ծած է ինչ ինչ “յետին գործոց„, զորոնք սակայն լսած է միայն ի հեռուստ “վասն նորա„, եւ ստուգելու, խրատ տալու եւ ուսուցանելու համար “իւր աշակերտի՛„, առ ինքն կոչած է. բայց նա չէ հնազանդած՝ “իսկ նա յիմ կոչ չեկն„. այլ իւր վիճակն — “եկեղեցին„ թողլով գիշերախառն եւ ոչ “լուսով„, ինչպէս կը ջատագովէ ինքզինք Մովսէս, կը փախչի։ Հետեւաբար տեղի չէ ունեցած որ եւ իցէ հալածանք, ինչպէս արդէն կ'ըսէ. “ես զնա ոչ հալածեցի„, եւ ոչ ալ Տփղիս երթալու յիշատակութիւն կայ։ Թէ ով է արդարախօսը այս հակասական վկայութեանց մէջ, դժուարին չէ գտնելը։ Կիւրիոն որ եւ իցէ պէտք չունէր պատ ի պատ խօսքերով ինք զինք արդարացնելու Հայոց կաթողիկոսի կամ Սմբատայ առջեւ, իբրեւ անոնց համապատիւ եւ համազօր. բայց այս դրից մէջ չէր Մովսէս, որ ամէն կողմանէ արդարը ձեւանալու պէտք ունէր։ Այլազգ ալ չի բացատրուիր Կիւրիոնի այլուր յաճախ ըսածներն, թէ Մովսէս “իւր գլխուն չհնազանդեցաւ„, եւ թէ “թող գայ ինձ եւ ուղղութիւն խոստանայ եւ ես կ'ընդունիմ„ եւն։

Թէ ինչ էին այս “յետին գործոց„ համարուած յանցանքներն, ոչինչ կ'աւանդուի։ Գիտենք որ Կիւրիոն իւր եպիսկոպոսաց հետ ի նկատի առնելով ամբաստանութիւնները եւ հակառակ եկեղեցական իրաւանց թեմն թողուլն եւ փախչիլն՝ յիրաւանց զրկած եւ նզոված է. այս մասին կը գրէ առ Աբրահամ իւր վերջին թղթին մէջ. “Մի մեծ (ի) պատուիրանաց ձեր այս է, զի Տէր մեր Յիսուս Քրիստոս ցՊետրոս ասաց թէ զոր կապեցէք յերկրի եղիցի կապեալ յերկինս. արդ ահաւասիկ

1 “Աշակերտ„ կ'անուանէին այս ժամանակներս եպիսկոպոսք իրենց ձեռնադրեալները։ Այսպէս նաեւ Կիւրիոն ինքզինքը Մովսէս կաթողիկոսի աշակերտը կը կոչէ։

մեք որ ի նոցա աթոռս նստիմք, զՄովսէսդ դուք, որ պատճառանօք եպիսկոպոս անուանէ Ցուրտաւայ, կոչեցաք հաստատով՝ իմ բերանով եւ ամենայն եպիսկոպոսաց, եւ դուք ընկալայք զդա որպէս զբարեգործ ոմն[1]»։ Այս պարզ խօսքով կը բացատրէ Արսէն Կաթողիկոս. «Կիւրիոն զՄովսէս մերժեց իւր աթոռէն[2]»։

Կիւրիոնի այս ամէն մեղադրութեանց հանդէպ ինք զինքը «անմեղ» կը ջատագովէ Մովսէս Վրթանիսի, Աբրահամու, մանաւանդ Սմբատայ առջեւ եւ այնպէս ալ ճանչցուած է։

Կիւրիոն այլազգ գիտէ նաեւ Մովսէսի Հայաստան անցնելու միջադէպը։ Ըստ Կիւրիոնի Մովսէս Ցուրտաւէն «գաղտ ի գիշերի փախստական գնաց եւ յապստամբս չոգաւ առ Վահրամ» եւ «չարութեամբ» այնպիսի հնարագիտութիւններ ի գործ դրաւ, որ քաղաքներ առնուլ պիտի տար եւ Արեւաց պետութեան մեծամեծ վնաս պիտի հասցնէր։ Այսպէս կը գրէ այս նկատմամբ Սմբատայ. «Բայց իմ սրտի (տպ. ի մարտի) պակասութիւն մի է, եւ մեծ է մարդոյ միոյ բանից հաւատալ ձեզ, որ իւր գլխոյ չէր հաւատարիմ, թող թէ վասն մեր[3], որ վասն չար գործոց իւրոց գաղտ ի գիշերի փախստական գնաց եւ յապստամբս չոգաւ առ Վահրամ, եւ այնպէս չարութեամբ գիտաց առնել, զի սակաւիկ ինչ պիտացաւ, եւ դեռ զքա-

---

1 ԱՐՐՑ· 1902, 567։

2 Թ. Ժորդանիա՝ Ժամանակագրութիւնք եւ այլ նիւթեր Վրաստանի պատմութեան եւ մատենագրութեան վերաբերեալ. Տփղիս 1893, էջ 320 (վրացերէն)։

3 Կիւրիոնի այս տողն կը հասկընայ Սմբատ (Թուղթ առ Մովսէս. 174) «Թէ զի յանձն չէր վստահ (Մովսէս) սատանօր ի մօտ, զիա՞րդ կայր արդեւք եւ զմեզ յորդորէր եւ թուղթս տայր առնել յաշխարհն»։ Հոս Սմբատ միացուցած է Կիւրիոնի թղթի մէջ կարդացածն եւ Մովսէսէն լսածը։

ղաքին առնուլ տայր եւ Արեւաց աշխարհին մեծ զինեան հաստուցանէր։ Եւ արդ դուք նմա հաւատացէք[1]"։

Սմբատ սակայն հաւատ չընծայեց Կիւրիոնի մեղադրութեանց, զորոնք նկատեց "սուտ" զրպարտութիւն (էջ 174), եւ այսպէս ալ ներկայացուց թուղթն Մովսիսի. առ որ պատասխանեց Մովսէս. "Չեմ առ Վահրամ երթեալ", այլ Վահրամ գրած էր ինծի, թէ "սրտի մեծ ցաւ է ձեր Ցուրտաւէն հեռանալը, բայց քանի որ հեռացաք, պէտք էիք մեզի ուղղել ձեր քայլերը, վասն զի հոս ալ բազմաթիւ ժողովուրդ կայ, որով կրնայիք ինք զինքնիդ հոգալ"։ Այս թուղթը տակաւին քովս է, կ'ըսէ Մովսէս, եւ ցուցուցած եմ Աբրահամ Կաթողիկոսին, եւ ձեզի ալ կրնամ ցուցընել։ Այս նամակիս այսպէս պատասխանեցի. Ապա ինչո՞ւ, ըսի, ես Ցուրտաւէն կը հեռանամ. ինչպէս կրնամ քեզի գալ. մինթէ ձեր եւ անոնց հաւատքն նոյն չէ՞, այս ինքն՝ դուք եւ անոնք քաղկեդոնական չէ՞ք[2]։ Իրացս ստուգութիւնն ճշմարտել դժուարին է. անծանօթ է մեզ ընդհանրապէս այլուստ Վահրամայ անձնաւորութիւնն, որչափ կը տեսնուի՝

---

[1] Գիրք Թղ. 171. — Ա-խտ. 96։

[2] "Չեմ առ Վահրամ երթեալ. այլ եւ այսու եւս անպուման առնեմ զՏէր (Սմբատ), զի Վահրամայ առ իս գրեալ էր, թէ ի սրտի մեծ պակասութիւն է ձեր ի սորայ եկեղեցւոյն հեռանալդ. բայց մինչ գնացէքդ՝ ճանապարհ առ մեզ պիտէր ունել, զի եւ եկեղեցւոյն մեծ բաժին կայ աստ, որով զանձն ունել մարթ էր։ Զայս թուղթ Տեառն կաթուղիկոսի ցուցեալ է, եւ քեզ Տեառն ցուցանեմ. եւ ես անդրէն պատասխանի արարի. Արդ, ասեմ, ապա անտի զի՞ գնացի, զի առ ձեզ գայի. զի հաւատ ձեր եւ նոցա մի է"։ Գիրք Թղթ. 172–73։ Սմբատ Մովսիսի թղթին մէջ կարդացած է նաեւ այսպիսի տողեր. "Դու ասես. Ես Լ.օրնեբուէհի եւ Վահանայ եղբարց ի՞նչ եմ. եւ ոչ սուր առնուլ եւ ընդ ամենայն Վիրս կռուել"։ Թուղթ առ Մովսէս. 174։

Վահրամ Ցունաց կողմն անցած է 604ին, կամ Ցունաց հաւատարիմ մնացած է, երբ Ցունական բաժնի Վիրք հպատակեցան Պարսից[1]: Իրողութեան ճշդութեան մասին խնդիր կարելի չէ ընել հետեւաբար. կը ծանրանայ դժուարութիւնը այն կէտին վրայ, թէ որչափ վստահելի եւ ճշմարտութեան մօտ են Կիւրիոնի եւ Մովսիսի վկայութիւնք: Այն կէտին մէջ թէ Մովսէս գալու ժամանակ յարաբերութեան մէջ մնած է Վահրամայ հետ, միաբան են երկու կողմերն ալ: Ուրեմն զըրադատ զրպարտութիւն չէին բոլորովին Կիւրիոնի մեղադրութիւնները: Վահրամայ հրաւիրին տրուած պատասխանը կրնար կեղծել Մովսէս. որով Կիւրիոնի տողերուն ճշմարտութիւնը չենք համարձակիր տարակուսի ենթարկել: Այն իսկ պարագան, որ Կիւրիոն իմացած է Մովսիսի թղթակցութիւնն Վահրամայ հետ, կը ցուցընէ թէ նա հաւատարիմ լրտեսներու ձեռօք հետազօտած է Մովսիսի առած մէն մի քայլը: Դիտելու արժանի բան է որ Մովսէս ամբաստանութեանց առարկան չէ որ կը ժխտէ, այլ եղանակը: Բայց միւս կողմանէ միտ դնելով Մովսիսի գործածած լեզուին այս կէտիս մէջ, — այնպէս հանդիստ խղճով եւ պատրաստ տանջանքի իսկ մատնուելու իւր խօսքին ճշմարտութեան համար, քիչ մը մտածել կու տայ. "Սահմանակից են, կը գրէ Սմբատայ (172), Հայք եւ Վիրք, յաճախ երթեւեկութիւն կ'ըլլայ ասկէ հոն եւ անկէ հոս, կրնաք հարցընել եւ քննել, "յորոց մարթի տեղեկանալ. եւ թէ արդարեւ այդպէս գտանիմ, որպէս առ ձեր փառաւորութիւնդ գրեցաւ ինոյանէն, եւ ես այլ տարաղ ծանուցի զխ ձեզ եւ խաբեցի, պատուհաս զայն արժան է առնել ի վերայ իմ . . ."։ Եւ Սմբատ կը հաւատայ Մովսիսի (էջ 174): — Փափագելի էր յամենայն դէպս երրորդի մը վկայութիւնը առ այս:

[1] Այս մասին հմմտ. վերագոյն էջ 33–34:

Մովսէս կը բողոքէ ի վերջոյ Կիւրիոնի դէմ իրեն վերագրուած "չար գործերու" համար. ինքը, ինչպէս տեսանք, իւր թեմէն հեռանալու պատճառն կրօնական անհամաձայնութիւնն կը դնէր. այս նկատմամբ կը գրէ Սմբատայ (էջ 173). "Իսկ որ վասն չար գործոյն գրեալ էր թէ հալածեցաւ, ի ծածուկ՝ մարդ քան զիս մեղաւոր չմարթի լինել. զմեղս իմ զոր Աստուած միայն գիտէ եւ ես։ Բայց յայտնի՝ զի կարի շատ աշխարհի զիմ յետնութիւն չկարէ ցուցանել։ ...Բայց փառաւորութեան ձերում տեղեկութիւն լիցի. զի նա այդպիսի չարութեան մեքենայս շատ գիտէ եւ զձեզ հաւատացուցանել կամի եւ զգործդ խափանել"։ Ընդհակառակն Կիւրիոն կրօնի խնդիրն զուր պատրուակ կը համարի. ահա թէ ինչ կը գրէ Կիւրիոն Աբրահամ կաթողիկոսին. "Զայդ Մովսէս մինչ Յուրտաւայ եպիսկոպոս կամեցաք առնել, դմա պարտ էր ասել թէ ես ի ձէնջ չօրհնիմ, զի չէ(ք) ուղղահաւատ։ Մինչ յայնժամ օրհնեցաւ ի մէնջ, արդ զի՞ պարտի զմեզ քննել. միթէ յետ այնր ինչ փոխեցաք զհաւատս" (էջ 178)։ Բայց այս պատճառաբանութիւնը հերքած է Մովսէս Աբրահամու առջեւ. "Երդմամբ հանդերձ հաստատեաց զայդ տեղի, թէ չգիտէաք, բայց զի յետ ձեռնադրութեանն ծանեաք" (էջ 184), "որ եւ մեզ կարի հաւատալի թուեցաւ" կը կցէ Աբրահամ։ Զարմանալի չէ հայ կողման այնպէս յարիլը Մովսիսի, որ մինչեւ անգամ ամենափոքրիկ իսկ վկայութիւնն իբրեւ ճշմարտութիւն ընդունուի։ Վարն առիթ պիտի ունենանք տեսնելու, թէ Մովսէս հնարագիտութեամբ յառաջուընէ յինքն գրաւած էր արդէն կաթողիկոսին եւ այլոց սրտերը։ Բաց աստի Մովսէս ջանաց ինք զինք թագուցանել ամբաստանութեան մը ետեւ, որ ճշմարիտ էր ամենայն մասամբ եւ ժամանակի Դունոյ կաթողիկոսարանին ոգւոյն դժպհի։ Այս ինքն, թէ Վիրք

ընդունած էին Քաղկեդոնի ժողովոյն վարդապետութիւնը։ Հայք որ Յունաց հետ այնպէս կը մաքառէին այս նկատմամբ, ի հարկէ պիտի գրգռուէին զայրութիւ լսելով այս համբաւն։

Դառնանք պատմութեան կարգին։

Մովսիսի մեկնումն պատահած է Յուրտաւէն կամ Տփղիսէն ձմեռ ժամանակ. որչափ կը տեսնուի խօսքերէն, միտք ունէր դիմել ուղղակի Դուին առ Վրթանէս տեղապահ. սակայն “վասն խստութեան ձմերայնւոյս եւ գնդայոյզ լինելոյ, արգելեալ եղէ ի Ս. Մկրտչի Յովհաննու ի Վանս, որ յԱրագածոտն„[1]։ Հոն տեղւոյն Բաբիւլաս վանից երէցէն կ'ընդունուի մեծ հիւրասիրութեամբ։

Մովսիսի առաջին գործն կ'ըլլայ թղթով մը իւր դրութիւնն կարճ ի կարճոյ պարզել Կաթողիկոսական տեղապահ Վրթանէս քերդողին, աւելին “ի մանկանէդ„՝ թղթատարի բերնէն լսել յանձնե-

---

1 Այլուր “Սուրբ Յովհաննու Մկրտչի„ կոչուած. Կ'ակնարկուի հռչակաւոր մենաստանն “Ս. Յովհաննէս„ ի Կարբի. “Քառորդաւ ժամու ճանապարհի . . . յելից Կարբոյ, ի սարահարթ քարափին Քասաղայ, նման Սաղմոսավանից եւ ժամաչափ հեռի ի նմանէ կայ հռչակեալն քան զայն եւ քան զամենայն վանորայս կողմանց՝ Յովհաննավանք կամ Յովհաննու վանք, կոչի երբեմն եւ յանուն սրբոյ Կարապետին„։ Այրարատ, էջ 165—177. Հմմտ. եւ Ինճիճեան Ստորագր. Հին Հայաստ. 492. Շահխաթ. Բ. 116։ — ԺԲ. դարու վկայաբանութեան մը մէջ կը գրուի. “իջանէ (Յովսէփ Նորշէնցի վկայն) ի մենաստանն մեծ Յովհաննու կոչեցեալ վանս, որ ի նոյն Որոն Արագածու՝ ի վերայ Քասաղ գետոյ„։ (ԱՐՐՏ, 1897, էջ 44)։ — Հ. Ալիշան՝ Այրարատ, 165, յիշատակելով Մովսիսի այս դէպքը կը գրէ. “Յառաջին ամս Է. դարու ի ժամանակի պարապոյ կաթողիկոսական աթոռոյն, Մովսէս Պարթաւայ (!) եպիսկոպոս ամբաստան Վիրոյ (!) կաթողիկոսին Վրաց գրեր ի վանաց աստի առ Սմբատ Մարզպան Վրկանայ„ (!). եւ յառաջ կը բերէ Գիրք Թղթոցէն (էջ 111) վերագոյն ի մէջ բերուած տողերը, զորոնք Մովսէս ուղղած էր առ Վրթանէս։

լով. դառն խօսքերով կը պարսաւէ Վրաց կաթողիկոսն եւ կը խնդրէ ի վերջոյ որ իւր հօտին ի Ցուրտաւ հայերէն նամակ մը գրէ, յորդորելով հաստատուն մնալ եւ մխիթարելով: Մանկան ձեռօք խընդրած կ'երեւայ Վրթանէսէն նաեւ ծանօթութիւններ Քաղկեդոնի ժողովոյն մասին եւ հրահանգներ Քաղկեդոնականաց դէմ կռուելու — "եւ ինձ ի ձեռն թղթոյ խրատ տուք բերել": Վրթանէս սիրով կը կատարէ Մովսիսի խնդիրքները: Կը գրէ (605/606) "Թուղթ շրջագայական" մը առ Ցուրտաւայ եկեղեցին (էջ 130—131), լի քաջալերութեամբ եւ յորդորով, ուր կը յայտարարէ նաեւ Վրթանէս, որ "եթէ աւելի ինչ պէտք եղիցին հակառակութեան եւ պատասխանեաց, հրամայեսցէ գրել առ մեզ սրբութիւնդ ձեր", վստահացընելով այս մասին իւր պատրաստակամութեան: Թուղթս ի Ցուրտաւ կ'ուղարկէ Մովսիսի միջնորդութեամբ: Ասոր հետ կը յանձնէ "մանկան" նաեւ Մովսիսի հարցէին պատասխան մը (էջ 112) եւ գաղտնի թղթեր. կ'իմացընէ թէ "ի մօտէ աւուրս կաթուղիկոս կամին նստուցանել[1]", եւ կ'ապահովէ թէ զհոգս ձեր շնորհիւն Քրիստոսի Աստուծոյ նա հոգայ եւ մեք սատարեմք մինչեւ ի կատարումն գործոյդ ըստ կարի մերում":

Մովսէս կ'ընդունի թղթերս Ս. Յովհաննու վանքն. եւ ինքն ալ կը փութայ գրել հայերէն թուղթ մը առ Ցուրտաւայ եկեղեցին, որ Թղթոց գրքին մէջ խորագիր կը կրէ. "Թուղթ շրջագայական Մովսէսի եպիսկոպոսի" (էջ 113—127): Ինչպէս կը տեղեկանանք թղթին կատարածէն, Մովսէս ուղղած է զայն յականէ յանուանէ Ռափայէլի եւ Նաթանայէլի, զորոնք կ'անուանէ "եղբարք իմ սիրելիք" (էջ 127), եւ որոնք ապահովապէս Ցուրտաւայ եպիսկոպոսարանի աւագագոյններն էին եւ Մովսիսի

---

1 Կ'ակնարկուի 606ի ժողովին:

ամէնէն մտերիմները։ Շրջաբերականիս հետ ի միասին խաւրած է նաեւ Քաղկեդոնի ժողովոյն համառօտ պատմութիւնն եւ ժողովոյս դէմ գրուած ինչ ինչ յիշատակարաններ. «Խոու բերել զպատճառս ժողովոյն (տպ. ժողովոցն)[1] եւ այլ հաւաստարս հաւատոց գերանելի վարդապետացն եւ զընդդիմակաց հերձուածողացն, զյոլովագոյնն այտի տեղեկացէք» (էջ 118)։

Երկար շրջաբերական մ՚է, որ նշանակալից նշխարք մը կ՚ընծայէ ժամանակակից կրօնական ըմբռնմանց ուսումնասիրութեան համար. զոր սակայն հոս չենք կրնար առնուլ ի նկատի։ Մեզի կարեւոր է հոս ծանրանալ յատկապէս Մովսիսի նկատմամբ եղած տողերու վրայ[2]։

---

1 Կ՚ակնարկէ «Պատճառք Դ. ժողովոյն» գրութիւնն, զոր ունինք ամբողջութեամբ Թղթոց Գրքին մէջ (էջ 119–127)։

2 Պէտք է դիտել սակայն, որ Մովսիսի անուան տակ ծածկուած ունինք հոս Վրթանէս Քերդողի տողերը։ Կեղծիքս յառաջ եկած է կամ ինքնին Վրթանէս Քերդողի ձեռքէն, որ այսպէս Մովսիսի անուան ներքեւ ազդողագոյն նկատելով խօսքերուն ոյժը, անոր կողմանէ գրած է, եւ կամ Մովսէս խմբագրած է Վրթանիսի իրեն գրած տեղեկութիւնքն իւր նամակին մէջ։ Իրողութեանս ճշմարտութեան վրայ վայրկեան մ՚իսկ չենք տարակուսիր։ Այլուր մտադիր ըլլալով մանրակրկիտ ուսումնասիրել այս կէտը, կը նշանակենք հոս հետեւեալ կարեւոր գծերը. 1. Թղթիս հեղինակն կը գործածէ Տիմոթէոս Կուզի Հակաճառութեանը (Հմմտ. Աճէնեան Հ. Ն., Տիմոթէոս Կուզ Հայ մատենագրութեան մէջ. էջ 34—36), որ շատ վերջը կը ծանօթանայ Մովսիսի Վրթանէսի ձեռօք (էջ 140). 2. «Պատճառք Դ. ժողովոյն» հատուածն (էջ 119—127), որ մասն կը կազմէ Մովսիսի թղթոյն, բառական քաղուածք մ՚է Վրթանիսի Կայսերաց գրքէն։ 3. Ինքնին Մովսէս այլուր յայտնի կը խոստովանի (էջ 140), թէ ինքը Քաղկեդոնի ժողովոյն մասին միայն Վրթանիսի թղթէն ծանօթութիւն առած է. եւ կը խնդրէ [illegible]

Մովսէս կը ցուցընէ հոս որ 1. իւր փախուստն, այս է Ցուրտաւէն Հայաստան մեկնիլն իւր ժողովրդենէն գաղտնի եղած է։ 2. Առ այս ինք զինքը չքմեղելու եւ բուն իրողութիւնն սքողելու համար կը ծանուցանէ, — վասն զի իր յանկարծական աներեւութանալուն պատճառին անծանօթ են, — թէ "յանկարծակի իմն ի վերայ հասաք Կիւրիոնի մոլորած ըլլալուն եւ "չիշխեցեալ ընկենուլ ընդ լռութեամբ„՝ աճապարեցինք յանդիմանել եւ ստիպել որ մերժէ մոլորութիւնը։ Բայց այս պատճառաւ "թշնամի եղեաք ամենեցուն, եւ որչափ յանդիմանեցաք, առաւել եւս սպառնացեալ եղեաք ի քահանայապետից եւ յիշխանաց. մինչեւ հալածել„ (էջ 114)։ Ի վերջոյ 3. այս պարտաճանաչ հօտասէր հովիւը առաջին անգամ հեռու, Ս. Յովհաննու վանքը խելքը գլուխը կը ժողվէ իւր հօտը մոլորեալներէ զգուշացնելու համար։ Արդ չըլլայ թէ, կը գրէ, մենք ալ Հրէից պէս — ի մէջ կը բերուի Եւսեբիոսէն Երուսաղէմի առումն ի ձեռն Տիտոսի, — անողորմ պատուհաս ընդունինք. "Հարկ համարեցայ ի ձեռն զգուշացուցիչ թղթոյս խօսել յականջս աստուածսիրութեանդ ձերոյ, զգոյշ լինել ի հաղորդութենէ տէրուրացաց եւ տիրասպանաց մեծարողաց ժողովոյն Քաղկեդոնի„ (էջ 115)։ Կը հերքուի Քաղկեդոնի ժողովոյն վարդապետութիւնն (էջ 116—118)։ Ընդ նմին կը խաւրէ Մովսէս նաեւ "զպատճառս ժողովոյն„ Քաղկեդոնի։

---

ղովէն վերջը Քաղկեդոնականաց տարածման պատմութիւնը, իբր շարունակութիւն, զոր Վրթանէս ճիշդ թողուցած տեղէն կը սկսի շարունակել (էջ 141 եւն)։ Այս ապացոյցները կը կարծենք, բաւական են այժմէն իսկ մեր հաստատութեան ճշդութիւնն հաւանական երեւցընելու։ — Ըստ այսմ իմանալու է նաեւ Մովսիսի իւր առաջին թղթին մէջ առ Վրթանէս գրած տողերս. "բայց առ ժամս գրեցի եւ ես ի հայ լեզու ցիշխանութիւնն Ցուրտաւայ Եկեղեցւոյն„ (էջ 111)։

Հոս Մովսէս իւր բերնով ակամայ կը դաւանի Կիւրիոնի խօսքերու ճշմարտութիւնը, թէ գիշերախառն, առանց մէկու գիտութեան պատահած է փախուստը, այնպէս որ մինչեւ անգամ Ցուրտաւայ եկեղեցւոյն անյայտ մնացած է ինչ պատճառաւ, երբ եւ դէպի ուր մեկնած ըլլալը։ Այլազգ անմեկնելի կը մնայ, թէ ինչո՞ւ անձամբ, կենդանի ձայնիւ չէ քարոզած ճշմարտութիւնն, Վրաց մոլորիլն եւն։ Ցուրտաւայ եկեղեցւոյն թղթոյս տուած պատասխանն (էջ 129) ալ այս տպաւորութիւնը կը թողու։ Անոնք անծանօթ են տակաւին սերմանուած "մոլար հաւատոյն", եւ միայն թղթոյն վերջերն այսպիսի ակնարկութիւն մը կ'ընեն. Եթէ չդառնաս, "մեզ այլ ինչ ճար չէ, բայց կամ կալ յաշխարհիս եւ ըստ կամաց սորա լինել, կամ թողուլ եւ գնալ ի բաց"։

Մովսիսի թղթոյն պատասխանած է Ցուրտաւայ եկեղեցին (էջ 128—129), ուր անոր թուղթն կ'անուանուի "Գիր ողջունի, խրատտուութեան եւ զգուշացուցիչ"։ Կը սպասուէր որ պատասխանս պարզէր Մովսիսի հեռանալէն յետոյ տեղի ունեցած շփոթութիւնքը եւն. բայց ընդհակառակն ոչինչ խօսք կ'ըլլայ այս մասին. ի շնորհս Մովսիսի կը բաղձան պարզապէս որ արժանացընէ Տէր ընել զինքը դարձեալ "վերակացու եւ օգնական զարտուղեալ կողմանցս մերոց եւ վերստին ի ձեռս ձեր տերանց սուրբ Հոգին քարոզեսցի" եւն։ Այս տողերս թէեւ Մովսիսի անմեղութեան նպաստաւոր կը թուին, սակայն ամենայն մասամբ վստահելի վկայութիւն կարելէ չէ նկատել. Թղթատար եւ թղթաբեր "մանկան" միջնորդութեամբ շատ բան ուրիշ ազդեցութեանց ներքեւ գրուած է։ Այսպիսի ազդեցութեան հետեւութիւն կը համարիմ մանաւանդ հետեւեալ տողերս, որով կը վերջանայ նամակն. "Նորոգեսցէ Տէր Աստուած եւ զաթոռն քո տեառն ի նմին տեղւոջ յոր վիճակեցարն. ապա

*թէ ոչ եւ մեզ այլ ինչ ճար չէ, բայց կամ կալ յաշխարհիս եւ ըստ կամաց նոցա լինել, կամ թողուլ եւ գնալ ի բաց„ (էջ 129)։*

*Նման ոգւով պատասխանած է (էջ 132) Յուրտաւայ եկեղեցին նաեւ Վրթանէս Քերդողի թղթոյն, զոր Մովսէս իւր “շրջագայական„ին հետ ի միասին խաւրած էր մանկան ձեռօք։ Նոյնպէս համառօտ եւ առանց յուզման է պատասխանս, ինչպէս գրուած էր Մովսիսի։ Թղթին վերջերն միայն կը փոխուի շեշտն յանկարծակի, — ապահովապէս մովսիսական ազդեցութեան հետեւութիւն մը, — “Աղօթեմք միշտ, կը գրեն, Նորոգել եւ սրբոյ Լուսաւորչին Գրիգորի (իմա՝ Կաթողիկոսական աթոռոյն Դուինոյ), զի արասցէ խնդիր մոլորեալ աշխարհի մերում ըստ օրինակի առաջնոց վարդապետացն, զի մեզ առանց այտի օգնականութեան եւ թիկանց՝ աստ չմարթի կալ. զի այնպիսի բանաւոր հօտոյն՝ որ հայրապետս անուանի՝ զիջեալ եմ, բայց թողուլ զաշխարհս եւ գնալ„ (էջ 132)։ Վերջին նոտրագիր տողերս յայտնապէս ընդմիջարկութիւն մը կ’երեւայ Մովսիսի ձեռքէն. որուն յատուկ բացատրութիւնն է Կիւրիոնի համար “որ հայրապետս անուանի„։*

*Մովսէս առ Վրթանէս ուղղած այս թուղթը մանկան ձեռօք Դուին խաւրելու ժամանակ կը յանձնէ մանկան իւր կողմանէ երկրորդ թուղթ մ’ալ առ Վրթանէս (էջ 133—134), ուր կը յայտնէ իւր շնորհակալութիւնն խնդիրներուն կատարման համար. կը խնդրէ որ “որպէս զսկիզբնդ յօժարութեամբ արարէք, աղաչեմ... եւ ի գլուխ տանել„։ “Այս անգամ, կ’ըսէ, հրամայեցէք գրել թուղթ մի առ Կաթուղիկոս անունն (իմա՝ առ Կիւրիոն) եւ առ Ատրներսեհ եւ Վահան եւ Բրզմիհր, յանդիմանելով ղժողովն Քաղկեդոնի, եւ թուղթ մի առ Պետրոս յանձնութեան„ (էջ 133)։*

*Վրթանէս ոչ նուազ ոգեւորուած քան զՄովսէս, յանձն կ’առնու գրել առաջարկեալ հացէ-*

նէրու, քայլ առ քայլ հետեւելով Մովսիսի ծրագրին, յուսով Մովսիսի խօսքերու համաձայն “երգակցելու ընդ երանելոյն Պաւղոսի, թէ յԱղուանից մինչեւ յաշխարհն Վրաց մեզ եհաս լը առնել զԱւետարանն Քրիստոսի„ (էջ 133 — 134)։ Բայց, ինչպէս կ'երեւայ, աննպաստ պարագայից պատճառաւ — “մի յաղագս նուազութեան եւ մի յաղագս ժամանակիս դժուարութեան„ — քիչ մը կը ստիպուի յապաղել (էջ 135). որուն համար Մովսիսի ներողամտութիւնն կը հայցէ։

Մովսէս Ս. Յովհաննու վանքն այս անգամ երեք նամակ կ'ընդունի Վրթանիսէն, մին ուղղուած իրեն, եւ երկուքը ի Վիրս Պետրոսի եւ Կիւրիոնի հասցէներու զորոնք ինքը իւր մանկան ձեռօք ի Վիրս պիտի խաւրէր, ինչպէս արդեամբք ալ կատարեց (էջ 140)։ Հոս Վրթանէս կը յայտնէր Մովսիսի, թէ ըստ խնդրանաց գրած է թղթեր ի Վիրս. իսկ այն կէտին, թէ ի հարկին նաեւ անձամբ երթայ Վրաստան, կը պատասխանէ որ ինքը պատրաստ է, եթէ նախ ի ձեռն “ծանօթից եւ սիրելեաց իշխանաց„ յաջողցընէ Մովսէս Հայաստանի “փառաւոր իշխաններէ„ հրաման հանել։ Վրթանէս իւր այս բաղձանքն ուրիշ անգամներ ալ յայտնեց, որ սակայն երբեք չիրագործուեցաւ։

Աւելի հետաքրքրական է Պետրոսի գրուած թուղթը (էջ 136—137), որուն անձնաւորութիւնն թէեւ անծանօթ է այլուստ, բայց ի Վիրս նշանաւոր դիրք ունեցող եկեղեցական մը կը թուի։ Վըրթանէս կարճ խօսքերով կը ծանուցանէ Պետրոսի, որ ինքը լսած է թէ ի Վիրս “նորոգաձեւութիւն հաւատոյ„ տեղի ունեցած է. այսինքն թէ “յաշխարհիդ ձերում մեծարանս մատուցանեն ժողովոյն այնորիկ„ Քաղկեդոնի. “վասն որոյ եպիսկոպոս աշխարհիդ փախստական գնացեալ է, զըլառն եւ զանբժշկելի վիրաւորութիւն ժողովոյն այնորիկ ճանաչելով„։ Այսպէս բուն իսկ վէրքն շօշափելով կը

*խնդրէ Պետրոսէն, որ միջնորդէ Մովսիսի կրկին գահն բարձրանալուն, ակնարկելով հեռուէն ասկէ ծագելիք չարիքը. "Սրբասէր եպիսկոպոս, որ ճշմարիտ հաւատոյ նախանձաւոր է, ի տեղի իւր դարձցի զի թէ այդ այդպէս ոչ լինի, յաւիտենական թշնամանք մնան ի վերայ աշխարհիդ։ Եւ եթէ ի ձեռն գրելոցդ հակառակութիւնդ չքառնայ, գրեցէք առ փառաւորեալ իշխանս աշխարհիս մերոյ, որ զմեզ այդր արձակեն, եւ այնպէս լինի որպէս Աստուածն կամի" (էջ 137)։*

*Նոյն բովանդակութեամբ է եւ քիչ մ'աւելի ուռուցիկ եւ ուսուցչական ոճով առ Կիւրիոն եւ առ իշխանս Վրաց թուղթը (էջ 138—139), ուր այս անգամ կը լռէ բոլորովին Մովսիսի մասին։ Թղթիս կը վերադառնանք վարը։*

*Վրթանիսի թղթերն կը մնան անպատասխանի թէ Կիւրիոնի եւ թէ Պետրոսի կողմանէ։ Միայն, ինչպէս կը ծանուցանէ Վրթանէս Մովսիսի, "ազատ արք ոմանք" գրած են համառօտ պատասխան մը, զոր դժբախտաբար չունինք այսօր, Վրթանէս օրինակն յանձնած չըլլալուն Մովսիսի։ Բովանդակութեան կարելի է սակայն ծանօթանալ Վրթանիսի թղթէն (էջ 141), որուն համաձայն Վրաց ազատներն հաւատոյ նկատմամբ համարձակ անտարբեր պատասխանս տուած են. "Մեք եւ զայս ունիմք հաւատ եւ զայդ. օրինաց սատ հաղորդիմք եւ այդր"։ Իսկ Յուրտաւայ եպիսկոպոսի խնդրոյն մասին ըսած են. "Մովսիսի եթէ կամք են եկեսցէ կաթուղիկոսիս հնազանդ լիցի, զի մեզ այս հաճոյ է, եւ զիւր տեղի կալցի"։*

*Զափազանց առնուած է Վրաց այս վարմունքէն Վրթանէս. եւ կը գրէ առ Մովսէս. "Աւելորդ համարիմ ես տալ (պատասխանել) այսմ ամենայնի"։*

*Վրաց իշխաններու յիշեալ թուղթը կնքուած բերած է թղթատար մանուկը Ս. Յովհաննու վանքը*

Մովսիսի. զոր Վրթանիսի խաւրած ժամանակ կ'ըն-կերացընէ նոր թուղթ մ'ալ իւր կողմանէ (էջ 141), յորում կը նկարագրէ "մանուկ" էն լամծները, թէ ինչ հանդիպած է անոր ի Վիրս, թուղթը ինչ ազ-դեցութիւն ձգած է նէն նէն։ Կը խնդրէ որ Վրաց թուղթը "հրամայեցէք ընթեռնուլ եւ մեզ ծանու-ցէք զինչ գրեալն է"։ Մտադրութեան արժանի է մանաւանդ Մովսիսի ողջքին լեզուն. "զՁեզ յա-րաժամ յաշխատութիւն պահեցի, կը գրէ առ Վրթանէս, Աստուած եղիցի վարձահատոյց. բայց ձանձրանայք մի, աղաչեմ, որով օրինակաւ եւ է, յանձին լիցի մոլորեալ աշխարհն եւ անձն իմ տա-ռապեալ"։ Ի վերջ թղթոյն կը խնդրէ, որ գրէ իրեն, թէ Քաղկեդոնի ժողովոյն վարդապետու-թիւնն Զենոնի եւ Անաստասի մահուընէ ետքը կրկին ի՞նչպէս հաստատուեցաւ։

Մովսիսի թղթին պատասխանը մանրամասն կու տայ (607) Վրթանէս (էջ 141—145) եւ կը խոստանայ իւր կողմանէ ամէն հնարաւորն ընել. "դու տէր, կը գրէ, աղօթեա, զի ի ժամուս պնդեալ են առաջնորդ կարգել, եթէ զայս գործ օգնէ ի կատարումն տանել Քրիստոս Աստուած մեր, ապա գիտեմք եթէ ձեր կամք այնպէս կատարին, որպէս Աստուծոյ ողորմութեանն թուի" (էջ 141)։

Ըստ տեղեկատուութեան Վրթանիսի ար-դեամբք ալ 607 Ապրիլին ժողված էին եպիսկո-պոսունք ի Դուին Սմբատ Վրկան մարզպանի հակո-ղութեամբ կաթողիկոս մ'ընտրելու։ Ժողովքիս մէջ, որուն մասին խօսեցանք վերը մանրամա-նօրէն, ներկայ էր նաեւ Ս. Յովհաննու Մկրտչի Վանաց վանէրէցն Բարիւլաս[1]։ Սա անձամբ ծա-նօթ Մովսիսի՝ ապահովապէս դրուատեօք խօսեցաւ անոր մասին եւ հաղորդեց կարեւոր տեղեկու-թիւններ թէ Վրթանիսի եւ թէ նորընտիր կա-

---

[1] "Բարիւլաս սրբոյ Յովհաննու Վանաց երէց" էջ 151։

*թողիկոսին Աբրահամու։ Մովսէս ներկայ չեղաւ ժողովոյն. պատճառն կու տայ Ուխտանէս* (*էջ* 72). *“Վասն զի հիւանդութիւն հանդիպեալ նմա, ասեն, յայնժամ մերձ ի մահ, եւ վասն այնորիկ ոչ կարաց գալ ի ժողովն։”*

*Աբրահամու ձեռնադրութենէն ութ ամիս յետոյ ըստ Ուխտանիսի* (*էջ* 72), *այն է* 607 *Նոյ.-Դեկտ., կը փութայ Մովսէս յատուկ թղթով մը շնորհաւորել նորընտիր կաթողիկոսն եւ իւր դատն դնել անոր առջեւ* (*էջ* 161—162). *կը պարզէ հոն իւր “ցաւն” Վրաց “ուղիղ հաւատքէն” մոլորելոյն վրայ եւ “քաջ բժիշկէն” կը խնդրէ կենարար դեղը։ Իր անձին վրայ ծանօթութիւն Վրթանիսէն տեղեկանալ կը յանձնէ. “իսկ եթէ զանարժանութենէս մերմէ հարցանէք, ի Վրթանէսէ քերդողէ տեղեկանայք. եւ անձն իմ տառապեալ եւ աշխարհն մոլորեալ սրբութեան ձերում յանձն եղիցուք”* (*էջ* 162)։

*Աբրահամ* (*կամ իւր կողմանէ Վրթանէս*) *չի յապաղեր պատասխանն* (*էջ* 163), *որով կը խրախուսէ զՄովսէս եւ կը հրաւիրէ գալ Դուին. “մի դանդաղիցիս ի Ս. Զատիկն գալ այսր, զի բազմաց լինի խնդութիւն եւ գործք հոգեւորք առաջի կայ, մինչդեռ Տէր Սմբատ աստէն է, փութամք որով եւ է օրինակաւ նախ զայդ ի գլուխ տանել՝ շնորհիւն Քրիստոսի Աստուծոյ մերոյ։”*

*Ունկնդիր կ՚ըլլայ հրաւէրին Մովսէս, կը մեկնի անմիջապէս Դուին եւ* 608*ին Զատկէն յառաջ* (7 *Ապրիլ*[1]) *Դուին էր արդէն, ինչպէս կը տեսնուի Սմբատայ առ Կիւրիոն թղթէն, ուր կ՚ըսուի յայտնապէս թէ Ցուրտաւայ եպիսկոպոսն “աստ է” ի Դուին։*

---

1 *Վերագոյն, էջ* 46, *սխալմամբ նշանակուած է Ապրիլ* 22, *զոր ուղղելու է ըստ այսմ։*

*Հակառակ արժանեաց՝ սիրով կը հիւրընկալէ Աբրահամ “իբրեւ զբարեգործ ոմն*[1]„ *եւ ընդդէմ եկեղեցական իրաւանց օտար թեմի պատկանեալ եպիսկոպոսի դատն կը ստանձնէ ի գլուխ հանել. որուն դէմ բողոքեց ի հարկէ ապա Կիւրիոն։*

*Դուին կը ներկայացուի նաեւ Վրկանի մարզպանին՝ Սմբատայ, որ հոն էր տակաւին եւ լաւ վերաբերուեցաւ դէպ ի անոր։ Մեծապէս վստահ կրնար ըլլալ Մովսէս Սմբատայ պէս հզօր նեցուկ մ'ունենալէ յետոյ։ Արդեամբք ալ անկասկած ըրաւ իւր միջնորդութեան նկատմամբ զինքը Սմբատ. “Քեզ վաղ ասացի, կը գրէր Վրկանի մարզպանը Մովսիսի, թէ գրեմ առ արքայից արքայ„ եւ կը յաջողցընեմ դատդ* (Գիրք Թղթոց, 174)։ *Մովսէս սակայն յանձն չ'առնուր այս կերպով յաղթութիւն մը, ըստ Ուխտանիսի, ըսելով թէ “Ես Ատրներսեհի եւ Վահանայ եղբարց ի՞նչ եմ, եւ ոչ սուր առնուլ եւ ընդ ամենայն Վիրս կռուել*[2]*։„*

*Մովսիսի ներկայութեամբ եւ Վրթանիսի քերդողական ջատագովութեամբ ոգեւորուած էին կաթողիկոսն եւ Մարզպանը։ Կը խորհին եպիսկոպոսներ արձակել ի Վիրս եւ իրաց դարման տանելու վրայ բանակցիլ. բայց այս առ ժամս կը յապաղեն եւ կը փորձեն թղթերով ի գլուխ հանել։ Կը գրեն Աբրահամ եւ Սմբատ առանձին առանձին թղթեր առ Կիւրիոն, եւ կը պահանջեն որ Մովսիսի կրկին շնորհէ աթոռը։ Բայց անօգուտ։ Կիւրիոն մերժողական պատասխան կու տայ. եւ միայն այն դէպքին յանձն կ'առնու ընդունիլ, երբ զղջայ յանցանացը վրայ եւ գայ իրմէ թողութիւն խնդրէ։ Կիւրիոնի առ Աբրահամ եւ առ Սմբատ թղթերն կը կարդայ Մովսէս, եւ կը փութայ արդարացընել ինք զինքը Սմբատայ առջեւ։ Բայց Սմբատ ստիպուած էր*

---

1 ԱՐՐՏ, 1902, 567։

2 Գիրք Թղ. 174։ Հմմտ. Ուխտ. 98 եւ 102։

գարնան արքայից արքայի հրամանին համաձայն ի Դուռն ճեպել (608). այնպէս որ Մովսէսի չքմեղանաց թուղթը (էջ 172—173) կէս ճամբան կ'ընդունի Սմբատ, որուն կու տայ պատասխան լի քաղցրութեամբ եւ յոյսեր ներշնչելով. կը խոստանայ կրկին արքայից արքայի առջեւ պարզել խնդիրը եւ հրաման հանել, "որ երթաս ի քո եկեղեցւոջ նստիս եւ քո հաւատով զքո ժողովուրդս ունաս" (էջ 174)։

Թէ արդարեւ գրե՞ց Սմբատ Խոսրովու որ եւ իցէ թուղթ այս մասին, կամ խօսեցաւ բերանացի, յայտնի չէ։ Սմբատ ի Դուռն կոչուելով անմիջապէս Վրկան խաւրուեցաւ Քուշաններու խլրտումները զսպելու նպատակաւ. ուր զբաղեցաւ բաւական երկար (608—610), երբ Դուռին ամէն բան ձախող կ'երթար։ Քուշանաց դէմ տարած յաղթութենէ յետոյ Սմբատ մեծամեծ պատիւներու բարձրացաւ, մինչեւ Խոսրովու թագաւորութեան "երկրորդը" եղաւ եւ մնաց այնուհետեւ արքունիք։ Մեծ պիտի ըլլար հետեւաբար իր ձայնն արքայից արքայի առջեւ. եւ ապահովապէս լսելի պիտի ըլլար իր բարեխօսութիւնը, եթէ ընէր։ Բայց ուշ էր։ Վասն զի Կիւրիոն յետ երկար թղթակցութեանց Աբրահամու հետ՝ իւր երրորդ թղթով (608 Աւգոստո՞ս) փակած էր խնդիրն անյետս կոչելի. "վասն այսր դատաստանի (այս է Մովսէսի խնդրոյ մասին) առ իս աւելի ինչ մի՛ գրեր, եւ մի աշխատ լինիր, թէ ոչ պատասխանի ոչ ընդունիս[1]." որուն վրայ Աբրահամ քիչ վերջը նզովքով կտրած էր Հայոց եւ Վրաց հաղորդակցութեան կապը։

Ի՞նչ եղաւ այսուհետեւ Մովսէսի վիճակը. անյայտ է մեզի։ Կիւրիոն ի Ցուրտաւ Մովսէսի հեռանալէն ետքը կարգած էր արդէն ուրիշ հովիւ մը, որ ըստ Կիւրիոնի՝ գիտէր հայերէն եւ վրացե-

---

[1] ԱՐՐՏ. 1902, 568։

րէն. “բայց զի եպիսկոպոսն, զոր արարաք՝ վրացի եւ Հայ դպրութիւն զոյգ գիտէ, եւ զպաշտօն կատարէ երկոքումբ դպրութեամբքն”[1]:

Հարկ է ըսել թէ օտարութեան մէջ անցուց Մովսէս իւր կենաց մնացած ժամանակն՝ հեռու հայրենիքէն: Վերջին անգամ նկատեցինք զինքը ի Դուին. մեկնեցա՞ւ ասկէ թէ ոչ. չենք գիտեր. հաւանականաբար մնաց հոն կաթողիկոսարանին մէջ ցմահ, երբ կարգի դրաւ Թղթոց գիրքը: Մահն պատահած պիտի ըլլայ Կոմիտաս կաթողիկոսի օրով. 609ին ի Դուին 39—40 տարեկան էր տակաւին, յուժի հետեւաբար:

## ԳԼՈՒԽ Ժ.

### Կիւրիոն, Աբրահամ եւ Սմբատ:

Կիւրիոն հմայուած Վրաց եկեղեցին կաթողիկէ եկեղեցւոյն հետ միացընելու վեհ գաղափարէն, որուն ծանօթացած էր Նիկոպոլիս, բովանդակ ճիգերն առ այն կեդրոնացուց: Պարզեց Վրաց եպիսկոպոսաց եւ հոգեւորականաց՝ դարէ մ'ի վեր Յունաստան, Ասորիք եւ Հայաստան ծագած յոյզերն ու վէճերը, մեկնեց Քաղկեդոնի ժողովոյն

---

[1] Թուղթ առ Սմբատ. էջ 171. համմտ. եւ էջ 167. “բայց զի որ եպիսկոպոսն եղեւ՝ վրացի ուսումն գիտէ եւ Հայ նոյնպէս”: Զարմանալի կերպով Մովսէս կը ժխտէ զայս “Զի եպիսկոպոսն Նեստորական (իմա՛ հոս՝ Քաղկեդոնական), զոր արարին, դպրութիւն զի եւ վրացերէն չգիտէ, որպէս արժան է, թող թէ Հայերէն, եւ այն յայտ է”. էջ 173: — Սա կ'ակնարկուի անշուշտ Յուրտաւայ եկեղեցւոյն առ Մովսէս ուղղած խօսքերովս. “ապա թէ ոչ մեզ այլ ինչ ճար չէ, բայց կամ կալ յաշխարհիս եւ լաւ կամաց ոսկր լինել, կամ թողուլ եւ գնալ ի բաց” (էջ 129):

շուրջն ամբոխուած բանավէճերու ուղ եւ ծուծն, մասնանշելով այն ամէն թիւրիմացութիւնքն, որով նախապաշարուած՝ կը հակառակէին այդ ժողովոյն Սահմանին՝ իրենց դրացիք, եւ այսու լուսաւորեց բովանդակ Վրաստան եւ ընդունել տուաւ բոլոր եպիսկոպոսաց եւ նախարարաց Քաղկեդոնի ժողովոյն վարդապետութիւնը։ Ցամի 605 զայրութով կը գրէր Վրթանէս Քերթող այս մասին առ Եկեղեցին Ցուրտաւայ (էջ 130). "Եհաս լուր չախորժելի, եթէ զհերձուածն Նեստորի եւ զժողովոյն Քաղկեդոնի (ընկալեալ է ձեր), եւ արդ կաթողիկոսդ անուանեալ եպիսկոպոսօքդ հանդերձ եւ իշխանօք ընդունելութիւն եւ մեծարանս առնեն հերձուածոյդ։" Այսպիսի արագութեամբ փոքր ժամանակի մէջ յաջողցընել ամբողջ երկրի մը լուսաւորութիւնն առանց ներքին ընդդիմութիւն մը կրելու շատ զարմանալի է. զոր հարկ է վերագրել մասամբ Կիւրիոնի մեծ կարողութեան, եւ մասամբ երկրին կրօնական վէճերէ ազատ մնացած ըլլալուն[1], որով կրքով եւ նախապաշարումներով տոգորուած մտքերու չէ բախուած։ Միշտ անիմաստ կը մնայ Մովսէս եպիսկոպոսի ջատագովութիւնը թէ "յառաջ քան զձեռնադրութիւն" իւր եպիսկոպոս՝ չէր գիտէր Կիւրիոնի դաւանութիւնն եւ առաջին անգամ 605ին "յանկարծ" իմացած է եւ հակառակած. զոր իրաւամբ կը հենդնէ Կիւրիոն իւր առ Աբրահամ գրած թղթին մէջ (էջ 179). "...եւ կամ միանգամայն երեսուն եւ հինգ եպիսկոպոսունք[2] են ի Վիրս, Մովսէսդ այդ ուստի՞ գտաւ

---

[1] Հմմտ. վերը էջ 101։

[2] Գրեթէ համաձայն արտաքնոց վկայութեան հետ. ոչ շատ անջրպետով յառաջ կաթողիկոսիս ժամանակէն՝ իբր 518ին իւր թղթին մէջ Սիմէոն Բեթ-Արշամայի եպիսկոպոսը կը յիշէ ի Վիրս 33 եպիսկոպոս (Assemani, Bibl. Or. II. 357, տես վերը էջ 94 ծան.), ուրեմն այս հաշուով մինչեւ 608 երկու եպիսկոպոսութիւն միայն աւելցած է։

միայն ուսեալ եւ ուղղափառ եւ այլքս ամենեքեան հերձուածող, մանաւանդ զի յիմումս Տէր Աստուած մեր զեկեղեցիս մեր աւելի պայծառացոյց, եւ զհաւատ մեր առաւել հաստատեաց:„ Կիւրիոն ի սկզբանէ հետէ ուղղափառ էր եւ նոյն Քաղկեդոնական վարդապետութիւնն քարոզեց ի Վիրս կաթողիկոսութեան առաջին օրէն. Միթէ, կը գրէ առ Աբրահամ, զՄովսէս ձեռնադրելէն յառաջ ուրիշ վարդապետութիւն քարոզած ենք եւ “յետ այնր ինչ փոխեցաք զհաւատս„ (անդ. 178): Այսպէս գրած եւ Յովհ. Պատմաբան[1]:

Թէ Կիւրիոն իւր գործունէութեան մէջ հետեւեցա՞ւ որ եւ իցէ բռնական միջոցներու, հակառակորդք կը հաստատեն: Յուրտաւայ Եկեղեցւոյն առ Վրթանէս տուած պատասխանին մէջ կ'ակնարկուի անձ մը, զոր “բռնաւոր գռռող„ կ'անուանեն, որուն առջեւ “չմարթի կալ„, այլ հարկ է կամ հաւանել եւ կամ “թողուլ զաշխարհս եւ գնալ:„ Նման նկարագիր մը կու տայ եւ Մովսէս եպիսկոպոս առ Վրթանէս երկրորդ թղթին մէջ Կիւրիոնի մասին (էջ 133). “Մեք թէպէտ կամ վասն ագիտութեան եւ միայնութեան, եւ կամ վասն չարութեան առաջնորդին մերոյ զանգիտեցաք ինչ, յոյս ի ձեզ եդաք ...թէպէտ եւ ի ժամուս ի սնոտի մեծութենէն իբրեւ զգետ ինչ ի բազում ուխից է յարուցեալ, եւ իբրեւ զգազան ինչ դժնդակ ճիրանամբքն եւ մագլամբքն է սաստկացեալ (Կիւրիոն)... (յուսամք) ի ձեռն ձեր խզել զայդ վարմ խորամանգ անձին„ եւն: Արդարեւ

---

1 Պատմ. 28. “Իսկ ապա մերձ ի վախճանին Մովսիսի Կիւրիոն զճշմարիտ կարգաց եւ զկրօնից ուղղութիւնն ի բաց խզեալ, զոր ի հարցն մերոց ուղղափառաց աշակերտեալ էին կողմանքն այնոքիկ միաէր զհետ ժողովոյն Քաղկեդոնի, զկնի փառամոլ ամբարհաւաճութեան իւրոյ ձգեալ դաւաճանեալ զնախահարս աշխարհին:„

խիստ խօսքեր, որոնց ստուգութիւնը սակայն կը կարօտի քննութեան. Մովսիսի վկայութիւնն արժանահաւատ կարելի չէ համարիլ[1]։

Բնական էր, որ հաճոյքով պիտի չնկատուէր Կիւրիոնի այս գործունէութիւնը Հայոցմէ, որոնք, մանաւանդ Զ. դարու երկրորդ կէսէն ի վեր անդուլ մաքառած էին Քաղկեդոնի ժողովոյն դէմ, որոնց պարագլուխն էր Վրթանէս Քերդող։

Կաթողիկոսութեան տեղապահս Յունաց հետ զբաղած՝ անտեղեակ էր ի Վիրս գործուածներուն։ Եւ հաւանականաբար առաջին անգամ Մովսէսէն լսեց "չախորժելի լուրը" Կիւրիոնի բռնած ընթացքի մասին, որուն հանդէպ չգտնուեցաւ անտարբեր։ Արդեամբք ալ ըստ խորհրդեան եւ աղաչանաց Մովսիսի, փութաց գրել մէկ մէկ թուղթ առ Պետրոս եւ Կաթողիկոսն Կիւրիոն։ Թղթերս սակայն յուսացուած արդիւնքն չտուին. պատճառն ընտրուած անվայել ոճն էր ապահովապէս. Վրթանէս, ինչպէս իւր բովանդակ գործունէութենէ կը տեսնուի, իւր գիտութեամբն շլացած անձ մ'էր, աւելի ուսուցանելու տենչիւ տոգորուած քան ուսանելու. այսպիսի ոգւով ալ գրած է իւր կրկին թղթերը — ամբարհաւաճ եւ անխոհեմ ոճով մը, որ անպատուաբեր էր թէ գրողին եւ թէ անոր, առ որ կ'ուղղուի, Վրաց կաթողիկոսի աստիճանին։

---

1 Միայն հոս չի գործածեր Մովսէս այսպիսի լեզու. իւր բոլոր թղթերու մէջ ամենեւին յանուանէ չէ յիշատակած զԿիւրիոն, այլ միշտ այսպիսի բացատրութիւններով. "կաթողիկոս անուն" (էջ 110, 133), "Վրաց աւերչի կաթողիկոս անուան" (172), "կաթուղիկոսդ անուանեալդ" (130), "Առաջնորդ մեր" (133), "խորամանկ անձն" (133) եւն։ Ասկէ ուսեալ կը գործածէ եւ Վրթանէս (135, 140 եւն). իսկ Ցուրտաւայ եկեղեցին. "որ հայրապետդ անուանիդ" (էջ 132)։

Առ Կիւրիոն եւ իշխանս Վրաց ուղղած թղթին մէջ Մովսէս կաթողիկոսի տարիներ յառաջ Խուժկաց առթիւ գրած թուղթը յիշելէ յետոյ կ'անցնի Քաղկեդոնի "տիեզերակործան եւ անյիշելի․ ժողովոյն մասին, եւ կը յայտնէ իւր զարմանքն թէ ինչպէս համարձակած են Վիրք ընդունիլ անոր վարդապետութիւնն․ որուն պատճառն լոկ տգիտութիւնը կը համարի։ Ահա իւր իսկ տողերը (էջ 138)․ "Այժմ լուաք թէ դուք զանօրէն ժողովոյն Քաղկեդոնին եւ զտումարն Լեւոնի ուղղափառ համարիք եւ մեծարանաց արժանի․ վասն զի չո—նէ+ կրՆո—Նէ—Ն քննել զհերձուածոց չարութիւնս։... Արդ ոչ է պարտ աստուածսիրութեան ձերում աւելի ինչ վարդապետութիւն զուրուք ընդունել։„ Կը վերջացնէ խօսքերը․ "Եւ թէ է ինչ երկբայութիւն ի միտս ձեր եւ կամիք զփորձ առնուլ յաղագս այդորիկ, գրեցէք առ միաբան փառաւորեալ իշխանս աշխարհիս մերոյ, որ գամք այդր, եւ որպէս ի հեռաստանէ թղթոյս պատգամաւ, նոյնպէս յանդիման՝ վկայութեամբ գրոց սրբոց յայտնի առնեմք զճշմարտութիւն բանիցս։„

Այսպիսի ուռուցիկ ոճով տողուած խրատականս Կիւրիոն նկատեց արհամարհանօք, եւ ոչ իսկ պատասխանի արժանի համարեցաւ․ ուզեց լռութիւնը յարգելով խնդիրն իւր սկսուածին մէջ խեղդել, քան պատասխանելով արծարծել եւ բորբոքել։

Մովսէս Կիւրիոնի այս վերաբերմունքը այսպէս կը նկարագրէ Վրթանիսի․ Առ Կիւրիոն եւ անոնց իշխանները գրած թուղթդ իմ մանկանս ձեռքով խաւրեցի, որ այժմ դարձած է եւ քովս կը գտնուի։ Ճամբուն երկարութենէն յոգնած՝ չկրցաւ "այդր գալ եւ ձեզ զրոյց տալ։„ Թէպէտ եւ ի սկզբան մէկը չէ համարձակած թուղթը կաթողիկոսին ներկայացընել, բայց ապա տարած են, որ, ինչպէս կը պատմէ մանուկը, "յընթեռնուլ

թղթոյն ի սաստիկ բարկութենէն շարժեալ, զայրացեալ սրտիւ եւ եղծեալ գունով զաւրէն ցաւածաց՝ նզովէր եւ թշնամանէր զՀայաստանեայս. եւ թղթոյն պատասխանի ոչ ինքն արար եւ ոչ այլոցն ետ առնել։ Զայս յԵրուսաղէմ առ Հայրապետ քաղաքին տամ տանել, ասէ, որ պատասխանի առնէ[1]։" Այս տողերէն մեզի այսչափ միայն ստոյգ կը թուի, որ Կիւրիոն նայելով գրող անձին եւ գրութեան ոճին, պատշաճ դատած է լռութեամբ անցնիլ։ Թերեւս սպառնացած ըլլայ նաեւ բողոքել Երուսաղէմի պատրիարքին (Իսահակ) կամ Երուսաղէմի պատրիարքն դատաւոր ընտրել։ Այս իմաստով հասկնալ անհրաժեշտ է հոս Կիւրիոնի

---

[1] Ի՞նչ հիմամբ կը սպառնայ արդեօք Կիւրիոն թուղթն Երուսաղէմ խաւրել, որ անդւոյն Հայրապետն պատասխանէ. Երուսաղէմի Հայրապետն էր այս տարիներս Իսահակ (601–609. հմմտ. Acta Sanctorum, Oct. XII, 646 եւ Revue de l'Or. Chr. VII (1903) p. 32—33), որ ծանօթ էր Կիւրիոնի, եւ հաւանականաբար ի միասին գացած էին Կիւրիոնի թղթատարներն ի Հռոմ Իսահակայ թղթին հետ առ Գր. Քահանայապետ։ Կիւրիոն Երուսաղէմի ճոխութիւնն անվիճելի համարելով՝ ապահովապէս խնդրոյս մէջ վճռաբեկ դատաւորը կ'ուզէր անդւոյն Հայրապետն ընտրել։ — Հ. Ղ. Ալիշան (Հայապատում Ա. § 59, էջ 207) այսպէս կը գրէ այս մասին. "Կիւրիոն անօգուտ համարելով աւելի երկար վիճելը, բողոքեց առ պատրիարքն Երուսաղէմի, եւ որպէս երեւի՝ նաեւ առ քահանայապետն Հռովմայ, զի կայ Ս. Գրիգոր Մեծին Պապի թուղթ առ Կիւրիոն այս նիւթիս վրայօք։" Բայց Հ. Ալիշան ինկած է հոս հակաժամանակագրութեան մէջ։ Նախ այս դէպքն Աբրահամու թղթին (608) իբրեւ պատասխան կը նկատէ. Երկրորդ Գրիգոր Մեծին թուղթը, ինչպէս տեսանք, գրուած էր դէպքէս 7 տարի յառաջ, բոլորովին ուրիշ շարժառիթով։ Հ. Ալիշան կը կարծէ դարձեալ, թէ Ուխտանէս Բ. հատորին վերջը խօսած ըլլայ Գրիգորի թղթին եւ Երուսաղէմի Հայրապետին բողոքի վրայ, որ նոյնպէս անընդունելի է (հմմտ. վերը, էջ 62 ծան.)։

մասին ըսուածները, վասն զի, ինչպէս պիտի տեսնենք, պարզապէս Երուսաղէմի հաւատքն բերել տուաւ ապա, երբ Աբրահամու հետ խնդիր ունեցաւ, եւ ոչ որ եւ իցէ թղթակցութիւն բացաւ Վրաց, Հայոց եւ Երուսաղէմի հայրապետին մէջ։

Վրթանէսի թուղթը որովհետեւ ուղղուած էր նաեւ Վրաց նախարարներու, "սակաւք ոմանք„ միաբանած գրած են պատասխան մը, ի հարկ է համաձայն կամաց եւ մտաց կաթողիկոսին, հետեւաբար ոչ ախորժելի բան մը Վրթանիսի համար։ Այս թուղթը չէ պահուած մեզի, որով բովանդակութիւնն ամբողջութեամբ ծանօթ չէ մեզ։ Ոճն, ինչպէս կը գրէ Վրթանէս առ Մովսէս (էջ 141), "այնպէս է, որք ի հիւանդութեան ինչ ընդ բարբանջ անկեալ զինչպէս խաւսին.„ անշուշտ իշխաններն թշնամանիկ խօսքերով կը կշտամբէին հոն Վրթանիսի անխոհեմ քայլերն, եւ այսպիսի պատճառաւ անյարմար տեսած է օրինակն տալ Մովսիսի։

Կիւրիոնի հետեւելով անպատասխան թողուցած էր եւ Պետրոս իրեն ուղղուած նամակը։

Վրթանէս կը դադրեցընէ առ ժամն Վրաց հետ թղթակցութիւնը, թողլով դատն յընտրութեան եղող կաթողիկոսին։ Ոչ շատ վերջը կը բարձրանայ կաթողիկոսութեան աթոռն Աբրահամ։ Վրթանէս այսուհետեւ թէպէտ հեռացաւ տեղապահութեան պաշտօնէն, սակայն չդադրեցաւ ամէն քար շարժելէ, յաջողցընելու համար սկսածը։ Եւ մեծ էր Վրթանիսի ազդեցութիւնը ծերունի կաթողիկոսի վրայ, թէ իբրեւ հմուտ կաթողիկոսարանի իրաց եւ թէ իբրեւ քերդող վարդապետ (տե՛ս վերը էջ 151)։ Հետեւաբար իւր սատարութիւնը դատիս մէջ, զոր անդադար կը մատուցանէր ըստ խոստման, առանց հետեւութեան չեղաւ։ Ըստ մտաց եւ խրատու Վրթանիսի կը շարժէր նաեւ Աբրահամ, "ըստ երեւութին թոյլ եւ հնացեալ

մարդ մը, անխոհեմ եւ անքաղաքագէտ[1]:» Ամենայն ինչ ի լոյս գիտէր նորընտիր կաթողիկոսն, եւ այն այնպէս, ինչպէս նկարած էր իրեն Վրթանէս, թշնամանեալն ի Կիւրիոնէ եւ սրտակից բարեկամն Մովսիսի: Մովսէս ալ Վրթանիսի իւր վրայ կազմած վստահութիւնը լաւ գիտցաւ գործածել, եւ Աբրահամու գրած թղթոյն մէջ, երբ տակաւին հեռու էր, իր մասին տեղեկութիւններ Վրթանիսէն իմանալ յանձնեց[2]:

Արդեամբք ալ Աբրահամ դիմեց Վրթանիսի, որուն ամէն վկայութիւնքն անվրէպ պատգամի պէս ընդունեցաւ, ինչպէս Մովսիսի տրուած պատասխանէն կարելի է տեսնել:

Աբրահամ խրախուսուած Մովսիսի եւ Վրթանիսի խօսքերէն, եւ Վրաստանի «Նոր լուսաւորիչ» ըլլալու փառքէն ինքն ալ շլացած, կաթողիկոսութեան առաջին գործն ըրաւ կարգի դնել այս խնդիրը: Փութաց, դեռ անդրանիկ կոնդակը չգրած իւր հօտին, թուղթ մը գրել «առ Կիւրիոն Վրաց կաթողիկոս» (էջ 164—165), թուղթ մը կարի

---

[1] Մ. Էմին՝ Изслѣдованія и Статьи, стр. 156.

[2] Բոլոր այս խնդրոց մէջ մեծ նշանակութիւն պէտք է տալ Ցուրտաւայ եպիսկոպոսին ազդեցութեան՝ Վրթանիսի եւ Աբրահամու վրայ: Մովսէս էր զՎրթանէս եւ զԱբրահամ կառավարողն. նա իւր ձեռքն առած էր իւր գաւառին ծրագիրը. ինքն էր Կիւրիոնի ընթացքի մասին տեղեկութիւններ հաղորդողն, եւ իւր «մանկան ձեռօք» վերջապէս ի Վիրս կ'առաքուէին բոլոր թղթերը եւ կու գային: Մտադրութեան արժանի է եւ այն պարագան որ Մովսէս առանձինն կերպով կը խնդրէր Վրթանէսէն իրեն գրած եւ առ ինքն գրուած թղթերէն մի մի օրինակ: «Մանուկդ» պատգամաւորն շատ բան բերանացի ալ կը հաղորդէր ըստ բաղձանաց Մովսիսի. այսպէս բացայայտ կը գրէ Մովսէս Վրթանիսի. «Եւ զայլն ի մանկանէդ լուեա»: Մովսիսի ձեռքէն կ'անցընէին առ Կիւրիոն եւ առոր առ Հայս թղթերը (էջ 172):

անոճ եւ խիստ, յայտնապէս Վրթանիսի ազդեցութեան ներքեւ։ Կը բողոքէ Աբրահամ, թէ 1. ինչո՞ւ Կիւրիոն դրժած է այն խոստման, զոր "գրով եւ պատգամաւորաւ յանձն էր առեալ:" Թէ 2. ինչո՞ւ "զՑուրտաւայ զեպիսկոպոսն հալածեալ էք" ուղղափառ հաւատոյ համար։ Թէ 3. ի՞նչ իրաւամբ "զպաշտաւնն հայերէն սրբոյն Շուշանկան զկարգաւորեալն՝ լռեալ՝ թէ ի բաց փոխեցէք։[1] Գործքեր, որոնք Աբրահամու աչաց առջեւ մեծ մեծ յանցանքներ են ընդդէմ եկեղեցական կարգաց. "Մեզ մահուչափ եւ եւս չարագոյն թուեցաւ գործդ այդ" (էջ 164)։

Լեզու մը, որ արդարեւ բարձր իշխանութեամբ Նորագարդ անփորձ անձի մը միայն վայել է, եւ ոչ Աբրահամու պէս ծերունի կաթողիկոսի մը։ Այսպէս գրած չէր Մովսէս կաթողիկոս։ Աւելի մեղմացած է Բ. եւ Գ. թղթերու մէջ ապա։ Ի վերջոյ յիշեցընելով Կաւատայ արքայէն արքայի օրով ի Վաղարշապատ գումարուած ժողովն, ուր Հայք, Վիրք եւ Աղուանք միաբան մերժեցին Քաղկեդոնի ժողովն, կը յորդորէ ի նոյն միաբանութիւն։ Այսպիսի աներկիւղ ընթացք մը Աբրահամու կողմանէ դիւրաւ կրնայ մեկնուիլ, եթէ մտածենք թէ Սմբատ Վրկանի մարզպանը, մեծաբեալն Խոսրովէն, Դուին կը գտնուէր։ — Վրթանէս տակաւին չէր կասած այն խորհուրդէն, զոր ունեցած էր երբեմն, անձամբ Վրաստան երթալ։ Այժմ եւս, որչափ կ'երեւայ, յայտնած է իւր այս բաղձանքն իբրեւ իրացս մի միակ դարման, թէեւ

---

[1] Ի՞նչ աղբերէ լսեց Աբրահամ այս լուրը. Մովսէս տակաւին Դուին չէր եկած, հետեւաբար անձամբ այս մասին չէր խօսած։ Վրթանէս ալ չէր կրնար գիտնալ, որովհետեւ Մովսէս որեւիցէ խօսք չէր գրած իրեն։ Թերեւս Մովսէս "մանկանց" ձեռօք հաղորդած ըլլայ ինչ ինչ, կամ լաւ եւս Ցուրտաւ երթեւեկողք պատմած։

ունկն չէ գրուած. Աբրահամ կը գրէ այս նկատմամբ պարզապէս. «Կամեցայ եպիսկոպոսունս արձակել առ սրբութիւն ձեր, եւ ըստ մտաց գրոց սրբոց, ծանուցանել զնմանամտութիւն ժողովոյն Քաղկեդոնի. բայց առ ժամս պատշաճ համարեցաք նախ ի ձեռն պատուական ազատ արանցդ թղթով ընդունել ի ձէնջ պատասխանի»։ Կիւրիոնի ամբողջ գործողութեան մէջ քաղաքական ձգտում մը ցոյց տալ ջանալով անըմբռնելի կը համարի, թէ ինչպէս կարելի է արքայից արքայի ծառաներուն օտար թագաւորութեան (Յունաց) հետ սիրոյ եւ հաւատոյ միաբանութիւն ունենալ, ուր յայտնի ապստամբութեան հետք կայ[1]։

Աբրահամու այս թղթին կ'ընկերացընէ[2] թուղթ մ'ալ Սմբատ այսպիսի հացէով. «Սրբասիրի Տեառն Կիւրոնի Վրաց կաթուղիկոսի եւ այլոց եպիսկոպոսաց աթոռակցաց ձերոց եւ իշխանաց աշխարհիդ Աստեբունհի եւ ամենայն լուաց, ի Սմբատայ Գուրկան մարզպանէ եւ տերանց զինուորէ եւ ի Գիգայ Դաշտկարանէ, եւ ի Վարդապետէ Հայոց Շարաղարէ (= Վրթանէս քերդող) եւ յայլոց ազատ որերոյ խոնարհութեամբ եւ սիրով ողջոյն» (էջ 168—169)։ Թղթիս բովանդակութիւնն յընդհանուրն նման է Աբրահամու թղթին բովանդակութեան։ Կը յիշեցընէ Սմբատ եւս առ Բարդենաւ գումարուած ժողովն, կը պատմէ արքայից արքայի հրամանաւ իւր Հայաստան գալը, կաթողիկոսի ընտրութիւնն, եւ մեղմով կը մօտենայ բուն խնդրոյն. «բայց է ինչ լուր, որ յաշխարհականացս լուայ եւ սակաւ ինչ հաւատացի.» կը

---

1 «Զի է ինչ, որ չաւատալի իսկ թուեցաւ մեզ, զի ընդ օտար թագաւորութիւն՝ արքայից արքայի ծառայից սիրոյ միաբանութիւն առնել եւ զընական հաւրորդակիցս որոշել կարի իսկ դժուարին է», էջ 165։

2 Ուխտ. 92—93։

շեշտէ Յուրտաւայ եպիսկոպոսի կրած անցքը, Ս. Շուշանկան պաշտաման խնդիրը եւն: Պէտք էիք, կը գրէ Մարզպանը, դուք ընողն պատուհասել, "Թող թէ ձեզ առնել զայդ, որ կարի անհնարին եւ չար է:" "Կամէաք, կը շարունակէ Սմբատ, եպիսկոպոսունս հանդերձ [illegible] արձակել, [illegible]՝ գիտել զչարութիւն հերձուածոց, որ զձեզ ի վերայ հասուցանէին, բայց ապա առ ժամս բաւական համարեցաք ի ձեռն ազատ արանցդ նախ թղթով զկամս ձեր գիտել" (էջ 169): Վերջին տողերս, ուր Աբրահամու թղթին գրչի հետքերն ակնյայտնի են, Վրթանիսի ձգտման ամենապայծառ թարգմաններն են: Վրթանէս հոս բաց ի [illegible] բառէն յականէ ալ յիշատակուած էր: Զարմանալի է միայն որ երկու թղթոցս մէջ ալ չ'ըլլար որ եւ իցէ յիշատակութիւն Վրթանիսի առ Կիւրիոն թղթին. դիտմամբ արդեօք:

Թղթերս կը հանին Կիւրիոնի ձեռքը ապահովապէս ի Մծխիթա, ուր կը գտնուէր այս միջոցին (հմմտ. էջ 166). եւ նա կը պատասխանէ "մեծ հանդարտութեամբ եւ զգուշութեամբ, իրեն յատուկ հատու ատտիկեան ոճով[1]":

Առաջին թղթով մի առ մի կը լուծէ Աբրահամու յուզած չորս խնդիրները: Խուժկաց եւ Մովսէս եպիսկոպոսի մասին ըսածներն տեսանք արդէն. գալով այն կէտին, "որ վասն հաւատոց եւ ժողովոյն եւ տումարին գրեալ էր" Աբրահամ, փախստական պատասխան կու տայ, ուզելով ըսել թէ խնդիր աւելորդ է այս մասին, այլ "զհաւատ զերուսաղէմի ունիմք եւ կալցուք" (էջ 167): Այս սակայն Աբրահամու համար շատ անդոհացուցիչ էր, որ իւր թղթին մէջ ամենաէական շեշտն ասոր վրայ դրած էր, եւ գրեթէ մի միայն զայս նպատակած էր: Սուրբ Շուշանկան պաշտաման նկատմամբ կ'ըսէ թէ

1 Մ. Էջն՝ անդ:

ինքն ոչ թէ հայերէն կատարելն խափանած է, այլ որովհետեւ ի Ցուրտաւ բազմաթիւ վրացիներ ալ կը գտնուին եւ անոնց անիմանալի էր հայերէն կատարուած եւ ամէնէն սիրուած այս պաշտօնը, ի շահ հոգեւոր անոնց նոյնն վրացերէն ալ թարգմանած է եւ հրամայած, որ թէ՛ հայերէն եւ թէ՛ վրացերէն կատարուի. ապացոյց առոր, տեղւոյն նոր կարգուած եպիսկոպոսն երկու լեզուներուն ալ ծանօթ է[1]։ Կիւրիոն աւելի լրջօրէն կը ծանրանայ Աբրահամու այն տարակուսանաց վրայ, թէ ինչպէս Խոսրովու հպատակ եւ մի եւ նոյն ժամանակ Փոկասու հաւատակից կարելի է ըլլալ առանց առ արքայից արքայ հաւատարմութեան դրժելու։ Ծանրակշիռ էր խնդրոյս լուծումն, ըստ որում քաղաքական հարց շօշափելով՝ շփոթ ժամանակին իբրեւ ամբաստանութիւն կարելի էր լսուիլ նաեւ բարձրագոյն Դրան։ Առ այս կը պատասխանէ համառօտիւ, բայց շատ ճշդութեամբ[2]. Մեր եւ ձեր հայրերն ալ ար-

---

1 "Եւ որ գրեալ էր թէ ... եւ զպաշտօնն հայերէն ի բաց փոխեալ է. մեր զպաշտօնն չէ փոխեալ, բայց զի որ եպիսկոպոսն եղեւ վրացի ուսումն գիտէ եւ հայ նոյնպէս, եւ երկոքումբ դպրութեամբք պաշտօնն կատարի", էջ 166։

2 Ուխտանէս (էջ 96—98) հոս Կիւրիոնի վարմանց մէջ մասնաւոր քաղաքականութիւն մը կը նշմարէ. "Արդ բաժանեալ Կիւրիոնի զկամս իւր յերկուս թեւակոխէր յայն կողմն Հոռոմոց՝ շուք դնելով եւ շնորհուկս առնելով Մուրկայ կայսեր (!). եւ նովաւ պարծի ասելով. Մեք, ասէր, զԿայսեր ընկալաք զհաւատ եւ ունիմք ... եւ դարձեալ ասէր. Կոստանդնուպօլիս սրբոյն Յոհաննու աթոռ է եւ տուն կայսեր. եւ մեք զոր ի նմա հաւատ քարոզի՝ զայն պաշտեմք. եւ դարձեալ եթէ Եսու թարգմանել եւ բերել զգիր չորից ժողովոցն, որով Հոռոմք վարին, եւ մեք զայն ունիմք հաւատ (= ԱՐՐՑ. 568). եւ Աստուած զկայսր կեցուցէ (Ուխտ. յաւելուածն ի վերջն)։ Իսկ ապա թեկն ածէ յայս կողմն Պարսից, զի եւ նոցա աշխարհն ընդերկուացեալ էր ի Պարսից կողմն եւ ի Հոռոմոց. եւ նա ի կասկածի եղեալ յարքայից արքայէ՝ թէ զի մի՛ գուցէ խնդիր

քայից արքայի ծառաներն էին, այսու հանդերձ "զհաւատն զերուսաղէմի ունէին, եւ մեք եւ դուք նոյնպէս", այժմ ալ թէպէտ եւ արքայից արքայի ծառաներն ենք, բայց զհաւատ զերուսաղէմի ունիմք եւ կալցուք։ Բաց աստի միթէ արքայից արքան նաեւ Հռոմոյ աշխարհին տէրը չէ՞. ինչպէս որ ալ տիրեց այն աշխարհին, եւ ձեր բանը ուղիղ չէ, իբր թէ առանձին առանձին թագաւորութիւններ են" (էջ 167)։ — Հուսկ յետոյ խօսքը կը վերջացընէ. "Եւ որ գրած էիք, թէ 'Կ'ուզէինք եպիսկոպոսներ խաւրել, որպէս զի գային եւ սորվեցընէին,, եթէ կ'ուզէք, խաւրեցէք, Թող գան, որպէս զի սորվեցընեն եւ սորվին. Ես կը փափաքէի գալ եւ ձեր սուրբ եկեղեցիներու մէջ աղօթել եւ ձեզմէ օրհնուիլ, կամ իմ աշակերտներս խաւրել, որ ձեր սրբութեան ողջոյնը մեզի բերէին, բայց վասն ժամանակիս եւ աշխարհիս կարեաց խափանեցաք. ասոր նշանակութիւն մի տաք[1]"։ Կը խնդրէ թղթին պատասխանը։

Նման ոճով է, քիչ մ'աւելի ընտանեկան, Սմբատայ թղթին պատասխանը (էջ 170—71)։ Մարզպանի այն ակնարկութեան, թէ ի Վիրս հերձուածողներու համակրութիւն ցոյց կը տրուի, կը պատասխանէ փախստական ճամբով, խօսքերուն այլ իմաստ տալով, իբր թէ ակնարկուած ըլլային հոն յամս 599—605 ի Վիրս յուզուած քաղաքական եւ կրօնական խռովութիւնք. Աստուծով, կ'ըսէ, դադրեցաւ այն ամէնը։ Ապա կը դարձընէ խօսքերը

---

առնիցէ իմոց իրացս ի սադրելոյ Սմբատայ Վրկան Մարզպանի, . . . արդ յաղագս այսպիսի կասկածի կայր Կիւրոն յայն կողմն պարծէր . . . յայս կողմն երկնչէր թէ խնդիր լինի յարքայէն հաւատոյն ի յազդմանէ ազատացն Հայոց. . . . եւ շոգմոգ բանիւք եւ աղերսանօք կեանս խնդրէր կայսեր եւ փառս հայցէր արքայի սնոտի իմացմամբք"։

1 Գիրք Թղ. 167. յօր. "ի բնէ մի ունիք". սրբագրելու է անշուշտ "ի բանէ մի ունիք"։

Մովսէս եպիսկոպոսի եւ ինքնին Սմբատի մասին, որոնց վրայ ճառեցինք արդէն վերագոյն։ Ասկէ կը տեսնուի թէ Կիւրիոն ծանօթ էր Սմբատայ[1] եւ անոր ծնողաց հետ յառաջուընէ եւ պարգեւած է Սմբատայ հօր եւ մօր համար Մծխիթայի սուրբ խաչէն նշխարներ։ Կիւրիոն ինչպէս այլուր, նոյնպէս հոս ալ պահպանած է միշտ իրեն ընտելական հանդարտութիւնն եւ քաղցրութիւնը։

Աբրահամ, Սմբատ, Վրթանէս եւ Մովսէս ի Դուին կը գտնուէին համախմբուած, երբ հասան Կիւրիոնի կրկին թղթերս ի Հայս։ Թղթերուս ընթերցումը դոյզն յոյզեր չպատճառեցին։ Սմբատ իրեն ուղղուած տողերն համակ “սուտ„ գտաւ. որ անխուսափելի ալ էր, եթէ մտածենք վայրկեան մը, թէ իրաց անտեղեակ Մարզպանը նախապաշարուած էր երեքպատիկ ազդեցութեան ներքեւ։ Նկատելով նաեւ առ Կաթողիկոսն գրուած թղթին մէջ համարձակ եւ յանդուգն ընթացք մը Կիւրիոնի կողմանէ, կը սրտմտի, կը յանձնէ Կաթողիկոսին փորձել դեռ երկիցս եւ երիցս թղթերով Կիւրիոնի միտքն շրջել։ Իսկ եթէ տակաւին կը յամառի մտաց

---

[1] Ուխտանէս (Բ. 130) կը գրէ. “Պատմի եւ այս յաղագս Կիւրոնի, եթէ զկնի մահուանն Մովսիսի Հայոց Կաթուղիկոսի՝ եւ նախ քան զառաջնորդելն Աբրահամու զաթոռն՝ եկեալ Կիւրոնի առ Սմբատ Վրկան Մարզպան խաբանօք իմն եւ խորամանկութեամբ խնդրել ինչ ի նմանէ թուղթ յաշխարհն Վրաց, զի մի հաւանեսցին խուժկին այնմիկ Նեստորականի եւ համախորհաց նորա, եւ մի բաժանեսցին ի միաբանութենէ Հայոց. եւ այն լինէր լի նենգութեամբ եւ կեղծաւորութեամբ ի չքմեղս երեւեցուցեալ, զոր եւ զայն յիշէ Սմբատ ի թղթի անդ իւրում՝ որ առ Մովսէս եպիսկոպոսն Ցուրտաւայ, զի յանձն չէր վստահ Կիւրոն, զիմ՞րդ կայր արդիւք եւ զմեզ յորդորէր եւ թուղթս տայր առնել յաշխարհն, եւ զինքն ինքեամբ յանդիմանէր„։ Սմբատայ առ մեզ հասած թղթին մէջ սակայն չկայ նման ակնարկութիւն մը։

մէջ, իրաց արդիւնքը թղթով մը իրեն իմացնել կը խնդրէ, որովհետեւ ինքը ստիպուած էր փութով յարքունիս ճեպել։

Կ՚անսայ կաթողիկոսն, եւ կը ձեռնարկէ գրել երկրորդ թուղթ մ՚ալ (608, Զատկէն յառաջ)։ Այս անգամ իրաց աւելի հասու էր քան յառաջագոյն, շատ բանի խելամտելով ինքնին Մովսիսի բերնէն, եւ ծանօթ ըլլալով նաեւ Կիւրիոնի տրամադրութեան, աւելի զգօնութեամբ կ՚առնու քայլերը։ Կը յայտնէ նախ իւր շնորհակալութիւնը Կիւրիոնի մաղթանացը, փոխարէն շնորհահատոյցը զՏէր ընելով, ապա կը շօշափէ բուն խնդիրն այսպիսի շեշտով մը. "Իսկ զոր ընդդէմ եւ հակառակս գրեցէք, ծանեաք եւ զայս, արդ մեք զհակառակութեան պատասխանիս եւ զվիճաբանութիւն թողցուք... փութասցուք ի սէր եւ ի հաւատ հայրենի միաւորութեան... ոչ խնդրեմք միայն զանձին օգուտ, այլ զբազմաց, զի ապրեսցին„։ Այսպէս պարզելով իւր թղթակցութեան բնաբանը, կ՚անցնի համոզել զԿիւրիոն, թէ մոլորութիւն է այժմ հետեւիլն Երուսաղէմի հաւատքին. Այո՛, կ՚ըսէ Աբրահամ, յառաջագոյն մեր եւ ձեր հարք Երուսաղէմի հաւատքն ունէին, երբ ուղղափառ հաւատքն կը հնչուէր Սիոնէն, բայց ապա Յոբնաղ տեղւոյն հայրապետը՝ քարոզելով Քաղկեդոնի ժողովոյն վարդապետութիւնը, թիւրեց զամէնքը։ Քաջ քննեցէք եւ տեսէք, զի դուք եւ այլք հանդերձ բնակչօք սուրբ Քաղաքին փոխեցայք յայնմանէ եւ ոչ ունիք զնոյն։ Կը յիշեցնէ դարձեալ Հայոց եւ Վրաց հին միաբանութիւնը։ Իսկ Մովսէս եպիսկոպոսի խնդիրն ի մէջ բերելով կը ջանայ ջատագովել զանիկա, եւ կը խնդրէ. "ապա թէ է ինչ երկբայութիւն ի միտս ձեր վասն սորա միայն բան միաւորութեան յաղագս սուրբ հաւատոյն, գրեա առ իս„։ Աբրահամ լաւ համոզուած էր, որ հարուածն այնպէս մեծ է եւ դժուարաբուժելի, որ

անօգուտ են թղթակցութիւնք, անոր համար կը ջանար միշտ ի ձեռն ժողովոյ ի գլուխ հանել, զոր կը թելադրէր անդադար Վրթանէս վստահ իւր կորովոյն վրայ դէմ յանդիման ի պայքար մտնելու Կիւրիոնի հետ: Առ այս կը գրէ Աբրահամ այս անգամ ալ. "ընդ Նմին պատմեա ինձ վասն տեղւոյ ի քո սահմանի կամ ի մեր, որ յետ սրբոյ Զատկին զմիմեանս տեսանեմք. եւ եթէ առ սմա ինչ թիւրութիւն գտանի, թող զի աշխարհաւ յանդիմանի եւ մեք անխռով պահիմք" (էջ 177):

Կիւրիոնի պատասխանն (էջ 178—79) երկրորդ թղթիս յէականս նոյն է առաջին թղթոյն հոգւոյն հետ. անդրդուելի իւր սկզբանց մէջ կը փախչի միշտ նորանոր խնդիրներէ հաւատոց շուրջն, եւ կը ջանայ օր յառաջ վերջ տալ խնդրոց: "Եթէ միաբանութիւն եւ սէր կ'ուզէք պահել եւ խաղաղութեամբ ապրիլ մեզի հետ, ինչպէս որ մեր եւ ձեր հայրերն ապրեցան, ասոր մասին "մեք պատրաստ եմք խորհել, աւելի աշխատ մի լինիք. եւ յաղագս այդորիկ այլ մի գրէք առ մեզ": Իսկ ժողովքի կամ բանակցութեան նկատմամբ ժխտական պատասխան կու տայ. "Զի ապաս ինձ ընդ Հայս, բայց թէ ճանապարհաւ հասանէ անցանել երբեք, թէ Աստուած արժանի առնէ երթալ երկրպագել սուրբ տեղեացն Երուսաղէմի, թէ ոչ այլ ինչ գործ չկայ. եւ որ վասն ինձ եւ ձեզ ի տեղի գալոյն գրեալ էր. ինձ ձեր տեսութիւն կարի պիտի, բայց վասն ժամանակիս անպարապ եմք. անմեղադիր լերուք" (էջ 179):

Այսպէս Կիւրիոն թէպէտ ամենայն կերպով կ'աշխատէր վերջ տալ այս ձանձրանալի վէճին, սակայն անհնարին կ'ըլլայ: Աբրահամ Սմբատէն պատուէր ունէր երկիցս եւ երիցս գրել, միանգամայն զՄովսէս եւ զՎրթանէս իրեն խթան եւ գրգռիչ ունէր: Գրեց երրորդ թուղթն ալ. թուղթ մը արդարեւ "ձանձրանալի"[1], երկար ըստ արտաքնոյն,

[1] Brosset, Addit. et Ecclers. p. 113—14.

բայց դոյզն բովանդակութեամբը (էջ 180–84)։ “Զինչ առնեմք, կը գոչէ Աբրահամ, ով պատուական եղբայր, զպատուածայրին պատուիրանացն զձայն, որ միշտ բողոքէ մեզ, թէ զգոյշ կացէք հօտիդ... եւ մեք ի ծուլութիւն հատեալ եմք եւ մեղկք եւ ծոյլք լինիմք... այս երրորդ թուղթ գրեցաւ ի մէնջ առ ձեր սրբութիւնդ, զի... յերկուց եւ յերից վկայից հաստատեսցի ամենայն բան”։ Իբրեւ թէ նորադարձի ուղղուած ըլլայ թուղթն, կը դրուի հաւատոյ հանգանակ մը, կը նզովուին Քաղկեդոնի ժողովն եւ Լեւոնի Տումարը։ Այս ամէնուն վրայ իբրեւ ամէնէն զօրեղագոյն միջոց ի մէջ կը բերուի Բաբգէնի ժամանակ Հայոց, Վրաց եւ Աղուանից մէջ հաստատուած հաւատոյ միութեան թղթին — զոր կ'անուանեն Գիր պայմանի — այն մասն, ուր ստորագրած են Վրաց կաթողիկոս Գաբրիէլին հետ բազմութիւն մը վիր եպիսկոպոսաց, համաձայն յոյն Օրինակին, հայերէնը Դունայ 572ի ապստամբութեան ժամանակ կորսուած ըլլալուն պատճառաւ։ Կ'աւարտի թուղթս այսպէս. “Արդ ինձ այս անգամ յաղագս անիծեալ ժողովոյ եւ պիղծ Տումարին, թէ որպէս ընդունիք ճշմարտութեամբ եւ հաւատի պատասխանի արարէք. եւ թէ Աստուած կամի եւ բան միաւորութեան գրէք, թող ժամադրես ինձ եւ քեզ ի մի տեղի գալ, եւ Աստուծով լինի խաղաղութիւն, թէ Աստուած կամի”։ Ուխտանէս (Բ. 87) առ այս կը յաւելու. “Եւ զայլն յեպիսկոպոսէդ տեղեկանայք ի Պետրոսէ”։ Ինչպէս կը տեսնուի այժմ բանակցութիւնը միայն երկու կաթողիկոսաց մէջ կը բաղձացուի։

Կիւրիոն թէպէտ իւր Բ. թղթին մէջ այս նկատմամբ արդէն փակած էր ամէն հաշիւ — “յաղագս այդորիկ այլ մի գրէք առ մեզ”, սակայն այս անգամ ալ չզլացաւ տալ իւր վերջին պատասխանը, որ կրնար բարեբեր արդիւնք ալ ունենալ։ “Ձեր երրորդ թղթոյն փոխարէն 'ահաւասիկ այս եւ ի

մէնջ երրորդ թուղթ գրեցաւ”[1]։ Կիւրիոն վերջին խօսքը պիտի ըսէր, անոր համար առանց որ եւ իցէ ակնածութեան կը պարզէր իւր ապագային բռնելիք ընթացքը, նորէն իրեն յատուկ կտրուկ եւ խաղաղական լեզուով։ Եթէ տեղիս տեղիս քիչ մը խիստ թուի ոճն, այն տեղերն խնդրոյն ծանրակշռութեան տեսակէտիւ նայելու է. կրօնական-դաւանաբանական փափուկ կէտ մ'էր շօշափուածն, որուն այսպէս կամ այնպէս կարելի չէր տեղի տալ, բայց միայն ի վերջոյ լռութիւնը յարգելով։ Այսպիսի խոհեմութիւն ունէր Կիւրիոն իրեն առաջնորդ։ — Երկու գլխաւոր կէտ կը շօշափէ Կիւրիոն. նախ իւր դժգոհութիւնը կը յայտնէ Հայոց կաթողիկոսի անպատեհ վարմանց հանդէպ. Դուք, կը գրէ, մեզի հետ այնպէս կը խօսիք իբրեւ թէ “առ նորատունկս եւ նորահաւատս” ըլլան խօսքերնիդ, եւ չէք գրեր այնպէս, ինչպէս վայել է գրել “առ պատուականս եւ առ միշտ ուղղափառս”։ Մինչդեռ մենք “այսօր ողորմութեամբն Աստուծոյ եւ քան զամենայն երկիր յառաջադէմ եմք եւ ուղղափառ, թող թէ քան զակաւ ոմանս”։ Ինձ կը գրէք, կ'ըսէ, թէ երկու ազգացս — Հայոց եւ Վրաց մէջ երկպառակութիւն կը ձգեմ. ասոր պատճառն դուք էք եւ ոչ ես։ “Ես զսահման հաշտութեան պինդ պահեմ” կը գոչէ Վրաց կաթողիկոսը։ Մինչեւ Ձեր (Աբրահամու) կաթողիկոսանալը, կ'ըսէ, Ձեր եւ մեր հաւատքը մի էր, “եւ հաւատ զամենայն յԵրուսաղէմէ ունէաք եւ ունիմք”[2]։ Եթէ այսուհետեւ մի չէ հաւատքն, քայքայողն դուք էք”։ — Երկրորդ իւր անբաւականութիւնը կը յայտնէ Մովսիսի մասին։

---

1 Գիրք Թղ. 185–188. ուր մասամբ միայն պահուած է, Ձեռագրին մէջ սկիզբէն թուղթ ինկած ըլլալով։ Պակասն հրատարակուած է Արարատի մէջ 1902, էջ 566–569 Ուխտանէս (Բ. 87—88) հազիւ էջ մը ներս առած է։

2 ԱՐՐՏ. 567։

"Դուք, կ'ըսէ, զՄովսէս իբրեւ բարեգործ մըկը ընդունեցաք, մինչդեռ դա ինձմէ եւ եպիսկոպոսներէս ընդ բանիւ եղած էր — "կապեցաք Հաւատով. — այս եկեղեցական իրաւանց հակառակ է. այլ եւս այդ անձին դատի նկատմամբ խնդիր չեմ ուզեր լսել։ Եթէ Խուժկաց մասին դեռ կասկածի մէջ էք, անոնք մերժուած են բոլորովին"։ Ասկէ վերջը կը տողէ հետեւեալ նշանաւոր խօսքերը. "Արդ եթէ ունիս ընդ իս սէր կամաւորութեամբ, թէպէտ աւանդութեամբ, թէպէտ կրօնաւորութեամբ, թէպէտ վարդապետութեամբ՝ յայսմ հետէ յառաջ զոր գրէք թուղթ առ իս, թէպէտ ողջունի, թէպէտ վասն այլ ինչ պիտոյից, որ սիրով մասամբ է, ընդունիմ, բայց վասն այսր դատաստանի առ իս աւելի ինչ մի գրեր, եւ մի աշխատ լինիր, թէ ոչ պատասխանի ոչ ընդունիս"[1]։ — Այսպէս վիճաբանութեան իւր կողմանէ վերջ տալով, կը դիմէ Աբրահամու այն խնդրանաց, թէ "յաղագս անիծեալ ժողովոյն... թէ որպէս ընդունիք... գրեցէք"։ Կիւրիոն իւր դաւանութիւնն լիով պարզելու եւ միանգամայն Աբրահամու մտքէն ամէն նախապաշարմունք Ս. Ժողովոյն վարդապետութեան մասին ի բաց քեցելու նպատակաւ նախ համառօտիւ կը բացատրէ երեք Ս. Սիւնհոդոսաց հաստատած վարդապետութիւնն, եւ ապա Քաղկեդոնի ժողովոյնը, իբրեւ ըստ ամենայնի նոյն առաջին երեքիններու հետ։

Իւր թղթին այս մասը, զոր ինքը "չորից ժողովոց գիրք" կը կոչէ, ինչպէս կը ծանուցանէ, Երուսաղէմ[2] թարգմանել եւ բերել տուած է։ "Եթէ մեր

---

1 Անդ. էջ 567–68։ Ուխտ. 87—88 կը կցէ խօսքերուս յաւելուած մը, զոր վերցուցած է Կիւրիոնի Բ. Թըղթէն (էջ 179)։

2 Չամչեան՝ Պատմ. Հայոց. Բ. 301, եւ ասկէ Հ. Գ. Զարբ.՝ Պատմ. Հայկ. հին դպր. 417, կը գրեն, "Ետ բերել ի

Հաւատքը քննել կ'ուզես, կը գրէ Կիւրիոն, ահաւա-սիկ քեզ մեր դաւանութիւնը, որով Հոռոմք վա-րին եւ ի Ս. Անաստասիայ եւ ի Ս. Սիոն քարոզի»: Առ այս կը յաւելու. «Եւ թէ կամի ոք եւ եթէ ոչ կամի, Հաւատք մեր այս է[1]»: Ի վերջ թղթոյն կը յորդորէ զԱբրահամ ընդունիլ այս դաւանութիւնն եւ ճշմարտութիւնը, որ իւր մէջ կենարար վարդա-պետութիւնը կը բովանդակէ. աւելորդ չէ հոս լսել այս մասը, որով Կիւրիոն կը դնէ վերջակէտն խնդրոյս առջեւ Վրաց եկեղեցւոյն կողմանէ: «Արդ զայս գրեցաք վասն սիրոյ զի արդար եւ զճշմարիտ հա-ւատն պահիցէք եւ կեանս ունիցիք: Գիտիցէք զի անձամբ ինչ զայս ոչ գրեցաք, այլ յիւրաքանչիւր ժողովոցն գրոց, եւ հաւատոյ ողորմութեամբն Աս-տուծոյ ի մեզ է. կնքեցաւ. եւ զայս ամենայն վասն ձեր շինութեան գրեցաք ամենայն ճշմարտութեամբ, եւ ոչ եթէ սակաւ քննութեամբ, այլ մեծապէս աշխատեցաք եւ ծանեաք, զի այս է ճշմարիտ հա-ւատ: Եւ դուք ճշմարտութեամբ հաւատացէք զար-դար հաւատս զայս, եւ մի դեդեւելով եւ անդր անկանիցիք. գիտացէք զի իւրաքանչիւր ոք ի մէնջ համարս տալոց եմք դատաւորին յաւուրն մեծի» (Գիրք Թղ. 188):

Այս կ'ըլլայ Կիւրիոնի վերջին եւ վճռական խօսքն եւ կը լռէ — յամի 608 (Ապրիլ-Օգոս-տոս?):

---

Կ.Պոլսոյ վկայութեամբ բազմաց զքուն պատմութիւն ժողովոյն (Քաղկեդոնի) եւ զկանոնս նորա, եւ զուղիղ թարգմանու-թիւն թղթոյ Ս. Լեւոնի», եւ այն կաթողիկոսութեան ա-ռաջին օրերը: Բայց ո՞ր խօսքերու վրայ հիմնուած կը հե-տեւցընէ զայս Չամչեան: Կիւրիոնի վերջին թղթիս մէջ կրածէն պարզ կը տեսնուի թէ Երուսաղէմ բերել տուած է, Երուսաղէմ, ուր կը գտնուէին Ս. Անաստասիա (Ս. Յա-րութիւն) եւ Ս. Սիոն եկեղեցիք: Ս. Անաստասիա այրեցաւ ապա 614ին Երուսաղէմի առման ժամանակ ի Պարսից:

[1] ԱՐՐՑ. 568:

## ԳԼՈՒԽ ԺԱ.

### Բաժանումն Հայոց ի Վրաց։

Վրաց կաթողիկոսին վերջին վճռական պատասխանը, որով աշխարհահամարձակ ազատադէմ կը դաւանէր իւր եւ իւր ժողովրդեան կրօնական համոզումը, եւ կը յայտարարէր նոյնին մէջ իրենց անսասանութիւնը, կը խռովէ Դունայ ժողովականները։ Աբրահամ այլ եւս յուսաբեկ իրաց լաւագոյն արդիւնքէն, եւ միանգամայն զայրացած Կիւրիոնի այս համարձակ յառաջադրութեան վրայ, կը վճռէ խզել քայքայել այն ամէն կապերն եւ յարաբերութիւնքն, որոնք սերտ կը յօդէին երկու ազգացս սրտերն իրարու։ Հետեւութիւն մը, զոր վաղ իսկ ակնարկած էր Վրթանէս իւր առ Պետրոս "յանձնութեան" թղթին մէջ — "թէ այդ այդպէս ոչ լինի, յաւիտենական թշնամանք մնան ի վերայ աշխարհիդ" (էջ 137)։

Այս՝ Հայոց եւ Վրաց եկեղեցական պատմութեան մէջ դարագլուխ կազմող վճիռը բացատրած է Աբրահամ իւր "**Շրջաբերական Թղթին**" (encyclique) մէջ[1], որ մի եւ նոյն ժամանակ իւր առաջին օրհնութեան կոնդակն է առ Հայաստանեայս։ Անգին վաւերագիր մը իրացս համար, ուր պարզուած է ամենայստակ կերպով Աբրահամու զայրոյթը, պատկերացուած է Հայոց եւ Վրաց յարաբերութեանց արդէն մէտ ի քայքայումն ըլլալը, եւ Աբրահամու ձգտումն՝ արծարծել բորբոքել յանթեղի եղած կրակը։ Աբրահամ կը ջանայ ամենայն կերպով մութ ներկայացընել Կիւրիոնի ընթացքը, հակառակ հայկական շահերու, գրգռելու այսու հայ ժողովրդեան անձնասիրութիւնը Վրաց դէմ։ Աբրահամու տողերէն կը նկատուի եւ այն, որ նա Կիւրիոնի ցայժմ գրածներուն շատ քիչ հաւատ

---

1 Գիրք Թղ. 189—195։

ընծայած է, եւ իրողութիւնը կը ծանուցանէ անիրագէտ հասարակութեան այնպէս, ինչպէս երբեմն Մովսէս պարզած էր իրեն։

Թուղթս ուղղուած է “Ամենեցուն կացելոց ընդ այսմ (կաթողիկոսական) հովուական իշխանութեամբ, առաջնորդաց եկեղեցւոյ, վանից երիցանց, եւ քահանայից, եւ սարկաւագաց, եւ բնաւ ուխտի եկեղեցւոյ, անապատականաց եւ մենացելոց, ազատաց եւ շինականաց, եւ համօրէն ժողովրդականաց, արանց եւ կանանց։„ Կը ծանուցանէ հոս Աբրահամ նախ իւր “ոչ կամաւ„ կաթողիկոս ընտրուիլը, կը յորդորէ զգոյշ կենալ հերձուածողներէ եւ հաստատուն իրենց հաւատքին վրայ. առ այս ի մէջ կը բերէ Նիկիական հաւատոյ հանգանակն, իբրեւ ամփոփումն հիմնական ճշմարտութեանց։ Այսպէս ընդհանուր սկզբնաւորութենէ յետոյ տակաւ տակաւ կ'ամփոփուի Վրաց հարցին շուրջը։

“Որովհետեւ դեռ քաղցկեղի պէս կը ճարակի (Քաղկեդոնի ժողովոյն) հերձուածի խմորը, կը գրէ Աբրահամ, այնպէս որ մինչեւ անգամ գրեթէ մեզի սահմանակից եւ մէկ վարդապետութեամբ լուսաւորուած ազգերու ալ հասաւ, Վրաց եւ Աղուանից մասին է խօսքս,... մեզմէ յառաջ կաթողիկոսական Աթոռոյս վրայ նստողներն Աղուանից[1], իսկ մենք Վրաց՝ Կիւրիոնին, որ կաթողիկոս կը կոչուի, եւ անոր աթոռակիցներուն գրեցինք։ Վասն զի Կիւրիոն Ցուրտաւայ եկեղեցւոյն եպիսկոպոսը, որ երկու աշխարհաց “զմիջնորդութիւնն ունէր,„ ուղղափառ հաւատքի համար հալածեց. եւ Ս. Շուշանկան կարգաւորած պաշտօնը ‘հակառակ մեզ խորտակեալ ի բաց փոփոխեաց։, Որուն համար գրեցինք, որ ճշմարիտ հաւատքին

---

1 Կ'ակնարկուի Յովհ. Բ. Գաբեղինեցւոյ (557—574) Թուղթն առ Աղուանս. Գիրք Թղ. էջ 81–84։

դառնան եւ առաքելոց աւանդութեան մէջ հաստատուն կենան, որ մեր վարդապետներուն ձեռօք տրուեցաւ անոնց. իսկ անոնք ընդդիմացան եւ ՚երկիցս անգամ զհակառակն գրեցին առ մեզ։, Վասն զի ՚նոյնդ իսկ սուտանուն կացեալ գլուխ Եկեղեցւոյն Վրաց, Որմզդի որդւոյն Խոսրովու արքայից արքայի ժամանակ Նեստորական եպիսկոպոս մ՚ընդունեցաւ եւ ինք զինք անոր ՚հայհոյող վարդապետութեան, անձնատուր ըրաւ, յառաջունէ ունենալով նաեւ Քաղկեդոնի ախտը։ Թէպէտ այն Նեստորականը մերժեցին, սակայն մնաց մրուրը պահեցին, եւ իրենց ամպարշտութիւնը ՚ուժգնագոյն եւս, երրորդ թղթին մէջ ընդունեցանք, ուր պարծանօք կը խոստար (Կիւրիոն), թէ պիտի չթողու աղանդը. եւ նոյն իսկ համարձակեցաւ ՚ուսուցանել, զմեզ, որ իրենց ետեւէն թիւրեալ՝ խորխորատին մէջ գահավիժինք։ Անոր համար կը հրամայենք որ այն սահմանը, զոր մեր վարդապետները յառաջագոյն ՚ի վերայ Հոռոմին հատին[1], անփոփոխ ՚մինչեւ ցբուն, Վրաց համար ալ արժէ (կացցէ), մինչեւ որ դառնան ճշմարիտ հաւատքի։ Այսինքն կը հրամայենք մեր հօտին. ՚ամենեւիմբ

---

1 Սահմանս, զոր Աբրահամ "ի վերայ Հոռոմին" կտրուած կ՚աւանդէ. կէս դար յառաջ Ներսէս Բ. Աշտարակեցւոյ Խուժիկ Նեստորականաց վրայ տուած Որոշումն է բառացի. հմմտ. Գիրք Թղթոց, 76–77, "Որոշումն Նեստորականացն ի սրբոյ Եկեղեցւոյս", ուղղուած "ի Ներսէսէ Հայոց Կաթուղիկոսէ, ի Մերշապհոյ Տարաւնոյ եւ Մամիկոնենից եպիսկոպոսէ, ի Պետրոսէ Սիւնեաց եպիսկոպոսէ" առ "Գրիգոր Մարդպետական եպիսկոպոս եւ Գրիգոր Արծրունեաց եպիսկոպոս" յամի 555–556. Խնդրական հատուածն կը սկսի հոս. "Միաբանութեամբ ամենեքեան հրաման արարաք ճշմարիտ հաւատացելոց ի Քրիստոս, ամենեւիմբ մի հաղորդել ընդ նոսա, մի յաղաւթս, մի ի կերակուրս ... (փակագծեալք լրացուած են ասկէ)։ Այս հատուածէն առնուած են նաեւ նզովքները։

մի հաղորդել ընդ նոսա, մի յաղաւթս, մի՛ ի կե-
րակուրս, եւ մի՛ յըմպելիս, մի՛ ի բարեկամութիւն,
[մի՛ ի խնամութիւն], մի՛ ի դայեկութիւն. մի՛
աղաւթիւք՝ երթալով ի Խաչն որ ի Մցխիթայի
տեղէաւքն համբաւի, մի՛ ի Մանգղեաց Խաչն եւ
մի՛ ի մեր եկեղեցիս զնոսա ընդունել. այլ եւ ամուս-
նութեամբ ամենեւիմբ հեռանալ. [եւ մի՛ վասն
մարմնաւոր իրաց տալ եւ առնուլ ինչ ի նոցանէ],
բայց միայն գնել ինչ եւ կամ գնոյ տալ, որպէս
հրէից:, Այս հրամանը նաեւ Աղուանից համար
'անշարժ կացցէ,, որպէս զի պատկառելով դառ-
նան մոլար ճամբէն:„

Այս հրամանին հեստողներուն կը սպառնայ
նաեւ խիստ պատիժներ. “ապա թէ անխրատաբար
վարեսցի ոք հաղորդելով ընդ նոսա եւ կամակից
լիցին պղծութեան հաւատոց նոցա, այնպիսիքն
նզովեսցին հոգւով, նզովեսցին մարմնով եւ ամե-
նայն կենցաղով իւրեանց, եւ որոշեսցին ի սրբոյ
եկեղեցւոյ Աստուծոյ. եւ եղիցին խաւարաբնակք
եւ յաւիտենից հրոյն կերակուր: Իսկ եթէ ոք ամ-
բարտաւանեսցէ արհամարհելով զնզովիւքս, գի-
տասցէ այնպիսին զի յետ հոգեւոր պատուհասի,
եւ զմարմնաւորս պատրաստեմք ի վերայ ածել„
(էջ 193—95):

Ծայրայեղ եւ ահաւոր նզովներ, որոնք եր-
բեմն տրուած էին Հայոց հաղորդակցութիւնն
խզելու համար պիղծ Խուժիկ Նեստորականաց
վտանգալից հասարակութենէն, այժմ կը գոր-
ծածուին կտրելու Հայոց յարաբերութիւնքն
քրիստոնեայ եւ հաւատակից Վրացիներու հետ,
անխորհուրդ կրքի մը յուզման արդեամբք: Այս
կրքոտ վարմունքը մասամբ լաւ նկատած է եւ Մ.
Էմին, որ իրաց բովանդակ անյաջողութիւնը կը
վերագրէ Աբրահամու անխոհեմութեան եւ ան-
քաղաքագիտութեան: Ապահովապէս, կ'ըսէ Էմին,
այսպիսի ելք պիտի չունենային իրք, եթէ կաթո-

ղեկոսական գահուն վրայ բազմէր տակաւին Մովսէս, զգոյշ, խոհեմ եւ շրջահայեաց կաթողիկոսը[1]:

*   *
*

Յովհաննէս Պատմաբան, եւ իրեն հետեւելով Ասողիկ (էջ 86), Վարդան (էջ 60), Ստեփաննոս Օրբէլեան (էջ 332) եւ այլք չափազանց ստուարացնելու համար իրողութիւնը, բաժանումս ժողովով մը վճռուած կը պատմեն, որ սակայն զուրկ է ամէն հիմք եւ հակառակ Աբրահամու Շրջագայական Թղթի իմաստին: Աբրահամ կը գրէր իւր Թուղթը ժամանակ մը, երբ պատաղած էր Ս. Գրիգորի շինութեամբ (էջ 191) եւ չունէր պարապ ժողովի նստելու. եւ դարձեալ Թուղթը գրած է միայն ի դիմաց իւր եւ ոչ ի դիմաց ժողովոյ: Որովհետեւ Յ. Պատմաբանի խօսքերը յետագայից վրայ մեծապէս ազդած են եւ աղբիւր ծառայած, հոս այս մասին գրածներն ամբողջութեամբ ի մէջ կը բերենք. “Եւ այնուհետեւ բազում եպիսկոպոսաց ժողով արարեալ մեծի հայրապետին Աբրահամու ի Դուին քաղաքի հրամանաւ քաջին Սմբատայ եւ այլոց եւս նախարարացն՝ աստուածամերձ եւ ամբիծ այցելութեամբ ուղղեալ աստուածային Գրոց, եւ աստուածադէտ իմացուածիւ ծանուցեալ զուղիղ դաւանութիւն սուրբ Հարցն՝ նզովեցին զԿիւրիոն զպատականիչն եկեղեցւոյ Քրիստոսի, եւ զամենայն հնազանդեալս եւ զհամախոհս չար հերեսիութեանն. եւ անէծս ցաւագին ուղղափառ դաւանողաց մերոյ նահանգիս ի վերայ եդին ոչ բնաւին իսկ ընդ նոսա միաբանիլ, որք զկնի Կիւրիոնի չարափառի շեղեցան, եւ ոչ հաղորդակից նոցա լինել եւ ոչ ի տուրեւառիկ վաճառս ընդ նոսա բերիլ„ եւն (էջ 42):

---

1 Մ. Էփն., անդ. 156:

Վերջին տողերէս ակներեւ կը տեսնուի թէ Յովհաննու ձեռքն ալ աղբիւր Աբրահամու "Շրջագայական Թուղթն" ծառայած է եւ ոչ այլ ինչ։ Յովհաննէս, ինչպէս կ'երեւայ, Դուինայ 607ի ընտրութեան ժողովին միանգամայն Վրաց բաժանման համար գումարուած համարած է — "Հրամանաւ Սմբատայ," իյնալով այսու հակաժամանակագրութեան մէջ. վասն զի 608/9ին երբ կը գրէր Աբրահամ յիշեալ Թուղթը, Սմբատ ի Վրկանս կը գտնուէր եւ ոչ ի Հայս։ Ստեփաննոս Օրբէլեան մինչեւ անգամ ժողովոյն ներկայ կը դնէ Սիւնեաց եպիսկոպոսն Քրիստափոր։

Անագանագոյն դարուց հեղինակներու քով աւելի անհեդեդ զրոյցներու կը պատահինք Վրաց բաժանման մասին։ Թ. դարու վերջերը Մաշտոց Կաթողիկոս իւր կաթողիկոսանալէն յառաջ (898) առ Գէորգ Կաթողիկոս Գառնեցի թղթին մէջ[1], եւ Մ. Կաղանկատուացի յառաջ կը բերեն իրացս նկատմամբ Մաքենոցաց Վանահօր Սողոմոնի մէկ գրութենէն այսպիսի տողեր։

"Եւ սակս ինն դասակարգութեան՝ գլխաւոր եկեղեցականք անձնահաճ կամաւ ըստ նպերտ բարուց Հայաստանեայց կարգեն զԱբրահամ պատրիարգ, զԱղուանիցն՝ արքեպիսկոպոս, եւ զՎրացն՝ մետրապոլիտ։ Խռեցաւ[2] Վրացն, որում Կիւրիոն կոչէին՝ եւ հակառակութեան բերէր վճիռ[3]. իսկ սուրբ հայրապետն Աբրահամ ասէր լինել յառա-

---

[1] Հրտ. ԱՐՐՏ, 1902, էջ 751—52։ Ձեռագիրն ուակից օրինակուած է, շատ աղճատուած բնագիր մը կը ներկայացընէ. ստորեւ ի մէջ կը բերենք իր խօսքերը համաձայն Կաղանկատուացւոյ. տարբերութիւնք կը նշանակուին ծանօթութեանց մէջ։

[2] Հեռացաւ։

[3] Բերէր վէճ առ Հայրապետն Աբրահամ, ասէր զՎիրս լինել յառաջահաւատ քան զԱղուանս. եւ մեզ ասէ անգ է եպիսկոպոսութիւնդ։

ջահաւատ քան զՎիրս՝ զԱղուանս, եւ նոցա անկ է եպիսկոպոսապետութիւն։ Յայսմ մաքառմանէ եւ ի խնդիր ուղղափառ հաւատոյ՝ դարձան Վիրք եւ եղեն[1] Քաղկեդոնականք[2]։„

Եթէ յիրաւի հոս Ը. դարու առաջին կամ երկրորդ կիսուն ծաղկող Սողոմոն Վարդապետի[3] տողերն ունինք, ժամանակաւ մերձաւորութիւնն ըստ երեւութին ծանրակշիռ նշանակութիւն կու

---

1 Իւ անարգեալ ի Նմանէ՝ դարձաւ եւ քաղկեդոնիկ եղեալ ի յունական զօրացն, որ ի ժամանակին յայն գնա դրդելով երագ երթոց, հայրապետացն ազատ եղեալ խնդրէր զգահերէցութիւն ի վերայ Աղուանից։„

2 Պէտք է նշանակել հոս, որ Մ. Կաղանկատուացի ծանօթ է նաեւ Աբրահամու Շրջագայականին, հետեւաբար գիտէ նաեւ թէ բաժանումն պատճառեցաւ Վրաց քաղկեդոնի ժողովն ընդունելուն համար (էջ 214—215)։ — Սողոմոն վարդապետի պատմած այս զրոյցը մանր յաւելով կը բերուի նաեւ Պօղոս Տարօնացիէն Մատենադարանիս Թ. 324, թղ. 54բ—56ա Ձեռագրին մէջ, ոչինչ նորութիւն աւելցընելով։

3 Այս տեղ քննութեան կը կարօտի մանաւորապէս Սողոմոն Վարդապետի անձնաւորութիւնը։ Ո՞վ է Սողոմոն։ Պատմութենէն մեզի Մաքենոցաց վանահայր երկու Սողոմոն ծանօթ է, ապրած Ը. դարուն։ Նշանաւորագոյնն է առաջինը, որ ըստ Ալիշանի գրած է 701—747ի մէջերը Տօնամակ հաւաքածոյ մը (Հայապատում. Ա. § 46. Հմմտ. եւ Սա. Օրպէլ. 96), եւ իբրեւ համբաւաւոր անձ ներկայ գտնուած է Մանազկերտի 726ի ժողովոյն մէջ (Հանդ. Ամ. 1905, էջ 368)։ Երկրորդն է Սողոմոն կաթողիկոս (781—792) յաջորդն Յովաբ կաթողիկոսի, որ ըստ Յովհ. Պատմաբանի (էջ 62) "ի Մաքենոցաց էր„ եւ հմուտ փիլիսոփայ։ Առանցմէ ո՞րն է հեղինակ առաջիկայ հատուածիս։ Մաշտոց եւ Սա. Օրպէլեան (էջ 73) կը գրեն. "ցուցանէ մեզ զառոյգն Սողոմոն՝ հարանց հայր սուրբ ուխտին Մաքենոցաց, որ եւ հարցեալ ի տէր Սողոմոնէ նոյն Մաքենոցաց առաջնորդէ եւ ի կաթողիկոսէ Հայոց զպատճառս զայս, նա գրով աւանդեաց այսպէս։„ Տեղեկութեանս համաձայն առաջինը կ'ըլլայ հեղինակ, գրած յետին ծերութեան մէջ։

տայ։ Բայց տողերուս ներքին անկապակցութիւնը կը հերքէ ամէն նշանակութիւն, որ եւ կը համապատասխանէ իրականութեան։

Շատ քննութեան կարօտ խնդիր մ՚է նախ ինը դասակարգութեան նկատմամբ յարուցուած խնդիրը, որ կը պատմուի հոս եւ հայ յետինդարեան պատմագիրներու քով։ Իմ ամէն հարցափորձերս ասոր պատմական ճշմարտութեան մասին ի դերեւ ելան[1]։ Ամփոփուելով յատկապէս խնդրոյս

---

[1] Յովհաննէս Բիկլարացի իւր մէկ գրութեան մէջ կը գրէ. "Ազգն Հայոց եւ Վրաց, որ առաքելոց քարոզութենէն ընդունեցան հաւատքը, երբ որ Պարսից Խոսրով արքայէն ի պաշտօն կռոց կը բռնադատուէին, այնպիսի ամբարիշտ հրաման մը չընդունելով՝ իրենք զիրենք իրենց գաւառներովը ի միասին Հռովմայեցւոց իշխանութեան տակ դրին։" Նոտրագիր տողերու մէջ Յ. Մարքուարթ (Էջ մը Հայ Արշակունեաց հնագոյն պատմութենէն. Հանդ. Ամս. 1906. էջ 40 ձն.) կը նշմարէ ինն դասակարգութեանց խնդրի ակնարկութիւնը. "ասով, կը գրէ Մարքուարտ, Յովհ. Բիկլարեցի Բաղձացեալ կերպով մը կ՚ուղղէ Մ. Կաղանկատուացւոյ (Բ. խը., ուր է ինն դասակարգութեանց խընդիրը), ըստ բաւականի մթին խօսքերը։" Սակայն Բիկլարեցւոյ ակնարկութիւնը 572ի ապստամբութեան վրայ է, եւ շատ հարեւանցի ըսուածք է նոտրագիր տողերուս միտքը. եւ ըստ մեզ ոչինչ իւիք կը լուսաւորուի դեռ տիրած մթութիւնը։ — Մտադրութեան արժանի է այս տեսակէտով Յովհաննէս Պատմաբանի աւանդութիւնը, որ այս խնդիրը Մեծին Կոստանդիանոսի որդւոյն Կոստանդեայ եւ Մեծին Ներսէսի ժամանակ յուզուած կը պատմէ։ Ահա իւր խօսքերը (էջ 28–29).

"..Զայսպիսի բարեկարգութեան ձեւ եւ զշուք (Ներսիսի) տեսեալ արքայ Թագաւորին (Արշակայ Բ.) եւ նախարարացն Հայոց, այլ եւ զխստամբեր վարս նորա ճգնողականս, ի մտի եդեալ ընդ այլոց եւս ոմանց եւ զնա եւս նախակարգել ի պատիւ պատրիարգութեան։ Քանզի փոքր ինչ յառաջ քան զայս Կոստանդոս որդի Մեծին Կոստանդիանոսի յԵփեսոսէ ի Կոստանդնուպօլիս զնշխարս ոսկերացն Յովհաննու Աւետարանչին փոխեալ, եւ յայնմանէ

տուարկային վրայ անճշդութիւնը կրնամ ապացուցանել ամենայն դիւրութեամբ։

1. Ըստ յիշատակագրիս խնդիրս կը յուզուի Աբրահամու կաթողիկոսութեան (607—611) օրով յամենայն դէպս յառաջ քան զամն 608/9 երբ տեղի ունեցաւ բաժանումն. արդ տեսանք վերագոյն թէ Վրաց Կաթողիկոսը Կիւրիոն Վրթանիսէն, Աբրահամէն եւ Սմբատէն առանց որ եւ իցէ վերապահութեան կը պատուուէր պայծառ յորջորջմամբս "Կաթողիկոս," եւ ոչ երբեք պարզ "եպիսկոպոս" կամ "արքեպիսկոպոս" կամ "մետրապոլիտ։" Տակաւին յամի 608/9 իւր "Շրջա-

---

համարձակութիւն առեալ պատրիարգ ի Կոստանդինուպոլիս կացուցանէ։ Ապա ըստ նմին յայսմ պատճառի համարձակութիւն եւ Երուսաղէմացւոցն առեալ՝ զիւրեանցն եւս աթոռ Հաստատէին ի պատիւ պատրիարգութեան, իրաւունս համարեալ ըստ որում եւ ի նմա գոլ տեսեալ եղեւ Բանին Հօր ծնունդ եւ ընդ մարդկան շրջել...։ Եւ վասն զի ցայնվայր չորք միայն էին ընդ երկրաւ պատրիարգ ըստ չորից աւետարանչացն՝ Մատթէոսին յԱնտիոք, Մարկոսին յԱղեքսանդրիա, Ղուկայն ի Հռոմ եւ Յովհաննուն յԵփեսոս, ապա յայնմանէ իրակերտութեանց վեց բովանդակեալ կային։ Ըստ սմին սակի ապա եւ մերն թագաւոր Արշակ եւ Նախարարութիւնք Հայոց համարձակութիւն առեալ՝ կացուցին ի պատրիարգութիւն տանս Թորգոմայ զՄեծն Ներսէս, փաստս իրաւախոհս ըստ արժանին ի մէջ առեալ զսուրբ առաքեալսն մեր՝ զԲարթուղիմէոս եւ զԹադէոս։ ...Եւ ապա խորհուրդն զգործն կատարեալ՝ եօթն միանգամայն բովանդակեալ գտանէր թիւ պատրիարգութեան, որ կայ եւ մնայ պահեալ մինչեւ ցյաւիտեանս ժամանակաց։ Եւ այսպէս ապա նահապետութիւն խորհրդոյ Եկեղեցւոյ եւ ի մերումս աշխարհի լցաւ բովանդակաբար՝ իննն միանգամայն դասակարգութեամբ պատուեալ զԿիւրիոն արքեպիսկոպոսն Վրաց եւ Աղուանից՝ արքեպիսկոպոս ընդ ձեռամբ նորա կարգեալ»։ Յովհաննէս ունէր հօս աչաց առջեւ Սողոմոնի գրուածքն, կարելի չէ հաստատել ցուցմամբք. ինչպէս եւ կարելի չէ մատնանշել Յովհաննու աղբիւրը։

գայական Թղթին„ մէջ, որով կը խզէր Աբրահամ Վրաց հետ ամէն կապ, կը գործածէր Կիւրիոնի համար. “Մեք ի Վիրս առ Կիւրիոնի՝ որ Կաթողիկոսն անուանի„ բացատրութիւնը։ Աղուանք սակայն չունէին այդ ժամանակ կաթողիկոս կամ “Մետրապոլիտ„, ինչպէս կը տեսնուի Աբրահամու առ Մխիթար եպիսկոպոս Թղթէն (էջ 196)։ Հետեւաբար մինչեւ բաժանումը չէր եղած այս նկատմամբ որ եւ իցէ խնդիր կամ տարակոյս։

2. Կիւրիոն նշանակութիւն չէր տար այսպիսի տիտղոսներու, “Թէպէտ աւագութեամբ, Թէպէտ կրտսերութեամբ, Թէպէտ վարդապետութեամբ„ ինձմէ վեր կամ վար ըլլան, կը գրէր 608ին առ Աբրահամ, նշանակութիւն չունի։ Ուսկից կարելի է տեսնել թէ տիտղոսէ զրկում կամ նման որ եւ իցէ գրգռում պատահած չէ։

3. Աբրահամ իւր Շրջագայականին մէջ շեշտած է բացայայտ, թէ իրենց խնդիրը մի միակ Քաղկեդոնի ժողովոյն նկատմամբ է. — “Մեք զհակառակութեան պատասխանիս եւ զվիճաբանութիւն թողցուք... փութասցուք ի սէր եւ ի հաւատ հայրենի միաբանութեան։„

Ապա ի՞նչ հիման վրայ այսպիսի զրոյց մը կարկատուած է։

Այս զրոյցն իրարմէ քաղելով յառաջ կը բերեն նաեւ Ուխտանէս (Կաղանկատուացւոյ միջնորդութեամբ. էջ 119—20), Ստեփ. Օրպէլեան (75—76. հիւսելով՝ էջ 72, Ուխտանիսի, Կաղանկատուացւոյ եւ Մաշտոց Կաթողիկոսի խօսքերը) որոնց քով կանգ առնուլ աւելորդ գործ է։

Զրուցիս ազդեցութիւնը կրած կ՚երեւայ նաեւ Յովհ. Պատմաբան (էջ 41), որ թէեւ յայտնի խօսքերով Վրաց բաժանման բուն պատճառը կրօնական կը համարի, սակայն երկրորդական պատճառ առընթեր կը յիշատակէ եւ փառասիրութիւնը. “Գուն ի վերայ գործէ Աբրահամ, զի

թերեւս հնար լիցի դարձուցանել զԿիւրիոն եւ զհնազանդեալսն նմա ի մոլորութեան ճանապարհէն, այլ նոքա ոչ թերեւս զճշմարտութիւնն պատուէին քան թէ միայն զզօշաքաղութեան եւ զփառամոլ բարուց բոյսս ի վեր ընձիւղեալ ածեցուցանէին:» Բայց թէ այս տեղն Պատմաբանի ճոռոմ ոճին խաղը պէտք է նկատել, այն եւս անհաւանական չէ: Նման Յովհաննու կը գրէ եւ Անանիա Մոկացի (943—967). «իսկ Կիւրիոն Վրաց արքեպիսկոպոսն յաղագս դոյզն պատճառի՝ աղագաւ փառամոլութեան՝ բաժանեալ ի Հայոց՝ խոստովանէր զաղանդն Քաղկեդոնի¹.» ուր Անանիա կ'ակնարկէ եւ Սողոմոնի գրութիւնը:

Ուխտանէս Վրաց բաժանումը Թղթոց Գրքէ համաձայն հիւսելէ ետքը, կը կցէ ի վերջ գրոց զրոյց մ'ալ այս մասին, քաղելով յաւանդութենէ ծերոց, զոր համառօտիւ ի մէջ կը բերենք մենք ալ, ի հարկէ, իբրեւ զրոյց, համոզուած լաւ անոր աննշանակ եւ անշահագրգիռ բովանդակութեան. սակայն տեսակէտով մը հետաքրքրական է միշտ, ըստ որում կ'ընծայէ մեզ բաւականաչափ պարզութեամբ «Վրաց բաժանման» պատմական դէպքին ազդեցութիւնն ապագայ սերնդոց վրայ, եւ ասկէ ժողովրդական վէպի մէջ ստացած երեւոյթները դեռ երկար ժամանակ:

Լսած եմ՝ յաւանդութենէն ծերոց,, կը պատմէ Ուխտանէս (Բ. 115), թէ երբ Աբրահամ կաթողիկոս ընտրուեցաւ, Վրաց եւ Աղուանից կաթողիկոսները, — տակաւին «ի պատիւ արքեպիսկոպոսութեան» — այցելութեան եկան, զորոնք 'մեծաւ պատուով եւ սիրով, կ'ընդունի Աբրահամ: Ճաշիատեն երբ 'ժամն գինւոյ, կու գայ, Աբրահամ 'առեալ օրհնեաց եւ ետ նախ կաթուղիկոսին Աղուանից. իսկ ի միւսում նուագի, յորժամ կամե-

---

¹ ԱՐՐՏ. 1897. էջ 137.

ցաւ տալ Կիւրոնի, նա ոչ կամեցաւ առնուլ, խոժոռեալ ընդ միտս իւր,։ Զայս կը նկատէ Աբրահամ, բայց առ ժամն կը լռէ. ապա կը հարցընէ Կիւրիոնին պատճառը, որ կը պատասխանէ. ՛Զի՛ եղեւ ինձ այս փոքրկանալս ի քէն, քանզի ես աւագ եմ քան զնա, եւ մեծ ի տան իմում. եւ այս տանս գահերեցութիւնս նախ իմ էր եւ ապա դորա,։ Աբրահամ ի սէր խաղաղութեան կը ջանայ համոզել, թէ ինքը որ եւ իցէ նպատակաւոր ձգտում չէ ունեցած, այլ վասն զի ծեր էր Աղուանից կաթողիկոսը, ուզած է պատուել։ Կիւրիոն զայրացած չ՚անսար Աբրահամու, եւ այսու կը ծագի խռովութիւն ՛ի մէջ երկոցունց,։ Կը թողու սեղանը, դուրս կ՚ելլէ. եւ ձգուելով վարագոյրն կը փակուի տեսիլը։ — Հոս "յաւանդութենէ մանկանց" պատմուածք կը նշմարեմ եւ ոչ "ծերոց":

Ուխտանէս երեք պատճառ ի մէջ կը բերէ Վրաց բաժանման. Առաջին պատճառ Քաղկեդոնի վարդապետութեան ընդունումը։ Երկրորդ պատճառ ինը դասակարգութեանց խնդիրը։ Եւ Երրորդ պատճառ ծերոց աւանդութիւնը, զոր տեսանք։ Զարմանալի է որ Բրոսէ[1] այս երեք պատճառներէն ամէնէն հաւանականն եւ "բուն պատճառը" կը միտի համարիլ Երկրորդը, զոր թարգմանաբար ի մէջ ալ կը բերէ։ Անպէտ կր համարինք մենք այլ եւս զբաղիլ հերքելու Բրոսէի այս հաստատութիւնը։

Ժամանակիս վաւերագիրներու վրայ յեցած պարզեցինք ցայս վայր բաւականութեամբ Բաժանումն, որ եղաւ առիթ քայքայման երկու ազգաց զուարթ յարաբերութեանց. այս ինքն էր ոչ անկախութեան սէրը, ոչ ալ փառասիրութիւնը, այլ մի միայն կրօնական, խղճի ազատութիւնը, որ չուզելով (ի կողմանէ Վրաց) որ եւ իցէ բռնութեան ենթարկուիլ, թողուց խզուիլ ամէն բարեկամական

[1] Addit. et Ecclers. 119.

կապ եւ յարաբերութիւն։ Զայս լաւ նկատած է եւ Ա. Տէր-Միքէլեան, երբ կը գրէ. «Այդ բաժանումն ոչ թէ իրաւաբանական էր, այլ հաւատակցութեան»[1]։

Ի վերջոյ կարեւոր է քննել նաեւ «Բաժանման» ժամանակը, որ տոհմային մատենագրաց քով շատ անորոշ է եւ պէսպէս։

Սողոմոն Մաքենոցաց վանահայրը կը համարի պատահած Յուստինիանոսի օրով։ Յովհաննէս Պատմաբան անորոշ կը ձգէ։ Անանիա Մոկացի (անդ)՝ կաթողիկոսական աթոռոյն երկփեղկելէն յառաջ, սակայն առ Աբրահամաւ։ Երկփեղկումն տեղի ունեցաւ յամի 591։ Ուխտանէս (էջ 131), կը համարի պատահած Բաբգէնի ժողովքէն 87 տարի յետոյ, ուրեմն 508+87 = 595։ Յովհաննէս Սարկաւագ՝ Հայոց 73 թուին (= 624)[2]։ Սամ. Անեցի (էջ 75) 557 փրկչական թուին եւ Հայոց Դ (555(7)։ Մխ. Այրիվանեցին (էջ 65) հետեւելով Սարկաւագի՝ Հայոց ՀԴ (625)։ Նորագոյններէն Չամչեան եւ իրեն հետեւելով Բրոսէ յամին 596։ Ա. Տէր-Միքէլեան (Սամ. Ան. 205)՝ 613ին։

Այս բազմադիմի թուականներէն եւ ոչ մին ուղիղ է։

Ուխտանէս յընթացս պատմութեան կրցած է ճշդիւ տալ ժամանակագրական գծերը, բայց Աբրահամու կաթողիկոսական տարիներն սխալ դասաւորելով, ինկած է սխալմանց մէջ։

---

1 Ի Ծան. Սամ. Անեցւոյ, էջ 286. եւ Յարաբ. Բիւզ. Եկեղ. 113—114։

2 Ձեռ. Մատենադարանիս Թ. 29, թղ. 254բ. հմմտ. Տաշեան՝ Ցուցակ, էջ 172։ «Եւ յՀԴ թուականին զկնի Տէր Աբրահամու ի ԽԴ ամին Տէր Յովհաննիսի՝ բնաւին ի բաց կացին Վիրք ի Հայոց միաբանութենէ, եւ հաւանեալ քաղկեդոնի զորումն ընկալեալ ի Կուրիոնէ, զոր ՃԺԴ ամ ընդ մեզ նզովեցին զքաղկեդոնի ժողովն»։ Յիշեալ Տէր Յովհաննէսը պիտի ըլլայ Բագարանեցին, որ նստաւ 591/2ին։

Ցընթացս ուսումնասիրութեան ընտրուած ժամանակագրութեան համաձայն Հայոց ի Վրաց բաժանումն տեղի ունեցած է փրկչական 608 տարւոյ վերջերը կամ 609 տարւոյ սկիզբները[1] ուրեմն 608/9ին, այնպէս որ զուգադիպութեամբ մեր ուսումնասիրութիւնը կը կատարուի բաժանման 1300ամեայ տարեդարձին։

## ԳԼՈՒԽ ԺԲ.

### Կիւրիոն բաժանմանէն ետքը եւ իր վերջին օրերը։

Ի՞նչ գործնական ազդեցութիւն ունեցաւ Աբրահամու Շրջաբերականը Հայ ժողովրդեան վրայ. պատճառե՞ց որ եւ իցէ յուզում, ատելութիւն դէպի Վրացիները, եւ տրուած հրահանգներու համաձայն ընթացա՞ն Հայք այնուհետեւ, թէ ամէն հրահանգ եւ սպառնալիք անարժէք, լոկ թղթի վրայ մնացին։ Ի ցաւ, չունինք այս նկատմամբ որ եւ իցէ յիշատակարան կամ ակնարկութիւն ժամանակակից անձէ մը։ Նկատելով որ Վրաց Արսէն կաթողիկոսը, որ Ժ դարուն մասնաւոր գրուածքով մը զբաղած է "Հայոց եւ Վրաց բաժանման պատմութեամբ„ անծանօթ կ'երեւայ Աբրահամու Շրջաբերականին, այս լռութենէն կարելի է թերեւս հետեւցնել վրացի գիտնական Թ. Ժորդանիայի հետ[2], թէ այն որ եւ իցէ գործնական նշանակութիւն չստացաւ երբեք։ Այս հետեւութեան կարծեկից է նաեւ Ն. Մառ[3], որ կը գրէ. "Եւ ահա երբ այդ Արսէնը լռում է Դունի

---

1 Այսպէս է եւ Ե. Տէր-Մինասեանի համոզումն. Հմմտ. Հայ Եկեղեցու Յարաբ. 137։

2 Թ. Ժորդանիա՝ Ժամանակագրութիւնք եւ այլ նիւթեր... Ա. էջ 313 եւն։

3 Ն. Մառ՝ Հայ-Վրացական յարաբերութիւնների մասին անցեալում. Տփղիս, 1898. էջ 36։

ժողովին կարծեցեալ վճռի մասին, ուրեմն այդ իսկապէս նորան անյայտ էր, եւ ուրեմն նորա ժամանակ այդ «ծէ»—ը գործնական նշանակութիւն չունէր։»

Չազդուեցաւ նաեւ Կիւրիոն. Թէպէտ կը պակսի մասնաւոր տեղեկութիւն Կիւրիոնի բռնած ընթացքի մասին[1], սակայն ամէն պարագայք այսպէս կարծել կու տան։ Կիւրիոն յառաջուընէ կռահած իրաց ստանալիք ելքը՝ ըստ այնմ պատրաստած էր իւր ժողովուրդը։ Անձնապէս չունէր որ եւ իցէ երկիւղ. իւր քաղաքական դիրքն եւ Խոսրովու առջեւ ունեցած վարկը, զոր քանի մ'անգամ ակնարկած էր Աբրահամու եւ Սմբատայ գրած թղթերուն մէջ, եւ որուն համար «խրոխտացեալ», «փառաւէր» նկատուեցաւ կաթողիկոսէն եւ ուրիշներէն, ամէն սպառնալեաց հանդէպ աներկիւղ կ'ընէին զինքը։ Մարզպանը Սմբատ անգամ կ'ակնածէր իրմէ անոր համար «յաջող ժամու» գործ կը համարէր, արքայից արքայի առջեւ ամբաստանել զինքը։

Աբրահամու Շրջագայականէն ոչ շատ յառաջ այսպէս կը գրէր Մարզպանն առ Մովսէս.

---

[1] Չամչեան (Բ. 306) չգիտեմ ինչ աղբերէ առեալ (ի լուս. կը նշանակուի. Փոտ, Թղթ.։ Ճառընտ.։ Կիրակոս։ Պատմ.։) կը պատմէ թէ Երբ լսեց Կիւրիոն «դժուարեցաւ յոյժ ընդ գործս Աբրահամու», եւ այս եղածներուն համար Մորիկ կայսեր ամբաստանութիւն գրեց Աբրահամու վրայ։ Մորիկ զայս ուրիշներէ ալ լսելով՝ կը բարկանայ Հայոց Կաթողիկոսին վրայ. եւ կը հրամայէ ի Կ.Պոլիս ժողով մը քննել ճշմարիտ հաւատքը։ Աբրահամ կը խաւրէ իւր կողմանէ զՎրթանէս եւ զԳրիգոր քերթողները եւ Յունական բաժնէն 19 եպիսկոպոս։ Հայք կը յաղթահարուին. դժուարութիւն կը ծագի յունական եւ պարսկական կողման մէջ, եւ Մորիկ իւր բաժնի Հայոց համար կը կարգէ Կաթողիկոս զՅովհաննէս։ — Այստեղ Չամչեան խառնած է 20 տարուայ (591–610) դէպքերն եւ ձուլած է զանգուած մը, զոր տարրալուծել աննպատակ է։

«բայց սակայն թէ զիարդ գործդ ի գլուխ երթայ, գրեցէք եւ առ իս. թէ զանհնազանդութենէ լսեմ, եւ տայ Տէր Աստուած ժամ յաջող, ո գիտէ թէ եւ աստէն իսկ ընդունի հատուցումն յԱստուծոյ ի ձեռն մարմնաւոր տերանց» (էջ 175)։ Կաթողիկոսարանը՞ արդեօք չծանուցուեցաւ իրաց ելքը Վրկանի մարզպանին, թէ «յաջող ժամը» չպատահեցաւ, յայտնի չէ։ Երկարամեայ տեւակցութիւնն արքայի հետ, մանաւանդ 615ի ժողովոյն ժամանակ, յաջող շատ ժամեր սահեցան ապահովապէս, բայց Կիւրիոնի համբաւն եւ այլ հանգամանք կասեցուցին զմարզպանը խորհրդէն։

Աբրահամ յիշեալ հրահանգներն տալով հանդերձ կը գրէր մի եւ նոյն ժամանակ, թէ «մեք ոչ լռեմք ի խրատելոյ որչափ եւ եմք ի կենցաղիս, եւ որք զկնիսն, աղաչեմք նախանձաւորս մեզ լինել, ածել զնոսա յուղղութիւն» (էջ 194)։ Բայց ձեռնարկե՞ց որ եւ իցէ փորձի. այս մասին ի վիճակի չենք ստոյգ բան մ'ըսել. Թղթոց Գրքին մէջ չէ պահուած խնդրոյս նկատմամբ ուրիշ թղթակցութիւն։ Ունինք սակայն ակնարկութիւն մը ոչ շատ վստահելի պատմագրի մը քով, Յովհաննէս Մամիկոնենի քով, որ միջնորդութեան դեր մը կատարել կու տայ Կոմիտասայ, Մամիկոնենից եւ Տարօնոյ եպիսկոպոսին եւ Գլակայ վանից վանահօր, որ եւ ապա կաթողիկոսացաւ՝ Աբրահամու մահուընէ ետքը. «Սա (Կոմիտաս), կը գրէ Յովհաննէս[1], գնաց միաւորել (var. միաւորիչ) յԱբրահամէ կաթողիկոսէ առ Վրաց կաթողիկոսն։» Ի՛նչ չափով ստուգութիւն կը պարունակեն արդեօք Յովհ. Մամիկոնեանի այս տողերը. կարելի չէ կշռել. յամենայն դէպս աւանդութեան մը այսչափ հնագոյն (Ը—Թ դար) մնացորդս, որ անկախ է Ուխտանիսի եւ նման յետնադարեան ազդեցու-

---

1 Պատմ. Տարօնոյ. Վենետ. 1889։ էջ 8։

թիւններէ, նշանակալից մանրամասնութիւն մ'է, ոչ շատ հեռի ճշմարտութենէ։ Պատահած պիտի ըլլայ պատգամաւորութիւնս բաժանումէն ետքը 609—611ի մէջերը, իբրեւ վերջին փորձ մը Աբրահամու կողմանէ եւ Թերեւս Կոմիտասի ներկայութիւնը — տակաւին իբրեւ "Մամիկոնէից եպիսկոպոս Ամատունեաց Մատթէոս եպիսկոպոսի հետ Տիզբոնի 615ի ժողովին մէջ[1] այս առաքելութեան միջոցին պատահած ըլլայ։

Միջնորդութիւնս պատմական ճանչնալով հանդերձ յաջողութիւն մը յուսալու չէ, պատմութիւնք կը ցուցնեն թէ Վիրք իրենց հաւատքին մէջ այսուհետեւ ալ անխախտ մնացին. Տիզբոնի յիշեալ ժողովին մէջ իսկ 615ին Արքայից արքայի առջեւ Աղուանից հետ ճանչցուեցան "Քաղկեդոնիկք" (Սէբ. 122)։ Ուխտանէս (Բ. 108) գրէ թէ նոյն հաւատքով մնացին մինչեւ իւր ժամանակը. "որ դեռ եւս կան եւ մնան ի նմին, եւ միշտ հային յայս մոլորութիւն եւ ի վարդապետութիւնս՝ դիւաց կեղծաւորութեամբ՝ հարեալք յիւրեանց խղճի մտացն։" Իրողութիւն մը, որ շատ պարզ է այլուստ ալ եւ անկարօտ երկար վկայութեանց։

Իսկ յարաբերութիւնք երկու ազգացս մէջ քաղաքականօրէն սերտ մնացին այսուհետեւ ալ։ Կրօնական տեսակէտով սակայն ոչ այսպէս։ Այս նկատմամբ անդադար փոփոխութեան մէջ էնժարը, մերթ բարեկամական եւ մերթ թշնամական, ըստ որում Հայք կը մտէին քաղկեդոնականութեան եւ կը հեռանային։ Այսպէս Կարնոյ ժողովոյն կեղծ կանոնաց յառաջաբանին[2] համաձայն՝ ժողովոյն

---

[1] Սէբ. 121։ Մատթէոս եպ. Ամատունեաց կը յիշուի յամի 608/9 Աբրահամու առ Աղուանս թղթին մէջ (Գիրք Թղ. 196), ընտրուած Յովհաննու մահուընէ ետքը, որ 607ի Դունայ ժողովին մէջ կը յիշուի (անդ, էջ 149, 151 եւն)։

[2] Համմ. Տաշեան Հ. Յ.՝ Վարդապետութիւն Առա-

մանակից եղած են նաեւ Վիրք։ Հակառակութիւնք երկուստեք յերեւան կ'ելլեն յատկապէս Ժ դարէ սկսեալ, Անանիա, Խաչիկ եւն կաթողիկոսաց օրով[1] երբ հրատարակուած էր ջերմ պատերազմ մը քաղկեդոնականաց դէմ[2]։ Բայց մեր նպատակէն դուրս կը մնան այս յետագայ ժամանակաց խնդիրք։

Ի՞նչ հանգամանքներու մէջ եւ դեռ ո՞րչափ ժամանակ երկարեց Կիւրիոն կաթողիկոսութեան տարիները. եւ ե՞րբ կնքեց բազմավաստակ կեանքը։

Հարցմանս հանդէպ անպատասխանի կը մնանք դժբախտաբար առ այժմ. թէ երբեք հնարաւոր ալ պիտի ըլլայ առեղծուածը, անստոյգ ժամանակն միայն կրնայ որոշել նորագիւտ յիշատակարաններու յայտնութեամբ։ Հաւանական է կարծել թէ Է դարու երկրորդ կէսը հազիւ թէ կոխած ըլլայ, շնորհելով իրեն 100 ամեայ ալեզարդ կեանք մ'իսկ։ Վրաց Տարեգիրք շատ շուտ կը փոփոխեն Մծխիթայի աթոռոյն վրայ կաթողիկոսները կարճատեւ տարիներ տալով։ Ուխտանէս կենաց վերջին օրերը դժնդակ ցաւերու մէջ անցուցած կ'աւանդէ, եթէ հաւատալի են տողերը. "Սաստիկ եւ չար ախտիւ սատակմամբ ասեն վճարել զկեանս իւր Կիւրոնն այն Սկուտարացի" (Բ. 108)։

Թէպէտ իւր բովանդակ կենաց ընթացքին մէջ մեծ անձնաւորութեան մը յատուկ կորովն եւ ոգին յանձին կը բերէ Կիւրիոն, եւ արդիւնքներովն

---

քելոց անվաւերական կանոնաց մատեանը. Վիեննա, 1896, էջ 240—241։

1 Ասողկ. էջ 178 եւն. Անանիա Մոկացի՝ Թուղթք. Հմմտ. վերը էջ 80 եւն։

2 Ըստ Անանիա Մոկացւոյ (Ե.Ր.Ի.Ց. 1897, էջ 132) Երաս թագաւոր նոյն իսկ հրաման կը հանէ "զի մի ոք իշխեսցէ ամուսնանալ ընդ երկաբնակսն", հետեւաբար նաեւ "ընդ Վիրս"։

իւր անունը կ՚անմահացընէ ազգի մը պատմութեան մէջ, հանելով ամբողջ Վրաստան մը միաբնեայ հերձուածէ եւ զայն բիւզանդական բարգաւաճ քաղաքակրթութեան հետ անդադար հաղորդակցութեան մէջ դնելով, սակայն իւր այս գործունէութեամբն իսկ ըրաւ ինչ զինքը միաբնեայ Հայոց բերանը յաւիտենական անլուր անիծից առարկայ. չկայ հայ մատենագիր, որ յիշելով զԿիւրիոն չկցէ անոր անուան նախատական վերադիր մը. Ուխտանէս ամբողջ գիրք մը նուիրած է անոր անուան՝ լի լուտանքներով, մանաւանդ Բ. հատուածի ԿԱ. գլուխը[1]: Հայոց կողման այս անհանդուրժողութիւնը դէպի Կիւրիոն եւ դէպի հարեւան վրացիները պէտք է վերագրել մի միայն ժամանակի քիչ մը յոռետես ըմբռնումներու:

## ԳԼՈՒԽ ԺԳ.

### [illegible]

Զարմանք պէտք չէ պատճառել, եթէ զԿիւրիոն այնչափ արտաքին հոգերով ճնշուած նկատելէ ետքը, նաեւ գրական ասպարիզի մէջ գործունեայ ուզենք տեսնել: Եւ արդեօք ստացած յունական կրթութիւնն եւ այն պաշտօնները, զորս ստանձնեց նա այլ եւ այլ ժամանակներ, չընծայեցի՞ն առիթ գրականութեամբ ալ պարապելու, ըլլայ ինքնագրութեամբ, ըլլայ թարգմանութեամբ յունարէնէ կամ հայերէնէ վրացերէն: Առանց տարակուսի ձեռնարկելով նա բարգաւաճել Վրաստանը, բացաւ այս վախճանաւ նաեւ ուսումնարաններ, թարգմանեց Ս. Գրոց մեկնութիւններ եւ այլ վարդապետական գրուածքներ յունարէնէ կամ հայերէնէ: Դժբախտաբար, սակայն, Վրաց հին գրականութենէ շատ քիչ բան ծանօթ ըլլալով՝

[1] Հմմտ. վերը էջ 67:

ոչինչ կրնանք ըսել այս մասին ստուգութեամբ։ Բայց իւր դրական գործունէութենէն ունինք այլ եւ այլ նշխարքներ Հայ Մատենագրութեան մէջ, որոնք բաւականաչափ կը պարզեն իւր ընդունակութիւնն այս ճիւղին մէջ ալ։ Այս նշխարքները իւր թղթակցութիւններն են, պահուած Թղթոց գրքին մէջ եւ Ուխտանիսի քով։ Աւելորդ չէ հոս թուարկել զանոնք մի առ մի.

1. Թուղթ մը առ Մովսէս Բ. կաթողիկոս Հայոց, իբրեւ պատասխան, անոր թղթին։

2—4. Երեք թուղթ առ Աբրահամ կաթողիկոս Հայոց, իբրեւ պատասխան Աբրահամու երեք թղթերու։

5. Թուղթ մ'առ Սմբատ Մարզպան։

Բաց ի այս 5 թղթերէ, որոնց պատճէնք հասած են մեզի, կը յիշուին նաեւ.

6. Թուղթ մ'առ Գրիգոր Մեծ, կորսուած.

7. Այլ եւ այլ թղթեր առ Պատրիարքն Երուսաղէմի. կորսուած։

Այս թղթերէն առաջին հինգը գրած է առանց տարակուսի հայերէն, քանի որ հասցէակիրք Հայ էին եւ Վրացիք անծանօթ չէր Հայ լեզուն։ Կարի անտեղի է այս մասին Հ. Գ. Զարբհանալեանի ենթադրութիւնը, թէ սոյնք "հաւանականաբար թարգմանութիւնք են Ը. դարու, անշուշտ ի սկզբնագրէն կամ յասորականէ"[1]։ Ի՞նչ հիմ ունէր արդեօք Հ. Զարբ. այսպիսի ենթադրութեան մը յանգելու համար։ Բայց պատճառաբանութիւն աւելորդ է որոնել հոն, ուր տեղի չկայ ամենեւին։ Ցայսօր այս թղթակցութեանց ոչ վրացերէնը գտնուած է եւ ոչ ասորերէնը։ Բայց ապահովապէս վրացերէն գոյութիւն ունէին երբեմն. գոնէ առաջին թուղթը Մովսէս կաթողիկոսին թղթին հետ Ժ. դարուն վրացերէն կը գտնուէր, թարգմանուած,

---

[1] Մատենադարան Հայկ. հին թարգմ. 529։

ինչպէս կը կարծեմ, հայերէնէ. այնպէս որ մեզ հասած օրինակը (առ Ուխտանիսի) յետս թարգմանութիւն (Rückübersetzung) է լոկ: — Նոյն իսկ ենթադրութիւնը թէ նախնաբար վրացերէն գրուած են, թարգմանութիւնն ուղղակի սկզբնագրէն կը պատշաճէր համարիլ. (այս դէպքին ուղղակի Մովսէս եպիսկոպոսի ձեռօք): — Վեցերորդ եւ եօթներորդ թղթերը գրած էր հաւանականաբար յունարէն:

Այս թղթերն թէ մատենագրական-պատմական եւ թէ աստուածաբանական տեսակէտով մեծ արժէք ունին, թէեւ յէականս շօշափեն մասնական խնդիր մը: Պատմագիրն պիտի գտնէ հոն մանրամասնութիւններ յոյն-պարսկական պատերազմաց վրայ, կարեւոր տեղեկութիւններ արեւելքի, յատկապէս Վրաց եկեղ. պատմութեան մասին, ցանկ մը Յուրտաւայ եպիսկոպոսաց. Աստուածաբան մը չորս տիեզ. ժողովոց համառօտ դաւանութիւնը. լեզուագէտ մը ռամկօրէնի ուսումնասիրութեան համար ճոխ նիւթ: Կիւրիոնի ոճը թղթերուս մէջ մեղմ է եւ կտրուկ, ջղոտ եւ ազդու: Առաջադրութիւնքը կը պաշտպանէ ապացոյցներով, կը հերքէ, կը լուծէ ամէն առաջարկութիւն կամ մեղադրութիւն համոզիչ փաստերով, գիտէ դիւտեր ազատելու ինք զինք երկայրաբանութենէ, պահպանելով միշտ յարգանքն եւ քաղաքավարութիւնը դէպի իր խօսակիցը: Լեզուն ընտանեկան է, կը գրէ պարզ հայերէն մը խառն ընտանեկան ասութիւններով: Այս տեսակէտով մեծ կարեւորութիւն կրնան ունենալ իր թղթերը, ինչպէս եւ առ հասարակ ժամանակակից թղթակցութիւնք Է. դարու հայերէնի ուսումնասիրութեան համար, ինչպէս ունին Ղազար Փարպեցի Զ. դարու եւ Յ. Մամիկոնեան Ը—Թ. դարուց համար: Պարսից սահմանակցութեան եւ ժամանակի արիական ազդեցութեան շնորհիւ բաւական յաճախութեամբ

կը գործածէ Կիւրիոն նաեւ պարսկերէն բառեր, որոնցմէ ոմանք կը գտնուին նաեւ ուրիշներու քով:

Նկատելով ցայս վայր ըսուածները, պատշաճ է, մանաւանդ թէ հարկ է զԿիւրիոն իբրեւ հայերէնախօս գրիչ հայ մատենագրաց շարքին մէջ ալ դասել. ինչպէս արդեամբք ալ ըրած է Հ. Զարբանալեան:

Բացի այս յայտնի գրութիւններէ ենթադրեցինք վերագոյն թէ Վրաց եկեղեցին յամենայն դէպս շատ բան կը պարտի իւր վերանորոգչին: Իսկ յիրաւի, հետեւելով մանր մասադրութեամբ Թուղթոց գրքին, կը տեսնենք բացայայտ ակնարկութիւն այս մասին: Արրահամ երբ կ'ամբաստանէր զԿիւրիոն, թէ Ս. Շուշանկան հայերէն պաշտօնը խափանած է, կը պատասխանէր Կիւրիոն, թէ չէր խափանած, այլ նոյնը վրացերէն ալ թարգմանելով "երկոքումբք դպրութեամբք պաշտօնն կատարի" (էջ 166). որ թարգմանութիւննապահովապէս իւր ձեռքէն ելած պիտի ըլլայ: Բայց ափսոս որ այս ալ ժամանակի հոսանքին մէջ ի կուլ եկած է:

Մինչդեռ լարուած Կիւրիոնի գրական աշխատութիւնքն յերեւան հանելու ետեւէ էի, դեռ եւս 1906ին, հիասթափով մը նկատեցի Կարենեանցի Էջմիածնի Ձեռագրաց Մայր Ցուցակին մէջ՝ 1429 թուին տակ այսպիսի տողեր. "Մեկնութիւն [illegible]՝ ուղթածալ բոլորգիր գրեալ ի թղթի ի ԿԻՒՐՈՆ վարդապետէ, որ ապա եղև կաթողիկոս Վրաց և որոշեաց զՎրացիս ի Հայոց եկեղեցւոյ. ի թուին Հայոց ԶԿ = 1311. պարունակին ի սմին ա. Մեկնութիւն թղթոց Կաթուղիկեայց հաւաքեալ ի զանազան վարդապետաց" եւն:

Ինչպէս բնական էր, գրութիւնս հետաքրքրեց զիս ջերմապէս, մանաւանդ որ տակաւին ոչ ոք ակնարկութիւն ըրած էր այս հետաքրքրական Ձեռա-

---

[1] Մայր Ցուցակ, տպ. 1863, էջ 167:

գրի մասին. եւ յայտնութիւնը շատ լուսաւորութիւններ կը յուսացնէր թէ պատմական եւ թէ մատենագրական տեսակէտով։ Բայց Բորձրոյոսեան ճառն իր ծագումն է դարու երկրորդ կիսուն կը պատկանէր, ինչպէս հետեւաբար կրնար Կիւրիոն անոր մեկնութեանը ձեռնարկել։ Նկատելով զայս յանգած էի եզրակացութեանս թէ "Մեկնութիւնը կը մնայ կարօտ քննութեան„։ Արդեամբք ալ տարի մը յետոյ՝ երբ դիմեցի առ Սահակ Վ. Ամատունի Էջմիածնի Մատենադարանի Արժ. Մատենադարանապետն, որ սիրայօժար փութաց պատասխանել 7 Աւգ. 1907 թղթով՝ մանրամասնութեամբ նկարագրելով բովանդակութիւնն եւ յիշատակարանները, պարզուեցաւ թէ Էջմիածնի յիշեալ Ձեռագրին մէջ ունինք մենք Ներսէս Շնորհալւոյ Մեկնութիւնը, 1311ին ընդօրինակուած Կիւրիոն անուն անձի մը ձեռօք։ Հոս ի դէպ կը համարիմ ամբողջութեամբ եւ շնորհակալութեամբ ի մէջ բերել Արժ. Ս. Վ. Ամատունւոյ նամակը, որ այսպէս կը հնչէ.

"...Մայր Աթոռիս մատենադարանի N. 1466 (ըստ Կար. ց. 1429) Ձեռագիրը՝ որի մէջն է եւ Ձեր մատնացոյց արած Բորձրոյոսեան ճառի մեկնութիւնը, արդարեւ գրուած է Հայոց ՉԿ – 1311 թուին, եւ որպէս այդ ճառի, այսպէս եւ ամբողջ Ձեռագրի գրիչն կամ արտագրողն եղել է ոմն Կիւրիոն, թողնելով իւր արտագրած գրքերի վերջում 4 հատ անեղծ յիշատակարաններ, յիշատակարաններ՝ որոնք հարկաւոր եմ համարում դնել Ձեր տեսութեան առաջ այն խորհրդով, որպէս զի պարզապէս հասկանալի լինի, թէ յիշեալ Կիւրոնը ոչ միայն հեղինակ չէ Բորձրոյոսեան ճառի մեկնութեան, այլ եւ այն Կիւրոնը չէ, — "Որ ապա եղեւ կաթուղիկոս Վրաց եւ որոշեաց զՎրացիս ի Հայոց եկեղեցւոյ„, որպէս եւ սխալ եւ անհիմն ենթադրութեամբ յառաջ է բերուած Կար. ցուցակի մէջ։

Ահաւասիկ այդ յիշատակարանները.

Ձեռագիրս ունի իւր սկզբում Ս. Ներսէս Շնորհալու Բորձրոյոսեանի մեկնութիւնը հետեւեալ խորագրով. —

«Պատճառ. բարձրացուցէին մեկնութեան, զոր արարեալ տեառն Ներսեսի Հայոց կաթուղիկոսի: Սկիզբն բարեպաշտութեան հաւատոց հայաստանեաց ուղիղք իմանալ զլուսաւորիչն Գրիգորիոս...» որի վերջում գրիչն ունի այս յիշատակարանը. — «Մեղօք մեռելոյս Կիւրիոնի, թողութիւն հայցեա՛ ով պատուելի եղբայր. եւ իմ անչափ երախտաւոր եղբօրն, Մխիթար քահանայի: եւ խաչատրի.» Թղ. 58բ:

Թղ. 61ա. — «Հաւաքումն մեկնութեան եաւթանեցունց թղթոյն կաթուղիկէից.» որի վերջերում. — «Ով եղբայր յիշեա զԿերիոն ծրողս». Թղ. 131ա: «Զգծող սորին զտառապեալ անձն զԿերիոն սուտ անուն ապաստաւոր բանի յիշեցէք առաջի զենման գառինն: Նաեւ զծնողսն իմ, եւ զեղբարսն ըստ հոգւոյ եւ մարմնոյ, եւ յիշողացդ եւ յիշելոցս տէր ողորմեսցի. ամեն, ամեն.» Թղ. 203բ:

Թղ. 238ա. — «Բազմերջանիկ եւ տիեզերաքարոզ Սուրբ վդատին վարդանա հաւաքումն մեկնութեան երգոյ երգոյն ի խնդրոյ լուսաւոր առնն աստուծոյ Կիւրակոս վարդապետի.» որի վերջում ունի այս ընդարձակ յիշատակարանը. — «Փառք եռադիմի եւ միակ բնութեանն Հօր եւ որդւոյ եւ սուրբ հոգւոյն. ի բնաւին եղանականացս: զի ետ կարողութիւն ցաւաշըշուկ անձին՝ աշխատասիրաբար հանդիպել կատարման աստուածային տառիս: եւ զի խոցեալ սիրով, եւ ոչ եթէ յարուեստ գրչութեանս ապաստան լեալ համարձակեցա ի սա տառապութեամբ: Սանաւանդ այն իսկ զի տրամասողոսկեալ անձամբ հեռի գոլով յարդիւնական վարուց զոր ուխտիւ ընկալեալ եղէ: Վասն որոյ զսա իբր զկենդանի արձան դողդոջա մատամբս՝ յիշատակ արձանացուցի մեղապարտ հոգւոյս. զի ի տեսանելն զսա եւ յընթեռնուլն, եւ կամ յօրինակելն, զխորահառաչ տէր ողորմին տայցեն. Նաեւ զարժանին յիշատակի զբազմերախտ րաբունապետն իմ զյոհ: զծնողն երկամբք հոգւոյ: եւ զըստ մարմնոյ ծնողսն իմ զվարդան քհ. եւ զտ (քերած) եւ զեղբարսն իմ, զմխիթար քհ, եւ զխաչատուր կրօնաւոր, եւ զմխիթարիչ: եւ յիշողացդ տէր ողորմեսցի: Եր թվականութեանս Հայոց չկ յորում՝ աւարտումն եղեւ Ծկն—Բէ 3 (այսպէս գրած ու ջնջած) ծրագրութեամբ, ձեռամբ յոգնամեղի Կիւրիոնի ապաստաւորի բանի:

Զբազմերախտ հոգեւոր հայրն մեր զիշխան յիշեցէք ի քս:» Թղ. 291ա:

Հարկ եմ համարում ասել նաեւ, որ Մայր Աթոռիս միաբաններից շատերն եւս Զեզ նման ուշ

դարձնելով վերոյիշեալ Ճառի մասին Կարինեան ցուցակի տուած հետաքրքիր տեղեկութեան, ժամանակին զբաղուել են այդ Ճառով եւ նրա հետաքրքիր հեղինակով, սակայն Ձեռագրով ճշդելով ցուցակի ակնյայտնի սխալը, յետ են կացել իրենց աշխատանքից։„

Այսչափ հայ Մատենագրութեան հայթայթած տեղեկութեանց համաձայն. աւելին պէտք է ակնկալել Վրաց Մատենագրութեան անդրագոյն ուսումնասիրութիւններէ, ուր թերեւս թաքուն ըլլան թղթեր եւ այլ յիշատակարաններ, որոնց սեփականուած է պայծառագոյնս ի լոյս հանել Կիւրիոնի գրական արդիւնքները եւ արժանիքը։ Գործ ապագայ քննիչներու։

Մենք հետազօտեցինք եւ ուսումնասիրեցինք այն չափով, որչափ առած էինք մեր ծրագրին մէջ. hoc erat in votis.

## ԳԼՈՒԽ ԺԳ.

### Պետրոս Եպիսկոպոս։

Վերագոյն քանի մ'անգամ յիշատակուեցաւ ոմն Պետրոս, որուն անձնաւորութիւնն անծանօթ մնաց սակայն, թէեւ ըստ Ուխտանիսի՝ Բաժանման պատմութեան մէջ կատարած դերն մեծ եղած է։ Հոս կարեւոր կը համարիմ լուսաբանել իր անձնաւորութիւնն ալ, հիմնուած դարձեալ Ուխտանիսի զրուցախառն աւանդութեան վրայ։

Պետրոս ազգաւ եւ աշխարհաւ էր ի Վրաց (Բ. 4), “այր կորովամիտ եւ ճոխախօս եւ ճարտարաբան եւ բանիբուն դպիր, նախանձախնդիր աստուածային պատուիրանին, ջատագով ուղղափառ հաւատոյ, եւ հաւատարիմ մերոյ (հայ) կողմանս„ (Բ. 91. Կէր. 26)։ Նման խօսքերով կը դրուատէ եւ Վրթանէս Քերդող լսելով Յուրտաւայ Մովսէս եպիսկոպոսէն. “լուաք յաղագս պատուականութեան քո, եթէ նախանձաւոր ես եւ սիրող ճշմարիտ հաւատոյ„ (Գիրք Թղ. 137)։

Թէ ինչ աստիճան ունէր Պետրոս, կը լռուի Թղթոց Գրքին մէջ, թէեւ կր տեսնուի թէ նա նշանաւոր անձնաւորութիւն մ'էր ի Վիրս, եւ գրաւած էր ազդեցիկ դիրք մը։ Ուխտանէս, եւ իրեն հետեւելով այլք, կը համարին թէ "Պետրոսս այս եպիսկոպոս լեալ էր ի տան եպիսկոպոսին յաւուրս Աբրահամու Հայոց կաթողիկոսի" (Բ. 91), անորոշ ձգելով որ եպիսկոպոսական տան եպիսկոպոս ըլլալը։

Պատմութեան մէջ յերեւան կ'ելլէ Պետրոս առաջին անգամ 598/9ին, երբ Վրաց իշխաններու հետ իբրեւ պատգամաւոր կամ ներկայացուցիչ եկած է Դուին կաթողիկոսական ընտրութեան համար եւ առած զԿիւրիոն ի միասին վերադարձած է Վրաստան (հմմտ. վերն էջ 171)։ Բայց յատկապէս կը յիշատակուի 605ին Ցուրտաւայ եպիսկոպոսի դատին մէջ։ Մովսէս իւր դատին յաջողութեան համար անհրաժեշտ տեսնելով Պետրոսի միջնորդութիւնը կը խնդրէր մասնաւորապէս Վրթանէս քերթողէն, որ գրէ յատուկ "յանձնութեան թուղթ" մը (էջ 133) առ Պետրոս, զոր եւ կատարեց Վրթանէս, որուն թուղթը (էջ 136—37) ճակատ կը կրէ. "Փառաւորելոյ Տեառն Պետրոսի աստուածաշնորհ պարգեւօք պայծառացելոյ ի Վրթանիսայ եւ ի միաբանական սրբոյ եկեղեցւոյ պաշտօնէից Տերամբ ողջոյն։" Վրթանիսի նպատակն էր թղթովս յորդորել զՊետրոս — "նախանձաւորն եւ սիրողն ճշմարիտ հաւատոյ," որ գործէ հակառակ Կիւրիոնի, խանգարէ անոր ծրագիրները, որ Քաղկեդոնի ժողովոյն վարդապետութիւնը չտարածուի, եւ ի վերջոյ Մովսէս իւր աթոռը դառնայ։ Բայց ի դերեւ ելան Մովսիսի եւ Վրթանիսի ակնկալութիւնք, Պետրոս ճշմարիտ հաւատոյն նախանձաւոր եւ սիրող մնալով՝ անպատասխանի թողուց Վրթանիսի թուղթը, լռութեամբս յայտնելով թէ ինքը համախոհ է Կիւրիոնի։ Այսպէս կը դատենք մենք հետեւելով

Թղթոց Գրքին, ուր Պետրոս այս դէպքիս մէջ միայն կը յիշատակուի եւ կ'աներեւութանայ։ Բայց Ուխտանէս այլազգ գիտէ։ Ըստ պատմագրիս Պետրոս Հայոց կողմն էր, եւ այսուհետեւ ալ երկու աշխարհներուս կաթողիկոսաց մէջ միջնորդի դեր կատարեց։ Այսպէս Աբրահամ կաթողիկոսի առ Կիւրիոն երկրորդ թղթին վերջը կայ ըստ Ուխտանիսի յաւելուած մը. — «Եւ զայլն յեպիսկոպոսէդ լսել ի Պետրոսէ» (Ու-խտ. 81). Նոյնպէս երրորդ թղթի վերջը. «Եւ զայլն յեպիսկոպոսէդ տեղեկանայք ի Պետրոսէ» (էջ 87), որոնք Թղթոց Գրքի մէջ պահուած պատճէններու մէջ չկան (հմմտ. էջ 177, 184)։ Ուխտանիսի ըսելով Պետրոս շատ գործակցած է ի նպաստ Հայոց այս խնդիրներուս մէջ, զոր Ուխտանիսէ ազդուելով կը կրկնեն Նաեւ Կիրակոս (էջ 26) եւ Վարդան (էջ 60). վերջինս կը գրէ. Աբրահամ «շատ ջանացեալ թղթով ի ձեռն Պետրոսի, ոչ կարաց դարձուցանել զԿիւրիոն յուղղափառութիւն»։

Ինչ կատարած ունեցաւ ի վերջոյ Պետրոս։ Ուխտանէս (Բ. 91) այսպիսի պատմութիւն մ'ի մէջ կը բերէ այս նկատմամբ. Երբ Աբրահամ իր առ Կիւրիոն երրորդ թղթին հետ ալ կը խաւրէ զՊետրոս Վրաստան «հանդերձ ազատ արամբք», այս անգամ Վրաց իշխանները կը սպաննեն Պետրոսի. «Մի առներ երթեւեկ ի մեզ վասն հաւատոյ ինչ իրաց, ապա եթէ ոչ մեռանիս ի ձեռաց մերոց. եւ կամ զի՞ այդպէս յարձակեալ ես ի վերայ մեր Գայլ-Բոր գալով քո առ մեզ գրով եւ պատգամաւ»։ Այս դէպքէս առեալ, կը շարունակէ Ուխտանէս, մինչեւ ցայժմ կը պարծին Վիրք — «աւանդութեամբ ի միմեանց առնելով» — թէ ձեր Գայլ Պետրոսը մեր իշխանները Կանդարք լեռանց վրայ սպաննեցին[1]։ Բայց թէ իրօք

---

1 Հմմտ. այս զրոյցն եւ Կէր. 26. Մ. Գոչ՝ Թուղթ առ Վիրս, ԱՐՐՏ, 1900, էջ 503։

այս այսպէս է, "որպէս Նուքայն ասեն, կը յաւելու Ուխտանէս, մեք ոչ գիտեմք։"

Գայլ Պետրոս կ'անուանուի Յոյներէն, ինչպէս գրուած է եւ Ուխտանէս (91), Պետրոս Անտիոքացին[1], եւ թերեւս անձիս հետ շփոթելէ ծագած ըլլայ այս աւանդութիւնը Վրաց քով, ինչպէս արդեամբք ալ եղած է ըստ Ուխտանիսի։

Այս աւանդութիւնն է հաւանականաբար Վախուշի Վրաց պատմութեան մէջ "վրական եկեղեցական աղբիւրներէ" ի մէջ բերած զրոյցը[2], թէ երբ Հայք Որ խաչեցարն ընդունեցան, Պետրոս խաչենի (եպիսկոպոսն) Միքայէլ եպիսկոպոսին գրեց, որ անիկա ալ երդէ նոյնը. Միքայէլ ասոր վրայ քանի մ'եպիսկոպոսաց ընկերակցութեամբ Պետրոսին կ'երթայ, որ նոյն ատեն բարձր գահի մը վրայ բազմած էր եւ կը կարծէր, թէ բոլոր ներկայ եղողներն իրեն շուք պիտի դնեն եւ անոնց պիտի հետեւի իր հակառակորդը Միքայէլ. բայց Միքայէլ յանկարծական ցնցումով մը կը տապալէ զՊետրոս գահէն, եւ կը քարկոծէ. իրեն օրինակին կը հետեւին միւս եպիսկոպոսներն ալ եւ կը սպաննեն։ "Այս դարէս ի վեր, կը յաւելու Վախուշ, սկիզբ առին երկու ժողովրդոց մէջ կրօնական վէճք եւ հաւատոյ տարբերութիւնք։" Այս տեղ, ինչպէս կը նկատէ Բրոսէ[3] թէեւ հակաժամանակագրութիւն կայ, բայց "Գայլ Պետրոսի" զրոյցին հետ ունեցած նոյնութիւնն ալ ակներեւ է։ Հայկական (կամ լաւ եւս վրական) այս զրոյցը ուրիշ գոյնով ալ կը պատմուի, որ նոյնպէս հետաքրքրական է. Կիւրիոն Աբրահամէն արքեպիսկոպոսութեան պատիւ կը խնդրէ. բայց Աբրահամ կը զլանայ. "Իւ թէպէտ ի ձեռն Պետրոսի եպիս-

1 Գիրք Թղ. 328, 491 եւն։
2 Brosset, Hist. I. 191, n. 2.
3 Brosset, Addit. 123, n. 2. եւ Deux hist. 331, n. 1.

կոպոսին[1] բազում անգամ մաղթեաց նա շնորհել զխնդրելին, սակայն ոչ հաւանեցաւ (Աբրահամ) ապա բանադրեալ եղեւ յԱբրահամէ Սիւրիոն. որոյ առեալ զկնկուղն եւ զփիլոնն՝ ետ ցՊետրոս եւ ասէ. Ձերդ ձեզ լիցի. եւ յետոյ երկուցեալ յուղարկեաց ի ծածուկ զկնի, եւ ետ սպանանել զՊետրոս երկու սարկաւագօք ի լերինն Կանգրաց։"

Այսպիսի զրոյցներու պատմական նշանակութիւնը ոչինչ է. բայց կ՚արժեն ի նկատի առնուիլ պատկերելու համար պատմական անցեալի մը թողուցած տպաւորութիւնքը անագանագոյն ժամանակաց վրայ. ինչպէս օրուան անցքերը մրափողին վրայ ազդեցիկ տպաւորութիւն մը թողլով յանուրջս կը պատկերանան, նոյնպէս ապագայից երեւակայութեան առարկաներ դարձած են դարեր յառաջ Հայոց եւ Վրաց մէջ տեղի ունեցած կրօնական գժտութիւնք։

Պետրոս չթողո՞ւց արդեօք որ եւ իցէ գրական նշխարք մը հայերէն կամ վրացերէն։ Ինչպէս տեսանք, անպատասխանի թողուց Վրթանիսի թուղթը. թէ ուրիշ առթիւ թղթակցութիւն ունեցա՞ծ է, յայտնի չէ։ Թուղթոց Գրքին մէջ ունինք գրուածք մը այսպիսի խորագրոյ ներքեւ. "Հաւատարմագունի եւ իմաստնագունի եւ աստուածագունի եղբօր ողորմելիս Պետրոս Տերամբ խնդալ" (էջ 99—107)։ Պետրոս անունս թերեւս վայրկեան մը շփոթէ ընթերցողն եւ կարծել տայ, թէ Վրաց բաժանման առթիւ գրուած ըլլայ, հետեւաբար ճառելի Պետրոսի ձեռքէն. մանաւանդ որ Մովսէս եպիսկոպոս զայն Է դարու սկիզբները յուզուած խնդրոց գրեթէ կից դասած է Թուղթոց Գրքին

[1] Ստեփ. Օրպէլ. Հրա. Էմինի, էջ 76։ Պետրոսի կից փակագծի մէջ կը նշանակուի "Սիւնեաց", իբրեւ թէ ակնարկուած ըլլայ Սիւնեաց համանուն եպիսկոպոսը, որ ի հարկէ անտեղի է։

մէջ՝ Վրթանիսի առ Սորմէն Թղթէն յետոյ։ Տարիներ յառաջ, երբ կ'ուսումնասիրէի Պետրոս Սիւնեաց եպիսկոպոսի կեանքն եւ գրութիւնքը, առիթ եղած էր զբաղելու գրութեամբս ալ[1]. ուր կազմած էի այն համոզումն թէ գրուածքս անկասկած Է. դարէն է, հեղինակութեամբ Պետրոս եպիսկոպոսի՝ ուղղուած Ցուրտաւայ Մովսէս[2] եպիսկոպոսին։ Այսպէս ալ պաշտպանեցի զայն Հ. Սարգիսեանի այն հաստատութեան դէմ, թէ հեղինակն Սիւնեաց Պետրոս եպիսկոպոսն է[3]։

Բայց այժմ, ինչպէս ցուցուցին անդրագոյն հետազօտութիւնք, Է. դարու առաջին քառորդին յիշուած Պետրոսն Ուխտանիսի ներկայացուցածին պէս չէ հակաքաղկեդոնական, ինչպէս է յիշեալ գրութեան հեղինակն, այլ քաղկեդոնական, որով նման գրուածքի մը հեղինակ չի կրնար նկատուիլ։ Նորայր Բիւզանդացի[4] այս նկատմամբ կը գրէ. "Այս Պետրոս շատ հաւանական է որ ըլլայ Անտիոքայ հերետիկոս հայրապետն՝ Թափիչ, ըստ մեր մատենագրաց՝ նաեւ Գայլ, կոչուած." որ շատ հաւանական է, թէեւ համապատասխան մը չկրցայ գտնել յոյն կամ ասորի գրականութեան մէջ։ Այս է հաւանականօրէն նաեւ Մովսիսի Ցուրտաւայ եպիսկոպոսին յիշատակած "Թուղթն Պետրոսի Անտիոքացւոյ," գրութիւն մը, ուր կը խօսուի Քաղկեդոնի ժողովոյն դէմ (Գիրք Թղթոց, էջ 126)։

---

1 Հանդ. Ամս. 1904, էջ 110–111։

2 Տպագրուած վրիպակաւ "Վրթանէս"։

3 ԲԶՄ. 1904, էջ 65–68. այս կարծիքէն է եւ Շահէ վրդ. Լոյս շաբաթաթերթ, Կ. Պոլիս, 1906, էջ 1122։

4 Հանդ. Ամս. 1908, էջ 155–456։

# ՅԱՒԵԼՈՒԱԾ

## 1. Վրաց եկեղեցւոյ ինքնագլուխ կառավարութեան խնդիրը Ռուսաց նախապատրաստական եկեղեցական ժողովքի մէջ:

"Ռուսական սրբազան Սինոդին կից, եկեղեցական ժողովքում քննուելիք խնդիրների մշակման համար բարձրագոյնս հաստատուած առանձին ատեանին երկրորդ բաժանմունքը անցեալ 1906 թուի Յունիս, Նոյեմբեր եւ Դեկտեմբեր ամիսներին իւր նիստերը նուիրեց Վրաց եկեղեցու աւտոկեֆալիայի քննութեան։ Նիստերը տեղի էին ունենում Նիկանդր արքեպիսկոպոսի նախագահութեամբ, մասնակցում էին յայտնի հոգեւորականներ եւ եկեղեցական գիտութիւնների պրոֆեսորներ, ի միջի այլոց Սոխումի Կիւրիոն եւ Իմերէթի Լէոնիդ՝ Վրացի եպիսկոպոսները, Կովկասին քաջ յայտնի Վոստորգով աւագ քահանան, իսկ Նոյեմբերից հրաւիրւում են մասնակցութեան Ցագարելի եւ Մառ պրոֆեսորները, իբրեւ մասնագէտներ Վրաց պատմութեան եւ գրականութեան։

Պարապմունքներն սկսուեցան Սոխումի Կիւրիոն եպիսկոպոսի չորս զեկուցումներով։ Որպէս զի ընթերցողի համար խնդիրը պարզ լինի, մէջ կը բերենք առաջին երրորդ եւ չորրորդ զեկուցումների բովանդակութիւնը։

Ա. Զեկուցման հեղինակը՝ առանց մտնելու մանրամասնութիւնների մէջ՝ ասում է, թէ անկասկածելի պատմական վաւերաթղթերը վրաց,

յունաց, ասորոց եւ արաբաց լեզուներով վկայում են, որ վրացիք ընդունելով քրիստոնէութիւնը Բիւզանդիայից, նաեւ եկեղեցական նուիրապետութիւնը եւ եկեղեցական վարչական հաստատութիւնները, հէնց չորրորդ դարի սկզբին, եւ ենթարկուելով Անտիոքի աթոռի իրաւասութեանը, աշխատում են հետզհետէ ազատուել մայր եկեղեցու խնամակալութիւնից եւ կազմակերպել ինքնուրոյն ազգային եկեղեցի սեփական կաթողիկոսի իշխանութեան ներքոյ։

Վրաստանում առաջ են գալիս ազգային-եկեղեցական, կրօնական կեդրոններ, հոգեւոր լուսաւորութեան վայրեր, գրւում են բազմաթիւ աստուածպաշտական գրքեր մայրենի լեզուով. ծաղկում է նաեւ վրաց քաղաքական կեանքը, զօրանում է վրաց թագաւորութիւնը։ — Երբ Անտիոքն ընկնում է արաբների իշխանութեան տակ (638 թ.), վրացիք ձգտում են ազատուել այնտեղի պատրիարքի իրաւասութիւնից եւ անկախօրէն վարել իրենց եկեղեցական գործերը։ Ձգտումը հետզհետէ զօրանում է եւ 8րդ դարի կիսին, 751 թ. Անտիոքում Թէոփիլակտ պատրիարքի օրով եկեղեցական ժողով է կայանում, յայտարարւում է վրաց եկեղեցին կատարեալ ինքնագլուխ (աւտոկեֆալ) եւ տրւում է հաստատութեան թուղթ։ Այս թուականից սկսած արեւելքի եւ արեւմուտքի եկեղեցիները եւ եկեղեցական պատմագիրներն ու կանոնագէտներ համարում եւ գրում են Մցխէթի կաթողիկոսական աթոռն ինքնավար։ Այսպիսով 8րդ դարի կիսից սկսած մինչեւ 1811 թիւը վրաց եկեղեցին միանգամայն ազատ էր եւ կաթողիկոսները կառավարում ու դատում էին անկախ որ եւ է արտաքին իշխանութիւնից։

Գ. զեկուցման մէջ Սիւրիոն աւելի պարզում եւ հաստատում է վերոյիշեալ մտքերը պատմա-

կան մանրամասնութիւններով. նա բերում է Անտիոքի մօտի վրայ վանքի վանական Եփրեմ Մծիրէի վկայութիւնը, որ Անտիոքի ժամանակագիրներից առնելով գրում է։

Վրաց ժողովրդին մկրտելու համար Կոստանդին Մեծի կողմից Վրաստան ուղարկուած եպիսկոպոսն էր Անտիոքի պատրիարք Եւստաթիոսը, որը եւ ձեռնադրեց Վրաստանի համար արքեպիսկոպոս — կաթողիկոս։ Այնուհետեւ վրաց կաթողիկոսները ձեռնադրւում էին Անտիոքում, եւ վրաց եկեղեցին, թագաւորի եւ իշխանների որոշմամբ, իւրաքանչիւր տարի ուղարկում էր Անտիոքի պատրիարքական աթոռին հազար ընտանիքի կալուածներից եկամուտ. այս հարկը տրւում էր Ս. Միւռոնի օրհնութեան նիւթերը գնելու համար, որ օրհնւում էր միմիայն Անտիոքում։ Անտիոքի Թէոփիլակտ պատրիարքը (741—751 թ.) Վրաստանից եկած երկու վանականի խնդիրքով ժողով գումարեց միտրապոլիտներից, արքեպիսկոպոսներից եւ եպիսկոպոսներից եւ ժողովի որոշմամբ շնորհեց վրացիներին պրօտրեպտիկոն, այսինքն մի թուղթ, որի զօրութեամբ վրաց եպիսկոպոսների ժողովը կարող էր կաթողիկոս ձեռնադրել նրան, որին կ'ընտրէր նոյն եպիսկոպոսների ժողովը. այն պայմանով սակայն, որ կաթողիկոսը պաշտաման ժամանակ յիշատակէր Անտիոքի պատրիարքին եւ տարեկան ուղարկէր Անտիոքի աթոռին հազար դրական։ Այս գումարը վրացիք վճարում էին Անտիոքի աթոռին մինչեւ Յովհաննէս պատրիարքի օրերը (987—1010). վերջինս այդ տուրքը զիջաւ Երուսաղէմի Օրեստէս պատրիարքին։ Թէոփիլակտի օրերից Վրաստանում յիշատակում էին միմիայն Անտիոքի պատրիարքին, որը իւր իշխանութիւնը գործ էր դնում Վրաստանի վրայ միմիայն այն ժամանակ, երբ առաջ էին գալիս անկարգութիւններ եւ հերձուածներ եկեղեցու մէջ. այդպիսի

*դէպքերում Պատրիարքն ուղարկում էր Վրաստան էքզարխ, ինչպէս պատահեց Թէոդորոս պատրիարքի օրով* (1034—1042), *որ ուղարկեց Վրաստան Վասիլիոս Գրամմատիկոսին, ակակեան հերձուածը վերացնելու համար։*

*Եփրեմ Մծիրէին համաձայն պատմում է վրաց եկեղեցական անկախութիւն ձեռք բերելը* 8*րդ եւ* 11*րդ դարերում, Անտիոքի ս. Սիմէօնի վանքի աբեղայ Նիկոն, որ ժամանակակից էր Եփրեմին։*

*Այսպիսով ուրեմն արեւելեան Վրաստանի — Վերին Քարթալինայի կաթողիկոսին լիակատար անկախութիւն է տրուած* 8*րդ դարի կիսին։ Սակայն յետին դարերի մի տեղեկութեան համաձայն վրաց եկեղեցուն տրուած է աւտոկեֆալիա* 11*րդ դարում։ Արաբ քահանայ Միխայիլ Բրէք* 1767 *թ. կազմել է Անտիոքի պատրիարքների ցուցակը, որտեղ հետեւեալ տեղեկութիւնն է տալիս։*

*Վրացիք գալիս են Անտիոքի Պետրոս Գ. պատրիարքի մօտ* (1053—1057), *ըստ վաղեմի սովորութեան նրանից ձեռնադրուելու, եւ յայտնում են, որ մեծամեծ նեղութիւններ են կրում իրանց վրայ բռնացող ազգերից։ Պետրոս Գ. ժողով է գումարում եպիսկոպոսներից եւ, փոխանակ Հայոց կաթողիկոսի, որ նրանց դաւանութիւնից շեղուել էր, ձեռնադրում է նրանց վրայ ուրիշ կաթողիկոս եւ սահմանում է, որ նա եպիսկոպոսներ ձեռնադրէ Վրաստանի համար եւ լինի ինքնագլուխ, իսկ պաշտամունքի մէջ յիշատակէ Անտիոքի պատրիարքին. ինչպէս անում էր եւ առաջին կաթողիկոսը, որ ձեռնադրուած էր Իվերիացոց վրայ Անտիոքի Թէոփիլակտ պատրիարքից։*

*Պատմական այս իրողութիւնը Կիւրիոն եպիսկոպոս բացատրում է նրանով, որ Բրէքի յիշած ինքնագլուխ Իվերացոց կաթողիկոսը վերաբերում է Վրաստանի մի ուրիշ մասին։ Բացի իվերական*

հնագոյն թագաւորութիւնից, որի մայրաքաղաքներն էին հետզհետէ Մցխէթ եւ Թիֆլիս, կար նաեւ երկրորդ Իվերիա, որ հանդէս եկաւ 7րդ եւ 8րդ դարերում։ Այս նոր թագաւորութիւնը զօրացաւ մանաւանդ 8րդ դարից սկսած Արդանուչի վրացի Բագրատունիների շնորհիւ։ Աշոտ Կիւրապաղատի (787—826) եւ ուրիշների, որոնք դեռ 8րդ դարում Կղարջքում եւ Արտանուչում բազմաթիւ միաբնակ հայերի յունադաւան դարձրին, իւր կեդրոնական դիրքի եւ ամուր բերդի շնորհիւ Արտանուչը արագ հարստացաւ եւ նշանակութիւն ստացաւ։ Կոստանդին Պորփիւրոգենէս պատմիչը համարում է Արտանուչը ընդարձակ, ամուր եւ վաճառաշահ քաղաք, ուր գալիս էին նրա օրով Տրապիզոնի, Իվերիայի, Աւարիայի, Հայաստանի եւ Սիրիայի ապրանքները։ Վրաց միսիոնարական գործունէութեան շնորհիւ սկսեցին առաջ գալ Վրաստանի դրացի գաւառներում, որոնց բնակիչներն առաւելապէս հայեր էին, յունադաւան վրացական թեմեր՝ Անիի, Կարսի եւ Ալաշկերտի թեմերը. 10րդ դարում Արտանուչի Բագրատունիների թագաւորութիւնը հասաւ իւր զօրութեան գագաթնակէտին. Դաւիթ Մեծ կիւրապաղատ թագաւորը վրաց, յունաց եւ հայոց միաձայն վկայութեամբ 976 թ. կարողացաւ 12.000 ընտիր վրացի զօրք ուղարկել Բիւզանդիա, ապստամբ Բարդա Սկլերոսի դէմ կռուելու։ Այս թագաւորութեան սահմանների մէջ մտնում էին նաեւ Վերին Քարթալինայի նահանգները՝ Կլարջէթ եւ Տաօ (Կղարջք եւ Տայք)։ Երկրորդ անգամ, 11րդ դարում տրուած աւտոկեֆալիան վերաբերում է ահա այս Իվերիային, որի բնակիչները գլխաւորապէս վրացիներ էին։

Դաւիթ կիւրապաղատ մեռաւ 1001 թ. անզաւակ, իւր հողերը կտակեց յունաց Վասիլ Բ. կայսրին, որը եւ դարձրեց Իվերիան սահմանային

թեմ. այդ թեմը հետզհետէ մեծացաւ, ընդարձակելով արեւելեան սահմաններն ի հաշիւ վրաց եւ Հայոց իշխանական տների։ Երբ Անին միացաւ յունական երկրներին, դարձաւ իվերական մայրաքաղաքը, իսկ նրանից յետոյ Կարսը. այն գաւառները, որ առաջ Հայոց կաթողիկոսի իշխանութեան տակ էին, միացան իվերական յունական թեմին, եւ քանի որ Նոր Իվերիան առանձին քաղաքական միութիւն էր կազմում, իրաւունք ունէր եկեղեցական առանձին վարչութիւն ունենալու, անկախ Անտիոքի պատրիարքութիւնից, որ այն ժամանակ արաբների իշխանութեան տակ էր։ Ահա այս էր սեփական անկախ կաթողիկոս ունենալու շարժառիթը եւ սրանով է բացատրւում Միխայիլ Բրեքի վկայութիւնը, թէ Հայոց կաթողիկոսը շեղուեց դէպի միաբնակութիւն եւ նրա փոխանակ կարգուեց նոր կաթողիկոս։

Միխայիլ Պափլագոնի օրով վրաց Բագրատ Դ. թագաւորը (1027 -- 1072) ժառանգական իրաւունքով ձգտում էր իվերական թեմը իւր իշխանութեան տակ առնել, ուստի եւ խեթ աչքով էր նայում բիւզանդական տիրապետութիւնների վրայ արեւելքում։ ԺԱ.րդ դարի վերջերից Իվերիայի թեմը դէպի անկում էր գնում. նրա հարաւային մասին տիրեցին թուրքերը, իսկ կարճ ժամանակից յետոյ նրա հողերը միացան վրաց թագաւորութեանը։ Այսպէս ուրեմն, երկրորդ անգամ աւտոկեֆալիա տրուել է ոչ թէ Մցխեթի աթոռին, այլ Արտանուչի, Տայքի, Կղարջքի եւ Սամցխէի Բագրատունիների Իվերիային, որի մեծագոյն մասը յետագայում դարձաւ իվերական թեմ, եւ Խաղտիքի թեմի անկումից յետոյ մեծ նշանակութիւն ունեցաւ բիւզանդական կայսրութեան պատմութեան մէջ։

Կիւրիոն եպիսկոպոսի պատմական տեսութիւններից երեւում է, որ քրիստոնէութիւնը

մտել է Վրաստան Արեւմուտքից՝ Բիւզանդիայից, եւ որ վրաց եկեղեցին եղել է Անտիոքի յունադաւան եկեղեցու իրաւասութեան ներքոյ եւ ոչինչ կապ չէ ունեցել Արեւելքի եկեղեցիների, յատկապէս Հայոց եկեղեցու հետ իւր սկզբնաւորութեան առաջին իսկ օրերից։ Այս տեսութիւնը յեղաշրջում է պրոֆեսոր Մառի զեկուցումը, որի վերնագիրն է. "Պատմական տեսութիւն Վրաց Եկեղեցու Ընդհանուր ժամանակներից։"

Հակառակ Կիւրիոնի եւ առհասարակ վրաց եկեղեցական պատմագիրների տեսութեան, մասնագէտ հայագէտի եւ վրացագէտի պատմական եւ բանասիրական ուսումնասիրութիւնները բերել են նրան հետեւեալ եզրակացութիւններին։

Քրիստոնէութիւնն սկսուել է Վրաստանում չորրորդ դարում. այս բանին վկայ են վրացերէն Աստուածաշնչի բնագիրը, ժամասացութեան գրքերը եւ այբուբենի ծագումը, որ սկսուել է քրիստոնէութեան հետ. կան նաեւ այդ ժամանակուանից սուրբ հայրերի գրուածների թարգմանութեանց հատուածներ։ Չորրորդից մինչեւ ութերորդ դարը քրիստոնէութիւնը յառաջադիմում է Վրաստանում, ինչպէս ցոյց են տալիս բազմաթիւ գրաւոր յիշատակարանները, արձանագրութիւնները եւ, գլխաւորապէս, Հայոց եւ վրաց բանակցութիւնը եկեղեցու բաժանման մասին։ Վերջին խնդրին վերաբերեալ մեզ հասել է ի միջի այլոց Մցխէթի Արսենիոս կաթողիկոսի վրացերէն գրուածքը "Վրաստանի եւ Հայաստանի եկեղեցական բաժանման մասին" վերնագրով։ Այս շրջանում վրացիք կռիւ են մղել պարսկական արեւապաշտութեան դէմ Հայերի եւ ասորիների հետ միասին, ապա ընդունել են Քաղկեդոնի ժողովի որոշումները եւ բաժանուել են Հայոց եկեղեցուց, մաքառել են նեստորականութեան եւ միակամեայց դէմ։

Հնագոյն շրջանում վրաց եկեղեցին աւելի կապուած է եղել Երուսաղէմի եկեղեցու հետ. Մցխէթի խաչը ծագում է Երուսաղէմից, հնագոյն պատարագամատոյցներում կան մաղթանքներ Երուսաղէմի հայրապետների համար սկսած Յակոբոս Տեառնեղբօրից, բայց ոչ մի մաղթանք Անտիոքի յունադաւան պատրիարքների համար. Ծննդեան տօնը կատարում էին Երուսաղէմի եկեղեցու սովորութեան համաձայն յունուարի 6ին, ինչպէս պահպանել են ցարդ հայերը, եւ ոչ դեկտեմբերի 25ին. Անտիոքի եկեղեցին ընդունել է դեկտեմբերի 25ին տօնելու սովորութիւնը 376ին, մինչդեռ վրաց եկեղեցում դեռ երկար շարունակւում էր հին սովորութիւնը, եւ այս կասկածելի է դարձնում վրաց եկեղեցու կախումը Անտիոքի եկեղեցուց։

Վրաց Աստուածաշունչը, չնայելով որ շատ անգամ սրբագրուել է յունասէրների կողմից, պահել է ասորա-պաղեստինական բնագրերի ազդեցութիւնը. վրաց եւ հայոց վիճաբանութիւնների ժամանակ իւրաքանչիւր կողմը իրան համարում է հաւատարիմ, իսկ հակառակորդին՝ դաւաճանող Երուսաղէմի եկեղեցու աւանդութիւններին։ Երուսաղէմի վանքերն ու միաբանութիւնները միանգամայն անկախ էին Անտիոքի պատրիարքութիւնից եւ ամէն տեղ պահպանում էին իրանց լեզուն, ինչպէս նաեւ Սեւ լերան վրացական վանքերը 11րդ դարում։

Արեւմտեան Վրաստանում քրիստոնէութիւնը հաստատուել է անկասկած յունաց ազդեցութեամբ. Աբխազիան, որ այն ժամանակ ամփոփում էր իւր մէջ Իմերէթը եւ Մինգրելիան, ընդունել է քրիստոնէութիւնը Յուստինիանոսի օրով (527—565)։ Ս. Նունէի քարոզութիւնը վերաբերում է իսկապէս Արեւմտեան Վրաստանին, եւ Անտիոքի ազդեցութիւնը տարածւում էր Արեւ-

մտեան Վրաստանի վրայ, իսկ Արեւելեան Վրաստանի, Մցխէթի կաթողիկոսութեան վրայ Անտիոքը ազդեցութիւն չէ ունեցել, գոնէ այդ չեն հաստատում գրական աղբիւրները։

8րդ դարի սկզբում եկեղեցական գործիչների ազդեցութեամբ Արեւմտեան Վրաստանի աւանդութիւնը քրիստոնէութեան սկզբնաւորութեան մասին տարածուեց նաեւ Արեւելեան մասի վրայ, եւ ժողովրդի յիշողութիւնից հետզհետէ անհետացաւ Արեւելեան Վրաստանի եկեղեցու անկախ ծագումը, Արեւելեան միւս եկեղեցիների — ասորոց, հայոց եւ պարսկական եկեղեցիների ծագման հետ միասին։ Երբ հայոց եկեղեցին ընդհանուր եկեղեցու վերաբերմամբ առանձնացած դիրք բռնեց, եւ վրաց եկեղեցին նրա հետ կռիւ էր մղում, ջանքեր եղան մոռացնել տալու այն ամէնը, ինչ որ կապում էր վրաց եկեղեցին հայկականի հետ, աշխատեցին ցոյց տալ, թէ վրաց եկեղեցին, նաեւ արեւելեանը, սկզբից ի վեր միացած է եղել յունաց եկեղեցու հետ։

Պատմական իրողութիւնն այն է, որ 9րդ դարում ամբողջ վրաց եկեղեցին, եւ ոչ նրա որ եւ է մասը, հանդէս է գալիս իբրեւ աւտոկէֆալ։ Ինչպէս յատուկ է արեւելեան ազգային եկեղեցիներին, վրաց եկեղեցու կառավարութիւնը վրաց ազգի ձեռքին էր — հոգեւորականների եւ աշխարհականների. եկեղեցու գլուխն էր ընտրուած կաթողիկոսը այս բառի ոչ քերականական, այլ իրական մտքով։ 10րդ դարում, 950 թուին, խզուեց վերջին կապը, որ կապում էր վրաց եկեղեցին Երուսաղէմի եկեղեցու հետ. վրացիք իրաւունք ստացան իրանք մեռոն օրհնելու Երուսաղէմի տեղական ժողովի որոշումով։

Հնագոյն ժամանակի վերաբերմամբ չի կարելի ցոյց տալ գրական աղբիւրներ, որոնք հաստատէին նոյն իսկ Արեւմտեան Վրաստանի եկեղե-

ցու կախումը Անտիոքի աթոռից, բացի երկու աղբիւրից՝ Սեւ լերան վանական Նիկոնի եւ Եփրեմի գրուածքներից։

Վեցերորդ դարի վերջերից վրաց եկեղեցին, եթէ ոչ կանոնական որոշմամբ, գոնէ իրականապէս անկախ էր բիւզանդական եկեղեցուց. Նրա իրաւասութիւնը հետզհետէ մեծացաւ եւ 8րդ դարի կիսին խնդիր ծագեց Նրա դիրքը միւս եկեղեցիների վերաբերմամբ որոշելու, Նրա անկախութեանը կանոնական հաստատութիւն տալու. եւ որովհետեւ Կոստանդնուպոլիսը պատկերամարտների ձեռքումն էր, ուստի ուղղափառ վրաց եկեղեցու անկախութիւնը ճանաչուեց եւ հաստատուեց պատկերապաշտ Անտիոքի ժողովում։ Ժողովի արձանագրութիւնները չեն մնացել, բայց ժողովի մասին վկայում են թէ վրացիք եւ թէ անտիոքացիք — ասորիք եւ արաբները։

Անտիոքի գերագահութեան աւանդութիւնը վրաց մէջ ծագել է գլխաւորապէս 11րդ դարում, Սեւ լերան միաբանութեան շնորհիւ, եւ այնտեղի վանական վրացի Եփրեմը կրկնել է Անտիոքի ժամանակագիրների լեգենդական տեղեկութիւնները, որովհետեւ ինքը եղել է ջերմ կուսակից յունականութեան։ Այն ժամանակ վրացական եկեղեցական շրջանը կատաղի թշնամի էր այն ամենին, ինչ որ յիշեցնում էր որ եւ է կապ հայոց եկեղեցու հետ։ Անտիոքի գերագահութեան աւանդութիւնը գալիս էր ջնջելու հայոց եւ վրաց եկեղեցական հաղորդակցութեան բոլոր հետքերը։ Գուցէ եւ Եփրեմ չգիտէր վրաց եկեղեցու հին պատմութիւնը եւ աշխատում էր տալ Անտիոքացոց համար ընդունելի պատմական բացատրութիւնը վրաց եկեղեցու անկախութեան, ուստի եւ Նա ընդունեց այդ աւանդութիւնը, որով անտիոքացիք հաշտւում էին վրաց եկեղեցու անկախութեան անվիճելի իրողութեան հետ։ Անտիոքի եկեղեցում

շատերը թշնամաբար էին նայում վրաց եկեղեցու անկախութեան վրայ եւ համարում էին այդ եկեղեցին ոչ առաքելահիմն. ուստի Գէորգ անունով մի վանական աշխատեց ցոյց տալ Անտիոքի պատրիարքին, թէ Վրաստանում քարոզել է Անդրէաս Նախակոչ առաքեալը, իսկ Սիմոն Կանանացին թաղուած է Աբխազիայում: ԺԱրդ դարում Անտիոքի պատրիարքն անհերքելի փաստաթղթերի ճնշման տակ ստիպուեց նորից ժողովական որոշումով հաստատելու ոչ միայն վրաց կաթողիկոսի անկախ ընտրութեան, այլ եւ եկեղեցու կատարեալ անկախ կառավարութեան իրաւունքը: Պատմութիւնն ինքը հանդէս բերեց վրաց եկեղեցու իւական աւտոկեֆալիային կանոնական հաստատութիւն տալու խնդիրը, եւ Պետրոս Գ. պատրիարքի օրով (1052—1057) Անտիոքի ժողովը վերահաստատեց վրաց եկեղեցու աւտոկեֆալիան:

Պրոֆեսոր Մառի այս ուշագրաւ զեկուցման մէջ արծարծուած մտքերը ամփոփւում են հետեւեալ կէտերի մէջ.

1. Վրաց եկեղեցին հիմնել եւ կազմակերպել է բիւզանդական կայսրութեան մեծ եկեղեցու ազդեցութիւնից դուրս, առաքելական քարոզութեան եւ Երուսաղէմի եկեղեցական աւանդութիւնների հիման վրայ, ինչպէս արեւելքի միւս ազգային եկեղեցիները:

2. Վրաց եկեղեցին, որ սկզբից ի վեր ունէր իւր սեփական մայրենի լեզուն, վեցերորդ դարի սկզբում իրաւազօր է հանդիսանում իւր գործերը կառավարելու տեղական ազգային ժողովներով եւ ունի ամբողջացած նուիրապետական-վարչական կազմակերպութիւն, գլուխ ունենալով ընտրեալ կաթողիկոսին բիւզանդական կայսրութիւնից եւ նրա ազդեցութեան շրջանից միանգամայն անկախ:

3. Իւր զարգացման ընթացքում՝ 8րդ դարում մտենալով յունական եկեղեցուն, աւտոկե-

փալ վրաց եկեղեցին ինքը ձգտում է կանոնական որոշումով ճանաչել տալու իւր անկախութիւնը, կայսերութեան եկեղեցու սկզբունքների համաձայն։ Այդ ձգտման իրագործումը տեղի է ունենում 8րդ դարի կիսին Անտիոքում, որովհետեւ այդ ժամանակ բիւզանդիայում եկեղեցին ուղղափառութեան թշնամիների՝ պատկերամարտների իշխանութեան ներքոյ էր։

4. Օգտուելով անկախութեամբ եւ ինքնավարութեամբ, բուն հայրենիքում, սուրբ տեղերում եւ վանական գաղութներում, 8րդ դարից սկսած իր ազդեցութեան ենթարկելով նաեւ ուղղափառ (քաղկեդոնիկ) հայոց թեմերը, 11րդ դարում վրաց եկեղեցին ընդհարուեց Անտիոքի յաւակնութիւնների եւ յունաց կայսրների եկեղեցական քաղաքականութեան հետ։ Անտիոքի յաւակնութիւնները վրաց եկեղեցու վերաբերմամբ յառաջ եկան Սեւ լերան վանքերում վրաց եւ Անտիոքացիների յարաբերութիւններից, իսկ բիւզանդացոց եկեղեցական քաղաքականութիւնը՝ Հայաստանի թեմերի իրաւասութեան խնդրից. յոյները հետզհետէ թեմեր էին ձեռք բերում Հայաստանում եւ գրաւելու վրայ էին նաեւ այն թեմերը, որոնց մէջ ապրում էին վրաց եկեղեցու իրաւասութեան տակ գտնուող քաղկեդոնիկ հայեր. հաւանօրէն յոյները խնդիր յարուցին վրաց կաթողիկոսի իրաւունքների մասին, թէ ինքնագլո՞ւխ էր արդեօք եւ թէ իրաւազօ՞ր էր արդեօք ուղղափառ հայոց թեմերը կառավարելու։ Այսպէս ծագեց 11րդ դարում վրաց եկեղեցու աւտոկեֆալիայի խնդիրը, որը եւ վճռուեց վերջնականապէս յօգուտ վրացիների Անտիոքում, Պետրոս պատրիարքի օրով։

5. Վրաց եկեղեցին ոչ թէ այս որոշումից յետոյ, այլ սրանից առաջ ունէր կատարեալ ազատութիւն, կառավարում էր անկախօրէն իւր գոր-

ծերը ինքնագլուխ կաթողիկոսի իշխանութեան ներքոյ, ունենալով օրէնստու մարմին՝ տեղական եկեղեցական ժողովներ, պահպանելով իւր առանձնայատկութիւնները եկեղեցական ճարտարապետութեան, արուեստի, հոգեւոր երգեցողութեան, տօնակատարութիւնների եւ այլ ազգային ուրոյն սովորութիւնների մէջ, անշեղ պահելով մի եւ նոյն ժամանակ յունական եկեղեցու դաւանութիւնը։

Թէպէտ եւ Բուտկեւիչ աւագ քահանան խիստ քննադատում է Մառի այս ուշագրաւ զեկուցումը եւ գտնում է ոչ այնքան գիտական եւ հիմնաւոր, այլ կառուցուած աւանդութիւնների եւ անձնական ենթադրութիւնների վրայ, սակայն թէր եւ դէմ կարծիքներից պարզւում եւ ընդհանուր հաւանութիւն է գտնում զեկուցման պատմական մասը, իսկ կանոնական մասը նկատւում է թոյլ եւ վրաց եկեղեցու անկախութեան կանոնական հիմունքը չապացուցուած։

Բուտկեւիչ զբաղուելով խնդրի պատմական եւ կանոնական հետազօտութեամբ, պնդում է, որ Անտիոքում ժողով չէ կայացել եւ վրաց եկեղեցուն աւտոկեֆալիա չէ տրուել. Եփրեմ Մծիրէն առասպելական անձ է, եւ եթէ նոյն իսկ հաւատանք նրա հաղորդածներին, վրաց եկեղեցին այնուամենայնիւ կախում ունէր Անտիոքի պատրիարքից։ Արաբ քահանայ Միխայիլ Բրէքի վկայութիւնից երեւում է, որ կային երկու կաթողիկոս — Մցխէթի եւ Իմերէթի կաթողիկոսներ. Նոյնը վկայում է վրաց վերջին կաթողիկոսը՝ Անտոնիոս Բ. վերջինիս հաղորդած տեղեկութիւններից Բուտկեւիչ եզրակացնում է, թէ վրաց եկեղեցին հասել է ինքնագլուխ կառավարութեան ոչ ժողովական կանոններով, այլ աշխարհական իշխանութեան ուժով եւ ջանքերով. Վախտանգ Ա. Գորգասլան իւր իշխանութեամբ դարձրել է վրաց եկեղեցին ինքնավար։

Ի հաստատութիւն իւր խօսքերի Բուտկեւիչ բերում է վրաց եկեղեցական պատմաբան Իոսսելիանիի հեղինակաւոր կարծիքը. ըստ այսմ անկախ կած վրաց եկեղեցին սկզբում կախում ունէր Կոստանդնուպօլսի պատրիարքից, բայց յետոյ միացուեց Անտիոքի աթոռին։ 12րդ դարի բիւզանդական կանոնագէտ Թէոդորոս Վալսամոն աւտոկեֆալ եկեղեցիների շարքն է դասում նաեւ վրաց եկեղեցին. վրաց պատմութիւնից երեւում է, որ Վախտանգ Գորգասլան թագաւորի օրով եւ նրա կամքով Վրաստանի արքեպիսկոպոսն ընդունեց կաթողիկոս կոչումը, անկախ կաթողիկոսի իրաւունքներով։ Ըստ Պրոկոպիոսի իւր ժամանակ թէ Հայաստանում եւ թէ Վրաստանում հոգեւոր պետերը կոչւում էին կաթողիկոս։ Վրաց եկեղեցին առանձնացաւ Անտիոքից յարաբերութեանց դժուարութեան պատճառով։ Այս ցուցումներից Բուտկեւիչ եզրակացնում է, թէ վրաց եկեղեցին իւրացրել է աւտոկեֆալիան քաղաքական հանգամանքների շնորհիւ եւ մարմնաւոր իշխանութեան զօրութեամբ։

Բուտկեւիչ անհիմն է համարում Լէօնիդի ղեկուցման մէջ բերուած բոլոր պատմական ցուցումները, բացի Վալսամոնի վկայութիւնից, որի համաձայն Անտիոքի Պետրոս պատրիարքի օրով ժողովական որոշում կայացաւ, որով ճանաչուեց վրաց եկեղեցին ազատ եւ ինքնավար, սակայն կախեալ Անտիոքի պատրիարքական աթոռից։ Անտիոքի պատրիարքները, ըստ Բուտկեւիչի, մինչեւ այսօր կրում են վրաց պատրիարքի տիտղոս. Նրանք կոչւում եւ գրւում են. “Պատրիարք քաղաքին Աստուծոյ Անտիոքայ, Սիրիոյ, Իվէրիոյ, Կիլիկիոյ, Միջագետաց եւ համայն արեւելից։„ Բուտկեւիչի կարծիքով ոչ մի կերպ չի կարելի ապացուցանել, թէ վրաց եկեղեցին ստացել է աւտոկեֆալիա կանոնական եղանակով. կամ թէ նա եղել է կատա-

ըելապէտ ինքնավար. Նրա ինքնավարութիւնը եղել է յարաբերական եւ ձեռք է բերուել քաղաքական հանգամանքների շնորհիւ, ուստի եւ եկեղեցական-կանոնական տեսակէտից վաւերական եւ հաստատուն չի կարելի համարել։

Պրոֆեսոր Մառի մի քանի քննադատական նկատողութիւնները հերքում են Բուտկեւիչի բացատրութիւնների գլխաւոր հիմունքը, ուստի եւ զրկում են նրա ամբողջ տեսութիւնը որ եւ է արժէքից։

Մառը նկատում է, 1. որ Վախտանգ Գորգասլան թագաւոր չէ եղել, նա առասպելական անձ է. 2. որ Իոսսելիանին վրաց եկեղեցու պատմութեան համար հեղինակութիւն չէ. Նրանից յետոյ գտնուել են վրաց պատմութեան բազմաթիւ նոր աղբիւրներ եւ շատ խնդիրներ նոր լուսաբանութիւն են ստացել. եւ 3. որ Եփրեմ Մծիրէն, որին Բուտկեւիչ առասպելական անձ է համարում, վրաց Դաւիթ Շինող թագաւորի աւագ ժամանակակից է, ապրել է 12րդ դարի սկզբներին եւ ունի բազմաթիւ ինքնուրոյն եւ թարգմանական աշխատութիւններ։ Այսպիսի պատմական յայտնի անձնաւորութիւն է նաեւ 11րդ դարի բիւզանդական հեղինակ եւ կանոնագէտ Նիկոն վանականը։

Վրաց եկեղեցու ինքնավարութեան խնդիրը կանոնական հիմունքներից զուրկ է համարում նաեւ կանոնագէտ պրոֆեսոր Ալմազով. իւր զեկուցման մէջ, որ կրում է “Կանոնական հիմունքներ վրաց եկեղեցու ինքնավարութեան խնդիրը լուծելու համար„ վերնագիրը, Ալմազով բացատրելով Երրորդ եւ Չորրորդ տիեզերական ժողովների կանոնները, հանգում է հետեւեալ եզրակացութիւններին։

1. Տեղական անկախ եկեղեցիներին ի սկզբանէ պատկանող իրաւունքները չպէտք է որ եւ է մէկի կողմից անարգուէին եւ խախտուէին։

2. Տեղական ինքնավար եկեղեցի ասելով կանոնական որոշումները հասկանում են այն եկեղեցիները, որոնք հին ժամանակ բիւզանդական կայսրութեան սահմանների մէջ էին, ուրեմն եւ կանոններով սահմանուած պատրիարքական աթոռների իրաւասութեանց շրջանում։

3. Ըստ կանոնների ինքնավարութիւն նշանակում է եպիսկոպոսների ընտրութեան եւ նշանակելու իրաւունք. եպիսկոպոսների գլխաւորը, առաքելական 34 կանոնի համաձայն մետրապոլիտը, պէտք է իւր պաշտօնի մէջ կարգուի կամ հաստատուի եկեղեցական վարչութեան բարձրագոյն մարմնի՝ պատրիարքի կողմից։

4. Կանոնների համաձայն (Դ. ժողովի 17 կան. Տրուլլեան ժող. 38 կան.) եթէ մի պետութեան եւ նրա անկախ եկեղեցու սահմաններում առաջ է գալիս նոր պետութիւն, նրա եկեղեցին եւս պէտք է վարչականապէս անկախ լինի. հետեւաբար եթէ մի պետութեան հետ միանայ մի ուրիշ պետութիւն, ինչ վարչական կազմակերպութիւն որ ստանայ միացող պետութիւնը, համապատասխան վարչական կազմակերպութիւն պէտք է ստանայ եւ նրա եկեղեցին։

Այս բոլոր որոշումները վերաբերում են բիւզանդական կայսրութեան սահմանների մէջ մնող եկեղեցիներին։

5. Քաղկեդոնի ժողովի 28րդ կանոնի համաձայն օտար ազգերի եկեղեցիների գլխաւոր եպիսկոպոսները պէտք է նշանակուէին Կոստանդնուպոլսի աթոռից. այս եկեղեցիներից էր նաեւ վրաց եկեղեցին, որ ուրեմն տիեզերական ժողովների ժամանակաշրջանում չէր ճանաչւում իբրեւ աւտոկեֆալ։

6. 12րդ դարի բիւզանդական յայտնի կանոնագէտ Թէոդորոս Վալսամոն հաղորդում է հետեւեալը. Ասում են թէ Անտիոքի Պետրոս պատրիարքի օրով (1053—1057) ժողովական որոշում

*կայացաւ, Անտիօքի պատրիարքին ենթարկուող վրաց եկեղեցին լինի անկախ եւ ազատ։*

*Վերոյիշեալ կանոնական կէտերից Ալմազով եզրակացնում է, որ վրաց եկեղեցին անկախ չէր (իւր ներքին գործերի կառավարութեան մէջ) մինչեւ* 11*րդ դարը, աւտոկեֆալիան, տիեզերական ժողովների կանոնների հիման վրայ յատուկ չէր վրաց եկեղեցուն սկզբից եւ եթ. աւտոկեֆալիան տրուեցաւ մի պատրիարքի իրաւասութեան տակ գումարուած եկեղեցական ժողովի կողմից, ուստի եւ չէր կարող կատարեալ համարուել. վրաց պատրիարքութիւնը չէր կարող ինքնագլուխ պատրիարքութիւն ճանաչուել, քանի որ չնորհւում էր պատրիարքի կողմից, այլ պէտք է ճանաչուէր իբրեւ մետրապոլտութիւն*[1]*"։*

## 2. *Արսէն կաթողիկոս վրաց:*

*Վրաց Արսէն կաթողիկոսի (Ժ. դար) գրութիւնը՝ խորագրուած "Ճառ սրբոյ հօրն մերոյ Արսէնի կաթողիկոսի Մծխեթայ"՝ հրատարակած է Թ. Ժորդանիա վրացերէն բնագրով իւր Ժամանակագրութիւն եւ այլ նիւթեր Վրաստանի պատմութեան եւ մատենագրութեան վերաբերեալ գործին մէջ (Տփղիս* 1893, *էջ* 313—332)։ *Վրացերէն բնագիրն ինձ անմատչելի մնալով չկրցայ ընթացս ուսումնասիրութեանս օգտուիլ ուր հարկն էր (Հմմտ.* 207, 256)։ *Այժմ ունիմ կարեւոր մասերը աչքացս առջեւ գերմաներէն թարգմանութեամբ Հ. Գուսէնի, որ հաճեցաւ զայն ձեռագիր տրամադրութեանս տակ դնել։ Անհետաքրքրական բան մ՚է Արսէնի գրուածքը գոնէ մեր հարցի նկատմամբ եւ ամենեւին յարաբերութիւն չունի Ուխտանիսի հետ (Հմմտ. այս մասին նաեւ* Джаваховъ, Исторія церковнаго разрыва, *էջ* 433, *եւ* 440)։ *Արսէն*

[1] *Հմմտ.* ԱՐՐՑ, 1906, *էջ* 847—863, 971--983։

հիմնուած է ընդհանրապէս յիշեալ տողերու մէջ Narratio de rebus Armeniae գրութեան վրայ, որուն թէեւ այժմ միայն յունարէնն կայ, բայց եղած է երբեմն նաեւ հայերէնը (տես վրայ ուրիշ անգամ)։

Այստեղ աւելորդ չեմ համարիր կարեւոր մասերն ի մէջ բերել քաղուածաբար (ինչ ինչ հմմտ. եւ H. Goussen: Die georgische Bibelübersetzung, p. 315—317)։

"Պարսից Պերոզ թագաւորը վախնալով որ Հայերը Յունաց հաւատակից ըլլալով կրնան իրմէ ապստամբիլ, ստիպեց զանոնք, որ ընդունին Նեստորի վարդապետութիւնը։ Բայց Հայերը մերժեցին։ Այն ատեն ըսաւ. կամ Ասորւոց հետ — բաց ի Մելքիտներէ, որոնք Յունաց հետ մի են, — խոստովանեցէք մէկ հաւատք եւ կամ թողուցէք ձեր աշխարհը եւ գացէք։ Այս շատ դժուար երեւցաւ Հայոց եւ երկար բանակցեցան՝ յատկապէս կաթողիկոսն Ներսէս Միջին. ի վերջոյ զիջանելով յանձն առին Յակոբիկեանց հաւատքը, միւս բոլոր կրօնները ասկէ աւելի դէշ տեսնելով։ Ասոր վրայ թագաւորն գոհ եղաւ եւ խաւրեց անոնց յակոբիկ վարդապետներ, չար եւ բռնաւոր, ինչպէս խորամանկ աղուէսներ... որոնք ապականեցին ի Հայս Ս. Գրիգորի վաստակը։ Ասոնց անուններն են՝ Աբդիշոյ, Պետրոս Թափիչ, չարն Սիմէոն, Յակոբ, որոնք իրենց հետ բերին Փիլոքսենոսի, Յուլիանոս Աղիկառնացւոյ, Տիմոթէոս Ասորւոյն եւ Սեւերոսի գրութիւնները։ Դուին ժողով մը գումարեցին եւ ընդունեցան Ոչ խոստովանողը... այսու բաժնուեցան կաթողիկէ Եկեղեցիէն....։

Եւ երբ Վրաց եւ Աղուանից կաթողիկոսն Կիւրիոն Մծխեթացին տեսաւ, որ Հայք Աբդիշոյ Ասորւոյն ձեռօք Դուին ժողով գումարեցին, մերժեցին կաթողիկէ եկեղեցւոյն վարդապետութիւնը, ինք զինքնին բաժնեցին չորս պատրիարքութիւններէ եւ դրժելով Ս. Գրիգորի դրած ուխտին, թէ

Հայք Կեսարիոյ եկեղեցիէն յաւիտեանս պիտի չբաժնուին եւ պիտի չդադրեցնեն անկէ առնուլ եպիսկոպոսական ձեռնադրութիւնը՝ Պարսից թագաւորէն հրաման առած են որ իրենք ձեռնադրեն իրենց եպիսկոպոսները։ Արդ երբ զայս ճշմարտութեամբ լսեցին կաթողիկոսն Կիւրիոն եւ Աբաս կաթողիկոսն Աղուանից, մեծ կռիւ ծագեցաւ Հայոց եւ Վրաց մէջ։ Վիրք գիտել տուին Հայոց. "Ս. Գրիգոր մեղի ի Յունաց բերաւ հաւատքը, զոր ձեզի տուաւ իբրեւ իւր սուրբ դաւանութիւնը, եւ դուք ինք զինքնիդ ենթարկեցիք Աբդիշոյի եւ ուրիշ ամբարիշտ մոլորելոց . . . եւ դուք անչարչարելի Երրորդութեան յատկացուցիք կիրք, ինչպէս ձեզի աւանդեց ամբարիշտն Պետրոս Թափիչ Անտիոքացին։

Այն ատեն Հայերը ամբաստանեցին զՎրացիները Պարսից արքային քով, թէ անոնք Հոռոմոց հաւատքն կը դաւանին։ Այս կռիւը տեղի ունեցաւ Հայոց եւ Վրաց մէջ՝ Ներսէս կաթողիկոսի օրով։ Ներսէս Միջին չար կաթողիկոսի մահուընէ ետքը յաջորդեց անոր Աբրահամ։ Եւ կաթողիկոսն Վրաց Կիւրիոն մերժեց Ցուրտաւայ Մովսէս եպիսկոպոսը աթոռէն, որ Հայոց Ս. Շուշանիկի նշխարներու քով հաստատուած էր. եւ Աբրահամ պահանջեց Կիւրիոնէն անոր աթոռը, բայց Կիւրիոն միտ չդրաւ, եւ ծագեցաւ ասկէ երկուքին մէջ սաստիկ կռիւ . . . ։„

Աւելորդ է ժամանակագրութեան անհամաձայնութիւնք եւն մատնանշել, որոնք այնպէս կարկառուն կեցած են՝ տեսանելի ամէնուն։ Արսէն ուզածին պէս հասկցած է յոյն անանունի պատմածները եւ իւր ճառը յօրինած՝ ինչպէս թելադրած է իրեն ազգասիրութիւնը։ Յաջորդ տողերու մէջ կը պատմէ Կոմիտասայ եւ յաջորդներու օրով Քաղկեդոնի ժողովոյն նկատմամբ ելած խնդիրները եւն։

# ՈՒՂՂԵԼԻՔ ԵՒ ՅԱՒԵԼԼԻՔ

| Էջ տող | | |
|---|---|---|
| 9, 11 | Պետրոս Թօռնօվ = Պետրոս Թօֆէն (Fullo)․ Հմմտ․ առ այս ԲԶՄ․ 1908, էջ 30 եւ ՀԱՆԴ․ ԱՄՍ․ 1908, էջ 64 եւ 155։ — Լաւագոյն է եւ աւելի ճիշդ՝ ըստ Նորայրի, Նախնեաց համաձայն փոխել Տօնդրախօս․ տես ՀԱՆԴ․ ԱՄՍ․ 155։ | |
| 9, 13 | նահանդ | նահանգ |
| 10, 2 | արձագան+ն | արձագանքն |
| 18, 13 | Մխ․ Անեցւոյ | Մխ․ Այրիվանեցւոյ |
| 28, 17 | 571ին | 572ին |
| 32, 11 | մեջ | մէջ |
| 32, 17 | ընդգըրկել | ընդգրկել |
| 34, 6 | հաւատարին | հաւատարիմ |
| 34, 9 | ազատութենէն | ազատութենէն[1] |
| 43, 31 | Բաբկէն | Բաբգէն |
| 44, 12 | յաւել՝ “Մովսէս Խորենացւոյ„ Թղթի մասին տես իմ Տիմոթէոս Կուզ Հայ մատենագրութեան մէջ, էջ 41—42, ուր ցուցուցած եմ գրութեան ժամանակը Զ դարէն ետքը։ “Յովհաննէս եպիսկոպոսապետի Հայոց„ գրութիւնն թերեւս նոյնացուի Վրթանէսի ակնարկած “Թուղթ Յովհաննէս | |

| էջ | տող | | |
|---|---|---|---|
| | | եպիսկոպոսապետի„ գրութեան հետ (Գիրք Թղթոց, 126) եթէ ջնջուի "Հայոց„ յատկացուցիչը։ | |
| 46, | 11 | Այր. 22 | Այր. 7. Հմմտ. էջ 220։ |
| 48, | 4 վար. | ծան. 5 | ծան. 4 |
| 62, | 4 „ | Ուխտանիսէն։ | Ուխտանէսէն |
| 64, | 16 | ղոր | զոր |
| 72, | 11 | բազմակնցք | բազմակե[ա]ցք. Հմմտ. ՀԱՆԴ. ԱՄՍ. 1908, էջ 221։ |
| 72, | 12 | ցուցանել | ցուցանելի։ |
| 73, | 2 վար. | Տիւրացիք | Սիդոնացիք. եւ տող 1 Տիւրոս = Սիդոն։ |
| 82, | 1 | հաղորդակցու-թիւնին | հաղորդակցու-թիւննին |
| 87, | 30 | մե+ | մեր |
| 98, | 1 | Սիւնիք[4] | Սիւնիք |
| 98, | 7 | կանոնականը[1] | կանոնականք[2] |
| 108, | 4 | եւ, այն | , եւ այն |
| 124, | 4 | իրէն | իրէն |
| 124, | 29 | Բագրեւանդացի | Բագարանեցի |
| 125, | 2 | | |
| 149, | 5 | | |
| 158, | 5 վար. | 150 = 171, եւ յաւել՝ այս խօսքերով լաւագոյն է թերեւս իմանալ. "յորմէ խնդրեալ ի ծնողացդ՝ պարգեւեցար նոցա յԱստուծոյ շնորհաց.„ այս ինքն աշխարհ եկար։ | |
| 125, | 19 | յաւել՝ Հ. Ալիշանի աղբիւրն է Յովհաննու Մայրագոմեցւոյ Թուղթն առ Դաւիթ եպիսկոպոս Մեծ | |

Էջ տող

կողմանց՝ վասն պատկերաց եւ նկարագրութեանց. «Եւ ածին զՅոհան ոմն սիւնեցին, ձեռնադրեցին (կաթողիկոս) եւ հնազանդեցան քաղկեդոնական կրօնիցն». Մ. Կաղանկատ., 212. այսպէս կը լրացընէ մեր խօսքը Նորայր (ՀԱՆԴ. ԱՄՍ. 1909, էջ 216—217) հաղորդելով նաեւ հետաքրքրական ծանօթութիւններ Սիւնեցին բառին նկատմամբ։ Սիւնեցին կոչուած է Յովհաննէս «միայնակեաց, ճգնաւոր» իմաստով։ — Ընդհանրապէս Մայրագոմեցւոյ վերոյիշեալ թղթին անուշադիր գտնուած էինք, երբ կը գրէինք 118—148 էջերը, որով առանց յիշատակելու թողուցած էինք Մովսէս կաթողիկոսի եւ Կարնոյ Թէոդորոս եպիսկոպոսի մէջ յուզուած խնդիրները, Մովսէսի օրով արծարծուած պատկերամարտութիւնը, Յովհ. Բագարանեցւոյ կաթողիկոսանալու նկատմամբ մանրամասնութիւնները։ Այս պակասը ջանացած ենք լնուլ մեր Վրթանէս Վրդ. Քերթող եւ իւր երկասիրութիւնները ուսումնասիրութեան մէջ, ուր յառաջ բերած ենք ամբողջ թուղթը (էջ 17—19)։

127, 6 վար. | յաւել՝ Յովհաննէս կաթողիկոսի
135, ծան. 1 | վրայ առած ենք Թղթոց Գրքի խօսքերը, Նորայր Բիւզանդացի (անդ 217) կը գրէ. «Ես կարծեմ թէ կ՚ակնարկեն ի Վարդան Մա-

Էջ տող

միկոնեան որ սպանեց զմարզպանն Սուրէն յամին 572, եւ ապստամբեցաւ ի Պարսից։ Այսպէս կը հասկանայ եւ Հ. Ալիշան (Այրարատ, 407ա)„։ Զվարդան կ՚իմանայ նաեւ Հ. Գաթըրճեան, բայց մենք զՅովհաննէս նկատեցինք հոն աւելի իմաստալից ընելու համար Վրթանիսի գանգատը. եւ այսպէս ալ կը պահանջէ տեղւոյն միտքը։

137, 12 Թշնամանքէն. = իմա ըստ Նորայրի (անդ, 217)՝ թշնամութեան լայն դուռը պիտի բանայ„։

138, 20 Եղոյ (?), Առնայոյ (?)։ Յաւել՝ Երկու անուններս ալ Պարսկահայոց գաւառներ են. առաջնոյն ուղղական ձեւն է Եղէ, Այղէ, եւ երկրորդին՝ Առնա, Ըռնա. մանրամասնութիւններ տես Նորայրի հատուածին մէջ (անդ, 218)։

146, 31
147, ծան. 1 Զիթառիճ = Կթառիճ կամ Կթուիճ հմմտ. Նորայրի դիտողութիւնն, անդ, 219։

157, 10 յաւել՝ Ս. Գրիգորի աւերակներն չեն ենթարկուած տակաւին քննութեան. Խաչիկ Վ. Դադեան այսպէս կը նկարագրէ առաջին պեղումներու արդիւնքը (ԱՐՐՏ, 1907, էջ 660).

"Առ այժմ բացուած է Ս. Գրիգորի ամբողջ յատակագիծը նման Թալինի մեծ կաթողիկէի յատակագծին։ Խաչաձեւ է տաճարի կազմութիւնը. Հինգ սե-

Էջ տող

զան, հինգ դուռն, երկարութիւնը սեղանով հանդերձ՝ 55½ արշէն մէջէմէջ, պատերի լայնութիւնը՝ 3 արշ. տաճարի լայնութիւնը՝ մէջէմէջ 25½ արշ.: Արեւելեան, հարաւային եւ հիւսիսային մեծ սեղանները լայնութեամբ 10 արշ. հարաւայինի եւ հիւսիսայինի խորութիւնը՝ անյայտ: Սեղանների կազմութիւնը՝ ներսից կլոր. դրսից հինգ անկիւնով: Դռների լայնութիւնը՝ 2½ արշ. լուսամուտների թիւը՝ անյայտ: Դունայ կաթողիկէի թէ յատակը եւ թէ առաստաղը մոզայիկներով զարդարած է եղել. Հիւսիս արեւելեան փոքր սեղանի յատակի վերայ մնացել է բաղդի բերմամբ Դունայ Աստուածամօր գլուխը. ձախ աչքի մոզայիկները թափուած. երեսի բերանի մասը նոյնպէս: Յատակի վերայ արեւմտեան եւ հարաւային դռների կողմից բաւական տարածութեամբ մոզայիկ յատակ՝ զանազան գոյնզգոյն քարերով զարդաձեւ բանուածքով: Տաճարի պատերի ծեփերը նոյնպէս զանազան գոյներով ներկած, ինչպէս Զուարթնոց եկեղեցում»: —

158, 11 յաւէլ՝ Սմբատ որդի էր Քչկան. եղբայրներէն կը յիշուին յականէ Գէֆ Դաշտակարանի տէր եւ Վրթանէս Վարդապետ Քերդող Շարսաղար. այս մասին տես իմ Վրթանէս Վրդ. Քերդող եւն,

| Էջ տող | | |
|---|---|---|
| | էջ 1—2 (= ՀԱՆԴ. ԱՄՍ. 1910, էջ 8)։ | |
| 160, 21 | յաւել՝ Թղթոց Գրքի այս խօսքին մէջ յաշխարհարձակ պէտք է կարդալ Նորայրի հետ (անդ 220) յաշխարհ արձակ (արձակեաց) եւ իմանալ՝ Երբ արքայից արքայն (Խոսրով Բ.) իւր բարերարութեամբ զիս արձակեց յաշխարհ (այս ինքն ի Հայս), մասնաւորապէս պատուիրեց որ . . .»։ Այս մեկնութեամբ Գիրք Թղ. 171 նոյն խօսքը կարելի չէ առնուլ Կիւրիոնի եւ Վրաց վրայ, ինչպէս էջ 35 եւ 173—74 իմացուած է։ | |
| 168, 28 | ձեռնաղրութիւն | ձեռնադրութիւն |
| 174, ծան. 4 | յաւել՝ = «Ազատիհ ասորերէն է կարծեմ եւ կը նշանակէ 'շուք, փառաւորութիւն'։ Ասորերէն եշթաբհի կը նշանակէ glorificatus est, փառաւորեցաւ, եշթաբահ, փառաւորեալ» կը գրէ Նորայր (անդ, 220)։ | |
| 174, 14 | առանձնորհութիւնք | առանձնաշնորհութիւնք |
| 196, 12 | է. | է |
| 197, 4 | դաւանութիւններն | դաւանութիւններն. |
| 203, 9 վար. / 208, 3 վար. | Ատրներսէհի | Ատրներսեհի |
| 229, 15 | զինչպէս | զինչպէս |
| 252, 9 | յաւել՝ Ուշադրութեան արժանի են Ջաւախովի (История էջ 511—2) խօսքերս այս մասին. «Մինչեւ | |

վերջին ժամանակներս Վրաց առաջին կաթողիկոսը կը համարուէր Պետրոս՝ հաստատուած Վախտանգ թագաւորի օրով. բայց որովհետեւ այս տեղեկութիւնը հաստատուած է քանի մը անագանագոյն ժամանակի տարեգիրներու վկայութեան վրայ, անոր համար ինքն իրմէ, ինչպէս բնական ալ է, կը յարուցանէ տարակոյս։ Անոնց տեղ ունինք ուրիշ աւելի ստոյգ աղբիւր, այս է Ս. Շուշանկան վկայաբանութիւնը, որուն հեղինակն եղած է դէպքին ականատես մը եւ ժամանակակից Վրաստանի մէջ կաթողիկոսութեան հաստատման. այս ընտիր վկայաբանական Յիշատակարանի հեղինակը կը յիշատակէ նաեւ “զգլուխն եպիսկոպոսաց՝ զՍամուէլ, զառաջին կաթողիկոսն„ Վրաց (M. Сабининъ, Рой Грузіи, էջ 191)։ Հետեւաբար Վրաց առաջին կաթողիկոսն եղած է ոչ թէ Պետրոս, ինչպէս ցայսօր կը կարծուէր, այլ Սամուէլ. եւ որովհետեւ վերջինս Վրաց Աշուշայ (իմա՝ Վազգէն) “բդեշխի„ օրով էր, որ սպանեց Վախտանգ թագաւոր 484ին (Ղազ. Փարպ. Վենետ. 1891, էջ 406), այսու Վրաստանի կաթողիկոսութեան հաստատութեան terminus post quem non հարկ կ'ըլլայ համարիլ այս թուականը՝ պատահած ուրեմն

ԷԸ տող մօտաւորապէս 480—484 տարիներու մէջերը»։

157, 1 վար. յաւել՝ Չամչեանի վրայ հիմնուած է անշուշտ եւ Մովս. Սոմալեան երբ Quadro, 37, թուելով Կիւրիոնի թղթերը կը գրէ. «Եւ երրորդ թուղթ առ Կայսրն Մօրիկ, այսօր կորսուած»։

272, 1 վար. 456 156

---

# ՑԱՆԿ ՑԱՏՈՒԿ ԱՆՈՒԱՆՑ

# ԱԶԳԱՅԻՆ ՄԱՏԵՆԱԴԱՐԱՆ

---

Ա. Գալէմքեարեան Հ. Գր. Վ., Ուսումնասիրութիւնք Լեհահայոց դատաստանագրոյն: 1. Պիշոֆ, Լեհահայոց հին իրաւունքը: 2. Գոշէր, Իրաւունք Հայոց: 1890: Էջ 85+59: Ֆր. 1.25

Բ. Մենեւիշեան Հ. Գ., Ազգաբանութիւն ազն. զարմին Տիւզեանց: 1890: Էջ 50: Ֆր. 1.—

Գ. Տաշեան Հ. Յ., Ագաթանգեղոս առ Գէորգայ ասորի եպիսկոպոսին եւ ուսումնասիրութիւն Ագաթանգեղեայ գրոց: 1891: Էջ ԺԱ+159: Ֆր, 1.25

Դ. Տան Դ., Արեւելեան Հայք ի Պուքովինա: Թրգմ. Հ. Գ. Վ. Գալէմքեարեան: 1891: Էջ 79: Ֆր. —.85

Ե. Տաշեան Հ. Յ. Վ., Ուսումնասիրութիւնք Ստոյն-Կալիսթենեայ Վարուց Աղեքսանդրի: 1892: Էջ Դ+272: Ֆր. 3.—

Զ. Տըվլէ Ա. եւ Գ. Փիւռն, Ուղեւորութիւն ի Փոքր Ասիա: Թրգմ. Հ. Յ. Վ. Տաշեան: 1892: Էջ 82: Ֆր. 1.—

Է. Մառ Ն., Ամառնային ուղեւորութիւնից դէպ ի Հայս: Թրգմ. Ո. Անոփեան: 1892: 89: Ֆր. 1.25

Ը. Գարիէր Ա., Նորագոյն աղբերք Մովսիսի Խորենացւոյ: Հտ. Ա.: Թրգմ. Հ. Յ. Վ. Տաշեան: 1893: Էջ Ժ+51: Ֆր. 1.—

Թ. Գալէմքեարեան Հ. Գ. Վ., Պատմութիւն Հայլրագրութեան: Հտր. Ա. 1794—1860: (1 լուսանկարով:) 1893: Էջ 232: Գր. 2.50

Ժ. Կոնիբիր Փր. Կ., Քննութիւնք զրոց Դաւթի Անյաղթի: Թրգմ. եւ յաւ. Հ. Ց. Վ. Տաշեան: 1893: Էջ Է+92: Գր. 1.25

ԺԱ. Գովրիկեան Հ. Գ. Վ., Հայք յՕղիսաբեթուպոլիս Դրանսիլուանիոյ 1680—1779: (1 զննկարիւ.) 1893: Էջ Ժ+533: Գր. 4.50

ԺԲ. Խաչաթեան Գր., Զենոբ Գլակ. համեմատական ուսումնասիրութիւն: 1893: Էջ Զ+78: Գր. 1.—

ԺԳ. Տէր-Մովսիսեան Փ., Հայ գիւղական տունը: Թրգմ. Հ. Բ. Վ. Պիլէզիկճեան: (6 տախտ. 55 պտկ.:) 1894: Էջ Ը+103: Գր. 2.—

ԺԴ. Գարիէր Ա., Նորագոյն աղբերք Մովսիսի Խորենացւոյ. Հտր. Բ. կամ Յաւելուած: Թրգմ. Հ. Ց. Վ. Տաշեան: 1894: 8° Էջ ԺԱ+43: Գր. 1.—

ԺԵ. Տաշեան Հ. Ց. Վ., Ուսումնասիրութիւնք հայերէն փոխառեալ բառից: Ա.՝ Հ. Հիւպշման, Սեմական փոխառեալ բառեր հին հայերէնի մէջ: Բ.՝ Փրոքէլման Կ., Յունական փոխառեալ բառեր հայերէնի մէջ: Գ.՝ Հ. Հիւպշման, Հայկական Յատուկ անուանք: 1894: Էջ Թ+145: Գր. 2.—

ԺԶ. Տաշեան Հ. Ց. Վ., Մատենագրական Մանր Ուսումնասիրութիւնք. Մասն Ա: Ա–Զ. Նեմեսիոս, Պրոկղ Դիադոխոս, Խոսրովիկ, Գիրք Հերձուածոց, Պրոկղ եւ Սեկունդոս: 1895: Էջ ԺԲ+296: Գր. 3.60

ԺԷ. Տաշեան Հ. Ց. Վ., Հայկական աշխատասիրութիւնք հայազէտ Պ. Փէթթէրի, ամփոփուած եւ թարգմ. ծանօթութեամբք: 1895: Էջ Թ+202: Գր. 2.5

ԺԸ. Տիգրեան Կ., Սեւ ծովու ռուսական եզերքը: 1895: Էջ 92: Գր. 2.—

ԺԹ. Գովրիկեան Հ. Գ. Վ., Դրանսիլուանիոյ Հայոց Մետրապոլիսը կամ Նկարագիր Կերլա Հայաքաղաքի ի գիր եւ ի պատկերս: 1896: Էջ Թ+352: Փր. 3.60

Ի. Տաշեան Հ. Յ. Վ., "Վարդապետութիւն առաքելոց" անվաւերական կանոնաց մատեանը. Թուղթ Յակոբայ առ Կոդրատոս եւ Կանոնք Թադդէի: 1896: Էջ Թ+442: Փր. 6.—

ԻԱ. Տոմաշէկ Վ., Սասուն եւ Տիգրիսի աղբերաց սահմանները: Պատմական եւ տեղագրական հետազօտութիւն: Թրգմ. Հ. Բ. Պիլէզիկճեան: 1896: Էջ Է+62: Փր. 1.—

ԻԲ. Կարրիէր Ա., Աբգարու զրոյցը Մովսէս Խորենացւոյ Պատմութեան մէջ: Թրգմ. Հ. Գ. Վ. Մէնէվիշեան: 1897: Էջ ԺԵ+107: Փր. 1.50

ԻԳ. Յովնանեան Հ. Ղ. Վ., Հետազօտութիւնք նախնեաց ռամկօրէնի վրայ: Ուսումնասիրութիւնք եւ քաղուածներ: Մասն Ա. Ռամկօրէն մատենագրութիւնք: Տետր Ա: 1897: Էջ Ը+272: Փր. 4.—

ԻԴ. Յովնանեան Հ. Ղ. Վ., Հետազօտութիւնք նախնեաց ռամկօրէնի եւն: Տետր Բ: 1897: Էջ Ա—Ը: 273—522: Փր. 3.—

ԻԵ. Գէլցէր Հ., Համառօտ պատմութիւն Հայոց: Թրգմ. Հ. Գր. Վ. Գալէմքեարեան: Յաւելուած 1. Ցանկ Հայոց կոտորածներու առթիւ լոյս տեսած գրքերու: 2. Գաւազանագիրք Կաթողիկոսաց եւ Պատրիարքաց Հայոց: 1897: Էջ Ը+130: Փր. 1.50

ԻԶ. Մէնէվիշեան Հ. Գ. Վ., Գիրք (կամ՝ յօղուած) գրելու արուեստը: Յաւելուած՝ Գիրք կարդալու արուեստը: 1898: Էջ Է+118: Փր. 1.25

ԻԷ. Խաչաթեան Գր., Մ. Խորենացու նորագոյն աղբիւրների մասին քննադատական ուսումնասիրութիւնք: 1898: Էջ Է+53: Փր. 1.—

ԻԸ. Տաշեան Հ. Յ. Վ., Ակնարկ մը հայ հնագրութեան վրայ: Ուսումնասիրութիւն հայոց գրչութեան արուեստին: (10 զնկատիպ պատկերով:) 1898: Էջ ԺԱ+202: Փր. 2.50

ԻԹ. Դաղբաշեան Յ., Փ. Բիւզանդացի եւ իւր պատմութեան խառն ախոռը: Քննութիւնն Մ. Խորենացու աղբիւրների մասին: 1898: Էջ Թ+175: Փր. 2.50

Լ. Մսերեանց Լ., Հայերէն բարբառախօսութիւն· Թրգմ· ի ռուսերէնէ Հ. Գ. Վ. Մէնէվիշեան: 1899: Էջ Է+26: Փր. —.50

ԼԱ. Քօսեան Հ. Յ. Վ., Հայք ի Զմիւռնիա եւ ի շրջակայս: Հատոր Ա. Զմիւռնիա եւ Հայք. (պատկերազարդ:) 1899: Էջ ԺԲ+369: Փր. 5.—

ԼԲ. Քօսեան Հ. Յ. Վ., Հայք ի Զմիւռնիա եւ ի շրջակայս: Հատոր Բ. Զմիւռնիոյ վիճակին գլխաւոր քաղաքներն եւ Հայք. (պատկերազարդ:) 1899: Էջ Ժ+161: Փր. 2.50

ԼԳ. Գովրիկեան Հ. Գ. Վ., Հայք յՕղիսաբեթուպոլիս Դրանսիլուանիոյ. Բ. Հտր. 1780—1825: 1899: Էջ Է+554: Փր. 5.—

ԼԴ. Գազանճեան Յ., Եւդոկիոյ Հայոց գաւառաբարբառը: 1899: Էջ Է+120: Փր. 1.—

ԼԵ. Կարրիէր Ա., Հեթանոս Հայաստանի ութ մեհեաններն Ագաթանգեղոսի եւ Մ· Խորենացւոյ համեմատ: Թրգմ. Հ. Յ. Վ. Տաշեան (1 քարտէզով): 1899: Էջ 43: Փր. —.70

ԼԶ. Տաշեան Հ. Յ. Վ., Ժողովածոյք առակաց Վարդանայ, ըստ Ն. Մառի, տեղեկատուութիւն եւ քաղուածքներ: 1900: Էջ ԺԱ+193: Փր. 2.50

ԼԷ. Տաշեան Հ. Յ. Վ., Մատենագրական Մանր Ուսումնասիրութիւնք· (տես ԺԶ:) Մասն Բ: Է–Ժ.

Խիկար եւ իւր իմաստութիւնն, Ազապետոս եւ իւր Ցորղորական ու Ցուստինիանոս, Թղթակցութիւն Աբգարու եւ Քրիստոսի ըստ նորագիւտ արձանագրութեան Եփեսոսի, եւ Գէորգայ Պիսիդեայ Վեցօրեայք: 1901: Էջ ԺԲ+384: Ֆր. 4.50

ԼԸ. Տէր-Պօղոսեան Գր., Նկատողութիւններ Փաւստոսի Պատմութեան վերաբերեալ: 1901: Էջ Ը+110: Ֆր. 1.50

ԼԹ. Վէբէր Ս., Արարատը Ս. Գրոց մէջ: Թրգմ. Հ. Բ. Պիլէզիկճեան: 1901: Էլ Ծ+77: Ֆր. 1.—

Խ. Սահառալճեան Յովսէփ Վ., Ասորեստանեայ եւ Պարսիկ սեպագիր արձանագրութիւնք կամ որոնք Նաիրի-Ուրարտու աշխարհին պատմութեան կը վերաբերին: 1901: Էջ 262: Ֆր. 4.50

ԽԱ. Խալաթեանց Բագրատ, Հայ ժողովրդական դիւցազնական վէպը: 1903: Էջ Ը+72 Ֆր. 1.—

ԽԲ. Մէճէվիշեան Հ. Գ. Վ., Արդի լեզուագիտութիւնը: Հտր Ա.: 1903: Էջ Ը+204: Ֆր. 3.—

ԽԳ. Մարկարտ Յ., Հայ Բդեաշխք: Թրգմ. Հ. Թ. Կէտիկեան: 1903: Էջ 39: Ֆր. —.75

ԽԴ. Գեցէր Հ., Սկզբնաւորութիւնք Բիւզանդեան քանակաթեմերու դրութեան (1 քարտէզով): Թրգմ. Հ. Գ. Գարանֆիլեան: 1903: Էջ Է+83: Ֆր. 2.—

ԽԵ. Կիւլէսէրեան Բ. Վ., Ծովք, Ծովք-Տլուք եւ Հոռմ-Կլայ, պատմական եւ տեղագրական ուսումնասիրութիւն: (1 քարտէզով): 1904: Էջ Ը+117: Ֆր. 1.50

ԽԶ. Կիւլէսէրեան Բ. Վ., Կոլոտ Յովհաննէս Պատրիարք. պատմագրական եւ քննասիրական ուսումնասիրութիւն: 1904: Էջ ԺԴ+227: Ֆր. 3.50

ԽԷ. Պեդերսըն Հ., Նպաստ մը հայ. լեզուի պատմութեան: Թրգմ. Հ. Գ. Գարանֆիլեան: 1904: Էջ Ը+87: Ֆր. 1.25

ԽԸ. Տէր-Մկրտչեան Գ. եւ Աճառեան Հ. Յ., Քննութիւն եւ համեմատութիւն Եզնկայ նորագիւտ ձեռագրին: 1904: Էջ Է+105: Փր. 1.50

ԽԹ. Գովրիկեան Հ. Գ. Վ., Հայք յԵղիսաբեթուպոլիս: Գ. Հտր. 1825–1904: Էջ Ժ+658: Փր. 7.—

Ծ. Շտրէք Մ., Հայաստան, Քրդաստան եւ արեւմտեան Պարսկաստան բաբելական-ասորեստանեայ սեպագրերու համաձայն: Թրգմ. Հ. Բ. Պիլէզիկճեան: 1904: Էջ Է+222: Փր. 3.—

ԾԱ. Խալաթեանց Գր., Հայ Արշակունիք ըստ Մովս. Խորենացւոյ, կամ Նոր ուսումնասիրութիւններ Մովս. Խորենացւոյ ասին: Թրգմ. Արսէն Ս. Սիմոնեանց: 1906: Էջ Ը+124: Փր. 1.50

ԾԲ. Պեդերսըն Հ., Հայերէն եւ դրացի լեզուները: Թրգմ. Հ. Թ. Կէտիկեան: 1907: Էջ ԺԱ+257: Փր. 5.—

ԾԳ. Հիւբշման Հ., Հին Հայոց տեղւոյ անունները: Թրգմ. Հ. Բ. Պիլէզիկճեան: 1907: Էջ ԺԶ+443: Փր. 7.—

ԾԴ. Պեդերսըն Հ., Հին հայերէնի ցուցական դերանունները: Թրգմ. Հ. Յ. Տաշեան: 1907: Էջ Է+90: Փր. 2.—

ԾԵ. Գալէմքեարեան Հ. Գ. Վ., Կենսագրութիւն Սարգիս Արքեպիսկոպոսի Սարաֆեան եւ ժամանակին հայ կաթողիկեայք: 1908: Էջ ԺԳ+433: Փր. 5.—

ԾԶ. Աճառեան Հրաչեայ, Հայերէն նոր բառեր Նորագիւտ Մնացորդաց գրոց մէջ: 1908: Էջ 38: Փր. —.60

ԾԷ. Կիւլէսէրեան Բաբգէն Ծ. Վ., Եղիշէ քննական ուսումնասիրութիւն: 1909: Էջ ԻԸ+458: Փր. 7.—

ԾԸ. Ակինեան Հ. Ն., Ա. Տիմոթէոս Կուզ Հայ մատենագրութեան մէջ: Էջ 1—60: Բ. Աճառեան Հր., Հայերէն նոր բառեր Տիմոթէոս Կուզի Հակաճառութեան մէջ: 1909: Էջ 61—106: Ֆր. 1.50

ԾԹ. Ակինեան Հ. Ն., Զաքարիա Եպիսկոպոս Գնունեաց եւ իւր տաղերը: 1909: Էջ ԾԲ+87: Ֆր. 1.—

Կ. Ակինեան Հ. Ն., Կիւրիոն Կաթողիկոս Վրաց: 1910: Էջ ԻԸ+315: Ֆր. 5.—

---